ԵՐԿԱՄԵԱՅ

# ՊԱՆԴԽՏՈՒԹԻՒՆ

## Ի ՀԱՊԷՇՍՏԱՆ

ԿԱՄ

## ԲԱՐՈՅԱԿԱՆ, ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՒ ԿՐՕՆԱԿԱՆ
## ՎԱՐՔ ՀԱՊԷՇԻՑ



ՅՕՐԻՆԵՑ
ՏԻՄՈԹԵՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՍԱՓՐԻՉԵԱՆ
ԿՈՍՏԱՆԴԻՆՈՒՊՕԼՍԵՑԻ
Ի ՄԻԱԲԱՆՈՒԹԵՆԷ Ս. ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

ԵՐՈՒՍԱՂԷՄ
Ի ՏՊԱՐԱՆԻ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅ Ս. ՅԱԿՈՎԲԵԱՆՑ
1871





Stich u. Druck v. Weger, Leipzig.

Գ. Սահակ եպիսկոպոս. — *Isaac, Evêque.*

Տիմոթէոս Ծ. Վ. — *P. Timothée.*

ԱՌ

# ՆՈՐԻՆ ՎԵՀԱՓԱՌՈՒԹԻՒՆ

# ՎԻԿՏՈՐԻԱ

## ԹԱԳՈՒՀԻ ՄԵԾԻՆ ԲՐԻՏԱՆԻՈՅ

## ԵՒ ԻՌԼԱՆՏԻՈՅ

ՆՈՒԻՐԷ

**ԽՈՐԻՆ ՄԵԾԱՐԱՆՕՔ ԶԱՅՍ ԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆ**

Ս. ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅՆ ՀԱՅՈՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

ՊԱՏՐԻԱՐՔ

ԵՍԱՅԻ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ



FOREIGN OFFICE

---

JANUARY 6th 1871

Sir,

In reply to your Depatch marked Separate, of the 8th ultimo, I am directed by Earl Granville to desire that you will acquaint His Eminence the Armenian Patriarch of Jerusalem, that Her Majesty the Queen will be happy to accept the Dedication of the Work on Abyssinia, which the Bishop Sahak and the Priest Timotheus are about to publish, containing a narrative of their journey and Adventures in that country.

I am,

Sir,

Your Most obedient
Humble Servant

*(Signed)*
ARTHUR OTWAY.

N. T. MOORE Esqre.
Her Majesty's Consul
Jerusalem.

ՊԱՇՏՕՆԱՏՈՒՆ
ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾՈՑ

6 Յունուարի 1871

Տէր

Ի պատասխանի Ձեր անցեալ ամսոյ 8 ին գրած նամակին, հրաման ստացայ Կոմս Կրանվիլէն ըսել ձեզ, թէ կը փափաքի նա որ իմացնէք Ն. Ամենապատուութեան Երուսաղէմի Հայոց Պատրիարքին, որ Նորին Վեհափառութիւնը Թագուհին բարեբաղդ պիտի լինի Իսահակ արքեպիսկոպոսի և Տիմոթէոս վարդապետի Հապէշստանի վրայ հրատարակելու եղած աշխատասիրութեան Ուղերձն ընդունելու, յորում կը պարունակի իրենց ուղէգնացութիւնը նոյն երկրին մէջ և կրած դէպքերը։

Մնամ, Տէր

Ամենահնազանդ
և խոնարհ ծառայ
ԱՐԹԻՒՐ ՕԹՈՒԷՅ

ՊԱՐՈՆ
Ն. Դ. ՄՈՒՐ.
Հիւպատոս Ն. Վ. Թագուհւոյն
Յերուսաղէմ։

# ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ

ՀԱՊԷՇ ազգը որդէն ծանօթ էր մեզ անոնց երկրին մէջ պանդխտելնէս յառաջ . ըստ որում Երուսաղէմայ մէջ բնական Հաբէշներ կը գտնուին աղօթաւորաց կարգէն, որոնք, ինչպէս Ասորիք և Ղպտիք, ՚ի վաղուց անտի մեր սուրբ Աթոռոյն իրաւասութեան ներքեւ են, և մասնաւոր խնամքներ վայելած են և կը վայելեն ամէն օր սուրբ Տանս և Ազգիս շնորհիւը։ Ասոր եւ մենք անոնց ողորմելի վիճակը, խոնարհ կերպարանքը, աղօթակեցութիւնը եւ չափազանց կրօնասիրութիւնը տեսնելով, երանութիւն կուտայինք եւ գթութեան արժանի կը համարէինք զիրենք։ Բայց երբ անձամբ գնալով իրենց բուն երկիրը՝ ՚ի մօտոյ նկատեցինք զիրենք, բոլորովին տարբեր գըտանք մեր ըմբռնած կարծիքները, ինչպէս պիտի տեսնեն ընթերցողք առաջիկայ գրքիս մէջ։ Մենք իբրեւ կրօնակից մեզ և իբրեւ երախտաւորեալ ժողովուրդ մը՝ կը յուսայինք փոխադարձ համակրութիւն գտնել անոնցմէ, և իբրեւ հատուցումն բազմադարեան շնորհաց և խնամոց՝ փոխարէն հիւրասիրութիւն և մարդասիրութիւն ընդունել. բայց անոնց հակառակը պատահեցաւ գրեթէ. և այս բանծներս հասարակ ժողովրդոց նկատմամբ պէտք է իմանալ առաւելապէս։ Ասոնց այն յատկութիւնները զոր սուրբ Քաղաքիս մէջ եղող Հաբէշներուն վերայ իբրեւ մէկ մէկ առաքինութիւններ կը նկատէինք, իրենց բուն հայրենեացը մէջ տեսանք զանոնք մէկ մէկ մոլութիւններ, և արտաքին խաբէական ցոյցեր ըլլալը հոն նշմարեցինք։ Կը զարմա-

նայինք մենք մեզի թէ ինչպէս միամտաբար խաբուած են մեր սուրբ Աթոռոյն երջանկայիշատակ նախահայրերը, և չափազանց մարդասիրութիւն ցոյց տալով պաշտպանած և օգնած են իրենց՝ ամեն պարագայից մէջ իբրև կրօնակից ազգ մը համարելով, առանց փոքրիկ ակնկալութիւն մը ունենալու անոնցմէ ։

Մենք բաւական ժամանակ Հապէշու երկրին մէջ պանդխտելով պատեհ առիթ ունեցանք, ինչպէս ըսինք, ՚ի մօտոյ նկատել այս ազգը, և ամենայն ճշտութեամբ գրի առնուլ թէ մեր ճանապարհորդութիւնը և թէ նոյն երկրին բարոյական կրօնական և քաղաքական պատմութիւնը ։ Վասն որոյ երկու հատորի բաժնեցինք այս աշխատասիրութիւնս . առաջին հատորը ԵՐԿԱՄԵԱՅ ՊԱՆԴԽՏՈՒԹԻՒՆ Ի ՀԱԲԵՇՍՏԱՆ կոչեցինք, որուն մէջ լոկ մեր ճանապարհորդութեան և պանդխտութեան մէջ կրածներն ու տեսածները կը պատմուին ։ Իսկ երկրորդ հատորին՝ ՆԿԱՐԱԳԻՐ ԲԱՐՈՅԱԿԱՆ, ԿՐՕՆԱԿԱՆ և ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԵՆԱՑ ՀԱԲԵՇԻՑ անուն դրինք, որուն մէջ կը նկարագրուին Հապէշ ժողովրդոց բարոյական կեանքը, անոնց քաղաքական ու կրօնական սովորութիւններն ու արարողութիւնները հանդերձ ուրիշ հետաքրքրաշարժ ճիշտ տեղեկութիւններով ։ Ճիշտ ըսի, որովհետեւ ազգի մը և ժողովրդեան բնաւորութեանը լաւ տեղեկանալու համար դրամական միջոցներն ու բարձր դրից մէջ ըլլալը օգուտ մը չունի, ինչպէս են Եւրոպացի բարձրաստիճան ճանապարհորդք . ըստ որում՝ այնպիսի անձինք կարող չեն ըլլար թափանցել անոնց ներքին հանգամանացը, գաղափարներուն և բարքերնուն, մանաւանդ Հապէշից նման կեղծաւոր ազգի մը, որ խիստ գաղտնապահ է օտարի մը առջեւ ։ Իսկ մեր դիրքը աւելի ժողովրդային ըլլալով, դիւրամերձ էինք ամենուն, և շատ պարագայից և դէպքերու ենթակայ գտնուելով, իբրև բուն տեղացի ծանօթացանք անոնց ամեն բնաւորութեանցը, զոր անհնարին է իմանալ արծաթի ուժովը ճամբորդութիւն ընող անձանց, որոնց մինչեւ ցայսօր թաքուն մնացած են շատ տեղեկութիւններ ։

Երկրորդ հատորին մէջ տուած մեր ծանօթութիւնները Ամարա երկրին մէջ թափառած ժամանակնիս առացած և շատերու համաձայն վկայութեամբ և մեր հետաքրքիր հետազօտութեամբ ստուգած, և պատմածնուս մեծ մասն ալ մեր անձին փորձովը իմացած, և այնպէս ի գիր արձանագրուցած եմք, ինչպէս պիտի տեսնեն մեր սիրելի ընթերցողները։ Այսու ամենայնիւ շատ բաներ և դէպքեր ևս գիտութեամբ զանց ըրած եմք, կամ անոր համար որ բացակայ երկիրներու ժողովրդոց վայօք էր, զորոնք ստուգելը դժուար էր մեզ և առասպելաց կարգ պիտի համարուէր. և կամ անոր համար որ մեր անձին չէին պատկաներ գրի առնելու, ծանր ըլլալով թէ խօսիլը և թէ լսելը, թէպէտ և այսպիսի պարագաներէն քանի մը բան ակամայ ստիպուեցանք պատմել՝ միշտ գրիչնիս ամփոփելով ամօթխածութեամբ, որոյ համար կանխաւ ներողութիւն կը խնդրեմք ընթերցողներէն։

Կը յուսամք որ այն մեր գուղնաքեայ աշխատասիրութիւնն որ երկամեայ պանդխտութեանս արդիւնքն է, իբրև միակ իւր տեսակին մէջ՝ ընդունելի կ՚ըլլայ մեր սիրելի ազգայնոց և օտար ազգաց իսկ, որոնց ջերմ ընդունելութիւնը և մեր այս չնչին աշխատութեանը ցոյց տուած համակրութիւննին բաւական փոխարինութիւն կը համարիմք մեզ։



ԵՐԿԱՄԵԱՅ

# ՊԱՆԴԽՏՈՒԹԻՒՆ

## Ի ՀԱՊԷՇՍՏԱՆ

---

## ԳԼՈՒԽ Ա.

*Ճանապարհորդութեանս նպատակը ։ Երուսաղէմէ մեկնիլս ։ Եգիպտոսի մէջ Անգղիոյ ընդհանուր հիւպատոսին հետ տեսութիւն մը ։ Սուէզի պանդուխտ Հայերը . և Զատկի տօնը ։ Գաղղիական Լիպուլ հիւպատոսին բարեսրտութիւնը ։ Ճիտտէ , ու Մալէզեան տօքթօր Ֆրանկլիւլ Էֆէնտին ։*

Մեր *ընթերցողաց արդէն յայտնի է այն մեծ նըպատակը , որու համար Գեր . Իսահակ եպիսկոպոսը Խարբերդցի և ես Կ . Պօլսեցի Սարգիսեան նուաստ Տիմոթէոս վարդապետս՝ յանձնառու եղանք դէպ ի Հապէշստան ուղեւորելու , այն երկիրը՝ ուր օտարականի մը համար ամէն տեսակ վտանգ ու զրկանք և մինչեւ մահ պատրաստ է , կամ այնպէս կը կարծուէր ։ Բայց ոտնհետեւ գրաւոր պատմութիւնն աւելի ապագայից համար է քան թէ ներկայ մարդկութեան , վասն որոյ հարկ կը համարիմ ի սկզբանս հարեւանցի տեղեկութիւն մի տալ մեր նպատակին վրայ ։*

*Հապէշու Թէոդորոս Թագաւորը Մուսավայի անգղիական հիւպատոսին համարձակ ու քիչ մը կծու խօսքերուն չկարենալով համբերել , որ իւր անձնաւորութիւնը կը վիրաւորէր և Թագաւորական պատիւը կ'անարգուէր , Մակտելա անառիկ և սեպացեալ լեռան մէջ զինքը կ'արգիլէ քանի մը ընկերներովը , որոնք երեք չորս տարիի չափ հոն մնացին ։ Անգղիոյ Տէրութիւնը*

թէպէտ շատ ջանք ըրաւ, թէ քաղցրութեամբ և թէ ուրիշ զանազան միջոցներ ի գործ դնելով, այսու ամենայնիւ չկրցաւ Թէոդորոսի անողոքելի սիրտը քաղցրացընելով՝ բանտարգելոց ազատութիւնը ձեռք բերել։ Պօլսոյ անգղիական դեսպան Վսեմափայլ Լորտ Լէօնզ, իմանալով թէ սուրբ Երուսաղէմ բնակող Հաբէշները Հայոց Պատրիարքին իրաւասութեան տակ կը գտնըւին, ազգային Վարչութեան և Պատրիարքարանի միջոցաւ կը խնդրէ Ամենապատիւ Եսայի պատրիարքէն որ իւր կողմէն պատգամաւորութիւն մը յուղարկէ առ Թէոդորոս և Անգղիոյ հիւպատոսին և անոր ընկերաց ազատութիւնը խնդրէ։ Սրբազան Հայրը առանց վայրկեան մի վարանելու, իւր Տնօրէն խորհուրդը կազմել տալով՝ կ'որոշուի մէկ եպիսկոպոս և մէկ վարդապետ խրկելու։ Այս խորհրդոյս և ընտրութեան թէ՛ Գեր. Իսահակ եպիսկոպոսը և թէ նուաստս ի պատիւ Անգղիոյ Տէրութեան և ի պարծանս Ազգիս և սուրբ Աթոռոյս՝ ամենայն հպատակութեամբ յանձնառու ըլլալով, ոչ վտանգ և ոչ որ և իցէ մարդկային նկատմունք արգել կ'ըլլային մեզ պատրաստուելու այս երկար ու տաժանելի ճանապարհորդութեան, ուր կը կոչէր զմեզ մարդասիրական ու նուիրական պարտաւորութիւնը։

Սրբազան Պատրիարքը իւր հայրական օրհնութեանց հետ յանձնեց մեզի նաեւ յատուկ կոնդակներ թէ՛ օրհնութեան և թէ աղերսանաց, և ըստ բաւականին թանկագին ընծաներ Թէոդորոս Թագաւորին մատուցանելիք։

Ահաւասիկ օրհնութեան կոնդակին օրինակը։

ԵՍԱՅԻ Արքեպիսկոպոս և շնորհիւն Աստուծոյ Պատրիարք Հայոց Երուսաղէմի, և աթոռակալ սուրբ Առաքելոյն Յակովբայ, մատուցանեմ զողջոյն առաքելական՝ վեհափառ Կայսերդ, և աղաչեմ զԱստուած զի հեղցէ ի վերայ ձեր առատօրէն զօրհնութիւնս և զշնորհս սրբոյ քաղաքիս Երուսաղէմի, Նազարէթի, Բեթղէե-

մի, Յորդանանու, ամենասուրբ Գերեզմանին տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, Գողգոթայի, սրբոյ լերինն Համբարձման, Վերնատան Սիովնի, և ամենայն սուրբ և փառաւորեալ Տեղեաց, յորս կատարեցան խորհուրդք մարդեղութեան Աստուածորդւոյն, և առաքելական Եկեղեցւոյս սրբոյն Յակոբայ Տեառնեղբօր։ Հաճեցաւ Տէր ընդունել զաղօթս մեր զոր մատուցանեմք նմա վասն բարեյաջողութեան կայսերութեանդ, ողի-ռեալ տարածեսցէ լիուլի զամենայն երկնաւոր բարիսն իւր ի վերայ Վեհափառութեան Ձերում, օգոստափառ Գերդաստանիդ և ի վերայ ամենայն երկրի որ կառավարի ի ձեռն հզօր պետութեան Ձերոյ, ամէն։

Ընդ երկնապարգեւ օրհնութեանց սուրբ Տեղեացըս՝ յայտ առնեմք նաեւ Վեհափառութեան Ձերում մարդասիրի, զփափաքանս երջանկայիշատակ Նախորդաց իմոց, զոր փափաքեցին հաստատել անկեղծ յարաբերութիւնս քրիստոնէական պարզ սիրոյ ընդ տէրութեան Ձերում, այլ դժուարութիւնք ժամանակաց խոչընդոտ եղեն նոցա ի գործադրութիւն։ Նոյն իղձք և զմեզ խրախուսէին՝ յերկուց ամաց անտի յորմէ հետէ բարձրացեալս եմք յաթոռ սուրբ Առաքելոյն Յակոբայ, առաքել զնուիրակունս մեր յատս մեծի Աթոռոյդ, սակայն արգելաք ցարդ յերկիւղէ վտանգաց ճանապարհին։ Խնամքն աստուածեղէն հաճեցաւ հուսկ յետոյ շնորհել մեզ զառիթ բարեդէպ առ ի կարող լինել զեկուցանել ամենաբարեպաշտ Վեհափառութեանըդ այսու կոնդակաւ մերով, զանկեղծաւոր սրտի մերոյ զտենչ և զիղձս որ լի են ամենայն ակնածութեամբք և մեծարանօք, զորս նուիրեմք Ձերդ Վեհափառութեան։ Եւ առ զգալի եւս առնել զհաւաստիս մեծագոյն յարգանաց մերոց, խորհեցաք առաջի առնել զայնոսիկ ամենաբարեպաշտ Վեհափառութեանդ, ի ձեռըն փոխանորդի մերում Գեր. Խաչակ Արքեպիսկոպոսի, և Արժ. Տիմոթէոս վարդապետի անդամոյ Տընօրէն ժողովոյ առաքելական Աթոռոյս, սիրեցեալք և պատուեալք ի մէնջ երկոքին եւս։ Յանձնեցաք նոցա

նաեւ մատուցանել Վեհափառութեան Ձերում խաչակն և ականակուռ, ունելով յինքեան մասն ի փայտէն կենաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, զոր խնդրեմք ընդունիլ մարդասիրապէս, և կրել ի պարանոցի որպէս զարդ չքնաղ արժանաւոր Թագաւորի քրիստոնէի։

Տէր, վերջինն երջանկայիշատակ նախորդաց իմոց Յովհաննէս Ե. արդարեւ երջանիկ գտաւ և փառաւորեցաւ ի հիւրասիրել անդ զԲարձր. պաշտօնեայ Վեհափառութեան Ձերում զԱպլաֆի Քանդիլա, որ յամի 1858 կենարարին մերոյ եկն յուխտ սրբազան Տեղեացս։ Գիտաց նա ի մօտոյ տեսանել զհամակրութիւն զոր ունիմք առ Ձերդ Վեհափառութիւն, և զսէրն քրիստոնէական զոր արդեամբք իսկ ցուցանեմք բարեպաշտ կրօնաւորացն Եթովպացւոց որք գտանին յԵրուսաղէմ, և կան յանյիշատակ ժամանակաց հետէ ընդ հովանաւորութեամբ առաքելական Աթոռոյս։ Ծանեաք և մեք, այո, զբարեսրտութիւն և զաստուածասէր զգացմունս Նորին Բարձրութեան, զոր համարիմք առանց երկբայութեան ներշնչեալ յամենաբարեպաշտ Վեհափառութենէդ, և զանձն իսկ Նորին՝ արժանաւոր ընծայեցուցիչ անգին բարեմասնութեանց վեհափառ Անձինդ։

Հաճեսջիք, Տէր Արքայ, մարդասիրութեամբ ընդունել զխոնարհ ծառայսդ զերկոսին զԳեր. Իսահակ Արքեպիսկոպոսն և զԱրժ. Տիմոթէոս վարդապետն, և արժանի արարէք զնոսա հանել ի տեսութիւն Ձեր ի մասնաւորի, և շնորհել նոցա զբարձրագոյն պաշտպանութիւն ցորչափ այդր կան, մինչեւ հաճեսցի տէրութիւն Ձեր տալ նոցա հրաման դառնալոյ։ Խաղաղութիւնն և շնորհք Տեառն Աստուծոյ մերոյ եղիցի ընդ Ձեզ. ամէն։

Տուաւ յԱռաքելական Աթոռս Ս. Յակովբայ, յԵրուսաղէմ, յ30 մարտի 1867 ամի փրկչին մերոյ։

Ահաւասիկ խնդրագրոյն օրինակը ։

ԵՍԱՅԻ՝ ծառայ Յիսուսի Քրիստոսի, և շնորհօքն Աստուծոյ Արքեպիսկոպոս և Պատրիարք Հայոց Երուսաղէմի և վերատեսուչ սուրբ Տեղեաց, ընդ աստուածեղէն օրհնութեանց և շնորհաց սրբոյ Քաղաքիս մատուցանեմք և զառաքելական ողջոյն մեր ամենաբարեպաշտ Վեհափառութեան Ձերում Կայսերդ Եթովպիոյ ։ Աջն երկնաւորին և խնամք աստուածեղէն Նախախնամութեան եղիցին միշտ ի վերայ Անձին Վեհափառիդ և արքայազուն Գերդաստանիդ և ի վերայ ամենայն վիճակի կառավարելոյ ի հզօր պետութենէդ ։

Ճանաչեմք. Տէր Արքայ, զբարձր խոհականութիւն և զարդարասիրութիւնն, որ առանձին ձիրք են Վեհափառ Կայսերդ ։ Եւ առաւել սքանչանամք տեսանելով յօգոստափառ Անձին Ձերում զճշմարիտ տիպար Թագուհւոյն, զորոյ զգօնասանութիւնն է տեսանել ի սուրբ Գիրս, որ զակատեալն էր իմաստութեան արքային Սողոմոնի ։ Նոյն արիւնն է անշուշտ որ ընթանայ յերակս Ձեր, նոյն արդարասիրութիւնն է Սողոմոնի, որ ՚ի Ձեզ արծարծի, ձիրք Թանկագինք՝ փայլեալ յօգոստափառ Անձին Ձերում, որք խրախուսեցին զմեզ դնել յոտս բարձրագոյն Աթոռոյդ զամենախոնարհ հայցուածս մեր ։ Այլ ունիմք վստահութեամբ եթէ ամենողորմած Վեհափառութիւն Ձեր ընկալցի առ սէր Յիսուսի Քրիստոսի որ ետ մեզ զանձն իւր օրինակ խոնարհութեան և հեզութեան, և պատուիրեաց եւս այց առնել որոց կան ի տառապանս և զրկեալ են յազատութենէ իւրեանց, որ նախապատիւ է քան զամենայն ինչ աշխարհի ։

Նոյն զգացմունքն են ի մեզ՝ ուխտարանին, որ քաջալերեցին հայցել յամենողորմած Կայսերէդ շնորհս առնել Հիւպատոսին Անգղիոյ և ընկերաց նորին, և ներել ամենայն յանցանաց զորս գործեալ իցէ նոցա երբէք ։ Եթէ ընդունելի եղիցին հայցուածք մեր ի գթութենէ Ձերմէ, որպէս հաւատամք, անչափս շնոր-

հապարտ եղիցուք առաջի Ձեր, և աշխարհ ամենայն սքանչացի ընդ մեզ ընդ ներողամտութիւնն, զոր բարեհաճեսջիք շնորհել տարաբաղդից: Այսու մարդասիրական գործով բազմասցի աներկբայ թիւ աղօթաւորաց Ձերոց, որք խնդրեն զբարեբաստութիւն Թագաւորութեանդ և զպահպանութիւն անդին կենաց Օգոստափառ Անձին Ձերում: Խաղաղութիւնն և շնորհք տեառն Աստուծոյ մերոյ եղիցին միշտ ընդ Ձեզ. ամէն:

Տուաւ յԱռաքելական Աթոռս Ս. Յակովբայ, յԵրուսաղէմ, յ30 Մարտի 1867 ամի Կենարարին մերոյ:

Ապրիլ ամսոյ առաջին օրը՝ կէս օրէն ետքը մեկնեցանք սուրբ քաղաքէն, յանձնելով զմեզ միաբան սուրբ Հարց և Եղբարց աղօթիցը: Ուղեկից էր մեզ նաև Գեր. Խաչակ եպիսկոպոսի մէկ սպասաւորը Կուրոպելէնկցի Եղէկիէլ պատանին:

Նոյն գիշերը ուշ ժամանակ հասանք ի Յոպպէ, և իջանք մեր վանքը սուրբ Նիկողայոսի. և հետևեալ օրը Աւստրիական Լոյտի ընկերութեան շոգենաւը ճամբու ելնելու վերայ ըլլալով, մտանք մէջը, և 29 ժամուն հասանք ուղղակի յԱղէքսանդրիա: Հոն Թալասցի մեծապատիւ Աշըքեան Յակոբ աղային մարդասէր խնամքները երկու օր վայելելէն յետոյ, և պէտք եղած ընծայացուները գնելով, նոյն ամսոյն 6 ին երկաթուղիով անցանք յԵգիպտոս և իջեվանեցանք Արապկերցի մեծապատիւ Պօղոս էֆէնտիին տունը, որ երկաթուղւոյ կայարանին մօտ է: Մեծ պատուով և հիւրասիրութեամբ ընդունեց մեզի յիշեալ բարեպաշտ էֆէնտին: Հետևեալ կիրակի օրը սուրբ պատարագէն զկնի Անգղիոյ Ընդհ. Հիւպատոսին կողմէն կոչուած ըլլալով, գնացինք այցելութիւն տալու Պօղոս էֆէնտիին հետ: Այն առթիւ մատուցինք իրեն Երուսաղէմի Նօէլ Թէմպըլ Մօր անգղիական հիւպատոսին Պօլսոյ Դեսպանէն եկած յանձնարարական գիրը, որու մէջ կը յայտնէր Դեսպանը մեր ով և ինչ նպատակի համար ուղևորելը. և սոյն ուղևորութեան հարկաւոր դիւրութեանց

և հոգատարութեան վրայ մտածելն ու անօրէնները անոր կը յանձնէր։

Ընդհ. Ժիւպատոս Աթանթօն հաղարապետը յարգութեամբ մեզ ընդունելով և մեր ուղեւորութեան վերայ խօսելով՝ Աղէկ կ՚ըլլայ, կ՚ըսէր, որ Եանինի վայօք երթաք Անգղիոյ պատերազմական նաւով, և ուղղակի Մուսավա հասնիք։ Գեր. Խաչակ եպիսկոպոսը իմացուց անոր որ՝ Թէոդորոս Թագաւորը խորամանկ մէկն ըլլալով, կրնայ լրտեսներ ունենալ այն կողմերը, և անգղիական նաւով երթալնիս լսելով՝ կրնայ մեր նըպատակին վնաս մը հասնիլ և մեր վրայօք կասկած տալ անոր։ Այս առարկութեան վերայ համոզուելով ընդհ. Ժիւպատոսը, միանգամայն և իմանալով Խալաւոյ կողմէ մեր ունեցած կասկածները, վերջապէս մեր որոշման Թողուց Սեվագինի վրայօք երթալու իբրև ծըպտեալ, Թէպէտ և ինքը աւելի Մուսավայի ճամբայով երթալնիս կը ցանկար չեմք գիտեր ինչ Թագուն նպատակաւ, զոր չէր ուզեր յայտնել մեզ։ Չորս օր պարապ տեղ սպասեցինք Եգիպտոսի մէջ շոգենաւուց պատճառաւ՝ Ժիւպատոսին մեզ խօսք տուած մէկ անօրէնութեան համար, յետոյ ստիպուեցանք իմացընել իրեն Թէ՝ մեր Արքազան Պատրիարքին հրամանն է որ մը յառաջ մեր ուղղեալ նպատակին հասնիլ. վասն որոյ Ժիւպատոսաց տրուելիք յանձնարարական Թղթերը խնդրելով և ընդունելով իրմէ, Ապրիլ 11 ին Աւագ երեքշաբԹի օր առաւօտուն մտանք շոգեկառք ու երեկոյին մօտ հասանք Սուէզ։

Գաղղիական Պանդոկի մը մէջ մեծկակ սենեակ մը վարձեցինք օրը կէս լուիձի ոսկիով. և հետեւեալ առաւօտ ժամադրեալ պահուն ներկայացանք Անգղիոյ հիւպատոս պարոն Ճօրձ Վէստին և իւր անուան ուղղեալ յանձնարարական գիրը մատուցինք։ Մեծ պատւով զմեզ ընդունելով և մեզի հարկաւոր եղած անօրէնութիւնները կատարելու պատրաստ ըլլալը յայտնելով, անմիջապէս իւր ծառան շոգենաւուց գործակալին խրկեց տեղեկութիւն առնալու, և լուր բերաւ

մեզի թէ՝ շոգենաւը երեք օր է որ մեկնած է, և դեռ 12 օր կ'ուզէ հետագայ շոգենաւին ելնելուն ։ Այսչափ օր յապաղելը մեզի համար ժամանակի մեծ կորուստ ըլլալը գիտնալով, ես անձամբ գնացի գործակալին մօտ ճիշդ տեղեկութիւն մը առնալու ։ Պատասխանեց մեզի գործակալը թէ, «Թէպէտ և հոս Մէքքէի ուխտաւորաց համար պատրաստի երկու շոգենաւ կայ, բայց առանց Եգիպտոսի կառավարութեան հրամանին կարելի չէ ճամբայ հանել ։» Այս անյաջող լուրերը ինչպէս մեր՝ նոյնպէս և բարեսիրտ Հիւպատոսին սրտին ցաւ կ'ըլլային, որուն առաջարկեցինք՝ որ եթէ կարելի է Եգիպտոս ընդհ. Հիւպատոսին հեռագրութեամբ լուր տրուի, և խնդրուի իրմէ որ հրաման առնու Կառավարութենէն շոգենաւ մի դնելու մեր հրամանացներքեւ. վասն զի մեր հոս յապաղելնիս ոչ միայն մեր Սրբազան Պատրիարքին, այլ և Պոլսոյ Կ. սեմ. Դեսպանին կամաց դէմ է, որոնք մեր օր յառաջ Հապէշստան հասնելնիս կը ցանկան ։ Հիւպատոսը հաճեցաւ սոյն մտօք հեռագրել Եգիպտոս, ուրկից բացասական պատասխան եկաւ, իմացընելով ընդհ. Հիւպատոսին բացակայութիւնը և Շէրիֆ փաշային բանակի պատրաստութիւն տեսնելը ։ Ստիպուեցանք համբերել՝ գիտնալով որ սոյն յապաղումը չորս օր Կահիրէի մէջ պարապ տեղը մնալէն յառաջ եկաւ ։ Բայց այս ալ պէտք է խոստովանինք որ այս յապաղմանս մէջ Աստուծոյ գաղտնի տնօրէնութիւնը կար ։

Սուէզի մէջ հարիւրի չափ պանդուխտ Հայեր կային, որոնք ջրանցքին բացման համար աշխատելու եկած էին. առանցմէ 65 հոգին, որ Մշեցիք էին, Շալուֆ կը գտնուէին, որ Սուէզէն 4 ժամ հեռու է. որոնք սուրբ Զատկի օրերը առանց եկեղեցւոյ և խոստովանութեան, և սուրբ հաղորդութենէ զուրկ գտնուելով, Աստուծմէ կը խնդրէին կարգաւոր մը ։ Անոնց խեղճութիւնը և հոգեւոր մխիթարութիւններէ զուրկ ըլլալը տեսնելով՝ ետ կեցանք մեր խորհուրդէն զոր ունէինք Եգիպտոս դառնալու և հոն կատարելու Զատ-

կական տօնը։ Բայց այս անխնամ ժողովուրդը տեսնելնէս ետքը՝ մեր խղճին դէմ էր զանոնք թողուլ երթալ. վասն որոյ ստիպուեցանք հոն մնալ և զանոնք հոգեւորապէս մխիթարել։ Իսկ որովհետեւ եկեղեցի չը կայ հոն, Գաղղիոյ Հիւպատոսին տեսութեան գացած առեննիս յիշած էինք եկեղեցի չունենալնիս, և ժողովուրդը խոստովանեցընելու և հաղորդեցնելու համար որևէ տեղւոյ մը պէտք ունենալնիս։ Հիւպատոսը, որ աշխոյժ, բարեսիրտ և լուսաւորեալ երիտասարդ մ'էր, ըսաւ. «Իրաւի մեզի կ'ընկնայ մեր ջրանցքին գործոյն համար աշխատող ձեր ժողովուրդին Զատկական սուրբ խորհուրդը կատարելու համար տեղ մը պատրաստել։ Երթամ անգամ մը մեր կրօնաւորներուն և վանահօր.քով, առաջարկեմ անոնց ձեր պէտքը, և աշխատիմ տեղ մը պատրաստել տալու ձեզի համար. թէ որ անոնք չընդունին, իմ տունս պատրաստ է։» Գեր. Իսահակ եպիսկոպոսը թէպէտ և իրենց կրօնաւորաց մոլեռանդութեան ոգին լաւ ճանչնալով, իմացուց որ անկարելի է որ իր խնդիրքն ընդունին, բայց բարեսիրտ անձը իբր Հիւպատոս առաջարկելով ընդունելուն մեծ յոյս ունենալով, կ'երթայ անոնց մօտ. բայց իւր առաջարկութիւնը կը մերժուի։ Ցաւօք սրտի յայտնելով մեզի մեր արդէն գուշակածը, ըստ իւր խոստման իւր սենեակը մեզի յանձնեց. որ և պատիւ և փառք կը համարէր մեր Զատկական խորհուրդնիս հոն կատարելը։

Հետեւեալ առաւօտ, որ էր Աւագ շաբաթ օր, Շարլուֆ յատուկ մարդ խրկելով Նամակաւ հոն գտնուող բոլոր ժողովուրդը Սուէզ կանչել տուինք սրբազան Խորհրդոյն ներկայ գտնուելու համար։ Աւստի մեր սենեակը պատրաստեցինք և հոն Սուէզ պատրաստ գտնուող ժողովուրդը հրաւիրեցինք որ գան խոստովանին։ Շարլուֆ եղող գործաւորք լսելով և մեր գրած Նամակէն ալ իմանալով, անոնք որ կարողութիւն ունէին, չափազանց ուրախանալով անմիջապէս փութացին հետզհետէ Սուէզ գալու գիշերանց, վասն

որոյ մինչեւ գիշերը ժամը 6ին հազիւ լրացուցինք խոստովանեցրնելը ։

Առաւօտուն Հիւպատոսին մեզ համար պատրաստած ու զարդարած տունը երթալով, Զատկական խորհրդոյ ժամերգութիւնները ի ներկայութեան նորին կատարեցինք, և ճաշու Հաւատամքի աղօթքէն ետքը մեր քով պատրաստի եղած սրբազան Խորհրդոյն հաղորդեց Գեր. Իսահակ սրբազան հայրը բոլոր ժողովուրդը, և համառօտ առենախօսութենէ մը յետոյ օրհնեց զանոնք, և զպարոն Լիպուլ Հիւպատոսը, գովելով անոր բարեսրտութիւնը և ճշմարիտ քրիստոնէական սէրը, նոյնպէս անոր ազնիւ ընտանեացը համար բարեմաղթութիւններ ըրաւ ։

Ժողովուրդը արձակուելէն ետքը մեր խորին շնորհակալութիւնը և երախտագիտական զգացմունքը յայտնեցինք անոր ի դիմաց Ամեն. Սրբազան Պատրիարքին և ընդհանուր ազգին, և իւր լուսանկար կենդանագիրը խնդրելով սրբազան Պատրիարքին խրկեցինք և մեր յատուկ նամակովը ծանուցինք նորին Արժանապատուութեան առ մեզ ցոյց տուած համակրական սէրը ։

Նոյն Զատկի երեկոյին ես առանձին Շարլուֆ գընացի, ուր 30ի չափ Հայ՝ տկար ու աշխատութենէ յոգնած անձինք կային, որոնք չէին կարողացեր գալու, զանոնք ես խոստովանեցրնելով հաղորդեցի կենարար խորհրդոյն ։ Եւ յետոյ անմիջապէս բոլոր ժողովրդով գնացինք Լատինաց գերեզմանատունը, ուր չորս կտրիճ Հայք թաղուած կային առանց վերջին օրհնութեան և թաղման կարգի (1), որոնք թէպէտ և իրենց կենացը վերջին պահուն Լատին կարգաւորէն խնդրած են խոստովանիլ և հաղորդուիլ, բայց նա մերժած է քրիստոնէի մը վերջին պէտքն ու յաւիտենական թօշակը մատակարարելու ։

Շարլուֆի մէջ Խարբերդցի Հայ երիտասարդ մը պարտքի համար բանտարկուած ըլլալը լսելով, անմի-

(1) Լատինաց ձեռքը եղած յիշեալ գերեզմանատունը Գաղղիոյ Հիւպատոսին ձեռօք Եգիպտոսի կառավարութենէ խնդրած ու ծրի ընդունած են ջրանցքի համար աշխատող քրիստոնեայք՝ առանց խտրութեան կրօնի.

ջապէս պէտք եղած մարդոց քով դիմեցի, և խիստ մեծ դժուարութեամբ կարողացայ անոր ազատութիւնը ձեռք բերել։ Այս պարտաւորութիւնները առանց պարծանաց՝ ի գործ դնելով խեղճ ժողովրդոց մեծ ուրախութիւն և մխիթարութիւն կ'ըլլային. այլ պզտի պարագայ մը միայն անոնց սիրտը և խղճահարութիւնը թերեւս քիչ մը յուզեց, այն է իրենց բարեպաշտութեան նուէրները չընդունելնիս, զոր յօժարութեամբ կը մատուցանէին մեզ իբր ծախս և կամ վարձք իրենց համար մեր կրած աշխատութեանցը։

Յիշեալ գաղթականք խիստ կը ցաւէին Եգիպտոսէն իրենց հոգեւոր պետոյից համար կարգաւոր մը չը խըրկելնին, և կ'ուզէին որ իրենց բողոքը լրագիրներու միջոցաւ ազգին հաղորդեն, փութացինք մենք զիրենք համոզել ըսելով թէ, «Եգիպտոսի հոգեւոր տեսչութիւնը սուրբ Աթոռոյն իրաւասութեան տակն ըլլալով այդ պարտքը կատարելը անոր կը վերաբերի. ուստի ահա այսօր զձեզ մխիթարող և ձեր հոգեւոր պետոյքն հոգացողը սուրբ Աթոռն է. ուրեմն իրաւունք չունիք գանգատելու Եգիպտոսի մէջ գտնուող պանդուխտ կարգաւորները, որոնք վարձկան են և ոչ տէր։

Գաղղիոյ Հիւպատոսը ականատես ըլլալով մերազնեայ ժողովրդոց հոգեկան պետոյից կողմէ քաշած խեղճութեան, մեր վերջին տեսութեան մէջ ապահովցուց զմեզ ըսելով թէ, «Դիւրին է ձեզ այս տեղ ազգային եկեղեցի և յատուկ գերեզմանատուն մը ունենալ. բաւական է որ ձեր Սրբազան Պատրիարքը Եգիպտոսի կառավարութենէն խնդրէ։ Մանաւանդ, յաւելցուց նա, ունիք ձեզ ազգակից Նուպար փաշայն, որու ձեռօք ամեն ինչ հնարաւոր է ստանալ։ Անցեալները ուրիշ գերեզմանատան համար խնդիրք մը մատուցինք եգիպտական կառավարութեան, իսկոյն բաւականի չափ ձրի գետին մը տուաւ։» Հիւպատոսին առաջարկութիւնները մտերմական էին, ուստի գործադրութեան մասին բարեպատեհ առիթ մը պէտք է, պատասխանելով բաւականացանք։

Սուէզի մէջ որքան որ երկարեցաւ մեր յապաղումը, նոյնչափ ալ աւելցաւ մեր սրտի նեղութիւնը և անհանգստութիւնը օդին գէշութեան պատճառաւ. և ուրիշ շատ կողմերէ ևս անհանգիստ էինք. այլ և ապրուստի կողմէ կը նեղանայինք, ըստ որում խիստ թանկութիւն կը տիրէր, վասն որոյ կը ցանկայինք ժամ մը յառաջ անկէ մեկնելու: Բաղդը յաջողեց մեզ, անգղիական շոգենաւ մի պատահեցաւ, որ Հնդիկ վաճառականաց կը վերաբերէր, ու Տաճկաց ուխտաւոր բերած էր Ճիտտէ, և կրկին պիտի դառնար նոյն ուխտաւորները առնելու: Մտանք հոն աժան վարձքով, և երկու օր Սուէզի առջեւ կենալէն զկնի, հրեշտակի Տեառն առաջնորդութեանը ապաւինելով ելանք ճանապարհ Ապրիլ 28 ին՝ ուրբաթ առաւօտ, և հինգերորդ օրը յաջող նաւարկութեամբ հասանք Ճիտտէի նաւահանգիստը, և նոյն գիշերը նաւին մէջ մնացինք:

Ճիտտէի նաւահանգիստը Աղէքսանդրիոյ նաւահանգիստէն աւելի խիթալի ու վտանգաւոր է. վասն զի ջրին տակը ծածկուած քարացեալ պաղլեղէ ժայռեր կան, և անոնց մէջտեղէն միայն անցնելու ոլորուն նեղ ճամբայ մը ունի, ուրկէց անվնաս և ապահով անցնելու համար երկու տեղ դէմ առ դէմ ծովէն հինգ կանգուն բարձր բոլորակաձեւ քարեղէն աշտարակ մը շինուած է, իբրեւ նշան նաւապետաց: Այսու ամենայնիւ դարձեալ իւրաքանչիւր նաւ անցնելու ժամանակ Արապ առաջնորդ մը կ'ունենայ Կարմիր ծովու ջրերուն համար:

Առաւօտուն, որ էր Մայիս 3, քարանթինայի կողմէն շոգենաւուն ֆրաթիքան առնելու համար մէկն եկաւ: Անիկա էր Պօլսեցի Մանուէլեան ՅՄնծ. Ֆրանկիւլ Էֆէնտին, բժիշկ և անդամ տեղւոյն առողջապահութեան ժողովքին ի կողմանէ Բ. Դրան: Իւր ազգասիրութիւնը ու բարուց քաղցրութիւնը անմիջապէս գրաւեց մեր սիրտը. ու այնչափ քաղցր եկաւ մեզ անոր հոն ներկայութիւնը, ինչպէս որ քաղցր է Սահարայի անապատներուն մէջ քալող ճամբորդի մը ականա-

կնտ ազբիւրակը։ Ուստի փութացինք անմիջապէս դուրս ելանք շոգենաւէն ՍՆծ. Պ. անկիւղ էֆէնտիին հետ. ու բեռները մաքսատունը թողլով գնացինք Շէրիֆի (1) մեծ վէճէալէին հիւսիսակողմը վերի յարկէն սենեակ մը վարձեցինք տասը դահեկան օրականով։

---

## ԳԼՈՒԽ Բ.

*Մուսավայէն Հապէշստան երթալք ճանապարհին գոյ ըլլալը։ Ճիտտէի Անգղիոյ հիւպատոսը։ Սեւագինի Նեղուցը. քառանոյդարանը։ Բեդրագի Յոյն վաճառականը. Միւմդաս Պէյ։ Փոթորիկի քեսելաս խավաձա Բանանօթ։ Ուղտապանաց սակարկութիւնը և չէիւը։ Աթպարա գետէն անցնելնիս։ կատարիֆ. կալլապատ։ Յովսէփ և Ճրճիս։ Շէխ Ճիւմայի հետ տեսութիւնը։ կալլապատի Հապէշները. չէխին տարեկան տուրքը։ Հապէշստան մտնելնիս։*

Շէրիֆի մեծ վէճէալէին յարկին մէջ տեղաւորուելէն զկնի գնացինք Անգղիոյ Ալֆրէտ Սենտիսն հիւպատոսական տեղապահին քով, և իրեն ուղղուած յանձնարարական նամակը տեսութիւն ընելնէս ետքը մատուցինք իրեն։ Որովհետև տաճկերէն լեզուն լաւ գիտէր, սկսանք հետը նոյն լեզուով խօսիլ մեր ճամբորդութեանը վրայօք։ Հոն Ճիտտէ Հապէշ ճամբորդէ մը լսած էինք Մուսավայէն Հապէշստանի հողը մտնելով Թէոդորոս թագաւորին քով երթալու ճանապարհներուն գոյ ըլլալը ապստամբաց ձեռօք, և Սեւագինի երկիւղալի ճամբով կալլապատ երթալ և նոյն ճամբով թագաւորին քով հասնելնիս հարկ ըլլալը։ Այս լուրը Հիւպատոսին պատմելով, պատասխանեց մեզ թէ, «Այդ այդպէս է, հարկ է ուրեմն որ Սեւագինի կառավարչին ուղղեալ յանձնարարական ազդու հրամանագիր մը առնունք տեղւոյս բդեշխէն. և որովհետև անիկայ հիմա Մետինէ կը գտնուի, հազիւ թէ շաբաթէ մը կ'ընդունինք հրամանագիրը, և նոյն ընդունած օրերնիս ալ Սեւագին

(1) Մեքքեի շէրիֆին վախֆ խանն մի է։

երթալու շոգենաւը ճամբայ կ'ելնէ ասկէ ։ Խիստ լաւ
կ'ըլլար եւ մեծ ազդեցութիւն կ'ունենար, յաւելուց բա-
րեսիրտ եւ քաղցրաբարոյ Հիւպատոսը, թէ որ Եգիպտա-
կան կառավարութեան կողմէն Սեվագինի կառավարչին
ուղղեալ հրամանագիր մը առած ըլլայիք, վասն զի Սե-
վագին հիմայ Եգիպտոսի իշխանութեան անցած է ։
Բայց հոգ չէ, կրկնեց, յիշեալ քաղաքին կառավարիչը
մարդասէր ու քաղցրաբարոյ անձ մ'է, եւ իմ ալ բա-
րեկամս, ես ալ յանձնարարութիւն կ'ընեմ, որ թէ եւ
Ինգեշիսին տալիք հրամանագրին չափ օգուտ կ'ընէ,
բայց դարձեալ անոր գիրը օրէնք է որ հետեւինք ու-
նենաք ։ Հիւպատոսին մեր երթալիք ճամբուն հանգս-
տութեանը եւ ապահովութեանը համար ցոյց տուած
ջանքերուն, որոնց՝ իբրեւ իւր պաշտօնական գործքե-
րուն վրայ կը մտածէր, մեր խորին շնորհակալութիւնը
յայտնելով բաժնուեցանք իրմէ ։

Հետեւեալ առաւօտուն իր առաջին Թարգման Հո-
լանտեան պարոն Բօլը(1) խրկած էր որ իմացընէ մեզ Ին-
գեշիսէն խնդրուելիք հրամանագրին համար թուղթ
գրուիլը, որ եւ ութ օրէն յետոյ ստացանք ։ Նոյնպէս
առանձին գրեր ինչպէս որ խոստացած էր Հիւպատոսը,
ընդունեցինք թէ՛ իրմէն եւ թէ Ինգեշիսին տեղապահէն
որ Ճիտտէ կը նստի ։

Տասներկու օր մնացինք Ճիտտէի մէջ մինչեւ շոգե-
նաւուն գալը, եւ երեքտասներորդ օրը մեր ճամ-
բորդութեան վրայօք նամակ գրելով Երուսաղէմ ա-
սրբազան Պատրիարքին, ճամբայ ելանք Սեվագին եր-
թալու՝ ապաւինելով Աստուծոյ օգնութեանը ։ Բայց
եւ եօթ ժամուն մտանք Սեվագինի նեղուցին մէջ, ո-
րուն դժուարութիւնն ու վտանգաւորութիւնը Ճիտ-
տէի նաւահանգստէն պակաս չէր ։ Որուն անցք մըն էր
այս ալ, ու խիստ նեղ, ուր սովորաբար Արապ մը կ'ա-
ռաջնորդէր ։ Երկու տեղ քարաշէն նշաններ ունէր շո-
գենաւերուն ապահովութեանը համար շինուած ։

(1) Յիշեալ Թարգմանը Հոլանտացւոյն հայազգի է ։

Նոյն երեկոյին շոգենաւին մէջ մնացինք պատրաստ տեղ չըլլալուն համար քառասնօրեայ զգուշութեան հինգ օրը հանելու. և հետեւեալ օրը մեզնէ առաջ Օսմ-պուլէն եկող շոգենաւին ճամբորդները Թօփխանէին լրա-ցընելով դուրս ելան, և մենք անոնց տեղը փոխադրուե-ցանք վրաններու տակ: Այս քառասնօրեայ զգուշու-թիւնները Եգիպտէն եկող ուղեւորաց համար սահ-մանուած են բոլոր Եւրոպական տէրութեանց և Բ. Դրան հրամանովը, որպէս զի խօլերայի մահաբեր ախտը, որ 1865 ին աշխարհիս մեծ մասը տարածուեցաւ, և որուն սկիզբ և պատճառ համարուած է Մէքքէի ուխտաւորութիւնը, այսուհետեւ ալ չըլլայ: Գոհութիւն Աստուծոյ այս սարսափելի ախտէն ազատ ըլլալով՝ երկիրը, այն սաս-տիկ տօթերուն ժամանակ խաղաղութեամբ ու հան-գստութեամբ անցուցինք զգուշութեան հինգ օրերը. բայց մեր հետն եղող Սեւերուն մէջ ծաղկի հիւան-դութիւն պատահելուն՝ որքան որ մէկ օր աւելի մնա-լու հարկ եղաւ, սակայն 'ի պատիւ երեսաց մերոց հը-րաման եղաւ մեզ Թօփխանէին տեսուչէն՝ որ հին-գերորդ աւուր երեկոյին դուրս ելնենք: Բեզըրպէի ա-նուն ազգաւ Յոյն բարեսէր վաճառականը Եգիպտէի հիւպատոսէն յանձնարարական գիրը ընդունած ըլլա-լով, մեծ հիւրասիրութեամբ առաւ զմեզ իւր տունը տարաւ, և իւր քաղցր ընդունելութեամբը արդարեւ շնորհապարտ ըրաւ զմեզ:

Հետեւեալ առաւօտուն գնացինք տեղւոյն կառա-վարչին Միւտիրա պէյին քով և մատուցինք իրեն յանձ-նարարական գրերը: Քաղցրերես և մարդասէր և քը-րիստոնէից հետ մեծ յարգանօք ու սիրով վարուող մէ-կըն ըլլալը վկայեցին մեզի տեղւոյն գտնուած քրիստո-նեայք, ուստի համար մենք ալ փորձով նոյնը կը վկայենք և կը հաստատենք որ Օսմանեան տէրութեան պատիւ և պարծանք եղող՝ այսպիսի անձինքն են, որոնք անոր ժողովրդասէր և արդարասէր կառավարութիւնը կը ներկայացընեն մինչեւ տէրութեան խիստ հեռաւոր ծայրերը:

Տեսութիւն ընելնէս անմիջապէս ետքը կանչել տը-ուաւ մեր երթալիք ճանապարհին չէիր, որուն զմեզ յանձնեց, և մեր անձանց ապահովութեանը երաշխաւոր ըլլալէն յետոյ՝ Բեսելա տանելու համար պէտք եղած ուղտերը պատրաստելու հոգը կը մնար։

Բարանթինին տեղը խիստ փոքրիկ ու պատուական կղզեակ մըն է, որուն բոլորտիքը գետաձեւ կը շրջապատէ ծովին ջուրը. աջ կողմը Սեվագին գիւղաքաղաքը կ'ընկնի, ուր կը նստի Մուտիւրը. այն ալ սոյնպէս փոքրիկ կղզի մըն է. ջուրը աղեհամ ըլլալով խմելու համար 3 ժամ հեռու տեղաց մը տիկերով կը բերեն բարեհամ ջուր. օդն ալ շատ աղէկ չէ։ Նոկէ փոքրիկ նաւակաւ կողմնակի երթալով ցամաք երկիրը կ'ելլուի, ուսկից է դէպ ի Հապէշստան երթալիք ճանապարհը։

Սեվագինի նաւահանգիստը բաւական բանուկ է վաճառականութեան կողմէ. ուր կ'իջնայ Արաբիոյ խէժը, որու ծառերէն խիստ շատ կան Կատարիֆ գիւղաքաղքին մօտ. նաեւ Տօֆ ըսուած պտուղը, որուն կուտը համրիչ կը շինեն, և ասոր ծառերը կը գտնուին Բեսելայի ճամբան, և կերակուր կ'ըլլան թէ՛ ուղտապաններուն և թէ ուղտերուն։

Չորս օրէն հազիւ պատրաստուեցան ուղտերը, երեք հատ մեզ համար հեծանելիք, և չորս հատ բեռներու։ Պէտք եղած գրութիւնները հոգացուելէն զկնի անցանք նաւակով դէպ ի ցամաքը։ Բեսելայի Մէ-ֆէ-րէն տրուելիք յանձնարարական նամակը առնելով յատուկ ղողմինէի առաջնորդութեամբ Մայիս 25 ին սուրբ Համբարձման առաւօտուն ճամբայ ելանք դէպ ի Բեսելա։ Այս քաղաքը երթալու համար հինգ ճանապարհ ունի. առաջնորդնիս մեզ Արտը–լէնկէպ ըսուած ճանապարհէն տարաւ, ուր թէպէտ և խմելու ջուրը նուազ է, ըսաւ, բայց ուղտերու մասին հանգիստ ըլլալով, օրը քանի մը մղոն աւելի կրնանք ճանապարհ առնել։ Այս ճանապարհին երկու կողմէն բրգաձև լերանց գօտիներու շարքով պատած են, աջ կողմինը Շանդարա, ձախ կողմինը Շապա կը կոչուին արաբերէն լեզուով։ Բաւական

ճանապարհ քալելէն զկնի, կէս օրուան սաստիկ տօթե-
րուն ժամանակ բարձր լերան մը ներքեւ անցուցինք։
Օդը պարզ էր և արեւուն տաքութիւնը քիչ մը մեղ-
մանալուն ելանք ճանապարհ։ Յանկարծ փոթորիկ մըն
է փրթաւ. ամպերը գետնին բարակ աւազներովն ու
փոշիով ծածկուեցան, և օդը մթագնեցաւ. կայծակնե-
րը երկաթագործին սալին վրայէն արձակուած կայծե-
րուն պէս չորս կողմերնիս կը թափէին. խոշոր անձրեւ
մը սկսաւ տեղալ. կարծես թէ երկինքն ու երկիր ու
տարերք իրարու հետ կը կռուէին։ Բնութեան այս
ահագին ու սարսափելի խռովութեան երեսէն անհնա-
րին եղաւ մեզ ուղտերուն վրայ մնալ ու զանոնք քալե-
ցընել, որոնք ձախ կողմէն փչած բուռն քամիէն ու
փոթորկէն երեսէն քիչ մնաց որ շրջէին։ Վասն որոյ ըս-
տիպուեցանք վար իջնալ, ու ջրերուն և յորդեալ գետե-
րուն մէջէն ուղտերուն ներքեւէն հետիոտն քալելու
հազիւ թէ կը կարողանայինք, և կը ջանայինք շուտով
բլուրի մը վրայ հասնելու՝ բռնի քալեցընելով ուղտերը,
և Աստուծոյ օգնութիւնը կը խնդրէինք բնութեան ըս-
պառնալիքներէն մեզի ազատելու։ Վասն զի ճամբուն
վրայ տեղ տեղ գերեզմաններ ցոյց տուին մեզի խեղճ
ճամբորդներու, որ այս կերպ փորձանքներու հանդիպե-
լով մահուան մատնուած են։ Այսպէս ուրեմն մէկ ժա-
մու մօտ քալելէն զկնի՝ անցան հեռացան փոթորիկները
ու կայծակները, և անձրեւը դադարեցաւ, և մենք հա-
սանք բարձր տեղ մը. փառք ու գոհութիւն մատուցինք
մեզի ազատող ու պահպանող Տիրոջն՝ ըսելով Դաւթի
հետ. «Անցաք մեք ընդ հուր և ընդ ջուր, և հաներ
զմեզ ի հանգիստ։» Իջեվանած տեղերնուս գետինը
բոլորովին չոր էր, և արեւը իւր ջերմ ճառագայթները
տարածեր էր. ուր տեղ փռեցինք մենք ալ մեր վրայի
հանդերձները չորնալու համար, և հարկադրեցանք հե-
տեւեալ օրն ալ հոն մնալու, որպէս զի մեր շորեղէննե-
րը ցամքեցընենք, վասն զի անձրեւը բոլոր զգեստներս
անցնելէն ետքը՝ մարմիննուս վրայէն կը սահէր վար
կ'իջնար։ Տասնեչորս աւուր մէջ ողջութեամբ հասանք

Պէսնէլա գիւղաքաղաքը, որը 10 կամ 12 ժամ ճամբայ քալելով և կէս օրին հանգիստ առնելով, և եթէ Սթմուր լուռ ընդարձակ դաշտին մէջ երեք անգամ ճամբէն չմոլորուէինք, տասնևմէկ օրին պիտի հասնէինք Պէսնէլա, որ աւելորդաբար քան աւուր ճանապարհ է, վասն որոյ մեր շուտ հասնելնուս թէ կառավարիչն և թէ բոլոր բնակիչք զարմացան.

Սեվավերինէն մէկ օրուան ճանապարհ քալելէն զկնի կրակսին տեսակ մը փշալից տունկեր. ասոնք որքան որ ճամբորդներուն քիչ մը նեղութիւն կուտան, այսու ամենայնիւ կարծես թէ վերին Նախախնամութիւնը խորհրդով ստեղծած է զանոնք, որոնց հովանիին տակ վրանաձեւ հովանոցներու նման՝ ճամբորդները հանգիստ կ՚առնուն:

Սթմուր դաշտն ալ անանկ արգաւանդ և արդասաւոր հող մը ունի, որ Եգիպտոսի երկրին բարեբերութեանը կը հաւասարի և կը գերազանցէ ալ. բայց անոր այնպէս անգործ և անմշակ մնալը շատ ցաւ էր եղած Սեվավերինի կառավարչին, որ մինչև անգամ երկաթուղի մը շինել տալու մեծ խորհուրդը մտքէն կ՚անցընէր. արդէն հեռագրական գիծ հաստատուած էր մինչև Պէսնէլա, բայց տեղւոյն ապստամբ Սեւերը Պէսնէլա գտնուած եգիպտական զօրաց հետ միանալով կտրտած էին թելերը, ու քաղաքն ալ կողոպտած էին երկու ամիս յառաջ. ուստի բանակ մը զօրք կը խրկուի հոն ապստամբութիւնը զսպելու և անոր պարագլուխները ձեռք ձգելու: Երբեմն կ՚ըլլայ որ ապստամբ Հապէշներ ալ կը յարձակին այս երկիրը աւրելու և կողոպտելու համար:

Պէսնէլայի մէջ հաւաճա Բանանօթիի տունը իջանք, որ 26 օր յառաջ վախճանած էր, որուն հայրն ու եղբայրը սիրով ընդունեցին մեզի հաւաճա Բեդրաքիին յանձնարարական գրութեամբ: Նոյն օրը ներկայացանք տեղւոյն կառավարչին, և իրեն ուղղեալ յանձնարարութեան նամակը մատուցինք. քաղցրութեամբ հիւրասիրեց մեզի, և խօսք տուաւ մինչև Կատարիֆ

հանգիստ կերպիւ հասցընելու . ուստի մեր երթալիք ճամբուն չէինք կանչել տալով ինչ որ պէտք էր մեզ համար՝ խօսուեցաւ ։ Քանի մը օր քշեց ուղտապանաց հետ վարձքերուն սակարկութիւնը մինչեւ յարմարեցնելու, վասըն զի մէկը կ'երթար՝ ուրիշը կուգար ։ Ճամբուն չէխը, որ պատասխանատու է ճամբորդաց անվտանգ իրենց տեղը հասցընելուն, իբրեւ երաշխաւորութեան գին ամեն մէկ ուղտի գլուխ տասնեւհինգական դահեկան կանխիկ կ'ընդունի ճամբորդներէն, եւ բոլոր բեռները գրի առնելով կը կնքէ ապահովութեան համար ։ Այն օրինակ գիր մըն ալ մենք իրեն տուինք, որու համեմատ եթէ կորուստ մը կամ վնաս մը պատահի, պարտաւոր է ինքը տուժելու ։

Այս ուղտապանները, ինչպէս եւ նոյն կողմի բոլոր գիւղացիք, առանձին լեզու մը ունին որ Պետուիններուն լեզուին մօտ է ։ Բնաւորութիւննին է իրենց գործը երկարաձգել. երկար բարակ խօսիլը կը սիրեն, անոր համար վարձքի սակարկութիւնը մինչեւ երեկոյ քշեց ․ այսպէս եղաւ նաեւ Սեվադինէն մեկնելու ժամանակնիս։

Նոյն երեկոյին Յունիս 11, ժամը 12ին ճամբայ ելանք Բեսելայէն երկու անկանոն զօրաց առաջնորդութեամբ. եւ գիշերը ժամը մէկուկէսին Խալթմիէ ըսուած գիւղը իջանք ։ Այն գիշերը հոն մնալով, հետեւեալ օրը կէս օրէն ետեւ մեկնեցանք, եւ երկու ժամ քալելէն զկնի իջանք Կառավարչին որոշած տեղը, ուր տեղ կային անկանոն զօրքեր ։ Այս տեղէս կըսկսի չէխին երաշխաւորութիւնը, ըստ որում ճանապարհները վտանգաւոր են մինչեւ Կատարիֆ ։ Հետեւեալ առաւօտ նոյն տեղւոյն պահապան զօրքերը եւ չէխերուն կողմէն եկող ձիաւոր Արաբները մեզի հետ գալու պատրաստուեցան, եւ ժամ ու կէս ճանապարհ թանձր ու խիտ անտառներու մէջէ անվտանգ անցնելու համար մեզի ընկերացան ։

Երրորդ օրը Աթպարա ըսուած յորդահոս գետին եզերքը հասանք, որ Նեղոսին մէկ ճիւղն է, որու համար Հաբէշստանի Թեկրի երկրին Թէքկէզի կոչուած

գետէն կը հոսի կ'ըսեն, ոմանք ալ Խարթումի (1) երկրէն կը կարծեն. և հաւանական է որ թէ Թէքկէզի գետէն և թէ Խարթումէն եկած հոսանքներէն խառնուրդ մը եղած ըլլայ. իսկ մեր հոն հասած ժամանակի յորդութիւնը աւելի Խարթումի կողմերը եկած անձրեւներէն էր: Ուղտապանք փորձ մը ըրին դիմացի եզերքը անցնելու, բայց չյաջողեցան, ըստ որում ուղտերուն բարձրութեանը կը հաւասարէր ջուրը և լայնութիւնը քարընկէց մը կար: Եւ որովհետեւ սաստիկ անձրեւներուն ժամանակը չէր տակաւին, վասն որոյ ատեն ատեն կը բարձրանար ու կը նուազէր ջուրը, և մեր հասած ժամանակը դէպ ի նուազիլ սկսած ըլլալով, հարկ եղաւ այն օրը սպասել. Թէպէտեւ ուրիշ ճանապարհ ունէր, բայց հինգ օր եւս կը զարնէր մեր ուղեւորութիւնը: Հետեւեալ օրը դարձեալ փորձ մը ըրին, բայց անօգուտ. գետեզերքով չորս ժամ դէպ յառաջ գնացինք, և գիւղի մը հանդիպելով հոն իջանք: Գիւղացիք իրենց վարժուած ուղտին մէկը փորձի համար գետին մէջ մըտցուցին, որուն քամակին ծայրը հազիւ կը տեսնուէր. այն փորձն ալ չյաջողեց, ուստի այն օրն ալ հոն սպասեցինք: Առաւօտ կանուխ փորձը կրկնուեցաւ և առաջի օրուան հետ հաւասար էր, բայց հետզհետէ բարձրանալուն կասկած ըլլալով, առաւօտուն աճապարեցինք որ և իցէ կերպիւ միւս երեսն անցնիլ Աստուծոյ ապաւինելով: Վարժուած ուղտերը մէկալ ուղտերուն առաջը կապելով հեծցուցին մեզի անոնց վրայ. և նոյն գիւղացիք և լողագէտ ուղտապանները ուռեցած տիկերը կուրծքերնուն կապած՝ ուղտերուն չորս կողմերը պատելով մտանք գետին մէջ դէպ ի հոսանքն ի վար շեղ երթալով: Աստուծոյ պահպանող զօրութեամբը և մեր սրբազան Հարց աղօթից օժանդակութեամբը խաղաղութեամբ ու անվնաս միւս կողմը անցանք առանց զգալու մեր առաջին եղած մահաբեր վտանգները, և մեր սրտերը ուրախութեան զգացմամբք զեղեալ պագ-

(1) Խարթումի գաւառը զատ կուսակալութիւն է Եգիպտոսի իշխանութեան տակ:

նուեցանք մեր ուղեկից ընկերաց հետ, ըսելով՝ այսօր մեռանք ու կենդանացանք, գոհութիւն ազատողին Աստուծոյ։

Այն օրը հոն հանգիստ առինք, և երեկոյեան դէմ երկու ժամ գնալով և բացօթեայ տեղ մը իջնելով՝ հոն քնացանք։ Ու երկու օրէն ետքը գիշերուան ժամը մէկին հազիւ հասանք Կատարիֆ գիւղաքաղաքը տաստիկ անձրեւով և փոթորիկներով. և իջանք հավաճա Բանաեօթի եղբօրը տունը, որոնց բարեկամութիւնը արդէն ստացած էինք Քեսելայի մէջ։ Այս քաղաքէն մինչեւ Կատարիֆ թէպէտ և հինգ աւուր ճանապարհ է, բայց մենք գետին յորդութեան պատճառաւ ութ աւուր մէջ հասանք։

Հետեւեալ օրը գնացինք գիւղին Միւտիրին քով, որ Սաղ—Գօլ աղասի է, և իրեն ուղղեալ գրութիւնները տուինք, և իրմէ ուրիշ յանձնարարական թուղթ առնելով՝ հետեւեալ օրը Ասար ըսուած գիւղը Ալի—Քէշիֆ պայրախտարին գացինք երեք ժամու մէջ տաճիկ (հեծին) ուղտերով և երկու կանոնաւոր զօրքով։ Որովհետեւ Ասար գիւղը Խարթումի կուսակալութեան կը վերաբերի, նոյնպէս և մեր երթալիք Կալլապատ գիւղաքաղաքը նոյն կուսակալութեան տակ ըլլալով, հարկ էր որ Ասար գիւղի Ալի—Քէշիֆէն յանձնարարական հրամանագիր առնունք, անոր համար հարկադրեցանք ճամբէն խոտորելով հոն երթալ և կրկին վերադառնալ Կատարիֆ, ուրիշ երկու անկանոն զօրքով և ազդու հրամանագիրներով։

Յունիս 23ին ճամբայ ելանք Կատարիֆէն, և գիշերը երեք ժամու մէջ հասանք Վադի գիւղը, որուն օդը Ասար գիւղի օդին կը հաւասարէր իւր լաւութեամբը, և գրեթէ Կատարիֆէն սկսած կը փոխուէր օդերը, և Հապէշու ձմերնային եղանակները կը փոխանակէին տեղ տեղ անձրեւներով, որոնք սովորաբար կէս օրէն քիչ մը ետքը կըսկսին և հասարակօրէն մինչեւ երեկոյ կը տեւեն։ Վադի գիւղէն մինչեւ Կալլապատ՝ որ Հապէշերէն Մէդէմմա կը կոչուի, չորս օրին հասանք, հան-

գիտ առնելով ճանապարհին Ոլոր–Աղաղ, Ակի, Մէտակ, Ճա՛աֆըր և Խոր–Եա՛ալխ գիւղերը: Այն վերջին գիւղին ժողովուրդը ըստ մեծի մասին Թագրուրի ըսուած սեւագոյն ցեղէն են.

Կալըպատ, ինչպէս ըսինք, սահմանագլուխ է Եգիպտոսի և Հալէպստանի երկրին: Եւ քաղաքին իշխանութիւնը Թագրուրի ցեղէն շէխերու ձեռք է, որոնք որդւոց որդի կը նստին երկու կառավարութեանց կողմէն: Հոն հասնելնուս Հալէպ Յովսէփ ու Խոպոտ Ճիրճիս անուն վաճառականաց տունը իջանք, որոնց համար յանձնարարութիւն ունէինք. և նոյն օրը Շէխը, որ Ճիւմա կը կոչուի, հարբեալ ըլլալով, ինչպէս բոլոր Թագրուրիներուն հասարակ մոլութիւնն է, չը կրցինք իրեն ներկայանալ. բայց իր դրան երեւելիները փութացին մեր տեսութեան գալու: Առաւօտուն կանուխ Շէխին կողմէն լուր գալով գնացինք քովը, և իրենց սովորութեան համեմատ իրարու ուս համբուրելէն զկնի, ձեռք ձեռքի բռնած ժամանակ՝ կը խոնարհի Շէխը ու Իսահակ սրբազան Հօր աջը կը համբուրէ (1): Եւ այնպէս ձեռք ձեռքէ չքաժնած՝ երեք անգամ կը կրկնեն՝ Շէտիմ, չէտիմ, չէտիմ. Զէյմք, զէյմք, զէյմք և այլն, որ կը նշանակեն՝ առո՞ղջ ես, ի՞նչպէս ես. և ուրիշ ասոնց նման երեք անգամ կրկնելով ողջութիւն հարցընելու կերպեր ունին: Այս օրինակ կրկնաբանութեամբ հարցումներ Հալէպներն ալ ունին, գուցէ Արաբացւոցմէ սորված ըլլան: Յետ այնորիկ յանձնարարական հրամանագիրը կարդալ տալով՝ իմացու մեր ճանապարհորդութեան նպատակը: Բազմութիւն մարդկան հետզհետէ հաւաքեցան հոն իւր քովը, և ամենքն ալ խօսքի մտնելով՝ ճանապարհներու վրայօք խօսակցութիւն մը սկսուեցաւ. մէկը մէկ կերպ և միւսը

(1) Իրենց սովորութիւնն է՝ երկու հասակակից և պատուակից բարեկամներ իրարու պատահած ժամանակնին, ձեռք ձեռքի տալով իրարու աջ կը համբուրեն. իսկ թէոր մէկը հասակաւ կամ պատուով քան զմեկալը ստոր է, ստորը մեծին ձեռքը կը պագնէ, և մեծն ալ պզտիկին ողջութիւնը կը հարցնէ.

ուրիշ կերպ դատումներ կ՚ընէր. և Շէխ Ճիւմա ա-
նոնց խօսքերուն կամ խրատունք ու հաւանութիւն ցոյց
կուտար, և կամ ինքն ալ իր առանձին խորհուրդը ու-
դատումը կը յայտնէր։ Նորը իր փոխանորդը, որ ա-
րաբերէն և հաբեշերէն գիտէր, և տարին անգամ մը
Հաբէշոյ Թագաւորին մօտ երթալովը քիչ շատ ծանօ-
թացած էր անոնց բնաւորութեանը, դարձաւ բա-
մեզի թէ, "Թէոդորոս Թագաւորը հիմայ ներքին պա-
տերազմ ունի, և ձեր գնալիք Ճանապարհին վրայ ե-
ղող բոլոր բնակիչները միացած անոր դէմ կռուի ելած
են, այս պատճառաւ Ճամբաները գոցուած են, անկէ
ի զատ ապստամբ գողերու երկիւղ ալ կայ, ուստի չենք
ուզեր մենք որ ձեզի վնաս մը գայ։ Թէ որ կ՚ուզէք.
մեր սահմանին մօտ գտնուող Հաբէշ իշխաններուն
մարդ խրկենք հասկընանք, եթէ բաց ու անվտանգ
Ճամբայ մը կայ, իրենց քով ուղարկենք ձեզի ապահով
հանելու. Թագաւորին ալ Կէլլի-Թափօր ըսելով քիչ մը
անոր ալ կը մօտենանք, և իշխանները շուտով լուր կու-
տան անոր ձեր հասնիլը, և կամ դուք ուղղակի անոր
գիր կ՚ուղարկէք։ Նաեւ այս տեղէս օդը ծանր ըլլալով
անձրեւներուն ժամանակ այն տեղուանքը հանգիստ
կ՚անցընէք։ Իսկ թէ որ Ճամբաները գոց ըլլան, մեր
քովը երկու ամիս չափ իբրեւ հիւր կը մնաք, երբոր
մեր մեծը տարեկան տուրքը վճարելու համար Թէո-
դորոսի քով անձամբ գացած ժամանակ ձեզի ալ հետը
կը տանի ու անոր կը ներկայացընէ։ Ուստի հիմակու
հիմայ հարկ կ՚ըլլայ ձեզի շաբաթ մը սպասել մինչեւ որ
ղրկած իշխաններէս հաստատ պատասխան մը գայ։"
Փոխանորդին այս առաջարկութեանց մեր հաճութիւ-
նը տալով, ըստ որում ուրիշ կերպ չէինք կրնար բան
մը ըսել, դարձանք մեր ասպնջականներուն քով։

Յուլիս և Օգոստոս ամիսներուն մէջ անձրեւնե-
րուն խիստ սաստկացած եղանակներն ըլլալով, Կալլա-
պատ գտնուող բոլոր վաճառականները կը հեռանան
անկէ, ոմանք Կասարիֆ և ոմանք Նասր երթալու, և այն
եղանակները հոն կ՚անցընեն. ուստի Յովսէփ և Ճըրճիս

# ԳԼՈՒԽ Գ.

*Ոհնիէն ելնելնէս յետոյ պատահած վտանգները։ Ճիրանա և Գասպար—Մարեամ հասնելնիս։ Ըսար—Ամզայի իշխանէն հրաւիրակ գալը։ Հացի նեղութիւնը։ Հրաշքը։ Գիթանիա—Ելեօսա գիւղը։ Վտանգաւոր գետէ անցնելու ժամանակ խղդուելէ ազատելնիս։ Վոլոսկէ գիւղը։ Հոն քաշած նեղութիւննիս Եզեկիէլի հիւանդութիւնն ու մահը։ Ավխտա գիւղը և անկէ Ըսար—Ամզա հասնելնիս։ Հոն եղած ընդունելութիւնը։ Իշխանին տեսութիւնը։ Երկու Նազարէթցիքը։*

ԱՆՁՐԵՒԱՑԻՆ եղանակներ ըլլալով գրեթէ ամեն օր գիշերի կէս աւուր կը հարկադրէինք հանդիպած տեղերնիս ուր որ ալ ըլլար՝ իջեւանելու։ Այսպէսով երեք օրէն հասանք՝ Կանտովայ մեծ գետին մօտ, ուրկէց անցնիլը անկարելի է կ՚ըսէին Կալապատի մարդիկ. բայց նոյն տարին անձրեւները քիչ մը թեթեւ և ետ մնացած ըլլալով ջուրը նուազ էր, այսինքն՝ ուղտերուն ծնկերէն վեր հազիւ թէ կը հասնէր, ուստի աներկիւղ անցանք։ Հետեւեալ օրը հասանք Ոհնիի գեղանքը, զորոնք երեք ամիս յառաջ Թէոդորոսէն ապստամբեալ Թըրսօ—Կովազիի զօրքերը յանկարծ գալով կողոպտեր ու այրեր էին, և եղեգնեայ խրճիթները անմարդաբնակ կը մնային։ Կալապատի մեր հետն եղող զօրքերը հետագայ օրը արքունի ճանապարհաւ երթալու կը վախնային, նախ՝ ուղտերուն ջուր մը չգալու. երկրորդ՝ գող ապստամբներուն պատահելով մեր գլխուն վտանգ մը չհասնելու համար. ուստի անկէց սկսեալ հարկ եղաւ ուրիշ գողունի ճանապարհով Գասպար—Մարեամի Շէխին տանիլ հասցընելու մեզի, և ասոր ձեռօք ալ Ըսար—Ամզայի իշխանին քով հասնելու, այն պայմանաւ որ՝ եթէ Գասպար—Մարեամի Շէխն ալ ճանապարհներուն վրայ վստահելով ընդունելու ըլլայ։

Ելանք Ոհնիէն, և ինկանք անտառախիտ ու անկոխ լեռներու ու ձորերու մէջ, զորոնք կարծես թէ մահը իւր սոսկալի ստուերովը ծածկեր էր։ Անտառային ու ծառախիտ տեղէ մը անցնելու ժամանակնիս, թէպէտ

և մեծ զգուշութիւնը ձեռքէ չէինք թողուցած, երբ մէյ մը այս դին՝ մէյ մը անդին ուղտերուն վրայ ծռուելով կ'երթայինք, յանկարծ դիմացս ծառի հաստ ճիւղ մը կամ թեւը հորիզոնաբար երկնցած դիմացս ելաւ. ուղտին գլուխը դարձնելու և ոչ իսկ մտածելու միջոց կար, ուշս կորուսի յանկարծ ճիչ մը ձգելով. ծառին ճիւղն է կարծես վեր բարձրացաւ գլխէս, անցայ տակէն ու մեծ զարմանքով տեսայ որ ուղտը վտանգը զգալով՝ չոքեր անցեր էր տակէն, ապա թէ ոչ՝ ուղտին և հաստ ճիւղին մէջ տեղը պիտի ճզմուէի։ Այսպէս կ'ընէր նաեւ զառ ի վեր լեռներէ ելնելու ժամանակնիս, առջեւի երկու ծունկերը կը չոքէր և այնպէս կ'ելնէր. այս բանիս յատկապէս վարժուած կ'ըլլան եղեր, ինչպէս իմացանք յետոյ։ Այս օրինակ դէպք մի եւս Գեր. Խաչակ սրբազան հօր հանդիպեցաւ. հեծած ուղտը կը մղուի յանկարծ փշալից բարձր թուփերու մէջ, վըրայ գլուխը կըսկսին պատռիլ բզբտուիլ. և քիչ մ'ալ որ առաջ մղուելու ըլլար, փշահեղձ պիտի լինէր, բայց աներեւոյթ զօրութիւն մը կարծես թէ ուղտին սանձէն բռնելով դուրս հանեց մահահոտ փշերուն մէջէն՝ արիւնլուայ դէմքով ու ձեռքերով։ Այս տեսակ վըտանգալից տեղերէն և բազմապտոյտ գետերէ անցնելով կէս օրէն զկնի հասանք Ռիրանիա բռուած լերան ըստորոտը, ուր տեղի Շէխին մեր գալը իմացընելու համար հրացաններ պարպեցին. և մենք վրանը լարեցինք և անոր տակ հանգիստ առինք։ Լերան մարդիկ հրացաններուն ձայնը առնելով կըսկսին փախչիլ. բայց ժամանակ մը անցնելէն ետքը հասկըցան մեր ով ըլլալը և ուրկէց գալը։ Ռիրանեայ լերան Շէխը քանի մը հոգիով երեկոյին մեր տեսութեան եկաւ, հետը կերակուր և կողովակով մը քանի մը հաց բերելով որ ցեխի նման բան մըն էր, և չկարացինք բնաւ ուտել։ Առաւօտուն դարձեալ գալով պատմեցինք իրեն որու համար գալերնիս և մեզի ուր հասցընելիքնին։ Իրարու հետ խորհելէն զկնի հաճութիւն տուին գրով և ընդունեցին մեզի. ուստի դարձեալ մեր բեռները անկէ

վերցնելով ճանապարհին մօտ ուրիշ տեղ մը իջանք ։ Հոն հասնելնուս մեր հետ եղող զօրքերը և ուղտապանները իրենց ուղտերը առնելով ետ դարձան, և քովերնիս մնաց միայն մեզի Թագաւորին ներկայացնելու համար հետերնիս եկող մարդը, որու քով էր Շէխ Ճիւմայի տուած յանձնարարականը ։

Բաւական ժամանակ հոն լերան ստորոտը սպասելէն ետքը, երբ տեսանք որ մեզի եկող փնտռող և մեր բեռները լեռը հանելու համար մարդ չէր գար քովերնիս. բեռները հոն թողլով, մենք քանի մը մարդոց առաջնորդութեամբ սկսանք դէպ ի լեռը վեր ելնել, և կէս ժամուն հազիւ թէ մեծ դժուարութեամբ հոն հասանք, ուր տեղի տները եղեգներէ շինուած խուղեր էին ։ Լերանը Շէխին շատ աղաչանքներ ընելէ ետքը հազիւ թէ սիրտը բերինք և Գասր-Մարեամի եկեղեցւոյ մօտ տուն մը ցը ցուց մեզի հանգստանալու, որուն քով մեր երկրի հովիւներուն խրճիթը աւելի մեծ յարգ պիտի ունենայ ։ Բայց մենք այն չափին ալ գոհ ըլլալով մտանք ներս որ քիչ մը հանգիստ տանք մեր խոնջեալ անդամներուն ։ Բեռներն ալ, որ վարը մնացեր էին, հոն գտնուող ժողովրդոց քաղցրութեամբ չոյելով զանոնք ալ քովերնիս բերել տուինք նոյն իրիկունը ։ Անոնց այս աշխատութիւնը, որ սիրով ընդուներ էին, մենք մարդկային և քրիստոնէական զգացմամբք յանձնառու եղած կը համարէինք, բայց յետոյ իմացանք անոնց ինչ անխրատ նպատակի համար ծառայելնին ։

Հետեւեալ օրը մեծ Շէխին բերնէն Բասր-Էմպայի իշխանին գիր մը գրուելով իմաց տրուեցաւ անոր մեր գալը. և մեզի հոն հասցնելու համար հարկաւոր եղածները ։ Մեր եղած տեղէն մինչեւ ի Բասր-Էմպա լեռը մէկ աւուր ճանապարհ է ։ Երեք օրէն զինի իշխանին կողմէն երկու մարդ գալով մեր գալուստը բարեւեցին, և անոր խրկած ջորին մեզի մատուցին, որ նշան մըն էր անոր կողմէն ընդունելութիւն գտնելնիս. ասիկայ սովորութիւն մըն է իրենց մէջ, որպէս զի ժողովուրդն ալ անոր նայելով պէտք եղածը մեզմէ չխը-

նայեն ։ Նաեւ իշխանին պատուէրն ալ խնդրուցին բոլոր չէխերուն, որ առանց ուշացնելու ժամ մը յառաջ Սար—Ամպա հասցնեն, պատու ամենայնիւ հետեւեալ օրը մեզի ոչ հարցնող եղաւ եւ ոչ փնտռող, եւ ոչ կերակուր տուին ։ Քանի մը անգամ թախանձեցինք Շէխին հայրենհամար, բայց նա իբրեւ անդգայ էակ մը չըլսելու կուգար. եւ վերջապէս պատասխանեց մեզի թէ, «Ես իմ պարտքս կերակուրի մասին կատարեցի, եւ թէ՝ ժողովուրդին վրայ իշխելու կարողութիւն չունիմ, դուք ինձմէ զօրաւոր էք, կրնաք բռնութեամբ հաց բերել տալ ։» Այս պատասխանիս վրայ թէպէտ եւ քիչ մը խրախուսուելով մէկէն մեկալէն հաց կը պահանջէինք, բայց անոնք կամ խուլ Թեան կը զարնէին եւ կամ իրենց բնակարաններուն մէջ մտնելով կը փակուէին, եւ Սար—Ամպայի իշխանէն վախնալնուն՝ դրամով ալ չէին տար ։ Նոյն երեկոյին մնացինք անօթի, այն ցեխի նման հացին ալ գոհ եղանք, բայց այն ալ ձեռքերնիս չանցաւ ։ Սակայն աստուածային Նախախնամութիւնը՝ որ մեր վրայ կը հսկէր գաղտ, հրաշալի կերպիւ ազատեցաւ մեզի, ինչպէս ազատեցաւ Դանիէլին առիւծոց գուբին մէջ ։ Հետեւեալ օրը երկու կրօնաւոր կանուխ եկան ներկայացան մեր բնակարանին մօտ եւ սպիտակ մարդ մը կը հարցնէին թէ ուր կը գտնուի ։ Այս կնիկները մէկ աւուր ճանապարհէ կուգային՝ հետերնին երկու հատ գնտաձեւ եւ կարմիր պղպեղով համեմեալ հաց բերելով, որոնց գիշերային յայտնութեան մը մէջ պատուէր եղած է՝ որ այս ինչ տեղը երթան ու հաց տանին ճերմակ ու ծերունի մարդու մը ։ Այս գթասրտութիւնը եթէ առդ. յայտնութենէ մ'ալ առաջ եկած չէր, գէթ Հապէշից բնական անողորմածութեան եւ անհիւրասիրութեան ներհակ գործ մըն էր, որու մէջ դարձեալ աստուածային մատը կար ։

Գապր—Մարեամլերան մէջ կրած անհանգստութենէ բռնադատեալ կ'աղաչէինք չէխերուն որ աճապարեն ժամ մը յառաջ Սար—Ամպա հասցնելու մեզի, զոր օրինաւոր քաղաք կը կարծէինք, եւ մեզի համար աներ-

գիւղ և ապահով միանգամայն և հանգիստ, ինչպէս որ կը պատմէին ։ Երկու աւուր մէջ հազիւ մեծ Ճէլոր 30ի չափ գիւղացի ժողվեց բերաւ մեր բեռները վերցնելու համար (Յուլիս 17), որոնց մէկ մէկ ծրար կամ շալկոց մը բան տալով և չորս մեծ սնտուկները բեռցնելով՝ առնողը դուրս ելաւ ու աներևութացաւ, և լեզունին չհասկընալնուս՝ չէինք գիտեր թէ ուր կը տանին, բայց նոյն օրէն զգացինք որ մեր քաշն եղած այն ծանրութիւններուն, ու տարած գոյքերնուս տէրը չէնք։ Հազիւ թէ ժամը 7ին ջորիները գալով ճամբայ ելանք. ամպերու իրարանցում մը կար երկնքին երեսը, և անձրևը թեթևութեամբ կը տեղար, սակայն ամենևին հոգ չէինք ըներ. ժամ մը յառաջ Բաղ—Էմիր հասնելու կը փութայինք. և յորդահոս գետէ մը անցնելով ժամը 11ին հասանք Պիթանիա—Իէսուս (Յիսուսի Բեթանիա) (1) կոչուած գիւղը, և այն իրիկունը հոն գիշերեցինք ։ Այս գիւղիս բնակիչները բաւական մարդասիրութիւն ցըցուցին մեզի ։

Առաւօտուն սաստիկ անձրևով մեկնեցանք այս գիւղէս, և ժամու մը չափ տեղ քալելով առջի օրուան գետէն աւելի սաստիկ յորդած ու սրընթաց գետի մը պատահեցանք, որու անցքը աւելի երկիւղալի էր. և գետեզերքէն բաւական տեղ դէպ ի վեր երթալով ու անցք մը չգտնելով, հարկադրեցանք մեզի մարմնով անցնելու ։ Բայց ես ջրին ցրտութենէն վախնալով կիսամերկ նստայ ջորիին վրայ, և երկու կողմէս ապահովութեան համար մարդիկ առնելով և Աստուծոյ անունը լռիկ մրմնջելով քշեցի ջորիս ջրին մէջ. բայց երբ խորը հասանք, ջորին զգալով իր վտանգը՝ զիս վրայէն վար ձգեց, ու ինքն սկսաւ լողալ ։ Թէպէտ և քովս գտնուող անձինքը շատ աշխատեցան որ զիս դարձեալ վրան հեծցընեն, բայց հնար չեղաւ ։ Մարդիկն ալ չը կրնալով թէ իրենց անձը և թէ զիս միանգամայն ապաշտպանել ջրին ահագին սրընթացութեան դէմ, ձայն մը

(1) Հայաստանի մէջ շատ գիւղերու և երկիրներու անուններ կամ տեղւոյն եկեղեցիին և կամ սրբազան տեղւոյ մը անունով կը կանչուին ։

փրցընելով Թողուցին զիս ջրին ընԹացքին՝ որ առաւ տարաւ ։ Բայց այն աներեւոյԹ զօրուԹիւնը որ երբեք հեռացած չէր մեզմէ, օգնուԹեան հասաւ անմիջապէս . մեծ քար մը պատահելով դիմացս՝ երկու ձեռօքս գրկեցի, ու անցայ բնական մղմամբ անոր ետեւի կողմը, ուր ջրին սրընԹացուԹիւնը կը մեղմանար ժայռին արգիլելովը, ու կարողացայ դէմ դնել հոսանքին սաստկուԹեանը ։ Այն ատեն գիւղացիք ալ շուտով երկար փայտեր բերին ու գետեզերքէն երկնցընելով, բռնեցի զանոնք ու դուրս ելայ, և ազատեցայ այս երկրորդ անգամս մահուան ժանիքէն ։

Գեր. Խաչակ որբաղոմ Հայրը դեռ գետեզերքը կայնած և ականատես ըլլալով իմ գլխուս եկած անցքին, մերկանալով իր վրայի հագուստները և երկու մարդոց օգնուԹեամբ մինչեւ վիզը գետին մէջ ընկղմած Աստուծոյ ողորմուԹեամբ անվնաս միւս կողմը ցամաքն ելաւ ։ Նոյնպէս Եղեկիէլ անուն մեր հետն եղող եկեղեցական պատանին ալ անվնաս անցաւ, որ արդէն տկարուԹիւն մը ունած էր վրան ։

Հոն գետեզերքը քիչ մը ժամանակ մեր լաԹերը չորցընելու համար սպասելէն յետոյ, մէկ ժամու ճանապարհ յառաջ երԹալով Վոստակէ կոչուած գիւղը հասանք ժամը վեցին . այս տեղւոյն հասարակօրէն Մ՝ելքանգ ալ կ'ըսուի ։ Եղեգներով շինուած խարխուլ խրճիԹ մը տուին մեզի հանգչելու, որու չորս կողմը գրեԹէ բաց էին, և քամիին սաստկուԹիւնը մեր արդէն վաստակեալ և տկարացեալ անձը բոլորովին կը վտանգէր ու անհանգիստ կ'ընէր . բարեբաղդաբար մեր վրանին շրջապատ կտաւը քովերնիս գտնուելով, խըրճԹին չորս կողմը անով պատսպարեցինք ։

Ծիրանա գաւառին Մամօ—Հայլօ անուն Շէխապետը (միւլէնի) բոլոր մեր գոյքերը այս կողմի չէխերուն յանձնելով, ինքը իր մարդիկներովը ետ դարձաւ ։ Երկու օր ետքը պատրաստի ջորի գտնելով ճանապարհ ելանք . բայց տեսնելով որ իրենց տարած ճանապարհը վտանգաւոր է և դժուարակոխ, հասարակ

ճանապարհէն խնդրեցինք որ տանին մեզի․ իսկ անոնք զանազան պատճառներ մէջ բերելով չուզեցին մեր առաջարկած կողմէն տանելու, ուստի ստիպուեցանք եւ դառնալ մեր տեղը, ու իրենք ջորիներին առին գացին։ Պարապ տեղը սպասեցինք յուսալով թէ կրկին ջորիները բերելով հասարակ ճանապարհէն կը տանին մեզի։ Բայց ո՜վ թշուառութեան․ այնպիսի երկրի մէջ կը գտնուէինք՝ ուր տեղ ո՛չ կարգ կայ և ոչ կանոն, ոչ մարդկային զգացմունք և ոչ անձնական նկատմունք․ ոչ գլխաւորը յայտնի է և ոչ պզտիկը․ մանաւանդ լեզունին ալ դեռ չհասկնալով աւելի նեղութիւն կը կըրէինք։ Մենք անհամբերութեամբ լոյս կըսպասէինք․ բայց ոչ լուր բերող կայ և ոչ տանող։

Եզեկիէլ պատանին Գայլ—Մարեամէն սկսած էր, ինչպէս ըսինք, հիւանդութեան նշաններ ցոյց տալ իր վրան․ որովհետեւ իր անձին առողջութեանը բնաւ հոգ չէր տաներ․ ձմռան ցուրտ եղանակները անոր համար կարծես թէ ամառնային տաք եղանակներ էին․ թէպէտեւ թէ՛ որքան Հայրը և թէ ես շատ կը յորդորէինք զինքը որ իր անձը պահպանէ, բայց ի զուր։ Տկարութիւնը երթալով սաստկացաւ ու ինկաւ մահիճ. թէպէտեւ քովերնիս գտնուած դեղորէիցմէ լուծողական դեղ տուինք և շատ աշխատեցանք զինքը բուժելու, օգուտ մը չըրաւ․ իր հիւանդութիւնը մահաբեր տենդ էր, ճարտար բժիշկ մը եթէ գտնուէր, հազիւ թէ կարողանար ազատել զինքը։ Զգացինք որ անոր կեանքը վտանգի մէջ էր, և սկսանք յաւիտենական ճամբուն պատրաստել զինքը․ խոստովանեցաւ ամենայն ջերմեռանդութեամբ և ընդունեց կենարար Հաղորդութիւնը և փակեց իր մարած աչուըները դէպ ի յաւիտենականութիւն՝ ինը օրէն զկնի, Վարդավառի երկրորդ օրը, անհնարին սուգ թողլով մեր հայրական սրտերուն․ որուն Տէր վարձահատոյց լիցի փոխարէն իւր այնքան օրերուն մէջ մեզի տուած աշխատութեանց, որով մասնակից եղած էր մեր մարդասիրական նպատակին։

Նոր մահուան լուրը գիւղացւոց հաղորդելով՝ կան-
չեցինք զիրենք որ գան մարմինը եկեղեցին տանին։ Ան-
միջապէս եկան ժողովեցան, և իրենց սովորութեան
համեմատ աչխային [1] վրայ պառկեցուցին կաշիէ չուան-
ներով կապելով, որու վրայ արդէն հիւանդութեան
ժամանակն ալ կը պառկէր. և յետոյ չորս հոգի ուսեր-
նուն վրայ առնելով, բարձր լեռներու մէջէ անցան
ու Գիտանը—Մերէթ անուն լերան ծայրը եղած եկե-
ղեցին տարին։ Խաչակ որբազանը ոտքով մեր հետե-
ւեցաւ. իսկ ես տկար ըլլալով՝ ջորիի վրայ հեծած կը
հետեւէի քանի մը հոգիով, որոնք ճամբէն խօսելով
ուրիշ տեղաց կը տանէին զիս։ Առջի բերան կարծեցի
թէ նոյն եկեղեցին կը տանին, բայց երբ տեսայ որ Գի-
տանը—Մերէթ լեռը ետեւնիս մնացեր է, սիրտս ան-
սովոր դառնութեամբ լեցուեցաւ. ուզեցի ետ դառ-
նալ, բայց հետս եղող մարդիկ չէին թողուր, այլ և
կը զայրանային ինծի դաժանութեամբ մը երեսս նայե-
լով, և ջորիս դէպ ի յառաջ կը քշէին մղելով։ Աչուը-
ներս արտասուքով թրջուած ու սիրտս փղձկելով, հան-
դարտեան օրհնութիւններ կարդալով՝ լռիկ կ'երթայի
ուր որ կը տանէին զիս։ Ճամբան այնպէս դժուար ու
քարուտ էր, որ հազիւ վայրի գազանները կրնային քա-
լել. տեղ տեղ կային սարսափելի տեղեր, լպրծուտ ու
գահավէժ սարափունքներ, և անտառացեալ փշալից
ծառաստաններ, որոնց մէջէն ճամբորդ մը անցնելու
ժամանակ անհնար է որ երեսը դէմքը չը վիրաւորուի
ու վրան գլուխը չպատռուի։ Այսպիսի դժուարու-
թիւններով հասանք Կողրակէ ըսուած գիւղը, սրտա-
կտոր անձամբ ու վաստակաբեկ մարմնով, ու կըսպա-
սէի Խաչակ որբազանի գալստեանը, որ Հայկէշ քա-
հանայի մը հետ հանգուցեալ պատանւոյն թաղման
խորհուրդը կատարելէն և գեղեցիկ ծառազարդ գե-
րեզմանատան մը մէջ անոր հայրենազիրկ մարմնոյն դըժ-

(1) Աչխ ըսածնին գետնէն քիչ մը բարձր չորս ոտքով փայտէ նստա-
րան մըն է, որուն մէջ տեղը կաշիէ չուանով խաչաձև հիւսուած է, որ
մեռնողանին իբրև դագաղ կը ծառայէ իրենց։

բաղդ միացորդները հանգուցանելէն զկնի, հետիոտս դարձեալ քալելով և արիւն քրտինք մտած՝ հազիւ երեկոյեան դէմ հասաւ մեր քովը ։ Զիրար տեսնելնուս անմիջապէս դառն արտասուքներ իբրեւ երկու աղբիւրակներէ սկսան թէ անոր և թէ իմ աչուըներէս հոսել ։ Մեր երկուքնուս վիշտերը թէպէտ մի և նոյն աստիճանութեամբ էին, սակայն անորը գէթ կը տարբերէր մխիթարութեամբ մը, կամ խղճի հանդարտութեամբ մը, որ կարողացաւ իւր ձեռօքն ամփոփել հանգուցելոյն մարմինը, վերջին օրհնութեամբ կնքելով անոր տըխուր գերեզմանը. իսկ ես այս մխիթարութենէն ալ զուրկ էի, վասն զի չկարացի անոր դժբաղդ միացորդացը վրայ գոնէ ափ մը հող ձգել, որով յաւիտենապէս կը բաժնուէր մեզմէ ։ Նոյն գիշերը մինչեւ առաւօտ տխրութեամբ անցուցինք քան թէ քնով, անոր յիշատակը կրկնելով միշտ և փառք տալով Աստուծոյ, որ թէպէտ և օտար աստղերու ներքեւ, սակայն արժանի եղաւ գոնէ քրիստոնէաբար մեռանելոյ. և թէպէտ վայրենի երկրի մը մէջ թողուց իւր մահկանացու մարմինը, գոնէ անմահ հոգին արժանի եղաւ կուսանաց դասուն երկնաւոր հարսանեաց մէջ հանգչելու ։

Առաւօտուն անկէ մեկնելով երեք ժամուն Ակխա գիւղը հասանք, և մեր բոլոր բեռներն ու փոքր և մեծ մնտուկները հոն դրանք, զորոնք Մելքոնդ երկրի չէխերուն կողմէն եկողները Ակխա գիւղի չէխերուն ու ծերերուն յանձնած էին ։ Անկէց ալ ճամբայ ելանք ու Բսար—Ամպա լերան ստորոտը հասանք շատ տաժանակրութեամբ, ըստ որում այս ճամբաներն ալ վերը յիշուած ճամբաներուն նման փշաբեր ծառերով անտառացեալ էին, որոնց մէջէն անցնելու ժամանակ խիստ մեծ արթնութիւն և զգուշութիւն կը պահանջէ. մեր հետն եղող մարդիկը այս անգամ մարդասիրական ըզգացմունքներ սկսան ցոյց տալ մեզի այս փշալից տեղերէն անցնելու ժամանակնիս օգնելով ու խնամելով, որով կ'երեւէր թէ առջի ըրած գէշութիւննին ու անգութ վարմունքնին մոռցընել տալ կ'ուզէին. և յայտ-

նի համակրութիւններ ցոյց տալով ներողութիւն կը
խնդրէին, և կ՚աղաչէին որ իրենց լռածները իշխաննե-
րուն քով բնաւ չյիշենք, այլ ընդ հակառակը բարի
խօսինք իրենց համար. խեղճերը չէին գիտեր որ մեր
քահանայական և կրօնական պարտաւորութեանց, ինչ-
պէս և բոլոր առաքինի մարդկանց յատկութիւնն է՝ ան-
յիշաչարութիւնը և ներողամտութիւնը։

Յուլիսի 24ին, որ ճիշդ Եսայի մարգարէի տօնին
օրն էր, և մեր Ամեն. սրբազան Պատրիարքի Հօր ան-
ուան տարեդարձը յիշելով, Երուսաղէմ սուրբ Յա-
կոբայ մեծ վանքին մէջ տօնախմբութեան պատճառաւ
թէ հոգևոր և թէ մարմնաւոր ուրախութեան հան-
դէսները, սրտերնիս փղձկելով դէպ ի վեր Սար—Սիմա
լեռը կ՚ելնէինք ոտքով։ Շունչերնիս հատեր և բոլոր-
վին ուժաթափ եղած լերան գլխոյն մօտ հասեր էինք,
երբ Նըլկայի գաւառին կուսակալ և միանգամայն Սար
—Սիմայի պահապան Թէոսէմոս իշխանը հարիւրի չափ զօր-
քով և իւր Շարօ անուն փոքր եղբօրն ընկերութեամբ մե-
զի դիմաւորեց։ Նոր ցոյց տուած այս պատիւը մենք մեր
եկեղեցական կարգին կը համարէինք, բայց վերջը հաս-
կըցանք որ ի շնորհս մեր գործերուն էր։ Այսպէս ու-
րեմն պատուով՝ բայց մեծ հոգնութեամբ լերան ծայ-
րը հասանք մէկ ժամուն, ուր քիչ մը շունչ առնելէն
զկնի առին տարին զմեզ մութ ու քարուկիր յարկ մը
մեզ համար պատրաստուած, որուն մէջ դռնէն միայն
լոյս կ՚ընդունէր։ Թէպէտեւ առջի բերան չուզեցինք
հոն նստիլ, բայց յետոյ իշխաններուն բնակած եղեգ-
նեայ խրճիթներուն հետ բաղդատելով՝ ախորժեցանք
հոն հանգչելու, մտածելով որ գոնէ ապահով կ՚ըլլանք
հոն որ և իցէ վտանգէ մը։ Այսպիսի յարկեր միայն
Սոնաէրի և Սէլպի—Թափօրի մէջ կը գտնուի եղեր, և
Թագաւորն անգամ այս լեռը գալուն՝ հոս կ՚իջնայ ըսին,
ուստի մենք ալ այնուհետեւ իբրեւ արքունական տուն
կամ պալատ մը սկսանք նայիլ այն յարկին, որու ապա-
յատակը հաստ փայտեր իրարու քով շարելով շինուած
էր, և անոր առջին յարկն ալ բանտարան էր զատ դըռ-

նով։ Մեր եղած տանը չորս կողմը գաղտնի դարաններ ու սղամուտ ծակեր կային, որոց մէջ կը պահուէին Թագաւորին գանձերը և ուրիշ գոյքերը, և նոյն լերանը զօրքերուն տարեկան պաշարը։

Քանի մը մարդոց կողմէ մեղքէ շինուած գինիներ պարգեւ խրկուելով մեզի, ներկայ գտնուող քանի մը իշխանաց հետ խմեցինք վասն կենաց Թագաւորին, սըլըաղան Պաարխալք Հօր և հոն գտնուող մեծամեծաց։ Գինիին գաւաթները կովու կոտոշներ էին, և մէկուն կենդանութեանը խմած ու բարեմաղթութիւններ ըրած ժամանակնիս՝ ամէնքը մէկէն մինչեւ գետին կը խոնարհէին։ Իշխանները մեր քովէն հեռանալէն քիչ մը ետքը սպիտակ (1) կով մը պարգեւ խրկեցին մեզի ի նշան շնորհակալութեան մեր գալստեանը, ծանուցանելով միանգամայն թէ պատրաստ են կատարելու և հագալու ինչ որ պէտք է մեզի։

Հետեւեալ օրը կրկին տեսութեան գալով իշխանը, խնդրեցինք իրմէ որ մեր գալը շուտով իմացնէ Թէոդորոսին։ Պատասխան տուաւ թէ՝ «Հիմայ ձմրան սաստիկ եղանակն է, և հինգ վեց ահագին գետեր կան Կէլապի—Թափոր երթալու ճամբուն վրայ, որոնց անցքը դժուար ու վտանգաւոր է. և թէ՝ ձմրան պատճառաւ ապստամբները աւելի շատցած ու կատղած կ'ըլլան յիշեալ ճամբուն վրայ։ Քանի մը օր սպասենք տեսնենք, գուցէ Թագաւորն ինքը դէպ ի այս կողմը յառաջանալով կուգայ, այն ատեն դիւրին կ'ըլլայ մեզի ձեր խնդիրքը կատարել։» Այսպէս պատասխանելով նա՝ հեռացաւ մեր քովէն, տարակուսութեան ու մտատանջութեան մէջ թողլով մեր միտքերը։

Այս սրտամաշ տարակուսանաց և մեր Եզեկիէլ պատանւոյն անակնկալ մահուամբ մեր սրտին խոր թողուած անմխիթար թախծանաց մէջ, մխիթարութեան մի պէտք ունէինք։ Նախախնամական Տեսչութիւնը, որ կենաց ամէն դառնութեանց մէջ քաղցրութիւն մի

(1) Հաբէշներու մօտ սպիտակ կովը մարդու ընծայելը մեծ պատիւ տուած կը համարուի։

միշտ կը խառնէ, պարգեւեց մեզի այն մարդակարօտ երկրին և կղզիացեալ լերան մէջ մխիթարութիւն մը՝ երկու ձերմակ մարդիկ մեր դիմացն հանելով, որ ներքին Հապէշստանի մէջ եզական և հազուագիւտ կը համարուին։ Ասոնք երկու Նազարէթցի էին, մէկուն անունը Ճորճիս (Գէորգ) և միւսինը Էղիաս (Եղիա), որոնք վաճառականութեամբ այն կողմերը գալով՝ Սեվադինի ճամբուն մէջ կը կողոպտուին գողերէ. և առանց ճամբանին ընդհատելու՝ Թէոդորոս Թագաւորին ներկայանալու դիտաւորութեամբ կը հասնին մինչեւ Ճիկա, ու Ճիկայի իշխանները կ'առնուն կը բերեն զիրենք Սար-Եմպա լեռը, ու անխնամ կը թողուն խալխալած ու խանգարուած խրձիթի մը մէջ, ուր անձրեւներու տակ կը մնան խեղճերը ողորմելի կացութեամբ։ Մեր հոն հասնելէն գրեթէ երկու ամիս առաջ եկած էին անոնք, որոնք յանկարծ մեզի տեսնելնուն, և կռահելով թէ՝ իրենց պէս Թուրքաստանի բնակիչ եմք, անմեկնելի ուրախութեամբ կը լեցուին և իբրեւ երկնքէ խրկուած հրեշտակ՝ այնպէս կը փարին մեզի։ Նոյն ուրախութիւնը ունեցանք մենք ալ՝ երբ տեսանք որ իրարու լեզուալ քիչ շատ կը հասկընանք, ըստ որում արաբերէն կը խօսէին և մենք ալ Երուսաղէմի մէջ քիչ շատ սորված էինք նոյն լեզուն։ Ասոնց հանդիպումը մեծ մխիթարութիւն եղաւ մեզի, և նոյն օրէն քովերնիս առինք զիրենք՝ ազատելով ողորմելի վիճակէ մը, որու վախճանը անշուշտ կորուստ էր իրենց. և սկսան ծառայել մեզի հաւատարմութեամբ, և չհեռացան մեզնէ բոլոր մեր պանդխտութեան ժամանակ։ Մեր փոխադարձ մտերմութեանը վստահելով այս երկու Նազարէթցիները, Հապէշու երկիրը գալերնուն բուն նպատակը յայտնեցին մեզի։ Ճորճիս ազգաւ յոյն և քրիստոնեայ ծնողաց զաւակ էր. իսկ Էղիաս մահմետական էր և իւր ծննդական անունը փոխած։ Սոփկայ քրիստոնէական կրօնին ճշմարտութեան վերայ ներքին համոզմամբ հաւատալով՝ կը փափաքի եղեր մկրտուելու և քրիստոնեայ ըլլալու. բայց ոչ իրեն հայրենի երկրին, ոչ Երուսաղէ-

մի և ոչ ուրիշ տաճկի երկրի մէջ համարձակեր է իւր կրօնը փոխելու, և միայն գրեր է իր մտերիմ ընկերոջը հետ մինչև Թէոդորոս Թագաւորին մօտ երթալ և հոն մկրտուելով յայտնի և աներկիւղ պաշտել իւր սիրած ու ընտրած հաւատքը։ Բայց ինչպէս վերը ըսինք, գողերու հանդիպելով, մինչև Ըսար—Ամպա եկեր ու ըստ օրինաց երկրին հոն լեռը կը սպասէին որ բարեպատեհ առիթով մը Թագաւորին ներկայանան։ Բայց ինչպէս մեզի՝ նոյնպէս անոնց ալ արժանի չըրաւ Թագաւորին հանդիպելու, այլ միայն մեր քովը, վիճակակից եղան մեզի՝ մի և նոյն տառապանքները կրելով, և մեզի հետ կրկին ետ դարձան մինչև ի Մասսաւա։

---

## ԳԼՈՒԽ Դ.

*Ըսար—Ամպայի ստորագրութիւնը, պահպանութիւնն և անոր կառավարութեան եղանակը։ Բանտարգելոց վիճակը և անոնց պահպանութիւնը։ Եղեռնագործը։ Տաղաւարաց և Վերացման խաչի տօնին հանդէսը. հրավառութիւն։ Իշխանաց խորհուրդը։ Արպ'ամպայի իշխանին տեսութիւնը, պարգեւատրութիւն և փոխարինութիւն։*

ԳԻՏԵՆՔ արդէն որ Հապէշստանի քրիստոնէից ձեռքը գտնուած երկիրները չորս մասի կամ իշխանութեան կը բաժնուին, որ են. Ամարա, Կոճամ, Շօա և Թէկրի։ Ամարա ամենէն մեծ մասն է, և այս երկրին մէջ է Ըսար—Ամպա (1) ըսուած ամուր և անմատչելի լեռը. ասոր ստորոտն է Ճըլկա (2) ըսուած գիւղաւանը, որ մանր գիւղերէ կամ արուարձաններէ կը բաղկանայ։ Ըսար—Ամպայէն երկու ժամ հեռի է Արպ'ամպա կոչուած լեռն ալ։ Թէ՛ անոնք և թէ ասոնք նման ուրիշ շատ լեռներ ալ կը գտնուին Ամարայի զանազան կողմե-

(1) Ըսար—Ամպա կը նշանակէ խոտի ամրոց. իսկ Արպ'ամպա՝ քառասուն ամրոց, որով իւր խիստ ամուր ըլլալը կը ցուցընէ։

(2) Ճըլկա անունը ընդարձակ առմամբ կը տրուի նաև Ըսար—Ամպայի իշխանին կառավարած բոլոր գաւառին, և կը նշանակէ կտաւատի հունտէ շինուած պօղ։

րը . այնպէս ամուր ու անառիկ տեղեր են , որոնք իւրաքանչիւրը մէկ մէկ բնական ամրոցներ են և ապաստանարան թշնամեաց դէմ ։ Մենք ըստ որում Քար—Ամպայի մէջ կը բնակէինք , կ'արժէ որ համառօտ մը անոր ստորագրութիւնը ընեմ ։

Այս լերանս դիրքը արեւմուտքէն դէպ ի արեւելք երկընցած է . հիւսիսէն ու հարաւէն նմանապէս և արեւմուտքէն գրեթէ անմատչելի է սեպացեալ ժայռերով բարձրացած ըլլալուն ։ Երկու դուռ կամ պահակ ունի, արեւելքէն ու արեւմուտքէն . արեւմտեան կողմինը թէպէտեւ բարձր ու գահավէժ դիրքով , բայց ունի անցք մը՝, որ վտանգի ժամանակ կրնայ մէկ կամ քանի մը հոգի պաշտպանել զայն յարձակման դէմ , և միշտ պահպանութեան տակ է ։

Իսկ արեւելեան կողմի պահակը արձակ է , և ունի իրեն կից ուրիշ լեռ մը , ըստ որում բոլոր երկիրը լեռնային է . և անոր հետ կը հաղորդուի կամրջի նման մարգակներ երկնցընելով , զոր խաղաղութեան ժամանակ կը թողուն և կռուոյ ժամանակ կը վերցընեն ։ Այս պահակէս է նաեւ կամրջին քովէն վար դէպ ի լերան ըստորոտը իջնելու ճամբան . և այս ճամբէս ելանք մենք Քար—Ամպա , որ պատուաւոր դուռը կը համարուի , և ունի փայտաշէն տձեւ փեղկեր ։ Լերանը մէջ տեղ տեղ ակօսաձեւ հողային գետիններ կան վարուցանի համար , և թէպէտ խիստ բարեբեր են , սակայն լեռնապահ զօրաց տարեկան կերլեաց չեն բաւեր , այլ անոր պակասը դրսէն տուրքի տեղ ժողված արմտիքներով կը լեցընեն ։ Ինչպէս արեւմտեան՝ նոյնպէս արեւելեան այս դուռը հաւատարիմ պահապաններու հսկողութեան ներքեւ կը գտնուի , որոնք կարգաւ գիշեր ու ցորեկ կը պահեն . և այս պաշտօնը ժառանգական է որդւոց յորդիս ։ Ոչ ոք կրնայ ներս մտնել առանց կանխաւ պահապանը ներսի իշխանին լուր տալու , և անկէ հրաման ընդունելու . իսկ գիշերանց ներս մտնել ուզողը , պէտք է ներսի մարդոցմէ երաշխաւոր մը ունենայ իր անձին ։

Թագաւորին կողմէն երկու իշխան կը նստին հոս ,

մէկը Րօսր—Ամզա, միւսը Արղ՚ամզա, որոնց մէկը ազգաւ Գրմանդ (1) է և միւսը քրիստոնեայ։ Բայց Թէոդորոս Թագաւորը ասոնց հաւատարմութեանը վստահ չըլլալով, յիշեալ երկու գլխաւոր իշխանները, որ Ճըլկայ գաւառին կուսակալները կը համարուին, իբրև պատանդ իւր քովը պահելով, անոնց կողմէն՝ մէկուն որդին կը նստի իրեն օգնական ուրիշ մէկու մը հետ, և միւսին երկու պզտի եղբայրքը ուրիշ օգնականով մը։ Իսկ ասոնք ալ դարձեալ, մէկը՝ այսինքն քրիստոնեայ իշխանին մէկ եղբայրը Րօսր—Ամզա կը նստի փոխանորդ մը դնելով իր կողմէն Արղ՚ամզայի մէջ, և միւսը՝ այսինքն Գրմանդ իշխանին որդին Արղ՚ամզա կը նստի փոխանորդ մը ունենալով իրեն Րօսր—Ամզայի մէջ։ Կառավարութեան այս կերպը ինքը Թէոդորոս հաստատած է, որով թէ՛ իւր կասկածոտ բնաւորութիւնը և թէ իւր մարդոց անհաւատարիմ և ապստամբութեան դիւրադրգիռ ըլլալնին ցոյց կուտայ։ Թէ՛ Րօսր—Ամզայի և թէ Արղ՚ամզայի իշխանքը, որոնց բնակութիւնը նոյն լեռներուն մէջ է, Ճըլկայի տօնավաճառի օրերը վար կ'իջնան՝ որ յանկարծ վրայ եկող աւազակներէն ու ապստամբներէն պահպանեն թէ՛ ժողովուրդը և թէ անոնց ապրանքը։ Երկու իշխանք ալ իրենց զօրաց բնակութեան համար թէ Րօսր—Ամզայի և թէ Արղ՚ամզայի մէջ հաւասար թուով տըներ ունին, որոնք ճիշդ վրանի ձևով են։ Այս լեռներն իրենց ապահովութեան համար իբրև հիւրանոց ալ կը ծառայեն. եթէ Կալլապատի կողմէն դէպ ի Հաբէշու երկիրը մէկը գալու ըլլայ, ուղղակի Րօսր—Ամզա կը բերեն՝ եթէ վախի ժամանակ է, ապա թէ ոչ՝ վարը Ճըլկայի գեղերը կ'իջեցնեն. իսկ թէ որ ներսի կողմերէն, կամ Թագաւորին կողմանէ մէկը գալու ըլլայ, Արղ՚ամզայի իշխանին քով կ'ընդունուի։

Այս լեռները նշանաւոր են նաև իբրև բանտարան, որոնք բնական ամրոցներ ըլլալով, շատ դժուա-

(1) Գրմանդք ըսածը Հաբէշներու ցեղ մըն է, որոնք Ամօրայի երկիրը միայն կը գտնուին, և են անկրօն և անհաւատ, այլ քաջ ու սրտոտ են կռուոյ մէջ և վարպետ գող։ Ասոնց վրայ Բ. Հատորին մէջ պիտի խօսինք։

րին է փախչել կալանաւորի մը։ Ուռնին յատուկ բանտապետներ ու պահապաններ, որ են մօտակայ գեղջանքներուն ժողովուրդը, որոնք մէկ մէկ շաբաթ կարգաւ կուգան պահպանելու, և ասոնց թիւը պէտք է միշտ բանտարկեալներուն թիւէն աւելի ըլլալ, և լերանը իշխանին հոգը չէ բնաւ։ Թէ որ անոնցմէ մէկը փախչի, նոյն շաբաթուան պահապանները կամ անոր տեղ կը բանտարկուին և կամ կը պատժուին։ Բանտարկեալները՝ թէ որ ընտանիք կամ ազատաւորներ ունին, իրենց քով կը մնան անոնք ալ նոյն բանտին մէջ, որ իրենց պիտոյքը հոգան ու ազատաւորեն։ Կրնան բանտարկեալները բանտէն դուրս նոյն լերանը մէջ պտըտիլ պահապանի մը հսկողութեան ներքեւ։ Բանտէն ազատուած ժամանակնին, իրենք իրենց ոտքերուն շղթային տեղը քուրջի մը կտոր կը կապեն, որ 24 ժամ կը մնայ ի յիշատակ իրենց շղթայուելուն և ազատուելուն, ու բարեկամներ անոնց քով ժողվելով ուրախութիւն կ՚ընեն։ Շղթային անուրը երկաթէ գաւազանի կտոր է, որ ոլրունքին (ճիլին) բոլորտիքը դնելով երկու ծայրը գըրեթէ կռանահարութեամբ կը բերեն կը կցեն քովընի և այնպէս առանց գամի կը մնայ. և երբ պէտք ըլլայ անուրը հանելու, բանտարկելոյն ոտքը մեծկակ քարի մը վրայ կ՚երկնցընեն կը դնեն, և անուրին ծայրերէն գիմացկուն փակեր պլլելով, անոնց մէջ ալ հաստ փայտեր կ՚անցնեն, և փայտերուն տակի ճոթերը ոտնաքարերու կռթնցընելով երկու կողմէն երկերկու ուժով մարդիկ դէպ ի իրենց կը քաշեն բոլոր զօրութեամբ մինչեւ խեղճ բանտարկեալը չարաչար տանջուելով հազիւ թէ անուրը կը բանան։ Շղթայի զարնել տուողը կամ դատախազը ով որ է, պէտք է հոն ներկայ գտնուի յանցաւորին շղթայուելու ժամանակը, եւքը՝ Աստուած ազատէ քեզի ըսելով կը թողու կը հեռանայ անկէ։

Մեր Բաշ—Ապարա մնած օրերնիս յանցաւոր մը բերին բանտարկելու։ Այս մարդուս յանցանքը հետեւեալ կերպով պատմեցին մեզի. Տէնդիկացի մըն էր ասիկայ, որ օր մը իրենց մերձակայ գիւղը ազգականի մը

տուն հիւր ըլլալով, տանտէրը՝ որ հասակն առած կին մըն էր, հիւրասիրութեան պարտքերը կատարելով և անոր հետ ուտել խմելէն ետքը՝ կը պառկին կը հանգստանան։ Մարդը կէս գիշերուն կ'ելնէ ու կնկանը ունեցած կովերն ու եզները գողնալով կը քշէ կը տանի։ Տանտիկինը իմանալով իր պզտի որդւոյն հետ ետեւէն կը վազեն և կ'աշխատին որ գողին ձեռքէն խլեն ու ետ դարձընեն պախրէքը։ Իսկ գողը անոնց բերնին մէջ մէկ մէկ փայտեր թխելով գայլի նման կը ղրկէ որ ձայն չը կրնան հանել. խեղճերը այնպէս շնչասպառ մնալով հոն՝ ճամբուն վրայ կ'ընկնան, և գայլերը կուգան յօշոտելով կը լափեն զանոնք, որոնց ոսկորները միայն կը մնան առաւօտուն, և անկէ կը յայտնուի եղած եղեռնագործութիւնը։ Հետեւեալ օրերը երբ գողը պախրէքը քշելով կը տանէր, դիպուածով կնկան մեծ որդին կը պատահի անոնց, կը ճանչնայ կենդանիները, և առանց ձայն հանելու կ'երթայ կ'իմացընէ հարկ եղած տեղը, գողը իսկոյն կը բռնուի և մեր եղած լեռը Բասար—Ըմ պայի մէջ կը բանտարկուի։

Այս ամպաները, ինչպէս ըսինք, բնական ամրոցներ ըլլալուն, ինչպէս Ամպա բառն ալ հայերէն նոյնը կը նշանակէ, թագաւորական գանձերն ու ըստացուածքները և մթերքը անոնց մէջ կը պահուէին, ինչպէս որ մեր եղած լեռն ալ կային, և ժողովրդոց գլուխը նեղը գալուն հոն կը դիմեն կ'ապաստանին։ Թէոդորոսին բոլոր բանտարկեալները մեր յիշած երկու ամպաներուն մէջ պահուած էին, ուր բազմութեան պատճառաւ ջուրը չը բաւելուն՝ Մակտելայի լեռնաբերդը փոխադրուեցան ետքէն։

Տաղաւարաց օրերը մօտենալուն ամեն մէկ Ճէխապետ գիւղացիներէն հանգանակելով մէկ կամ երկու եզ կը գնեն և զանոնք կանխաւ իրենց իշխաններուն կը խրկեն, և Տաղաւարին օրն ալ իրենք անձամբ շնորհաւորութեան կ'երթան անոնց մօտ մինչեւ գետին խոնարհելով գլխոցնին։

Հապէշներուն քով ամենէն նշանաւոր և հանդիսա-

ւոր օրերնին Վերացման Խաչին օրն է. բայց իրենց հանդէսները չէ թէ եկեղեցական կամ կրօնական են, այլ քաղաքական. ըստ որում զատկական Կիւրակէի օրն անգամ Հայերէններու քով հասարակ կիւրակէի օրի պէս է: Սուրբ Խաչին շաբաթ օրը երեկոյին մօտ պատուաւոր անձինք և զօրք խումբ խումբ եղած կուգան լեռը իշխանին մօտ ձեռքերնին մէկ մէկ ծաղկապսակ ցուպեր բռնած: Իշխանը կաշիէ շինուած երկու փողերը հնչեցընել տալով, ինքը լերանը ամենէն բարձրկեկ տեղը կը նստի գետնին վրայ, և եկող այցելուք անոր բոլորտիքը կը շարուին. որոնց թիւը երբ շատնալու ըլլայ, կ'իջնան վար տափարակ տեղ մը, և երկու կողմի բաժնուելով կըսկսին իրենց պատերազմական խաղերը խաղալ, (որ իրենց քով տեսակ մը կրթութիւն է,) ծաղկապսակ ցուպերը ձեռքերնին բռնած: Հոն կը ներկայանայ թատերական ճակատամարտ մը, և երկու կողմն ալ կը ջանան իրենց պատերազմական ուժերնին ու հընարքնին ցոյց տալ, ո՛ր կողմը որ յաղթող ելնէ. սուրերնին քաշելով ու հրացաններ պարպելով կը սկսին հալածել ու քշել յաղթուող կողմը դէպ ի իշխանին մօտ, որ վերը իր տեղը նստած կ'ըլլայ: Ասիկայ տեսնելով անոնց մօտենալը՝ ոտքի կ'ելնէ կը կանգնի, կը գովէ յաղթականներն ու անոնց քաջութիւնը. Նոյն կէտին յանկարծ փողերն ալ հնչելով աղաղակ մըն է կը փրթի, որոնք ամեն կողմէն կը պոռան՝ "Սուրբ Խաչը եկաւ, սուրբ Խաչը եկաւ", ու զիրար կը շնորհաւորեն ամենքն ալ, որոնց մէջ կը գտնուին նաեւ մահմետականներ ու անկրօններ խառն, որոնք տօնակից կ'ըլլան քրիստոնէից: Այս աղաղակներուն միջոցին եզները կըսկսին բազմութեան մէջ մորթել, և իրենք անոնց բոլորտիքը նստած կորեկ-օղիներ կը խմեն կովեղջիւրներով և կ'ուրախանան: Այն հանդէսը թէպէտեւ յանուն կրօնի կը կատարուի, սակայն վայրենի սովորութիւններ ալ կը տեսնուի մէջերնին. օրինակի համար, կովը մորթած ժամանակնին, երբ տակաւին կիսակենդան գետինը տարածուած կը կենայ, անդիէն Հայերէն մէկը կը վազէ կու-

գայ եւ կովուն լեզուն խմելով կրակի արիւնքուայ ուտաք տաք ուտել: Կովը մորթուելէն յետոյ միջերնէն մէկը անոր մէկ աղիքը կը բերէ իշխանին առջեւ կը ներկայացնէ. նա ալ իւր ձեռքի թրովը ուղած կողմէն մեծկակ կտոր մը կը կտրէ կ'առնու եւ հում հում կ'ուտէ. միւս բազմականներն ալ կարգաւ մէկ մէկ կտոր կը կտրեն, բայց իշխանին կտրածէն քիչ պզտի ըլլայ, որ պատիւ կը համարուի անոր. այսպէս բոլոր հանդիսականները կը մասնաւորին միջէն: Նոյնպէս Սրպ'ամպայի Գմանդ իշխանին կողմէն եղող փոխանորդն ալ իրեն շնորհաւորութեան եկող հիւրերուն համար կովեր կը մորթէ: Նոյն գիշերը Ճրագալուցի հանդէս ալ ունին. առանձին տեղ մը նախ փայտեր կը դիզեն ու հացկերութէն ետքը իրենց ձեռքի ծաղկապատ ցուպերն ալ կը տանին կը դիզեն անոնց վրայ, եւ շատերն ալ դարձեալ բարակ ճիւղերէ խուրձեր պատրաստելով բոլորն ալ փայտակոյտին վրայ կը նետեն, որով մեծկակ բլուր մը կը դառնայ. եւ իրիկունը մթննալով կրակը կուտան եւ իրենք անոր լուսոյն նստելով ուրախութիւններ կ'ընեն բոլոր գիշերը: Բայց գիւղերուն մէջ կատարուած այս հրային հանդէսը աւելի կրօնական կերպարանք մի ունի, եւ կրնայ ուրիշ ազգաց քով նոյն հրավառութեան սովորութեանը համեմատել: Նոր վրայ Բ. հատորին մէջ ալ պիտի խօսիմ:

Այս ամսաներուն իշխանները տէրութեան վերաբերեալ գործքերու մէջ իրենք իրենցմէ չեն կրնար բան մը որոշել, կամ վճիռ մը տալ. այլ յատկացեալ տեղ մը կը ժողվին իրենց փոխանորդներուն եւ հոն գտնուող բոլոր պաշտօնէից հետ, որոնք որ թագաւորին կողմէն ընտրուած ու հաստատուած են, բայց ի հասարակ զինուորական գլխաւորներէ: Նաեւ անոնց ամենուն խորհրդովն ու խորհրդակցութեամբը կ'որոշուին ու կը վճռուին ամեն դատ ու գործք: Նաեւ թէ որ բանի մը համար թագաւորին գիր գրել հարկաւոր է կամ մարդ խրկել, ժողովականներուն հաճութիւնը առնելէն յետոյ մեծամեծները կը տնօրինեն զայն:

Այս օրինակ գո՞րծ մը համար էր որ մեր Բասր–Ամպա հասնելնէս քանի օր ետքը Արպ'ամպայի իշխանը եկաւ մեր գտնուած լերանը իշխանին մօտ։ Այս պատեհութեամբ նախ մեր քովն եկաւ այցելութեան և շնորհաւորութեան համար. և մենք խնդրեցինք իրմէ որ մեր գալուն լուրը շուտով Թագաւորին հասցընէ։ «Շատ լաւ, լաւ. այսօր ժողովք պիտի ընենք գործքի մը համար, ատոր վրայ ալ կը խորհինք։» Բայց յետոյ մեզի պատասխան եկաւ թէ, Ճըկայի տօնախմբան եկողներէն թէ ճանապարհին ապահովութեան և թէ գետերուն յորդութեան վրայօք բարի լուրեր առանք նախ և անկէ յետոյ գիւղին է մարդ խրկելը։ Այս օրինակ պատասխանելով մեր գլխուն տակ կակուղ բարձեր կը դնէին, և ոչ երբէք մեզ ծառայութիւն մը ընել կ'ուզէին, ինչպէս ետքէն իմացանք։

Մենք աւելի երկիւղ կը կրէինք Բասր–Ամպայի իշխանէն, որ չըլլայ թէ իւր հօրեղբօր որդւոյն Կապրօ Մետանի Ալէմին ապստամբութեան վրայ՝ ինքն ալ ապստամբի։ Ակկայ Թէոդորոսի իշխաններէն մէկն էր, և Ոնուրկէ երկրին կ'իշխէր, որ սահմանակից է Կոճամի, և մեր իշխանը ատոր հետ խիստ յարաբերութիւններ ունենալով և ընծաներ խրկելով՝ կասկածանքի տակ էր, և երբեմն իւր գործքն ալ կը յայտնէր ապստամբութեան տրամադիր ըլլալը։ Ասոր համար մեր քովն եղող մարդուն, զոր Շէխ–Ճիւմա հետերնիս դրած էր՝ Թագաւորին ներկայացընելու համար մեզի, աղաչեցինք որ շուտով մէկը ճարէ գտնայ գիր մը հասցընելու Թէոդորոսին ձեռքը. բայց նա ալ կարող չեղաւ բան մը ընել գետերուն յորդութեանը պատճառաւ։

Հապէշու երկիրը մնալնէս ի վեր անոնց համակրութիւնը առնելու համար քիչ շատ պարգեւներ կը նուիրէինք անոնց գլխաւորներուն, ինչպէս նաեւ Բասր–Ամպայի իշխանին և հոն գտնուող մեծերուն գացած ժամանակնիս ընծայեցինք, որուն ճերմակ խասա և որուն գունաւոր մետաքսէ էնթարիյ—, և ուրիշ տեսակ տեսակ կտաւեղէններ (պասմաներ) ինչպէս որ վարժեցու-

ցած էին զիրենք այն կողմերը գնացող Յիսուսեան և Անգլիքան քարոզիչներն և ուրիշ Եւրոպացիք, որոնց մինչև անգամ վառօդ, հրացան և դրամ պարգևել նին ըսեցինք : Արպ'ամպայի իշխանը այս սովորութեան համեմատ անուղղակի կերպով մը պարգևներ խնդրեց մեզմէ, և մենք ակամայ կամօք և աւելի յերկիւղէ ըս-տիպեալ կարմիր ծաղկեայ կերպասէ ութական կան-գուն երկու էնՊարէյօ տուինք իրեն և իւր փոխա-նորդին . Նոյնպէս իրենց արժանաւոր դատած մարդ-կանց ալ ստորին տեսակ ընծաներ և ոմանց դրամական պարգևներ խրկեցինք :

Այս պարգևներուս վրայ առանց Թագաւորէն յատուկ հրաման ընդունելու ըստ սովորութեան երկ-րին, իրենք իրենցմէ հրաման կ'ընեն գիւղի Շէխապետ-ներուն, որ փէֆ ըսուած հունտի ալիւրէն որոշուած չափով մը ամէն ամիս մեզ տալու հոգ տանին գիւղաց-ւոցմէ հաւաքելով, և 12 կտոր հանքային (1) աղ, (որ երեք հօխայի չափ կու գայ և ձմերուան մէջ երկու Թալէռ կ'-արժէ), և մէկ մէկ եզ ամէն ամիս տան մեզի : Ասիկայ արդարև շնորհք մըն էր, և մենք մեր շնորհակալու-Թիւնը իրենց մատուցինք . բայց մեր ձեռքը չը հասան այս հրամայած պաշարները . այլ Հապէշ սպասաւորնիս կ'ընդունէր և մեզմէ կ'ուրանար՝ գիւղացիք չեն տար ըսելով . և մենք լեզունին չհասկնալով չէինք կրնար ճշմարտուԹիւնը իմանալ : Գոհ կ'ըլլայինք մենք Թէ որ չը մեռնելու չափ ոգէպահիկ մը ընդունէինք . քանի որ հոն լեռը մնացինք, մեր գող սպասաւորին ձեռօք Ռ'ըլ-կայի տօնավաճառէն մեր դրամովը ծախու կ'առնէինք հարկաւոր աղը, և ուրիշ ամեն պիտոյքը, վասն զի չէ-ին Թողուր մեզ լեռնէն դուրս ելնելու որ ապստամբի ձեռք չանցնինք, և այսպէս կը համոզէին մեզի :

(1) Աղը հեռաւոր երկրէ գալուն և հաղուագիւտ ըլլալուն համար միշտ Թանկագին է, և իբրև դրամ ալ կը գործածուի :

## ԳԼՈՒԽ Ե.

*Մեր գալը առաջին անգամ Թէոդորոսին իմացընելնիս, եկած պատասխանը։ Գիւղացւոց երեսէն մեր տեսած վնասը։ Թէոդորոսի ապըստամբ իշխանները։ Ապու—Սելամի վախճանը։ Թէոդորոսին գիր խրկելնիս, և անկէ եկած պատասխանագիրը մեր իշխանաց ձեռքն անցնիլը։ Անգղիական բանակին գալը և Թէոդորոսին Մակտալա փախչիլը։ Ալէմիին Ճըլկայի վրայ գալն ու ետ փախչիլը, և իւր երկրին կողոպտուիլը։ Տէնպիացի ապստամբին բռնուիլն և անոր եղբօրը Թէոդորոսի քով գլխատուիլը։*

ԸՍՈՐ—ԱՄԳԱՑԻ և Արպ'ամպայի կուսակալ իշխաններն երբ գետերուն յորդութեան նուազիլը կ'իմանան, Վերացման Խաչին մօտ սեպտեմբեր ամսոյն 9 ին՝ իրենց կողմէն մէկ մէկ հաւատարիմ մարդ կը խրկեն Կէլլի-Թափօր՝ Թագաւորին մօտ, որ երեք օրուան ճանապարհ հեռի էր մեզմէ, և երկրին խաղաղութիւնը և ինչ վիճակի մէջ ըլլալը կը ծանուցանեն։ Այս տարի ալ իրենց սովորութեան համեմատ մարդ խրկելնուն՝ մեր գալն և ով ըլլալնիս ալ իմացուցին, բայց առանց գրութեան, պատճառելով թէ՝ ճանապարհի վրայ եղած ապստամբները կասկածի երթալով վնաս մը կը հասցընեն անոնց։

Քսան և հինգ օրէն զկնի, հոկտեմբեր ամսոյն 4 ին վերադարձան անոնք և երկուքնին միասին իշխաններուն մօտ երթալով՝ մեր ուտելեաց մասին Թէոդորոսի տըւած հրամանները հաղորդեցին. յետոյ մեր քովն եկան ու ըսին. «Թագաւորը ձեր գալուստը իմանալով շատ ուրախացաւ. ընդունեց ձեր խրկած օրհնութիւնն և ողջոյնը, ինքն ալ զձեզ կ'ողջունէ և ձեր գալուստը կը շնորհաւորէ։ Ինքն անձամբ ուզեց գալ և ձեզի իւր քովը տանիլ, ասոր համար քիչ մը աւելի երկար մնացինք հոն. բայց յետոյ գիտնալով որ ապստամբները խիստ շատցած են այս կողմերը, իւր գալը ետ ձգելով ըսաւ թէ՝ Աստուծով մօտ օրերս կամ ես անձամբ և կամ զօրքերս խրկելով քովս կ'ընդունիմ զկրօնք։» Այս

խօսքերը արաբերէնի կը թարգմանէր մեզի Մէհէմմէտ-Սէյիտ անուն մահմետական բարեկամնիս, որ Թէոդորոսի պաշտօնեաներէն էր, և գործքով մը մեր կողմերը գալով՝ Ռաս-Ալուլա կը կենար Թագաւորին գալստեանը սպասելով։

Թէպէտ և Թէոդորոս մեզի հեռուանց խնամք տանելով պատուէրներ խրկած էր իշխանաց՝ որ լաւ հոգտանին մեզի ամեն կողմէն, բայց անոնք ընդհակառակը կը վարուէին հետերնիս, որուն պատճառը ետքէն իմացանք։ Գիւղացիք մեր իշխանը սրտանց չը սիրելնուն՝ անոր հրամանները ալ չէին կատարեր, և առ երեսս զանազան պատճառներ կը կարկատէին յանդիմանութենէ ազատ ըլլալու համար։ Անոնց այսպէս շարժմունքներէն կ'իմացուէր նաև ապստամբութեան հակամէտ ըլլալնին․ ուստի կուսակալները իրենց նեղ ժամանակին անոնց օգնութեանը կարօտ ըլլալնուն, չէին ուզեր բռնութիւն բանեցընել, այլ սիրով կը վարուէին հետերնին․ այս էր պատճառը որ իրենց տուած հրամանները չէին յարգուեր և վնասն ալ մեզի կը դպչէր։ Կուսակալները իրենց և ամրոցին պահպանութեանը համար հազիւ թէ 300 զօրք ունէին․ և թշնամիի հետ կռուելու ժամանակ գիւղացւոց օգնութեանը կը կարօտին․ ասոնք թէ՛ տուրք կուտան տէրութեան իբրև հպատակ ժողովուրդ, և թէ իբրև զինուոր թշնամեաց դէմ կ'ելնեն՝ թէ որ ուզեն։ Թագաւորը քանի որ հեռու է, ոչ գիւղացիք և ոչ իշխանները կը վախնան անորմէ, բայց երբ մօտենալու ըլլայ, այնպէս կը փոխուին՝ որ կարծես թէ այն աներկիւղ ու յանձնապաստան մարդիկը չեն․ սաստիկ ահուդողի մէջ կ'ընկնան, բարեխօսներ կը բռնեն, մեղքերնին յանցաւոր գտնողները ներողութիւն կը խնդրեն։

Մեր Ռաս-Ալուլա մնացած ժամանակնիս Թէոդորոսին բոլոր տիրած երկրին ժողովուրդը գրեթէ ապստամբած էր իրմէ։ Թէկրիի կը տիրէր Տէճաշ-Քասսան․ Ալկայիդ և Ակըրա և անոնց կից բոլոր ընդարձակ երկիրներուն՝ Թըրսօ-Կոբազին․ Պեկեսսայու երկրին՝ Տէճաշ

—Խնինէն և Գամթալավմնտիէն. (այս տեղւոյն կից է Կէյալի—Թափօր, ուր կը նստէր Թէոդորոս)։ Այս յիշած իշխաններս ամենեւին վախ մը չունէին Թագաւորէն, ըստ որում անոր յարձակած ժամանակ կրնան լեռներուն մէջ ապաստանուիլ։ Շօա երկրին կը տիրէ Մէնիլէք իշխանազունը. Կոճամ երկրին ալ Թէկլաք—Հայմօն, որ 15 տարուէ ի վեր ապստամբած է։ Ուոլլու և Եէճու և ուրիշ Կալլայի երկիրներուն կ'իշխեն երկու մահմետական Կալլայի քաջ ամազոններ, որոնք կը կոչուին Ուըքիթ և Մըսթայթի։ Այս անուանի և զօրաւոր ապստամբներէն զատ կը գտնուին նաև շատ մը մանր մունր ապստամբներու խումբեր, որոնք աւելի գիւղերու մէջ ու ճամբաներու վրայ աւազակութիւններ ընելով կ'ապրին։ Չկայ մէկը որ յայտնի համարձակ Թէոդորոս Թագաւորին դէմ դնէ, վասն զի անոր վրայ գերբնական զօրութիւն մը կը կարծեն թէ կայ, և անմահից կարգը դրած են. որովհետև փորձով տեսած են որ նա հարիւրաւոր պատերազմներու մէջէն չէ թէ միայն չէ սպաննուած, այլ և ոչ մէկ վէրք մը ընդունելով դուրս ելած է. անոր համար երբ կը տեսնեն որ իրենց վրայ յարձակելով կուգայ, աւելի լաւ կը համարին թողուլ փախչիլ՝ քան թէ կռուելով յաղթուիլ և ձեռք իյնելով կրակով այրուիլ. ինչպէս որ սկսած էր վերջերը այս կերպով մահացընել պատերազմի գերիները։

Բաար—Ամպայի հարաւակողմը Կօճամ երկրին սահմանակից է Ակօ—Մըտըր գաւառը, որուն կ'իշխէ Աշա—Խմամը Թէոդորոսի կողմէն։ Այս իշխանը կռուոյ մը մէջ կը բռնէ Կոճամի երկրէն եկող ապստամբ մը՝ անոր 200ի չափ մարդիկներովը, և կը յանձնէ զանոնք իւր որդւոյն, որ հետն առած մէկ օրուան ճամբայ ալ յառաջ կուգայ դէպ ի Բաար—Ամպա, և կ'ըսուէր թէ՝ մեր լեռը պիտի բերէ զանոնք։ Թէկլաք—Հայմօն Կոճամի իշխանը զայն լսելով, յանկարծ վրայ հասնելով կը բռնէ Աշա—Խմամը, և լուր կը ղրկէ անոր տղուն որ կալանաւորները թողու, ապա թէ ոչ՝ կ'ըսէ, չարաչար կըսպաննեմ հայրդ։ Այս լուրին վրայ բռնած մարդիկը

Թող տայէն զատ՝ ինքն ալ Թէոդորոսի դէմ ապստամբ ըլլալով Թէլլաք—Հայլէյի իշխանութեան տակ կը մնայ, որուն կը հետեւին նաեւ իրենց Կօ—Մըլըր գաւառին բոլոր ժողովուրդը։ Այսպէս Թէոդորոսի իշխանութեան տակ քանի մը գաւառներ միայն մնացին՝ երբ Մագդալա մեկնեցաւ գնաց նա. և անոր հեռանալէն զկնի մնացեալներն ալ ապստամբեաց ձեռքն ընկան, ինչպէս եղան մեր իշխանաց տիրած երկիրներն ալ, ինչպէս պիտի տեսնենք յետոյ։

Հապէշու քրիստոնէից հոգեւոր իշխանութիւնը Ղպտի առաջնորդի մը ձեռք է, որ Եգիպտոսէն կուգայ, և մեծ ազդեցութիւն ունի ռամիկ ժողովրդեան վրայ։ Այս առաջնորդիս անունն էր Ապունա—Սէլամի, որ իւր ազդեցութիւնը չարաչար վարելով գաղտնի թելադրութիւններովը բոլոր երկրին ապստամբելուն պատճառ եղած էր։ Անոր այս ընթացքը Թէոդորոսին ալ յայտնի ըլլալով՝ իբրեւ ոխերիմ թշնամի կը նայէր անոր. վերջապէս չհամբերելով առաջնորդին բնակած Կոնտէր քաղաքը կործանել կուտայ, զինքն ալ բռնութեամբ Մագդալայի ամպան կը խրկէ և հոն բանտարկել կուտայ, ու դուռը զօրքեր պահապան կեցընելով չթողուր որ մէկը անոր հետ յարաբերութիւն ընէ։ Ապունա—Սէլամի այս կերպ նեղութեան մէջ գտնուած ժամանակ՝ մեր Բաար—Ամպա գալուն լուրն ալ անոր ականջը հասնելուն, իւր ցաւերը ու վիշտերը բազմապատկելով կը հիւանդանայ մերձ ի մահ, և սեպտեմբեր ամսոյն մէջ գերեզման կ՚իջնայ։ Ասոր մահուան լուրը և մեր Բաար—Ամպա հանելնուս աւետիսը գրեթէ մի և նոյն միջոցին Թէոդորոսին հաղորդուելով իւր մեծամեծներուն կ՚իմացընէ, և ամէնքն ալ կ՚ուրախանան։

Մենք թէպէտ և Թագաւորին կողմէն եկած բերկրալից լուրերուն վրայ ուրախ էինք, և ուրախութեամբ անոր գալուն կըսպասէինք, բայց ամէն օր մէկ մէկ տեսակ կասկածաւոր ձայներ լսելով մեր ուրախութիւնը տրտմութեան կը փոխուէին, և մարդկային երկիւղներով մեր միտքերը կը պաշարէին։

Մեր լերանը և Արպ'ամպայի իշխանները օր մը իրենց մարդիկներովը երկրի մը վրայ գացին յարձակելու յափշտակելու և կողոպտելու . այս ամբոխը պատեհ համարելով, Մէհէմմէտ Եօնուզ անուն մահմետական մը հետ խօսք կապեցինք, որ արաբերէն գիր մը գրենք տանք իրեն որ տանի Թէոդորոս Թագաւորի ձեռքը հասցընէ ։ Մէհէմմէտ առջի բերան վախցաւ մեր խնդիրքը կատարելու . և իրաւունք ունէր, վասն զի գիտէր որ իշխաններէն ծածուկ Թագաւորին գիր տանիլը կասկած կուտայ անոնց և տանողը իբր յանցաւոր կը դատապարտուի . ասկէ ի զատ իշխանները միաբերնին դրած ըլլալով Թէոդորոսին գանձերն ու գոյքերը յափշտակելով ապստամբելու, անոր համար չէին ուզեր երբէք անոր մեր քովը գալը, այլ աւելի հեռանալուն կըսպասէին որ իրենց խորհուրդը ի գործ դնեն ։ Այս ամենը Մէհէմմէտ Եօնուզ աղէկ գիտնալով չէր ուզեր գիրը տանիլ. բայց յետոյ համոզուելով յանձն առաւ կատարել մեր խնդիրքը ակնկալութեան յոյսերով ։ Աւստի նամակը ծալեցինք փոքր ծալքերով և կաշիի մէջ փաթաթելով չորս դին կարեցինք ու համայլի նման վզէն կախեցինք, ինչպէս սովորութիւն ունին միշտ այնպիսի պահարաններ եւրոպայի ծրարներ կախելու ։ Պըլկայի տօնախմբութեան վերջին օրը, որ էր հոկտեմբերի 11, ճամբայ ելաւ և չորրորդ օրը հոն հասաւ և նամակը Թագաւորին մատուց ։

Նամակը ի ներկայութեան Թղթատարին, ինչպէս որ սովորութիւն է, Թագաւորին դիմացը Թարգմանած ժամանակնին՝ ուրախութիւնը անոր երեսին վրայ կըսկսի փայլիլ, և ի նշան գոհունակութեան և ընդունելութեան նամակին՝ անմիջապէս ջորի մը կը պարգեւէ Թղթատարին ։ Մէհէմմէտ Եօնուզ հոն Թագաւորին տալիք հրամաններուն և գրին պատասխանին կըսպասէ, և իր մէկ բարեկամին ձեռքով ամեն ինչ կ'իմացընէ մեզի ։ Քանի մը օր սպասելէն ետքը կ'ընդունի Թագաւորէն մեր գրոյն պատասխանէն զատ առանձին նամակ մըն ալ մեր լերանը իշխաններուն գրուած ։ Իսկ մեր Թղթատարը, ինչպէս վերը պատճառը պատմեցինք, ինքն ան-

ճամբ վախնալով նաւակները բերելու, կը հարկադրէ ուրիշի ձեռքով խրկելու. ան ալ միամտութեամբ մեր գրին պատասխանն ալ միւսին հետ կը բերէ իշխանաց ձեռքը կը յանձնէ ։ Անոնք չէ թէ միայն մեր նամակը դուրս չեն հաներ, այլ և մեր ծածուկ թղթակցութիւնն իմանալով կրակին ծուխ աչքով նայիլ մեզի. երբեմն երեսնին կը խոժոռէին և բարեւ տալէ կը դադարին, մինչեւ որ ապստամբութեան հուրը ընդհանուր բորբոքուելով կը թողուն կը փախչին լեռնէն, ինչպէս պիտի տեսնենք ։

Մեր նամակը գրել խրկելէն ետքը շատ չանցաւ՝ դժբաղդաբար Թէոդորոս Անգղիոյ բանակին իր վրայ ուղղակի գալը լսելով, հակառմըներին վերջերը իր բանակատեղը այն եղած քանի մը տուները կրակի տալով կը թողու Կէլայի—Թափօրը, ու Մակտելայի անառիկ լերան քիչ քիչ մօտենալով հոն կ՚ապաստանի, որ ութ կամ ինն օր աւելի հեռու է մեզնէ ։ Այս ալ չը մոռնանք ըսելու՝ որ անգղիական բանակին գալուն առջի լուրը լըսելով, այն օրէն աչքէ կը հանէ իւր քովն եղող բոլոր սպիտակ մարդիկը, որոնք լաւ մեծի մասին Եւրոպացիք էին, և Մակտելայի մէջ բանտարկեալ սպիտակներուն պէս ատելի կ՚ըլլան իրեն, և սրտին ցաւէն կը հրամայէ որ անոնց շնորհած զարդարուն ջորիները ետ առնելով ուրիշ անպիտան ջորիներ հեծցուցած իւր հետ Մակտելա բերեն, ինչպէս պատմեցին ոմանք ։

Թէոդորոսի հեռանալուն լուրը և անգղիական բանակին գալը երբ լսեցինք մենք, խոր տրտմութեան մէջ թաղուած մնացինք. կարծես թէ խաւար ամպեր մեր չորս դին պատեցին, մտատանջութեան ալիքներու մէջ սկսաւ մեր միտքը ծփիլ, և մեր դժբաղդ ապագայն մթութեանց մէջ կը նշմարէինք, և արդէն շատ չանցած սկսանք զգալ անոր դառնութիւնները, և շղթայի օղակներու նման իրարու ագուցուած մէկ նեղութենէ ուրիշ նեղութեան մէջ գահավէժ եղանք ձեռքէ ձեռք ընկնելով, և տղու նման խաղալիկ մնացինք վայրենի ժողովրդոց մէջ ։

Ապստամբք գրեթէ Թէոդորոսի բոլոր երկրին տի-
րած էին, և Ճըլկայի իշխանութիւնը միայն ազատ կը
մնար՝ Թագաւորին մօտ ըլլալուն համար, ուրկէ վախ-
նալով ապստամբք չէին համարձակեր արշաւելու Ճըլ-
կայի վրայ, և ոչ երկրացիք կրնային խլրտիլ գլուխ վեր-
ցնելու յայտնապէս: Այս երկրին հարաւակողմը կ'
ընկնի Կոճամի մեծ իշխան Թէլլաք–Հայլօ, որուն ներ-
քեւ կը գտնուէին ուրիշ ինքնագլուխ ապստամբներու
խումբեր: Նոյն միջոցներուն այս իշխանը մեռնելով
Թէպէտ և իր որդին տեղն անցաւ, բայց հարձորդի մ'
ալ ունենալով անկէ մեծ, և ժառանգութեան իրաւ-
ունքի կռիւ մը ծագելով մէջերնին՝ ապստամբեցաւ
հարազատ որդւոյն դէմ, և երկրին մէկ մասին տիրեց
գիւղացւոց հաճութեամբը: Նոյնպէս Ճըլկայի հիւսի-
սակողմը կը գտնուի Թըրսօ–Կոլազի երեւելի ապըս-
տամբ իշխանն իւր ապստամբական խումբերովը:

Ապստամբները Թէոդորոսին Մակտելա լեռը հեռա-
նալը լսելուն՝ կ'ուզեն փորձ փորձել Ճըլկայի երկրին
տիրելու, և չորս դիէն կը յարձակին կուգան հոն: Կո-
ճամի իշխանութեանը տակ եղող Ալէմի անուն ապըս-
տամբը, որուն երեք հազարի չափ զօրքերը Թէոդորոս
Թրէ անցուցեր էր յառաջուց, կը յարձակի կուգայ
Ճըլկայի իշխանութեան Տակուսա կոչուած երկրին վը-
րայ, որ երկու աւուր ճանապարհ է Ճըլկայէն, և հոն
կը բանակի: Այս լուրը մեր ականջը հասնելուն՝ քունը
աչուընէս փախաւ, երկիւղը մեր սիրտերը պատեց,
չէինք գիտեր մեր վախճանին վրան ինչ մտածենքն. և
եթէ աւելի դէպ ի մեր եղած տեղը յառաջ գալու ըլ-
լայ՝ կը զգայինք որ մեր բանը լմնցած է, ըստ որում ոչ
գիւղացւոց, ոչ զօրաց և ոչ մեր իշխանաց վրայ վստա-
հութիւն ունէինք, որոնցմէ մեծ մասը աւելի ապըս-
տամբելու՝ քան թէ Թագաւորին Թուրը քաշելու հա-
կամէտ էին: Վասն զի մէկը չկար որ Թագաւորը սիրէ,
ամէնքն ալ ինքնագլուխ ըլլալ կ'ուզէն, և երկիրը միշտ
խռովութեան մէջ ըլլալ կը փափաքին, որպէս զի իրենք
ալ իրենց չար խորհուրդները ի գործ դնեն աներկիւղ.

ինչպէս գայլը որ որս ընելու համար ամպամած ու մառախլապատ եղանակներ կը փնտռէ ։

Սերի շխանները առջի բերան չմիաբանեցան Ալէմինի վրայ դիմելու , ըստ որում Արգ'ամպայի իշխանը Բար—Ամպայի իշխանէն կը կասկածէր , վասն զի սար հօրեղբօրորդին ապստամբ Ալէմինքով կը գտնուէր , և կասկածն այն էր որ կռուոյ ժամանակ Բար—Ամպայի իշխանըն ալ անոնց կողմը կ'անցնի և իւր զօրքերը թրէ կ'անցընէ ։ Այանկ խորամանկութիւն գրեթէ ամէնքն ալ ունին , անոր համար է որ իրարու վրայ ալ վստահութիւն չունին ։ Քանի մը օր անցնելէն յետոյ այն կողմի գիւղացիք եկան ըսին մեր իշխանաց , թէ « Ձիւնի ժամանակ է , և թշնամւոյն գալը մեզի մեծ վնաս կ'ըլլայ , անոր համար կը մեռնինք ու թող չենք տար որ նա գայ և մեր վարուցանը աւրէ աւրըշտըկէ » ։ Ասոր վրայ Բար—Ամպայի իշխանը իւր ձեռաց տակն եղող բոլոր մեծերը կանչելով յայտնեց անոնց իւր անխարդախ սիրտ ունենալը , և իւր խորհուրդները անոնց պարզեց՝ թէ պէտք է ապստամբին վրայ յարձակում ընել , եթէ նա աւելի մօտենալու ըլլայ ։ Ուստի երկրորդ օրը թէ իշխանք և թէ բոլոր մեծամեծներն ու զօրքերը և պատերազմող գիւղացիք որոշեալ տեղ մը ժողովեցան , որոնք խորհրդակցելով որոշեցին երկու իշխանաց կողմէն ալ մարդիկ խրկել թշնամեաց բանակը՝ անոնց զօրութիւնն ու ընթացքը լրտեսելու համար ։ Երկու օրէն ետ դառնալով թէպէտեւ անոնց թէ թուոյն նըւազութեան և թէ զինուց և պատրաստութեան կողմէ խեղճ ըլլալն իմացուելով , անոնց վրայ յարձակելու պատրաստութիւն կը տեսնէին , մէկ մ'ալ լուեցաւ որ թշնամին յանկարծ գիշերանց փախեր գնացեր է ։ Անոնց փախչելուն պատճառն էր բարձր լերան մը վրայէն տեսած կրակին լոյսը , զոր իրենց լրտեսները կը վառէին թագաւորին գալը ցոյց տալով ։ Այս սովորութիւնն ունին նաեւ թագաւորին հպատակ գիւղացիները . երբ հեռուանց ապստամբաց յարձակումները իրենց իշխանաց հաղորդել ուզեն , բարձր տեղ մը կրակ

կը վառեն որ հեռագծէ մը աւելի ստոյգ լուր կը հաղորդէ։ Աշէմի ապստամբին այսպէս յանկարծ փախչելէն ետքը բոլոր իշխանները խորհուրդ ընելով՝ առանց իրենց պատրաստութենէ ետ կենալու, անակնկալ պահու մէջ արշաւեցին անոր երկրին վրայ Նոյեմբեր 10 ին, և 2500 ի չափ տաւար ու կենդանի, և ուրիշ կահ կարասիք, մինչև կանանց կունակին եղած մէկ հատիկ շապիկը կողոպտելով ետ դարձան։ Տաւարները տէրութեան օրինաց համեմատ բաժնելէն յետոյ, հատ մը եզ ալ մեզի պարգևեցին. աւելցածը մնաց իշխանաց քով, որոնք իրենց զօրաց պիտոյից համար հետզհետէ կը մորթէին։

Թէոդորոս քանի մը անգամ իրաւացի պատճառներէ գրգռեալ Տենդխայի երկիրը, որ օրուկէս ճանապարհ հեռի է Կէլլի-Թափօրէն, կողոպտելով ու տակնուվրայ ընելով յետին խեղճութեան մէջ կը թողու ժողովուրդը, յորմէ սոսկացեալ ոմանք փախերնուն կը հպատակին Թագաւորին։ Բայց նա երբ Կէլլի-Թափօրէն կը մեկնի, Տենդխացիք որ առանց իշխանի էին, երկու կողմի բաժնուելով՝ մէկ կողմը Թըրսօ-Վօլվօլի զօրաւոր ապստամբին իշխանութեան ներքև կը մտնեն, և միւս մասը իրենց ծերունեաց հաճութեամբը Ճըլկայի կուսակալներուն, այսինքն մեր լերանը իշխաններուն անձնատուր կ'ըլլան։

Այն միջոցներուն Տենդխայի գիւղերէն ուրիշ ապստամբ մի ևս տեսնուեցաւ իր արբանեակներով, որու բանը գործն էր Թէոդորոսի շարժումները բոլոր ապստամբաց ծանուցանել կրակի նշաններով. և նեղը մընացած ժամանակ ձեռք չընկնելու համար՝ Տենդխա երկիրը Դանա գետին կղզին փախչելով կ'ազատի, ուր տարած էր ապահովութեան համար նաև իր ընտանիքը։ Ասկէ ի զատ շատ անգամ ալ այն կողմերէն անցնող Տենդխացի ճամբորդներն ալ գիշերանց վրանին յարձակուելով կը կողոպտէ։ Բասր-Ամպայի իշխանք լսելով այս մարդուն անօրէն վարմունքները, բոլոր գիւղական զօրքերով յանկարծ գիշեր մը ի բուն քշելով կը

կոխեն ապստամբին գիւղը․ բայց զանիկա հոն չգտնելով՝ անոր հայրը կը բռնեն և 800ի չափ տաւար Թալելով՝ Շաար—Ամպայի մէջ հայրը շղԹայի կը զարնեն ։ Շատ չանցնիր այն կողմերու գիւղացիք յանկարծ գիշեր մը ապստամբին գիւղը կը յարձակին, կը բռնեն զինքը բոլոր մարդիկներովը և կը յանձնեն Շաար—Ամպայի լերան իշխանին, և աւետեաց լուր կը խրկեն Թէոդորոսին ։ Այս ապստամբին մէկ եղբայրը Թագաւորին քով զինուորուԹեան մէջ գտնուելով, երբ կը լսէ զայն և բրած մատնուԹիւնները կ'իմանայ, մեկէն գլխատել կու տայ․ և բառ իւրեանց կանոնի՝ Թէպէտև եղբօրը հետ գաղտնի հաղորդակցուԹիւն և կամակցուԹիւն ալ չունենար, պէտք էր որ գլխատուի ։

---

## ԳԼՈՒԽ Զ.

Թէոդորոս—Կոմալին Ճըլկայի երկիրը յարձակիլը․ քանակուԹիւնը․ գերեաց՝ փոխանակուԹեամբ արձակուիլը ։ Թէոդորոս—Կոմալի ետ կը դառնայ ։ Շաար—Ամպայի Թեսեմմա իշխանին խորամանկ հարցմունքները ։ Երկրորդ յարձակումն Շաար—Ամպայի վրայ ։ Մեր ծառաներուն քրիստոնէուԹիւնը ։ Թեսեմմայի և միւս իշխանաց հնարքները ․ և վարպետուԹեամբ մեզի կողոպտելնին ․ անոնց փախուստը ․ Բանտարկեալները շղԹայէ ազատելնիս ։

Մեր լերան իշխանները Թագաւորին հեռանալէն յետոյ՝ միայն Թէոդորոս—Կոմալի ապստամբ իշխանէն երկիւղ կը կրէին, որուն յառաջուց բաւական զօրքերը ջարդած և քանի մը մեծերն ալ յայտնի սպաննած էին ։ Անոր համար միշտ սուտ լուրեր ու համբաւներ կը հանէին անոր երկիրներուն մէջ, իբր Թէ Թէոդորոսէն լուր առած են որ կը պատրաստուի Ճըլկա գալու․ և այս սուտ համբաւներով կը ջանային կամ խաղաղ ձգել տալ Թէոդորոս—Կոմալին իրենց վրայ յարձակիլը, և կամ գոնէ ուշացընել, որ իրենց ժամանակ ըլլայ մտածելու և ազատուԹեան հնարք մը գտնելու ։ Բայց երբ լսեց Թէոդորոս—Կոմալի՝ Թագաւորին Մաքտեայի մօտ բը-

նակիը, իւր բոլոր զօրքերը և գիւղացիները գումարելով յանկարծ կուգայ Ճըլկայի երկիրը կը կոխէ, և դեկտեմբեր 22ին՝ Պաւլթի մարգարէի նախատօնին օրը մինչեւ տօնակատարին տեղը կը հասնին։ Տեղացիք տեսնելով անոնց գալը, կը ցրուին կը փախչին իրենց ունեցած աղքատիկ ինչքերովը, և անասուններն կը բերեն մեր լերանը ձորերուն մէջ անքոյթ տեղուանք կը պահեն։ Իսկ Բաբ-Ալմայի և Արպ՚ամպայի իշխանաց ծանօթ ու բարեկամ եղող գիւղացիք իրենց մարդիկներովը դէպ ի լեռը կուգան կը ժողվին։

Այս յանկարծահաս դէպքերը որքան աւելի որ սասկում ու երկիւղ կը պատճառէին մեզ, այնքան աւելի մեր բոլոր խորհուրդները կը ցրէին, և մեր մտածմունքները ամենեւին օգուտ մը չէին ըներ. այլ ինչպէս սովոր էինք այսօրինակ դէպքերու մէջ առ Աստուած միշտ դիմելու, դարձեալ զնա մեզի օգնական կը կանչէինք, որ փրկէ թէ զմեզ և թէ բոլոր խռովեալ երկիրը և խեղճ ժողովուրդը, որ փառաւոր իշխաններու կրից զոհ կ՚երթային։

Կովազիին զօրքերը դէպ ի մեր լերանը քով սկսան արշաւել, և ճամբուն վրայ իրենց հանդիպած մարդիկը կողոպտելէ ետքը, թեւերնին կապելով բանակը կը խրկէին։ Այն օրերը մեր լերան զօրքերը թշնամեաց զօրքերուն յանկարծ պատահելով կը զարնուին անոնց հետ, իրենցմէ հինգ մարդ կ՚ընկնի, բայց թշնամեաց կողմէն ալ զօրապետ մը և հասարակ զինուոր մը ձերբակալելով կը բերեն Բաբ-Ալմա և հոն կը բանտարկեն։ Մեր իշխանը վախուն լեռնէն դուրս չէր ելներ և հոն ապաստանուած կը կենար և զայն պաշտպանել միայն կ՚ուզէր։ Բայց Արպ՚ամպա թշնամիէն տակաւին հեռու ըլլալով վախ չունէր, և անոր իշխանը իւր զօրքերովը մէկտեղ մեզի մօտ լերան մը վրայէն ապստամբին բանակը կը դիտէր և անոր վրայօք տեղեկութիւններ կ՚առնէր։ Քանի անգամ մարդ խրկեց մեր լերան իշխանը իւր բոլոր գիւղացիներուն որ գան ժողվին իրեն քով, բայց անոնք զանազան պատճառներով, երբեմն՝ մեր անա-

ռուններըը դեռ չէնք փախուցած, և երբեմն՝ մենք կարող չէնք այն ապստամբին հետ կռուիլ ընելով խոյս կու տային։ Հազիւ թէ այն երեք աւուր մէջ 800ի չափ պատերազմի կարող գիւղացիներ եկան ժողովեցան։ Իսկ Սըպ'ամպայի իշխանին քով 2000 հոգի մը եղան, որովհետեւ զանիկա աւելի կը սիրէին, և այն տեղի ջուրը առատ էր և չէին նեղուեր. ընդհակառակը մեր եղած լերան ջուրը չէր կրնար շատ բազմութեան բաւական ըլլալ։

Հետեւեալ օրը Կոմաղին բանակը վերցընելով Ճըւկայի հարաւային կիրճէն ներս մտաւ և բարձր լերան վրայ կանգ առաւ, ուրկէ շիտակ մեր լերան վրայ կը դիտէր։ Ժամը 6ին մօտ 100ի չափ անձինք եկան ապստամբին կողմէն, որոնց մէջ Ճըլկացիք ալ կային, և անոնց դիտել կու տային մեր լերան չորս կողմը։ Նոքը աւելի մօտենալով մեզի, սկսան Թէոդորոս Թագաւորը պախարակել և անոր վարմունքները վար զարնել, և ընդհակառակը իրենց իշխանը Կոմաղին գովել, մեծ համբաւ տալ անոր, և կ'ըսէին. "Ինչո՞ւ անձնատուր չէք ըլլար սանկ մէկ ժողովրդասէր և անփառասէր իշխանի մը, որու տակ աւելի հանգիստ ու ապահով կըրնաք ըլլալ։" Որոնց պատասխան տուին մեր կողմի մարդիկը՝ մեծցընելով Թէոդորոսը, որուն աւելի կ'ուզէն հնազանդիլ իբրեւ օրինաւոր Թագաւորի՝ քան թէ ապստամբի մը։ Ասոր վրայ իրենց բանագնացութիւնը աւելի ծանր կերպարանք մը առացաւ։ Բաար—Սմդայի իշխանը սկսաւ Թշնամեաց եղած կողմի արեւելեան դուռը ամրցընել տալ զօրքերով և պատերազմական գիւղացիներով. նոյնպէս և զօրքերն ալ կարգի դրաւ և կըռուոյ պատրաստութիւններ տեսաւ, որպէս զի եթէ անոնք դէպ ի դուռը յառաջ գալու ըլլան՝ անպատրաստ չը գտնուի։ Կարծես թէ երկու կողմէն ալ նշանի կըսպասէին, և շատ չքշեց երբ պատգամաբերութեան եկող մարդոց մէջ ծանր ու նախատական խօսքեր կը զըուցուէր. յանկարծ մեր կողմէն մէկը հրազէնք պարպելով գնաց Թշնամեաց մէկուն դիպաւ և սպան-

նեց վայն ։ Այս որ լսեցինք մենք ներսէն, զգացինք որ վտանգը քանի կ'երթայ աւելի կը մօտենայ մեզի, և մեր սովորական զէնքերը ձեռք առինք, այն է Աստուծոյ առջեւն ընկնիլ և անոր ողորմութիւնը խնդրել, ու կ'ըսէինք. «Ով Տէր, դու որ պահեցիր զմեզ ողջ և անվնաս այն բարբարոս Արաբացւոցմէ և յուղկահարներէ թէ մեզի և թէ մեր բոլոր գոյքերը, պահէ և այժմ այս քրիստոնեայ երկրին ժողովրդոցը ձեռքէն. և մի թողուր մեզի որ փորձութեանց մատնուինք՝ երբ քու աստուածային փառացդ և անուանդ համար չէ ։ Իսկ թէ որ քու սուրբ կամքդ այսպէս կ'ուզէ, օրհնեալ ըլլայ այն. աչքքս ի մեզ՝ և մեք ի դժոխս ։»

Այն օրը ապստամբ թշնամիք երկար բարակ խօսելէն ետքը կը թողուն կ'երթան, որովհետեւ իրենց մեծէն հրաման չունէին լերան վրայ յարձակելու ։ Հետեւեալ օրը առաջինէն աւելի բազմութեամբ եկան լեցուեցան նոյն դրանը դիմաց. երկու կողմէն երկարօրէն խօսակցեցան. Կովազին պատգամախօսները միշտ քաղցրութեամբ կը պատասխանէին ըսելով թէ՝ «Մեր մեծը ծերունի և գրեթէ կրօնաւոր անձ մին է. կարգաւորները լաւ կը սիրէ ու կը պատուէ. լաւ աչքով կը նայի եկեղեցւոյն և իր ժողովրդեան. Թագաւորին նման բռնութիւններ չը բանեցըներ, ժողովուրդը և կամ զօրքերը թրէ չանցըներ, կրակով մարդ չայրեր, անոր համար մեծ սիրով անոր իշխանութեան թեւին տակ կը ժողվին ամենքն ալ, ինչպէս որ եկան հաւաքուեցան ձեր իշխանութեան ներքեւ գտնուող երկիրները ։ Ինչու ուրեմն միայն Ճըլկայի գիւղաւանը չը պիտի հնազանդի, և ինչու Բաար—Ամզան և անոր իշխանը անձնատուր չպիտի ըլլան առանց երկու կողմէն արիւն թափուելու ։» Մեր իշխանին կողմէն այսպէս պատասխան տրուեցաւ բարձր ձայնով. «Ես թագաւորին ծառայն եմ և գերին. ես իմ վեհապետս միայն կը ճանչնամ, զանիկայ չը ճանչցողն ու անոր չը հնազանդողը ապստամբ կը համարուի, ուստի ես ալ զինքը չեմ ճանչնար և չեմ հնազանդիր ։ Իմ թագաւորս դեռ կենդանի

է, պարտաւոր եմ անոր թուրը քաշել և ոչ ուրիշին։»

Այս բանախօսութիւնները երկու կողմէն բաւական երկարելէն ետքը մեկնեցան գացին իրենց իշխանին քով. և երեկոյեան դէմ կրկին դարձան եկան, և սկսան առաջինէն աւելի մեղմ ու համոզանքով խօսիլ. իրենց մէկ զօրապետը կը խնդրէին, որ քանի մը օր առաջ կռուոյ մէջ Ճրլկացւոց ձեռք իյներ էր, և զայն ըսպաննած կը կարծէին։ Նկան անմիջապէս շալկեցին տարին յիշեալ զօրապետը շղթաներով կապուած և հեռուանց ցոյց տուին անոնց։ Որոնք երբ ողջառողջ զինքը տեսան, խիստ ուրախացան, և խնդրեցին սիրով արձըկել զայն և անոր տեղ իրենք ալ իրենց բռնած գերիներէն մէկը արձըկելու խոստացան։ (Ինչպէս մը փոխարէն անհատ մը արձըկելու սովորութիւնը կայ Հապէշից մէջ՝ առանց անոնց աճնական արժէքը նայելու։) Պատասխան տուին Բոսր—Էմպացիք թէ՝ «Մենք մեր գերիները ձեզի պէս ճամբաներու վրայէ և տներու մէջէն բռնած չեմք, այլ պատերազմի դաշտին վըրայ և իբրեւ ապստամբ ընդդէմ Թագաւորին, ուստի պէտք է որ Թագաւորին կամացը համեմատ սպաննեմք զայն։ Նոր վրայ սկսաւ շղթայուած զօրապետը պոռալ և աղաչել բռելով իւր կողմի մարդոց դէմ. «Դուք լաւ գիտէք որ ինձի ազատութիւն չը կայ ատոնց ձեռքէն, և իմ մահս գրեթէ վճռուածի պէս է։ Բայց իմ իշխանիս. զիս այսչափ կը սիրէ որ իմ անձիս փոխարէն մէկ անհատ մի միայն փոխանակել կ'ուզէ, որու քով 50ի չափ կալանաւորներ կան Ճրլկացւոցմէ. ինչո՞ւ իմ անձիս փոխարէն տասը հոգի չարձակեր իմ տէրս։ Նոր քով եղող գերիներուն մահ չը կայ՝ գիտեմ, բայց իմ մահս գլխիս վերեւը պատրաստ կը սպասէ։» Այսչափ անօգուտ բանակցութենէ ետքը զիրար բարեւելով մեկնեցան։

Չորրորդ օրը դարձեալ ժամը 6ին մօտ բազմութեամբ լերան վրայ թափեցան, և սկսան խօսակցիլ և իրենց զօրապետը խնդրել, անոր փոխարէն 5 կամ 6 հոգի խոստանալով արձակել։ Որուն պատասխանեցին թէ, հաճութեամբ կ'ազատեմք ձեր մարդը՝ թէ որ ա-

նոր փրկանացը փոխարէն բոլոր մեր մարդիկը ետ դարձընէք, ապա թէ ոչ կարելի չէ ձեր խնդիրքն ընդունել։ Վերջապէս յանձն առին բոլորը արձըկել. և այս փոխադարձ ազատութեան խնդիրը սիրով լուծուեցաւ։

Հինգերորդ օրը տեսանք որ ապստամբ Կոլաղի իշխանը բանակը անկէ վերուցեր և Էրզ'ռումայի դէմ դրեր է. և թէպէտ այս լերան իշխանը ուզեց դէմ դընել անոր՝ չէ թէ լեռը մտնելուն, այս լերանը ստորոտը եղած կիրճէն ներս անցնելուն, բայց չը կարողացաւ. ու 3 կամ 4 հոգի երկու կողմէն սպաննուելով մտաւ Կոլաղի իր մարդիկներովը կիրճին մէջ, և հոն գտնուող գիւղացւոց տուները, որոնք որ չէին ուզեր հնազանդիլ, աւրելով անոնց տաւարներն ալ կը յափշտակէր։ Քանի մը օր միայն հոն մնալով մեկնեցաւ անկէ ալ, առանց դէպ ի ներս խորաձորերը մտնելու. (Յունվար 1868։)

Կոլաղին դեռ ասկէ չը հեռացած, Թեսեմմն՝ որ մեր եղած լերանը իշխանին անունն էր, իւր մտաց չար խորհուրդները մեզնէ ծածկելով, երբեմն կը յուսադրէր զմեզ ու կը քաջալերէր. «Ես, կ'ըսէր, քանի որ ողջ եմ, դուք մի վախնաք. ամեն կողմէն կայնած եմ ձեզ համար, որ ապահով ու հանգիստ ըլլաք։» Այսպէս սրտապնդելէն յետոյ, մեր Հայէշ Թարգմանը, որու անհաւատարմութիւնը և ըրած գողութիւնները վերը յիշեցի, որու սիրտը գրաւած էր Թեսեմմն և իւր գաղտնիքն անոր տուած, կը խրկէ մեր քովը վարպետութեամբ հարցափորձ ընելու ու բան իմանալու. «Գիտեմ, կ'ըսէ իշխանին բերնովը, այդ մնտուկները թագաւորին են. բայց թէ որ ունիք վառօդ, հրացէնք և կամ թնդանօթ, յանձնեցէք մեզ, որ անոնցմով կարող ըլլանք թշնամին հալածել. և թէ որ հարկ ըլլայ, ես պատասխան կուտամ թագաւորին, դուք միամիտ կեցէք։» Այս կերպ լեզուներ շատ անգամ բանեցընելով՝ գրեթէ կը ձանձրացընէր մեզի, և դիտաւորութիւնն այն էր որ հասկընալ կ'ուզէր մնտուկներուն մէջ եղածը։ Մենք պատասխան կուտայինք, թէ «Կարգաւորաց քով միայն աւետարան, ուրիշ եկեղեցական գրքեր ու խաչ կը գտնուին.

իսկ ձեր կարծած իրքերը մեր քով գտնուիլը թէ՛ ամօթ է մեզ և թէ մեր օրինաց՝ կրօնին և պարտուցը հակառակ. մեր զէնքը Աստուծոյ խօսքն է, զոր կը քարոզենք. մեր թնդանօթները Քրիստոսի խաղաղութիւնն է, զոր իւր առաքելոցը տուաւ: Եթէ իշխանը այս մեր խօսքերուն չը համոզուիր և չուզէր հաւատալ մեզի, ահաւասիկ պատրաստ ենք, երբ որ կ'ուզէ՝ սնտուկներուն մէջ եղածներն իրեն կը ցուցընենք:»

Մեր այս կերպ պատասխաններուն վրայ իւր պահանջմունքները կը փոխէ, աղաչաւոր կերպարանք մը տալով անոնց, ու դարձեալ մեր թարգմանին ձեռօք լուր կը խրկէ մեզ ըսելով. “Վաղը Կոմանին դէմ պատերազմի պիտի ելնեմ, բայց կը ցաւիմ որ կարմիր և նոր պատմուճան մը չունիմ հագնելու, և պիտի ստիպուիմ այս վրայիս հին հագուստներով անոր դէմ կռուելու, որ մեծ ամօթ է մեզի: Իսկ թէ որ կարմիր նոր պատմուճաններ հագած ըլլամ, այն ժամանակ թըշնամին զիս ճանչնալով շուտ իմ վրաս կը յարձակի և իր հարուածները ինծի կ'ուղղէ, և իմ զօրքերս անպարտտեղը չեն ջարդուիր»: Այս խօսքերուն ինչ արժէք ունենալնին թէպէտև կը կռահէինք, սակայն ստիպուեցանք կարմիր խո–րնիէ նոր էնթարի մ'ալ տալ իրեն գաղտուկ: Նոյն գիշերը հագաւ զայն, և առանց մէկը տեսնելու մեր քովէն ելաւ շնորհակալ ըլլալու. երեք անգամ գետինը խոնարհեցաւ գլխացնիս, ու ըսաւ. “Այս ձեր շնորհաց փոխարէն պատրաստ եմ իմ անձս ձեր անձին տեղ դնել, ու չը թողուլ որ ձեզ բնաւ վնաս մը դպչի: Ու թէ որ վաղը կռուին մէջ մեռնելու ալ ըլլամ, մի՛ հոգաք ամենևին. իմ եղբօրս պատուիրած եմ որ իմ ջորիներովս մինչև Կալլապատի երկիրը ողջ առողջ հասցընէ ձեզի:» Մենք անոր այս յուսադրական խօսքերուն մէջ ուրիշ տեսութիւն մը կը նշմարէինք, գըլխովին հակառակը իմանալով, այսինքն թէ՝ ինչ որ կ'ըսեմ ես ու կը խոստանամ՝ սուտ են. թէև ճշմարիտ ալ ըլլան, դարձեալ ձեզի ազատութիւն չը կայ այս լեռնէս՝ առանց կողոպտուելու ու ձեր սնտուկներուն մէջ

եղածները պարպուելու ։ Այս մեր կարծիքները անհիմն չէին, բայց իրեն չէինք յայտներ ։ Իշխանը նոյն գիշերը տեղը դառնալէն զկնի՝ փոքր ամանով մը մեղրագինի խրկեց մեզի, ի նշան իւր գոհունակութեանը։ Հետեւեալ օրը պատերազմի ընելու պատրաստուողը և ոչ տանը դռնէն դուրս ելաւ, այլ արբեցութեան տալով զինքը՝ տկարութիւն մըն ալ եկաւ վրան ։

Թորոս–Կովագի իշխանին իր բանակը շուտով ետ դարձընելով հեռանալը կրկին վերադառնալու մօտք է եղեր ։ Գետի մը քով կ'երթայ իր բանակին բոլոր ծանրութիւնները և զօրքերուն կանայքն ու տղաքը թող տալով, տասն և հինգ օրէն նորէն կուգայ ու առջի տեղը բանակը կը դնէ, որ երկու ամպաներուն մէջ տեղուանքը կ'ընկնար ։ Հոն հասներուն հրաւէր կը կարգայ բոլոր ձորագիւղացւոյ՝ որ Արպ'ամպայի ստորոտը և ներսի կողմերը հաստատուած էին, որպէս զի գան անձնատուր ըլլան իրեն. սանք թէպէտ և սիրով կ'ուզէին հնազանդիլ Կովագին, բայց Թէոդորոսի ապագայն չը գիտնալնուն և անկէ կասկածելնուն՝ քիչ մը կը դժուարանային. բայց վերջապէս եկան անձնատուր եղան, և Կովագի իւրաքանչիւր գեղերուն Շէխերը փոխելով և իւր կողմէն, ուրիշ Շէխեր դնելով և անոնցմէ յափշտակած տաւարներուն մէկ մասն ալ իրենց դարձընելով կը խրկէր ետ դառնալ տուներնին ։ Այսպէս Ճըլկայի չորս կողմերը և բոլոր ամրութիւնները գրեթէ գրաւեց, և հարաւային սահմանագլուխն ալ, ուր տեղէ Տակուսս քաղաքը, Տէատէ–Պրբու անունով մէկը խրկեց զինեալ մարդիկներով՝ որ հոն պաշտպանէ ։

Կովագի իշխանին երկրորդ անգամ դառնալ գալուն՝ գիւղացոցմէ ոչ ոք փութաց մեր իշխանին քով գալու և լեռը պաշտպանելու. այլ ընդ հակառակը ձեռքի տակէ Կովագի իշխանին մարդ խրկելով անոր հնազանդելու խօսք կուտային, միայն թէ աւարառութենէ ետ կենայ և տուներնին տեղերնին չայրէ ։

Արպ'ամպայի իշխանը երբ տեսաւ որ գիւղացիք իրեն քովն ալ չեն գար և ժողովիր, վախնալով որ չըլլայ

թէ ձեռք ընկնի, փախաւ եկաւ Բօար—Ալմա իր 150ի չափ մարդիկներովը իր հետն էր նաեւ Կրօնց լերան իշխանը 100ի չափ զօրքով։ Ասոնք մեր Թ·եսեմեա իշխանին հետ միանալով գացին լերանը արեւմտեան կողմը որու դիմացն էր Ընչաթ—Ալման (1). եւան անոր վրայ, որպէս թէ անկէ պաշտպանեն մեր լեռը երբ թշնամեաց զօրքերը այն պահակէն ներս յարձակելու ըլլան։ Այն օրը միմիայն մեր լերան ստորոտն եղած տուները այրեցին, և գիւղացւոց հոն պահած տաւարները քշեցին տարին։

Կովալլին կողմէն մէկ անգամ միայն յարձակում ընելու փորձ փորձուեցաւ. բայց վերէն անոնց վրայ գըլորուած ահագին քարերուն սարսափելի ձայներէն և կոտրտուելով վար թափելէն և հրացաններ պարպուելէն թողուն փախան։ Մենք ահուդողի մէջ ընկղմած առ Աստուած կ'աղաղակէինք որ ազատէ զմեզ այն դառըն ժամերէն։ Վասն զի՝ եթէ թշնամին բռնութեամբ ներս յարձակելու ըլլայ, բոլոր լեռը պիտի կողոպտէ, և զմեզ ալ մորէ մերկիկ պիտի թողու, ինչպէս իրենց սովորութիւնն է. ոչ աղաչանք և ոչ պաղատանք օգուտ մը կ'ընէ. որովհետեւ սրով առնուած տեղ մը զօրաց թալանելուն և ոչ իրենց իշխանը կրնայ իրաւամբ դէմ դնել։ Այս սարսափ ձգող դէպքերը մեր երեւակայութեան մէջ բերելով, արտասուալից աչքով Աստուծոյ դիմացն ընկնելով անոր ամենակարող օգնութիւնը կը խնդրէինք։

Այս խռովալից ժամանակիս Թ·եսեմեա իշխանը մեր սնտուկները չէր մոռցած։ Քանի մը անգամ դարձեալ լուր խրկելով՝ վառօդ, զէնք և թնդանօթ կը պահանջէր մեզմէ. բայց մենք միշտ այդպիսի գործիքներ չունինք ըսելով՝ լուր կուտայինք որ գան աչօք տեսնեն եղածները։ Նոյն գիշեր բոլոր գլխաւորները կը ժողվին կուգան մեր քով ժամը չորս ու կէսին, և կ'առաջարկեն մեզի որ սնտուկները բանանք ինչպէս որ խոստա-

(1) Ընչաթ—Ալմա կը նշանակէ՝ Ամրոց փայտից, վասն զի շատ ծառեր կան հոն։

ցեր էինք ։ Այս ժողովրդոց սրամտութիւնը և խորամանկութիւնը և այսպիսի պարագաներու մէջ իրենց բանեցուցած եղանակները կրնամ ըսել թէ՝ Ասիացւոց և Եւրոպացւոց քով չը գտնուիր ։ Անոնց դիտաւորութիւնը պարզապէս մեզի կողոպտել էր, և կրնային եւս բռնութեամբ և որ և իցէ կերպիւ ալ իրենց խորհուրդն ի գործ դնել, բայց այնպիսի կերպ մի բանեցուցին որ իրենց խորհուրդը կատարելով մեր սիրտն ամենեւին չը վշտացուցին, և երկիւղ մ' ալ չը տուին մեզ և ոչ կասկած մը ։ Ուստի սնտուկները բանալ տալնին կ'ուզէին որ մէջը ինչ կայ չը կայ՝ տեսնեն իմանան, և հետեւեալ գիշերը որ պիտի գային կողոպտելու, ձեռքովնին դրածնուն պէս ուզածնին առնեն երթան ։ Մենք իբր թէ անոնց միտքը չիմացածի պէս միամտօրէն բացինք չորս մեծ սնտուկները անոնց ներկայութեամբ. և երբ պզտիկներն ալ կ'ուզէինք բանալ, “ Նաւակն է ըսին . հաւատացինք որ դուք պատերազմի վերաբերեալ ընծայացուներ չունիք, և ճշմարիտ կարգաւոր էք եղեր . ” ու Թողուցին գացին ։

Հետեւեալ օրը լերան արեւմտեան կողմերը սկսան ամփոփելու, ու ահագին քարեր դժուարութեամբ բերին լերան ծայրը դիզեցին որ պէտք եղած պահուն վար թշնամեաց վրայ գլորեն . ասոնք ալ մէկ մէկ խորամանկ հնարքներ էին, որովհետեւ իրենց միտքը պատերազմիլ չէր ։ Բայց մենք չը գիտնալով, և իշխանաց մէկտեղ գալ միաւորիլ և միաբան աշխատելնին տեսնելով կը կարծէինք թէ կռուի պատրաստութիւն կ'ընեն . բայց ետքէն իմացանք որ անոնցմով թշնամին խաբել էր, որ իրենց փախչելուն վրայ կասկած չառնէ անոնց ։ Երկրորդ՝ մեր քով եղած գողերուն սէրն էր որ զիրենք միաւորեր էր, ինչպէս որ յայտնուեցաւ այն գիշերս ։ Այս գիշերէն յառաջ մեր Հաբէշ Թարգմանը եկաւ, որ ինչպէս ըսինք, անոնց հետ համամիտ էր, ու իբր թէ ինքն ալ կասկածանքի երթալով կ'իմացնէ մեզ ու կ'ըսէ . “ Դուրսը համբաւ մը կայ, թէ իշխանները պիտի փախչին . երթամ իմանամ և ստոյգ լուր մը բերեմ ձեզի ։ ”

մէջ ամփոփելով՝ իջայ վար ու վազեցի մտայ մէջերնին, ու անոնց բռնութիւնը վանելով ըսի․ «Ահա մենք ձեր բաղձանքը կը կատարենք, ինչ պէտք է բռնութիւն ընել։» Սնտուկը բացած ժամանակս բոլորտիքը ամենքն ալ չարուած անյագ ու անքթիթ աչքով անոր մէջ կը դիտեն․ և սկսայ ես ալ ծրար ծրար ընելով ամեն մէկին տալ։ Եկեղեցական անօթները և ուրիշ ինչ որ նուիրական բան ձեռքս կ՚անցնէր, անոնց ներկայութեանը ծոցս ու գրպաններուս մէջ կը դնէի, զգեստներըն ալ մեր Նազարէթցի սպասաւորաց կուտայի, որ կը տանէին տեղ մը կը պահէին․ ամենուն մէկը ձայն չէր հաներ, և ոչ ձեռքէս յափշտակելու փորձ կը փորձէր, կարծես թէ Աստուած անոնց աչուըները կուրցուցած էր։ Երբեմն ձեռքերնին դէպ ի սնտուկը երկնցունելու կ՚ըլլային բան մը խլելու, ես ձեռուընին զարնելով կը յանդիմանէի զիրենք ու կ՚ըսէի Ամարայի (1) լեզուով․ «Ձեր իշխաններէն համբերութիւն սորվեցէք, տեսէք ինչպէս հանդարտ կեցած կը դիտեն։» Եւ արդարեւ երկու իշխանք քովերնին կեցած ամենայն հանդարտութեամբ ականատես կ՚ըլլային առանց համարձակելու ձեռք երկնցընելու կամ բան մը խնդրելու։

Երկրորդ սնտուկը պարպելու ժամանակնիս յանկարծ դրսէն մէկը պոռաց․ «Դուրս ելէք, ահա ապստամբն եկաւ; փախչինք։» Անոր պոռալն և ասոնց մէկէն ի մէկ ելնել ու փախչելնին մէկ եղաւ, որոնց հետ աներեւոյթ եղաւ նաեւ մեր Հապէշ թարգմանը, որ ադէն մեր ծակնուծուկը գիտնալով այն շփոթալից պահուն շատ բան վերուցեր հետը տարեր էր, և մեր հագնելու շորեղէններէն բնաւ բան մը չէր թողուցեր։

Այս կերպ վարպետութեամբ և հնարքով մեզի կողոպտեցին թէպէտև 800 թալէրի չափ վնաս տուին, սակայն այնքան ցաւ չտուաւ մեզի, որքան որ քանի մը գրչագիրներու և Հնդկաստանի վերաբերեալ թղթե-

(1) Հապէշու երկիրը գաւառական տեսակ տեսակ լեզուներ կան քիչ շատ իրարմէ տարբեր․ իսկ Ամարայի լեզուն ընդհանուր է բոլոր քրիստոնէից երկրին մէջ․ ըստ որում թագաւորը հոն կը նստի։

նէս աղատել չէ՞ք ուզեր ։ » Թէ այս բանտարկեալնե- րուն ողին ողին գալով աղաչելնին, և թէ հետեւեալ ա- ըը թշնամին լեռը թափուած ատեն մեր գլուխը ինչ փորձանքներ գալիքը մտածելով, երբեմն սրտերնին թունդ- ելնելով, երբեմն զիրար մխիթարելով, վերջապէս նոր հոգի և նոր զօրութիւն մը վլանիս գալով, ամէն կաս- կած ու երկիւղ փարատելով և Աստուծոյ օրհնեալ կա- մացը յանձնելով զմեզ, որոշեցինք որ անոնց շղթաները քակենք նախ հաւատարմութեան վրայ սաստիկ եր- դում առնելով ։ Բանտարկեալք եօթը հոգի էին, ո- րոնք խիստ մեծ դժուարութեամբ քակելնուս պէս յար- ձակեցան լերանը իշխանին և անոր տեղապահին և այ- լոց տուները թալանելու. բաւական բան գտան հոն, զոր դուրս թափելով և իրենց կանանց կռնակը բեռ- ցընելով, կը տանին զանոնք ու ապահով տեղուանք ծառերու տակ կը պահեն, որպէս զի լեռը խաղաղած ժամանակը առնուն իրենց գիւղը տանին ։

Յետ այնորիկ շղթաները ձեռքերնին բռնած լուս- նալու մօտ ելան գացին Կոմաղին բանակը, ներկայա- ցան անոր, և իրենց ով ըլլալը անոր իմացուցին ։

---

## Գ Լ Ո Ւ Խ Է.

Թլըստ—կոմայի մեր պաշտպանութեանը համար մարդ կը խրկէ ընդ- հնքն ալ կուգայ հոն. տեսակցութիւննիս. Խաչակ Սրբազանին ի ցոյց բազմութեան զգեստաւորութիւնը. Իրեն կը յանձնուինք և հոգանու ապ- հապան մը կը կարգէ մեր վրայ. Բանակին հետ Գրիգոր և Զանիկ կը հա- նինք. Թլըստ—կոմայի ներկայանալով յուսահատութիւննիս անոր կը յայտնեմ. Մեր պաշտպանին չարութիւնը. Մեր կրօնին [illegible] թիւնը, և ընդունած պատիւն ու պարգևը. Զօրապետ կը համբիթի, և մեծ իշխանը Գլէմոաթրա վրայ կը յարձակի. [illegible] հետ կը զարնուի ու կը մեռնի. Հալլը—Մորհամ [illegible]. [illegible] վալլին նամակ է գրել ու անոր [illegible] ըլլալը.

Ըստ Ար—Ամպաթի ըերան պաշտպանեներուն պաշտպանու- թիւնը ժառանգական ըլլալուն, անոր պաշտպանեալները չէին փախած իշխանին հետ. ուստի նոյն գիշերը արև-

ւելեան պահակի պահապան Աշքա–Տորքը, որ ազգաւ Դրմանդ է, Թորոս–Կոմաղի քով երթալով և անոր երկրին և լերան տիրելը շնորհաւորելով կը հրաւիրէ որ ելնէ գայ հոն ու իրեն սեփհականէ։ Այն առթիւ կը պատմէ անոր նաեւ մեր հոն ըլլալը և մեր գըլխուն եկած դէպքերը։ Նա ալ լուր կուտայ արեւմըտեան պահակին մօտ բանակող իր իշխանին, որ առաւօտուն լեռը կողոպտելու ու թալանելու պիտի գայ, և կը պատուիրէ անոր որ մեր բնակարանին զգուշանայ, չթողու մէկուն որ վնաս մը հասցընէ, այլ իրեն բաժին պահէ. վասն զի մեզի նման ձերմակ օտարականաց գոյքին ու ստացուածքները իրաւամբ մեծ իշխանին կամ թագաւորին կը վերաբերի։ Ուստի առաւօտուն կանուխ պահապան զինուոր մը կուգայ մեր դուռը կը պահպանէ, և մեծ իշխանին կողմէ ալ բարեւ բերելով կը սրտապնդէ մեզի որ չը վախնանք։ Նոր վրայ յիրաւի սիրտ առինք, և մանաւան կասկածանքէ ապահով եղանք։ Քիչ մը ետքը խումբ մը զօրք ելան լեռը գոռում գոչումով մը, ու յարձակեցան տուներուն վրայ, և ինչ որ գտան յափշտակեցին. բայց մեր քովը մէկը չը համարձակեցաւ մօտենալ։

Առաւօտուն Թորոս–Կոմաղին իւր բանակը, որ երկու լերանց մէջ տեղը դրած էր, վերցընելով անկէ եկաւ Բասր–Ամպայի արեւելեան կողմի լերան վրայ դըրաւ, ուր առաջին յարձակման ժամանակ դրած էր, և հոն դադարեցաւ։ Յետոյ 500ի չափ հրացանաւոր և տիգաւոր զօրք հետն առած ներս մտաւ, որուն առջեւէն փողերը կը հնչեցընէին։ Նոր գալը մեզի իմաց տալերնուն պէս փութացինք քանի մը քայլ յառաջ դէպ ի իրեն՝ ձեռքերնիս խաչ բռնած. նա ալ մեր տեսութեան կուգար։ Զօրքերը յանկարծ երկու կարգի բաժնուեցան և մէջ տեղը երեւցաւ մեծ իշխանը։ Պարթեւական հասակ մի ունէր, և դէմքը Գողիաթի. մինչև ծունկունները բաց, տակէն շապիկ ու բաճկոն մը ունէր, որոնք էհրամով մը ծածկուած էին. իւր հագուստը հասարակ մարդոց հագածէն տարբեր չէր, գլուխը

բաց և խուզած, և երկու ուսէն կախուած էին հրազէններ, և մէջքին երկու կողմերը մէկ մէկ զոյգ ատրճանակներ խոթած։

Երբ վրանին քիչ մը մօտեցանք՝ բարեւեցինք զինքը. նա մեզի տեսնելուն ուշի ուշով կը դիտէր ու կը ժպտէր, որովհետեւ մեր հագուստով ու կերպարանքով մարդ տեսած չէր. և անշուշտ հետաքրքրական տեսարան մը էինք անոր և բոլոր իւր զօրացը աչքին. գլուխնիս սեւ չուխայէ թաղաձեւ գտակներ և սեւ չուխայէ վերարկուներ հագած էինք։ Իսահակ սրբազանին միջէն մնակէ և ձոխ վիզէս խաչ մը կախուած էր։

Խաչը ձեռքերնիս առնելով մօտեցանք իրեն որ համբուրել տանք ըստ սովորութեան արեւելեան եկեղեցւոյ։ «Համբուրելու ժամանակը չէ.» ըսաւ ու ետ քաշւեցաւ։ Որովհետեւ իրենց սովորութիւնն է կարգաւորի մը մինչեւ որ կրօնքը ու դաւանութիւնը չքննեն չիմանան, ոչ աջը, ոչ ձեռքի խաչը կը համբուրեն, և ոչ անոր օրհնութիւնը կ'ընդունին։ Յետ այնորիկ պատմեցինք իրեն զմեզ կողոպտեցնին ու անխնամ թողուլ փախչելնին։ «Վախ չկայ, միամիտ կեցէք, ըսաւ, Աստուծով ամեն կողոպտուածները ետ կուգան. մեր պետի փախչին անոնք, երկրին չորս կողմը պաշարած եմ։» Այսպէս ըսելով հեռացաւ մեր քովէն ու բացօթեայ տեղ մը նստաւ, ու երկու հոգի խրկեց մեր բնակարանը որ միացած ինչ որ ունէինք աչքէ անցընեն ու իրեն իմացընեն։ Վերջը ինքն անձամբ եկաւ և դուրսը բարձր տեղ մը նստաւ. իւր իշխաններն ալ մօտը շարուեցան, նոյնպէս բոլոր զօրքերը հոն հաւաքուելով, հրամայեց որ կարգաւ ինչ որ ունինք դուրս հանենք. և այն բազմութեան առջեւ բոլոր սնտուկներուն և ծրարներուն մէջ եղածները բացինք որ տեսնեն։ Եպիսկոպոսական զգեստները երբ որ տեսան ու իմացան ինչ ըլլալը, զարմացած կը դիտէին անոնց ոսկէթել բանուածներուն ու ձեւերուն վրայ, ու կ'ըսէին թէ՝ մեր Նշուանա-Սելամի առաջնորդը չունէր այսպէս հագուստներ։ Խնդրեցին Պ. Եր. Իսահակ սրբազանէն որ զանոնք հագնի։

Գերութեան վիճակը որու մէջ կը գտնուէինք, կը պարտաւորէր մեզի մեր տէրերուն կամացը հնազանդելու. ուստի ելաւ հագաւ զանոնք ու թագը գլուխը դրաւ, որպէս թէ արքայական խորհուրդը կատարելու կը պատրաստուէր, ու կանգնեցաւ բազմութեան մէջ տեղը, և առանցքի վրայ կանգնած արձանի նման կը դառնար որ չորս կողմէն տեսնեն զինքը և իրենց հետաքրքրութիւնը լեցնեն: Այս բանս որքան որ մենք անպատւութիւն կը համարէինք մեր եկեղեցւոյն և նուիրական պատմուճաններուն, սակայն մեծ ազդեցութիւն ունեցաւ անոնց մտաց վրայ մեր զգեստներուն հոյակապ ու փառաւոր տեսքը, զոր իրենց կենացը մէջ բնաւ երբէք տեսած ու լսած չունէին. և անոնք որ գէշ միտք ու արհամարհութեամբ կը նայէին, սկսան ակնածութեամբ վարուիլ մեր հետը, և աներեւոյթ զօրութենէ մը վախցածի պէս երկիւղ մը ունեցան իրենց սրտին մէջ:

Թըրքօ-Կոմակին սկսաւ հարցուփորձ ընել մեր ինչ պատճառաւ այն երկիրը գալերնուս և Բասր-Նիգա մտնելնուս վրայ. և երբ իրեն պատմեցինք, հարցուց թէ՝ «Ո՞ւր դառնալ կ'ուզէք, թէ իմ հետս գալ:» Մենք արդէն գիտէինք որ անոնց այսպէս բարեմտութեամբ ըրած առաջարկութեանցը մէջ խորամանկութիւն կայ, ուստի պատասխանեցինք. «Դուք գիտէք. մենք այսօր ձերն ենք. ինչպէս որ կ'ուզէք՝ կրնաք տնօրինել մեր բաղդին համար:—Ես կ'ուզեմ որ հետս գաք, ըսաւ:—Շատ աղէկ,» պատասխանեցինք խոնարհութիւն ընելով:

Այս իշխանին առաջին յարձակումէն ի վեր Դրկայի տնակաճառը խափանուած ըլլալուն, մեր վիճակը գէշացեր էր. որովհետեւ մեր կենաց պէտքերը անկէ կը հոգայինք, և սկսած էինք այնուհետեւ մուրացկանութեամբ ապրել. հետս պարկ մը առած կ'ընկնէի դռնէ դուռ հաց կամ ալիւր և կամ ուրիշ ուտելիք կը մուրայի, և այս դիէն այն դիէն փայտի կտորուանքներ ժողվելով կրակ կը վառէինք թէ՛ հաց եփելու և թէ անոր լուսովը նստելու համար: Այս մուրացկանութեան գ յաղարէթցի աղաստարները չէին

կարող ընել, բայց ինձմէ կամ ակնածելնուն և կամ վախնալնուն, բատ որում բռնութիւն ալ երբեմն ի գործ կը դնէի, կուսային ուզածս. այսու ամենայնիւ շատ օրեր ալ անօթի մնացած եմք։ Պ. Տէր. Խաչակ սրբազանը տանը մէջ նստած, իմ մուրացկանութեամբ ճարած կտոր մը հացին կամ ալիւրին կըսպասէր ։

Այսպէս մեր քաշած նեղութիւնը և մէկ օր յառաջ ալ անօթի մնալով ուժաթափ ըլլալնիս ստիպեց մեզի որ մեր աղատութիւնը խնդրելէն աւելի, օրապահիկ հաց մը խնդրենք Թորոս-Կաւակլիէն ։ Խղճաց մեր վրայ առատաձիրտ իշխանը, և փախչող իշխանաց և իրենց մարդոց մեզի ըրած պէշուութիւնները լսելով ցաւեցաւ, և իր քովն եղող պաշտօնատար իշխանաց մէկուն յանձնեց՝ որ ամեն կերպով հոգ տանի մեզի, և մեր բեռներն ալ գիւղացւոց ձեռօք բանակը փոխադրել տալու հրաման ըրաւ, և Բար-Ամպայի վրայ իշխան մը կարգելով, ինքը քաշուեցաւ գնաց բանակատեղին ։

Մեզի հոգատար կարգուող իշխանն ալ իր մէկ պաշտօնեային յանձնեց դարձեալ՝ որ միշտ մեր քովը կենայ, թէ՛ հոգ տանի և թէ հսկէ մեր վրայ. և տուաւ մեզի այծ մը և քիչ մը ալիւր ։

Հետեւեալ օրը սնտուկները, որոնց ծանրութիւնը բաւականին թեթեւցած էին, և ուրիշ ինչ որ ունէինք՝ վերուցին գիւղացիք տարին, և մեզի համար ալ երկու ջորի բերին Կոլապիին կողմէն իբր պատիւ՝, որպէս զի ոտքով չըքալենք ։ Յունվարի վերջին օրն էր երբ ելանք մեկնեցանք Բար-Ամպայէն՝, ու բանակատեղին հասնելով խրճթի՝ ձեւով տան մը մէջ իջանք, ուր աման մը պատուական մեղր խրկեց մեզի մեծ իշխանը ։ Երկրորդ օրը ճամբայ ելաւ բանակը մեծ յաղթանակաւ, քանի մը հազար տաւար հետը տանելով ։ Օրը երեք կամ չորս ժամ հազիւ կը քալէինք, երբեմն սար ի վեր ելնելով և երբեմն ձորն ի վար իջնելով ։ Ամեն երեկոյին բեռները հաշւով մեզի կը յանձնէին, և առաւօտուն դարձեալ հաշւով մենք ալ գիւղացւոց կը յանձնէինք, ըստ որում բեռնակիրները ճամբանուն վրայ հանդիպած

Գերութեան վիճակը որու մէջ կը գտնուէինք, կը պար-
տաւորէր մեզի մեր տէրերուն կամացը հնազանդելու.
ուստի ելաւ հագաւ զանոնք ու թագը գլուխը դրաւ,
որպէս թէ սրբազան խորհուրդը կատարելու կը պատ-
րաստուէր, ու կանգնեցաւ բազմութեան մէջ տեղը,
և առանցքի վրայ կանգնած արձանի նման կը դառնար
որ չորս կողմէն տեսնեն զինքը և իրենց հետաքրքրու-
թիւնը լեցընեն։ Այս բանս որքան որ մենք անպատ-
ւութիւն կը համարէինք մեր եկեղեցւոյն և նուիրական
պատմուճաններուն, սակայն մեծ ազդեցութիւն ու-
նեցաւ անոնց մտաց վրայ մեր զգեստներուն հոյակապ
ու փառաւոր տեսքը, զոր իրենց կենացը մէջ բնաւ եր-
բէք տեսած ու լսած չունէին. և անոնք որ դէշ միտք
ու արհամարհութեամբ կը նայէին, սկսան ակնածու-
թեամբ վարուիլ մեր հետը, և աներևոյթ զօրութենէ
մը վախցածի պէս երկիւղ մը ունեցան իրենց սրտին մէջ։

Թոմսօ-Կոմպալին սկսաւ հարցուփորձ ընել մեր ինչ
պատճառաւ այն երկիրը գալէրնուս և Ռոսար-Նիմպա
մաներնուս վրայ. և երբ իրեն պատմեցինք, հարցուց թէ՝
«Ի՞նչ դառնալ կ'ուզէք, թէ իմ հետս գալ։» Մենք ալ-
դէն գիտէինք որ անոնց այսպէս բարեմտութեամբ ը-
րած առաջարկութեանցը մէջ խորամանկութիւն կայ,
ուստի պատասխանեցինք. «Դուք գիտէք. մենք այսօր
ձերն ենք. ինչպէս որ կ'ուզէք՝ կրնաք տնօրինել մեր բա-
ւոյն համար։—Ես կ'ուզեմ որ հետս գաք, ըսաւ։—Շատ
աղէկ,» պատասխանեցինք խոնարհութիւն ընելով։

Այս իշխանին առաջին յարձակումէն ի վեր Ճըլկա-
յի տնանկաճառը խափանուած ըլլալուն, մեր վիճակը
գէշցեր էր. որովհետև մեր կենաց պիտոյքը անկէ
կը հոգայինք, և սկսած էինք այնուհետև մուրացկա-
նութեամբ ապրել. հետս պարկ մը առած կ'ընկնէի
դռնէ դուռ հաց կամ ալիւր և կամ ուրիշ ուտելիք կը
մուրայի, և այս դիէն այն դիէն փայտի կտորուանքներ
ժողվելով կրակ կը վառէինք թէ հաց եփելու և թէ
անոր լուսովը նստելու համար։ Այս մուրացկանու-
թեան գործը մեր Նազարէթցի սպասաւորները չէին

կարող ընել, բայց ինձմէ կամ ակնածելնուն և կամ վախնալնուն, ըստ որում բանութիւն ալ երբեմն ի գործ կը դնէի, կուտայի ուզածս. այսու ամենայնիւ շատ օրեր ալ անօթի մնացած եմք։ Տէր. Խաչակ սրբազանը տանը մէջ նստած, իմ մուրացկանութեամբ ճարած կտոր մը հացին կամ ալիւրին կըսպասէր ։

Այսպէս մեր քաշած նեղութիւնը և մէկ օր յառաջ ալ անօթի մնալով ուժաթափ ըլլալնիս ստիպեց մեզի որ մեր ազատութիւնը խնդրելէն աւելի, օրապահիկ հաց մը խնդրենք Թուրքօ-Կոմագիէն ։ Խղճաց մեր վրայ առատասիրտ իշխանը, և փախչող իշխանաց և իրենց մարդոց մեզի ըրած գէշութիւնները լսելով ցաւեցաւ, և իր քովն եղող պաշտօնատար իշխանաց մէկուն յանձնեց՝ որ ամեն կերպով հոգ տանի մեզի, և մեր բեռներն ալ գիւղացւոց ձեռօք բանակը փոխադրել տալու հրաման ըրաւ, և Բաար-Ամպայի վրայ իշխան մը կարգելով, ինքը քաշուեցաւ գնաց բանակատեղին ։

Մեզի հոգատար կարգուող իշխանն ալ իր մէկ պաշտօնեային յանձնեց դարձեալ՝ որ միշտ մեր քովը կենայ, թէ՛ հոգ տանի և թէ հսկէ մեր վրայ. և տուաւ մեզի այծ մը և քիչ մը ալիւր ։

Հետեւեալ օրը մտաւկները, որոնց ծանրութիւնը բաւականին թեթեւցած էին, և ուրիշ ինչ որ ունէինք՝ վերուցին գիւղացիք տարին, և մեզի համար ալ երկու ջորի բերին Կոմագիին կողմէն իբր պատիւ", որպէս զի ոտքով չը քալենք. Յունվարի վերջին օրն էր երբ ելանք մեկնեցանք Բաար-Ամպայէն՝, ու բանակատեղին հասնելով խրճթի ձեւով տան մը մէջ իջանք, ուր աման մը պատուական մեղր խրկեց մեզի մեծ իշխանը ։ Երկրորդ օրը ճամբայ ելաւ բանակը մեծ յաղթանակաւ, քանի մը հազար տաւար հետը տանելով ։ Օրը երեք կամ չորս ժամ հազիւ կը քալէինք, երբեմն սար ի վեր ելնելով և երբեմն ձորն ի վար իջնելով ։ Ամեն երեկոյին բեռները հաշուով մեզի կը յանձնէին, և առաւօտուն դարձեալ հաշուով մենք ալ գիւղացւոց կը յանձնէինք, ըստ որում բեռնակիրները ճամբանուն վրայ հանդիպած

գիւղերու ժողովուրդներն էին, և իրենց շալակն առած այնպէս կը տանէին, ըստ որում սովորութիւն չունին գրաստներու վրայ բեռցնել։ Երբ Պոլա երկիրը հասանք, ուրկէ պիտի երթայինք Զարոտգա քաղաքը, առաւօտուն բեռները մեր պահապանին յանձնելու ժամանակնիս դարձաւ ըսաւ. «Մե՛ծ իշխանը ձեր բոլոր ընչիցը տիրեց ու իրեն սեփականեց։ Սանկ զի, կրկնեցնա, մեր սովորութիւնն այսպէս է, տիրապետեալ երկրին բոլոր մարդիկը իշխանին դերի և անոնց ստացուածքներն ալ իրեն սեփական կ'ըլլան։ Բայց թէ որ ինքը ուզէ՝ տիրելէն ետքը կրնայ զանոնք իրենց տէրերուն շնորհել. ձեր ինչքերն ալ մինչեւ հիմայ թող տըւած էր, բայց այսօր ուզեց անոնց տիրել։ Ուրեմն հանեցէք անոնց մէջէն ձեր սաղմոսն ու աղօթագրքերը. ու քովերնիդ պահեցէք։» Այս յայտարարութիւնը, որու վրայ կասկած չունէինք ի պաշտօնէ ըլլալուն, մեր սիրտը տեղի նման խոցեց, և մեր երակներուն մէջի արիւնը պաղեցուց։ Առանց ժամանակ անցընելու բացինք սնտուկները որ աղօթագրքերնիս հանենք, և անոնց հետ մէկտեղ ծածկաբար կենաց փայտին մասն ալ առինք պահեցինք. և այն օրը առանց համրելու բոլոր բեռներնիս յանձնեցինք և այն հօգէն թեթեւցանք. բայց եկեղեցական զգեստներուն և անօթներուն վրայ կը ցաւէինք, գիտնալով անոնց սրբապիղծ ձեռքերու մատնուիլը. յետոյ ըսինք մենք մեզի. «Թող զանոնք ալ իր տէրը սուրբ Յակոբ (գլխադիրը) հոգայ. մինչեւ հիմայ մենք պահեցինք, այսուհետեւ կարգը իրենն է։» Այս յանձնարարութիւնը բաւական մխիթարութիւն և սրտի անդորրութիւն տուաւ մեզի. և ինկանք ճամբայ լռիկ մնջիկ։ Իրիկուան դէմ ծառի մը տակ իջեցուցին մեզի, և այն գիշեր հոն անցուցինք առանց աչուընիս քուն մտնելու, վասն զի սաստիկ քամին ի զատ անձրեւ ալ եկաւ. և մեր ոչ ներքեւնիս փռուած մը կար և ոչ վրանիս վերարկու մը, և չէինք սովորած այն կողմերու մարդոց վայրենի կենաց։

Առաւօտուն իմ սրտիս յուսահատութիւնն ու վիշ-

տերը Սրբազան Հօր յայտնեցի. «Ինչ որ, ըսի, քանի մը գիշեր ալ այսպէս անցընելու ըլլամ, չը պիտի կարենամ դիմանալ, և չարաչար պիտի ըլլայ իմ մահս։» Նա թէպէտեւ կը խրախուսէր և կը յորդորէր զիս սիրով տանելու ամէն նեղութեանց, բայց վերջապէս համոզութիւն տուաւ որ մեծ իշխանին քով երթամ և մեր վիճակը անոր յայտնեմ։ Մեր պահապանէն ծածուկ ելայ գնացի մեծ իշխանին վրանին քով, և կերպով մի իմաց տուի իրեն իմ գալս և իրեն հետ խօսելու փափաքս, ուստի ներս մտնելով և իրեն ներկայանալով՝ իսկոյն իր թուրը ձեռքս առի և վզիս վրայ դնելով ըսի Սմարացւոց լեզուով. «Լաւ է որ զիս այսօր քու թրովդ այսպէս ըսպաննես, քան թէ մերկ թողուս ցուրտ եղանակներուն՝ որուն չեմ սովորած, և աստանդական թափառելով չարաչար հիւանդութեամբ մեռնիմ։» Զարմացաւ իշխանը ու հարցուց թէ ինչ եղաւ քեզ, յայտնէ՝ ինչ է պատճառը քու ցաւոյդ։ — Տէր իմ, կրկնեցի սիրտ ի թունդ, մենք մեր ծնած օրէն ի վեր լաթերով մեծցած և անկողիններու մէջ պառկելու սովրած եմք, այսպէս քարերու ու հողերու վրայ մերկ և առանց ծածկութի չեմք սովորած. վասն որոյ կը խնդրեմ, կամ սպաննէ զիս այսօր և կամ մեր հարկաւոր ագանելիքները մեզի տուր որ պատսպարուինք ցուրտին դէմ։ — Ես ձեր ստացուածոցը տիրած չեմ, ըսաւ. մանաւանդ կարգաւորի մը ինչքը երբեք չեմ ընդունած։ Ես խօսած եմ ձեզի յանձնած իշխանիս, թէ ասկէ անդին մեր գընալիք ճանապարհին վրայ շատ գիւղեր չկան՝ որ ձեր գոյքերը գիւղացւոց բեռցընել տամ. և մեր երթալիք Չինկ լեռն ալ դժուար է սնտուկներ և ծանր բեռներ հանել. ուստի լաւ համարեցի որ ձեր ծանրութիւնները շիտակ Չարտոգա տանին, ուր տեղ պիտի երթամ ես ալ ձմեռը ձեզի հետ հոն անցընելու. ահա այս է իմ հրամայածս, և ոչ թէ տիրած եմ անոնց, զորոնք եթէ ուզէի Սար—Սմպայի մէջ կրնայի բոլորն ալ գրաւելու։» Այս ըսելով հրամայեց ու մեզի պէտք եղած քանի մը դիւրատար բաները ետ դարձընել տուաւ։

Տասներկու օրէն հազիւ կրցանք Ակըրա երկրին մէջ Չօնկ ըսուած տեղը հասնիլ, ուր զօրաց համար մանր խուղեր շինուած կային, և անոնց մէկուն մէջ մեզի հրամցուցին, որուն դանէն ներս գլուխնիս մինչև գետին խոնարհելով, և կամ թէ ըսեմ՝ սողալով մը մտանք ու մէկէն նստանք, որովհետև կայնելու տեղ չէր. և հոն չորս հոգի պատսպարուեցանք Նաշարէթցի սպասաւորաց հետ, առանց կարենալու ոտուընիս երկնցընել։

Ինչպէս վերը ըսինք, մեծ իշխանը ուրիշ պաշտօնատար իշխանի մը յանձնեց մեզի։ Այս անձը չար ու անգութ մէկն էր, չէր թողուր ընաւ որ մեծ իշխանին քովն երթամ և մեր ցաւերը անոր իմացընեմ, և ոչ ինքը հաց կամ ալիւր կը ղրկէր. մինչև երեկոյ ծոմ կենալէն ետքը՝ երեկոյեան հացն ալ կը խնայէին մեզմէ, այն հացը զոր առջի բերան չէինք կրնար ու կը գանէինք բերաննիս դնելու, բայց հիմա կարօտ էինք. և ոչ ալ դրամ ունէինք քովերնիս որ ծածուկ հաց կամ ալիւր գնէինք, և կամ իրեն ընծայ տալով[1] սիրտը քաղցրացնէինք մեզի դէմ։ Եւ թէ որ իր քովը երթալով ուտելու բան մըն ալ խնդրէինք, նա առ երեսս ցաւակցութիւն ցուցընելով իր սպասաւորացը կը հրամայէր որ հաց տան մեզ շուտով. սպասաւորք անոր լեզուէն ու ձեւէն միտքը կը հասկընային, և չանց կ'ընէին մեր խնդիրքը կատարելու։ Բայց փորձն ու հարկը մեզի վարպետ ըրաւ. իմացանք որ այս մարդոց քով անուշ խօսիլ, քաղաքավարութիւն բանեցընել ամենևին օգուտ չընէր, որովհետև մարդկային զգացմունք չունենալով ընկերական սիրոյ համար ո՛չ հաց և ոչ կաթիլ մի ջուր մարդու կուտան. ուստի սկսայ այնուհետև խիստ լեզու մը բանեցընել, պոռալ ու կանչել, որով կրնայի քանի մը սուսեր ուտելիք ճարել։ Ալ այնուհետև ոչ ամօթ մնաց մեր երեսը և ոչ երկիւղ մեր սրտին մէջ. և այնպէս կը վարուէի հետերնին, որպէս թէ մեր գերիներն եղած ըլլային, և մեր քովը եկող ամենուն ալ

(1) Որովհետև բոլոր ինչքերնիս Չորտոգա խլուած էին։

ուրիշ բան չէինք ըներ, եթէ ոչ իրենց անգթութիւնըն և անողորմածութիւնը երեսնին տալով հաց կը պահանջէինք: Նոյնցմէ մէկը օր մը դարձաւ ըսաւ մեզի. «Մենք ձեր խեղճութիւնը կը ճանչնամք ու կը զգամք, բայց մինչեւ որ ձեր հայմանօնը (կրօնքը) չփոխուի, ամենեւին ոչ հաց և ոչ ուրիշ հարկաւոր պէտքերնիդ կը հոգամք:»

Թէրրաօ-Կոլլագին երբեմն երբեմն պաշտօնէ գիտնականներ կը խրկէր քովերնիս, որոնք մեր եկեղեցւոյն և կրօնին վրայօք տեղեկութիւններ առնելով կ'երթային իրեն կը հաղորդէին. և երբ այս գիտնական մարդիկը կ'իմանային Հայ և ուղղափառ ըլլալնիս, ուրախանալով մեր խաչը կը համբուրէին և օրհնութիւննիս կ'ընդունէին, և իրենց մեծ իշխանին ալ կը պատմէին որ լաւ աչօք նայի մեզ: Հապէշստանի մէջ գրոց ու պատմութեանց տեղեակ մարդիկ խիստ քիչ ըլլալով, ընդհանրապէս բոլոր հասարակութիւնը թանձր ու շօշափելի տգիտութեան խաւարի մէջ կը գտնուին. ոմանք Թուրք կը համարէին մեզի, ոմանք Փռանկ և այլք Ինկլիզ. և քիչ մասն ալ Խպտի կը կարծէին. իսկ երբ ու մեր կրօնքը և ուղղափառ Հայ ըլլալնիս գիտնականաց ձեռօք ստուգուեցաւ, կամաց կամաց սկսան կարգաւորի պատիւ տալ մեզ: Թէրրաօ-Կոլլագին տիրած երկրին մէջ մերձակայ տեղուանքը որքան միաբանական(1) կրօնաւորաց խումբեր որ կան, կարգաւ կուգային երբեմն հարիւր, երբեմն ալ աւելի անձինք, և բայց տեղ մը ժողովելով կրօնական նիւթերու վրայ խօսելով հետերնին իրենց լեզուով և մեր եկեղեցւոյն վրայ տեղեկութիւններ տալով և մեր ուղղափառութեան վրայ համոզուելով Սրբազան Հօրը ձեռքի խաչին ներքեւը կը խոնարհէին և օրհնութիւն կը խնդրէին: Այս կրօնական ժողովները և կրօնաւորաց խումբ խումբ գալ և քննութիւն ընելը տասն օր տեւեց. յետոյ այնորիկ մեծ իշխանը անձամբ գալով խոնարհեցաւ Սրբազան Հօրը առջեւ, որու ձեռքն էր

(1) Կուսակրօն կրօնաւորաց խումբեր կը գտնուին տեղ տեղ, որոնք ցանկով մը շրջապատած գետնի մը խրճիթներու մէջ կը բնակին.

կենաց սուրբ փայտը, և անոր օրհնութիւնը ուզեց. և ներողութիւն ևս կը խնդրէր մեզմէ մինչև այն օրը մեզի չը ճանչնալուն և արժանաւոր կերպիւ չը վարուելուն համար. այն օրէն զկնի յաճախ կուգար մեր տեսութեան և օրհնութիւն ընդունելու։

Նոր այս տեսութեանց մէջ և ամեն անգամ առիթ պատահելուն մեր միտքը անոր կը յայտնէինք թէ՝ անկարելի է մեզի այս երկիրներուն մէջ մնալ, որովհետև Խալաֆ եպիսկոպոսին ձեռքի առաջնորդական իշխանութիւնն առնելու եկած չենք, կ'ըսէինք, այլ միայն Թէոդորոսի քով խնդրոյ մը համար եկած ենք. և անայ չը յաջողեցաւ ձախորդ պատճառաւ մը, որուն և ոչ երեսը տեսնելու արժանի եղանք. թէ որ դուք բարեհաճիք, կ'ընաք մեզի անոր քով խրկելու։ "Այդ ձեր բոլոր ըսածն ալ մեր ականջը չը մտներ, պատասխանեց մեծ իշխանը. մենք մեր Խալաֆ առաջնորդէն զզուած ենք. անոր կրօնքն ալ այսօրուան օրս այլայլած է. և շատ սուղի կը նստի մեզի անոր առաջնորդութիւնը։ Աստուած այսօր ձրի եպիսկոպոս մը պարգևեր է, կարելի՞ է որ ձեռքէ հանենք և իր երկիրը դարձընենք. ամենևին այդպիսի խնդիր մը չենք ընդունիր։" Մեծ իշխանը կրօնաւորներէն թելադրուած չէր ուզեր թողուլ մեզի, այլ իբրև առաջնորդ վար դնել. որովհետև մեր նոյն պաշտօնով հոն մնալէն կրօնաւորք ալ իրենց շահը ունէին անշուշտ։

Թուրաօ-Կավաղի առջի անգամ մեր քովը տեսութեան գալուն, իրենց երկրին պատուական բերքերէն փունջացու մեզ ընծաներ նուէր ըլ, որ էին՝ ճառայ մի սխտոր, ճառայ մի բանկրայ, աման մի արդար եղ, մեղր և կորեկողի (պօղա). Նոր նայելով մեր գլխաւորն ալ, որուն պահպանութեանը յանձնուած էինք, իւր միրտը փոխեց, գթութեան զգացմունք մը ունեցաւ, և այծ մը, ցորենէ հաց և կլանակի (1) իւղ խրկեց.

(1) Կտաւատի հունտի նման սեւ ու փայլուն հունտ մըն է, զոր խարելով ու ծեծելով տաք ջրով լեցուն կարասի մէջ կը դնեն, ու կարասը ցնցելով իւղը երեսը կը հանեն ուկ'առնուն, և իւղին հասը խիստ ծանր է։

զոր Հայկէշք ձէթի տեղ կը գործածեն ։ Նոյն օրէն ըսկսեալ մեր աղաշխարութեան ժամանակը լրացաւ ․ ամեն մարդ քաղցր աչքով կը նայէին մեզ, և հեռու տեղուանքներէ լսելով մեր տեսութեանը կուգային բազմութեամբ ․ շատ անգամ եկող գացողներէն հաց ուտելու ժամանակ չէինք ունենար մինչև արեւը մարը մտնելը ։

Մեր նստած խղիկին անձկութիւնն ու անհանգըստութիւնը մեծ իշխանին հասկըցուցինք օր մը տեսութեան եկած ժամանակ, և խոստացաւ իրենց երկրին փառաւոր տներուն պէս տուն մը շինել տալ, բայց չար բաղդը վրայ հասնելով ամեն ինչ փոխեց ։ Թ․ըլսօ-Կոմագի ստիպուեցաւ Պելեսա երկրին վրայ կռուի երթալ, զայն լսելով խնդրեցինք իրմէ որ Զարտոդա մեր մատուկներուն և բեռներուն քով խրկէ մեզի և հոն ըսպասենք մինչև իր գալը ։ Սիրով ընդունեց մեր խնդիրքը և տուաւ մեզի Պալտըրտակայ մը (1), որ արդէն մեր ծանօթ անձ մըն էր, որպէս զի մեր պիտոյքներն ու իրեն ըրած հրամանները անձամբ կատարէ և բան մը պէտք ըլլալուն իրեն իմացընէ ։ Այս մարդուն անունն էր Պըոթառ-Պրու, որ հաղորդ ընդունողներէն էր, որոնց վրայ պիտի յիշենք Բ․ Հատորին մէջ ։ Այս անձը շատ անգամ մեր քովը ջերմեռանդութեամբ կը մօտենար, և մեզի իբր զաւակ եղած էր․ իւր բարեպաշտութեանը չափ չկար, բայց իւր ճշմարիտ վարքն ու բարքը յետոյ պիտի ճանչնանք ։

Թ․ըլսօ-Կոմագիէն բաժնուած օրերնիս իւր միտքը յայտնեց մեզի ․ «Թէ որ, ըսաւ, Աստուած յաջողէ ու Պելեսա երկիրն ալ առնեմ, յետ այնորիկ Կոնակէր քաղաքը կը նորոգեմ, և զձեզ Զարտոդայէն հոն կը փոխադրեմ ։ „Լսել կ'ուզէր թէ Իսահակ սրբազան Հայրը հոն առաջնորդ կը հաստատեմ ։ Հրաման խրկեց

(1) Պալտըրտակայն գործակատար պաշտօնատարի նշանակութիւն ունի՝ բառին ընդարձակ առմամբը, իբրեւ. գէհէա, որու ձեռօք ամեն ինչ կը տնօրինուի․ և նա էր գրեթէ մեր ամեն գործոց խնամատարը, և մենք իրմէ կախեալ էինք ։

Զարտոգայի Շէխին որ մեր գոյքերը մեզի յանձնէ, և իրեն հաւաքուած տուրքերէն երկու ամսուան ուտելիք տայ ։ Ինկէ ի զատ ինքն ալ քանի մը ձառայ մեզի և ցորեան և քանի մ'ալ Թալէռ շնորհեց ․ Նոյնպէս իւր քոյրը՝ Թագաւոր երկրին իշխանուհին, որ իւր առանձին վաշտովը եղբօրը բանակին մէջ կը գտնուէր, նա ալ մեզի և խահուէ գնելու համար քանի մը Թալէռ պարգեւեց, և իրենց՝ որոշած երկիրներէն ալ չորս ամսան մեզի ընդունելու շնորհք ընելով ճամբայ դրաւ մեզի պատուով ։ Մեց աւուր մէջ հասանք Զարտոգա, որը երկու կամ երեք ժամ քալելով, գիւղէ գիւղ, Թէպէտ և մէկ աւուր ճանապարհ է Զանգէն ․ հոն եկեղեցւոյն մօտ տեղ մը վրանի տակ նստանք մինչեւ որ մեզի համար ուրիշ բնակարան մը շինուի ։

Իսկ մեծ իշխանը Զանգէն մեկնելով կ'իջնայ Նոյաձարայի վրայէն Պելէսա, որ բոլորովին ձոր և խորդուբորդ երկիր մըն է տաք և փշալից ․ կը զարնուի նոյն երկրին տիրող Տէձած-Մարինէ իշխանին հետ, երկու կողմէն ալ վիրաւորեալներ ու մեռնողներ կ'ըլլան ․ կը փախչի իշխանը, և Թըրսօ-Կոլվազի կը տիրէ Պելէսայու ։

Իշխանը փախչելով Լատայու (1) երկիրը Մակշամ-Կոլվազի ապաստանը իշխանին քով շուտով կ'առնու, և կը յորդորէ զանիկայ որ Թըրսօ-Կոլվազիի վրայ պատերազմի ելնէ ։ Աշւ որովհետեւ Մակշամ-Կոլվազի առաջները քանի մը անգամ լուր խրկած էր անոր ըսելով, որ չըլլայ Թէ Պելէսան զարնէ, որ ինծի յանձնուած՝ և իմս է կ'ըսէր, ուստի անոր տիրելը իմանալուն պէս՝ շուտով պատերազմի կ'ելնէ, և Պելէսայի վարի կողմէն գալով Կանուէր քաղաքին մօտ բանակը կը դնէ ։ Թըրսօ-Կոլվազի ալ վերի կողմէն կամաց կամաց իր բանակը քալեցընելով անոր գլխացը կուգայ ․ և երեքի կը բաժնէ իւր բոլոր զօրքը, աջն ու ձախ Թեւերը մէկ մէկ իշխանաց կուտայ, և միջին գունդին ինքն անձամբ կը հրամայէ ։ Նախ կռուին բանակցիլ երկու կողմէն՝ որ ակ-

(1) Լատայու երկիրը Պելէսայի հիւսիսակողմը կ'ըլլայ, և Թ․էկկեզի անուն մեծ հեղեղատով սահմանները կ'որոշուին ։

բոլ վերջացընեն պատերազմը ։ Ակշըմ-Կոլավըն կը պահանջէ Սըմին, Պելեսսա և Կոնտէր երկիրները. «Թէ որ սիրով տաս, կ'ըսէ Թըրսօ-Կոլավըին, պատերազմ չունիմ, ապա թէ ոչ՝ բաղդին կը թողում, կամ ինծի կու տայ կամ քեզի ։ Դուն Գոլա-Սկըրա երկրին մէջ անարգ տոհմէ յառաջ եկած մէկն ես, և ինչպէս կը համարձակիս ասանկ երկիրներու տիրել ։ Ես իշխանազուն եմ և իմ տոհմս յայտնի է. երկիր ժառանգել ինձ կը պատկանի. ուստի կը յորդորեմ զքեզ որ խաղաղութեամբ ետ քաշուիս և երթաս քու Գոլա-Սկըրա երկիրդ ձորուփոս տեղուանքը մնաս ։ — Այդ ամբարտաւան խորհուրդներդ մոքէ հանէ, կը պատասխանէ Թըրսօ-Կոլավըն. ես երկիր չունիմ սիրով քեզ յանձնելու երբէք, ո՛վ ծնունդդ Սկօյի վատ երկրին, հողի անմարդին, անսիրտ և վատին ։ » Ակշըմ-Կոլավըն արդարեւ նիհար ու ցամքած անձ մըն էր, տեսնողը ամենուն քաջութիւն մը չէր յուսար անկէ ։

Թըրսօ-Կոլավըն, որ Բաջատամն կը նշանակէ, և ինչպէս վերը պատմեցինք, հօկայաձեւ և հաստամարմին քաջ մըն էր, որու նմանը խիստ քիչ կը գտնուի այն երկիրները, նախ Թէոդորոսի քով զօրապետ էր, որ տեսնելով անոր քաջութիւնը և քանի մը անգամ պատերազմներէ յաղթութեամբ ետ դառնալը, սիրտը չքաշէր և կ'ուզէր հնարքով մը փճացընել զինքը ։ Նա ալ զգալով Չարտոգայի կողմերը կը փախչի Գոլա-Սկըրա ըսուած, որոնք ընդարձակ ձորուփոս և անկոխ տեղուանք են. հոն է իր հայրենիքը ։ Եւ կըսկսի ապստամբութեամբ և գողութեամբ ապրիլ հոն. քիչ քիչ մերձակայ տեղերուն և գիւղերուն կը տիրէ, և վեց տարուան մէջ բաւական կ'ընդարձակէ իր տիրած երկիրները ։ Այսպէս է սովորաբար ապստամբ իշխաններուն զօրանալը. նախ գողութեամբ և ապստամբութեամբ հիմն կը դնեն իրենց իշխանութեանը, և յետոյ գողութիւնը օրինաց դէմ է ըսելով նոյն յանցանքին մէջ գտած մարդիկը կըսպաննեն ։ Այսպէս սկիզբն առած է նաեւ Թէոդորոսի իշխանութիւնը ։

Ասորմէ ետքը կ՚ապստամբի նաեւ Վակշում-Կոխաղին, որ Վակշումի քաջը կը նշանակէ ։ Վակշումը Լասայի ընդարձակ և խիստ վայրենի երկրին մէջ կ՚ընկնայ . հոս ծնած է անոր հայրը և նախահայրերը, և նոյն երկրին չէխապետներն ըլլալնուն՝ բոլոր իրենց ցեղը երկրին անուանը կոչուած են . Ինչպէս են նաեւ իր ազգակիցները որ կենդանի են, Վակշում-Թէֆարի, Վակշում-Գրու, որ կը նշանակէն Վակշումի Գեղեցիկը, Վակշումի Արծաթը . Իւր հայրը ապստամբութեամբ տիրած է Լասայի, զոր Թէոդորոս հնարքով մը բռնելով ձեռքերը և ոտքերը կտրելէն ետքը կը կախէ, և այնպէս չարաչար կը մեռնի ։ Նոյն օրէն իւր որդին Վակշում-Կոխալղին միտքը կը դնէ պատեհ գտնելուն ապստամբիլ և հայրենի երկիրներուն տիրել, և քիչ քիչ բոլոր Լասստան իւր իշխանութեան տակ կ՚անցընէ ։

Ինչ ատեն անգղիական բանակը դէպ ի Սակտելա Թէոդորոսին վրայ կը յառաջանար, Վակշում-Կոխալղին ժամանակ գտաւ աներկիւղ Թըրսօ-Կոխալղիի վրայ քալելու և իր բաղդը փորձելու ։ Ինչպէս ըսինք՝ անձամբ նիհար և ճռզած մարդ մըն էր, բայց մտօք զօրաւոր հնարագէտ և սրտով արի . զօրքերը իւր երկրացիներն են, խիստ քաջ, ճարպիկ ու պատերազմասէր . Թէպէտ Թուով սակաւ, այլ զօրութեամբ քան զԹշնամիները գերազանցելով, ամենեւին անոնց շատութենէ չը վախնար, և կ՚ելնէ Թըրսօ-Կոխալղիի դէմ ճակատելու ։ «Տեսնենք, կ՚ըսէ, հիմայ պատերազմի դաշտին վրայ յայտնի կ՚ըլլայ նիհարն ու հսկայն . » կ՚ըսէ ու կը նետուի ձիուն վրայ ։ Թըրսօ-Կոխալղի ընտիր ձիեր չունենալով, կը պարտաւորի ոտքով անոր դէմ քալելու ։ (19 մարտ . ) Պատերազմը կ՚սկսի . առաջի բերան Թըրսօ-Կոխալղիի աջակողմեան գունդը Թշնամեաց բանակին մէկ Թեւը խորտակելով ցիրուցան կ՚ընէ և կըսկսի կողոպուտի ետեւէ ըլլալ ։ Այն միջոցին Վակշում-Կոխաղին հեծած ձին կը վիրաւորի կ՚իյնայ հրացանի գնտակով մը . ասոր վրայ զօրքերուն երկիւղը կը տիրէ և միտքերնին կը դնեն փախչելու ։ Բայց իրենց քով եղած

երկրթէ պզտիկ թնդանօթը քանի մը անգամ օդին մէջ գոռացընելով, ըստ որում գործածութիւնը գիտցող չկար մէջերնին, և Թըրսօ-Կոմաղիի զօրքերը անոր ձայնէն սարսափելով, աջ ու ձախ թեւերը և Օրմին ու Օկըլայի գիւղացի պատերազմականները կը թողուն կը փախչին՝ ըսելով Վակշըմ-Կոմաղիին. «Ահա քեզ կը թողումք որ ուտես երկրին հացը։» Ափրիկայ լերանց մէջ զրուցուածքի կերպ մըն է, որովհետեւ երկրին տիրելովը անոր հացն ալ արդիւնքն ալ իրը պիտի ըլլայ։ Եւ մնաց Թըրսօ-Կոմաղի իր թշնամւոյն դէմ միջին գնդովը որուն ինքը կը հրամայէր, և բոլորն ալ իւր երկրին մարդիկն էին։ Բայց երբ աչքը վեր վերցընելով կը տեսնէ դասալիք ու փախստական զօրքերը, որոնք խորէն հառաչանք մը հանելով կ'ըսէ. «Եթէ Աստուած ինծի տուաւ յաղթութիւնը, գիտեմ ինչ պիտի ընեմ ձեզի.» ըսաւ ու մտաւ կռուոյն ամենէն սաստկացած տեղը. հարուած հարուածի վրայ կուտայ. ձեռքի հաստաբուն նիզակովը արեան գետեր կը բանայ թըշնամեաց բանակին մէջ. որուն դէմ կը տկարանայ պահ մը Վակշըմ-Կոմաղին, և կը մտնէ կը պատսպարի թմբկահարաց գնդին մէջ, և անկէ կըսկսի զօրքերը խրախուսել։ Երկու կողմէն ալ նիզակներուն իրարու զարնելու ձայնը և հրացաններու գոռումն ու գնտակներուն շաչիւնը երթալով կը սաստկանան, մահացու վէրքեր կը բացուին։ Այն միջոցին Թըրսօ-Կոմաղի հարուած մը կ'ընդունի ձախ բազկին վրայ և կուրծքին աջ կողմին ալ գնտակ մը կը հանդիպի, զորոնք քանի տեղ չը դնելով՝ չէր դադարեր դեռ կռուելէն. բայց երբ գնտակ մ'ալ սրտին կուգայ կը զարնէ, ալ չը դիմանար, ձեռքերը կը թուլնան, զէնքերը վար կ'ինկնին և ինքը դիտապաստ գետինը կը փռուի և կը փչէ հոգին քաջութեամբ։ Վակշըմ-Կոմաղին տեսնելով անոր ինկնիլը. կը մօտենայ քովը ու կ'ըսէ. «Եղբայր, ո՛վ արդեօք յաղթեց, հսկայն թէ նիհարը։» Հոգեվարը որուն դեռ վերջին շունչը վրան էր, պատասխան կուտայ. «Հոգ չէ. երկուքս ալ յաղթեցինք։»

Երբ զօրաց գլուխը կամ իշխանը մեռնելու ըլլայ, պատերազմը կը դադրի, և յաղթեալ կողմը կամ կը փախչին և կամ յաղթող բանակին կապուտ կողոպուտ կ'ըլլան։

Թուրսօ-Կոմաղնի մահուան լուրը երբ կը տարածուի, Զարադայի մօտ լեռնաբերդին մէջ շղթայուած բանտարկեալները երկաթնին կոտրելով, լեռը գտնուած վառօդները, զէնքերը և ուրիշ ինչ որ կը գտնեն՝ յափշտակելով կը փախչին։ Թալաօ և Թագաոի երկրին ժառանգ եղող Հայլօ-Մարեամ իշխանն ալ՝ որ հոն բանտարկուած էր, ան ալ արձակուելով կը փութայ իր երկիրը և ապստամբութեան դրօշակը կը բանայ. ասիկայ մեզմէ կէս աւուր ճանապարհ հեռի էր։ Երբ լըսեցինք (24 մարտ) մենք ալ մեր իշխանին մահը՝ շուարեցա՛ք մնացինք, և նոր ապստամբաց ձայներն ալ աւելի թունդ կը հանէին մեր սրտերը. որովհետեւ մեր չորս սնտուկները և մնացեալ գոյքերնիս դեռ ձեռք չէինք բերած, և ուր ըլլանին ալ չէինք գիտեր։ Թէ որ նոր ապստամբ Հայլօ-Մարեամը գայ մեզի առնու տանի, գոյքերնիս՝ որ հարկաւ գլուղացւոց քովն էր, Վակշում-Կոմաղնին ձեռքը պիտի անցնին, և պիտի կորսըւին անպատճառ։ Ուստի փութացինք Վակշում-Կոմաղնին նամակ մը գրելով հասկցընել և անոր անձնատուր ըլլալ՝ քան թէ աննշան ապստամբի մը ձեռքը ըյնկնալ։ Շատ աշխատեցանք և չը գտանք գիր գրող մը բազմաթիւ կարգաւորաց և ժողովրդոց մէջէն։ Ես քիչ շատ Հաբեշերէն տառերը ճանչնալուս՝ մէկուն հեգել կուտայի գրուելիք տառերը և ես կը նշանակէի գրեթէ մեքենայաբար, բայց կարողացայ իմացընել անով մեր ո՛վ և ո՛ւր ըլլալնիս. միանգամայն և մեր Պալտըրավային խարդախութիւնները և սիրտը ճանչցած ըլլալով և վախնալով որ չարութիւն մը չհասցընէ մեզի, անոր համար ալ շնորհակալութիւն յայտնեցինք, և խնդրեցինք որ դարձեալ մեր քովը թողու զինքը նոյն պաշտօնով, և նամակը խրկեցինք մեր սպասաւոր Նազարէթցի Իշխասին հետ։

Թուրսօ-Կոմաղնի տիկինը երբ Զօնկէն Զարադա

եկաւ իւր տունը, անձամբ քովն երթալով ըսինք. «Ձեր իշխան էրկանը հոգւոյն և անոր սիրոյն համար ըլլայ մեր բեռներն ուր որ են, մեզի շնորհեմնիդ կը խնդրենք. Նա իր կենդանութեանը ժամանակ հրաման ըրած էր որ մեզի դարձընեն զանոնք։» Երբ լսեց տիկինը բարկացաւ իր սպասաւորներուն, և ինչ որ քովերնին կար մեր գոյքերէն՝ հանեցին տուին մեզի։ Քանի մը կտոր բան ալ մեր քովն եղած եկեղեցւոյն քահանային տուած էին որ մեզի յանձնէ. Նա առջի բերան կ'ուրանար, բայց յետոյ ստիպուելով հանեց տուաւ և իր գողութեամբը խայտառակուեցաւ։ Ասոնք իրենց ժողովրդոյ քով սուրբ համարուած են։

---

## ԳԼՈՒԽ Ը.

*Վակշըմ—Կովաղիի բանակին մէջ պատուով ընդունուելնիս։ Փոխ—առաջնորդին բանսարկութիւնը։ Վակշըմին հետ ըրած խօսակցութիւննիս. տուած ընծանիս։ Թէոդորոսի մահուան համբաւը. Վակշըմի ուրախութիւնը։ Տըքքա—Քիտանը—Մերեթ գիւղը բնակելնիս և Վակշըմին Ամպաճարա երթալն ու զօրանալը։ Կոճամի Ռեկալի—Տեսսան իշխանը։ Վակշըմ Թագաւոր կը հրատարակէ զինքը։ Նաբիեր զօրապետէն կասկածիլը, ու Թէկըիի իշխանին անկէ վարձատրիլը։ Գլաթ-տա—Գըոււ մեր Գալորըավայի վարքը. անկէ քարկոծուելնիս. և Նոր Թագաւորին դիմաց դատի մտնելնիս։ Գակըօ ըսուած երդման ձեւը։ Գալորըավայի դատապարտութիւնը։ Գերեսայու մէջ Թէքըլէհէմ—Անօթ գիւղը բնակելնիս։*

ՎԱԿՇԸՄ—ԿՈՎԱՂԻՆ մեր ղրկած նամակը կարդալով և իմանալով մեր ով և ինչ պատճառի այն երկիրները եկած ըլլալնիս, անմիջապէս լուր կը ղրկէ իւր փոքր եղբօրը Վակշըմ—Գըուի, որ իւր զօրքերովը Չարտոգայի մօտ երթալով և զմեզ առնելով իւր քովը տանի։ Վակշըմ—Գըուն զօրք ղրկելով տանել տուաւ մեզի։ Մարտի 30, 1868, սուրբ Զատկի խթման օրը ճամբայ ելանք. հետեւեալ օրը Զատիկը Գիղալա գիւղին մէջ կատարեցինք, և Մնուելոյի օր հասանք Վակշըմ—Գըուի

քով, որ մեծ սիրով ընդունեց մեզի վրանի մը ներքեւ հանգիստ առնելով։ Նաւաստուն ուրիշ աւելի ուժեղ ջորիներ բերել տուաւ, որպէս զի մէկ աւուր մէջ իւր եղբօրը մեծ իշխանին քով հասցընէ, որ Ակրայի մէջ բանակած էր։

Յատուկ վրան մը պատրաստել տուած էր մեզ համար Վակշըմ–Կոլազի, թէպէտ շիտակ իրեն չներկայացանք, սակայն իւր հրամանին համեմատ պատուեցին մեզի անոր բանակը հասնելնուս։ Երկու եզ, հինգ աման կերակուր, երկու կուժ մեղրագինի, երեք կուժ կորեկօղի և հարիւր հատ հաց մեզի պարգեւ բերին։ Եթէ իբրեւ ճշմարիտ քրիստոնեայ՝ եկեղեցականները պատուելու համար էր, և կամ նահապետական սովորութեամբ լոկ հիւրասիրութիւն կամ մարդասիրութիւն էր ըրածնին, արդարեւ գովութեան և վարձատրութեան արժանի գործ մըն էր. բայց մենք ստոյգ գիտէինք որ մեր սնտուկներուն վրայ մեծ ակնկալութիւններ ունենալէն էր, զորոնք երբ իմացաւ այլոց ձեռքն անցած ըլլալնին, անմիջապէս հրաման ըրաւ գիւղացւոց, որ շուտով ուր որ են՝ գտնեն իրեն բերեն։ Ժամանակ չանցաւ՝ սնտուկներն իրեն դիմացը բերուեցան. կանչեց մեզի ալ որ բանանք և մէջի պարունակութիւնները իրեն ցուցընենք։ Յետոյ դարձաւ դէպ ի իւր մեծամեծներուն ու ըսաւ. "Արդարեւ ասոնք երեւելի մարդիկ են, պէտք ենք պատուել զիրենք։" Ետքը մեզի դառնալով հարցուց թէ՝ ո՞ւր պիտի մնան այս սնտուկները։ "Դուք գիտէք, տէր, պատասխանեցինք. ձեր հրամանացը ներքեւ են։" Եւ հրամայեց որ մեր քով տանինք։ Նոյն օրը սնտուկները բանալնուս բաւական ընծաներ տուինք իրեն. բայց Թէոդորոսին համար յատկացեալ քանի մը կտոր պատուական ընծաները և իշխանական հոյակապ գաւազանը և փոքրիկ ոսկի խաչը (1) տեսնելուն շատ սիրահարեցաւ Վակշըմ–Կոլազի, և աչքը անոնց վրայ մնաց։ Դարձայ ըսի ի-

(1) Ականակուռ մեծ խաչը որուն մէջ զետեղուած կար կենաց փայտէն մաս մը, յափշտակուած էր Լասր—Ամիա լեռը։

րեն . «Տէր իմ, ասոնք մեր Լիզափափայը (Պատրիարքը) Թէոդորոսին համար խրկած է . բայց Ճշմարիտ Թագաւորը այսօր ով ըլլալը յայտնի չէ ։» Ջերմեռանդութեամբ լեցուելով իւր սիրտը՝ ձեռքս սեղմելով երկու անգամ ծածկաբար համբուրեց սուրբ խաչը . վասն զի իրեն հոգեւոր տեսուչը հոն ներկայ ըլլալուն՝ չէր ուզեր անոր կասկածանքի և խօսելու տեղիք տալ ։ Որով հետեւ այս մարդը կը յորդորէր զինքը որ իբրեւ եպիսկոպոս չճանչնայ զՊետր . Իսահակ սրբազանը, և անոր խաչին օրհնութիւնը չընդունի, այլ կ'ուզէր որ Աբունա–Սելամիի տեղ ուրիշ Խպտի եպիսկոպոս մը բերել տայ, սակայն Վակշում–Կոլագի 10,000 Թալէր խոստ-կելու կարողութիւն չունէր Խպտաց Կաթողիկոսին և անորմէ առաջնորդ խնդրելու ։ Հոգեւոր տեսուչը ուրիշ մը Թելադրուելով խրատ կուտայ մեծ իշխանին, ըսելով . «Թէ որ ասոնք եա ճամբելու ըլլանք, չեն Թողուր որ եպիսկոպոս գայ հոս, ուստի վար դիր ասոնք մինչեւ որ մարդ խրկես Եգիպտոս և սիրով եպիսկոպոս մը բերել տաս՝ այս դաշինքով որ սովորական սակը չպահանջեն մեզմէ . ապա Թէ ոչ՝ կ'իմացընես Կաթողիկոսին որ հոս Հայ եպիսկոպոս մը ունինք ծրի, և այն մեզի առաջնորդ կը հաստատենք ։ Նոր վրայ վստահ եմ ես՝ որ այս անգամ առանց մէկ պահանջմունքի եպիսկոպոս մը կը խրկէ ։ Յետ այնորիկ կ'ուզես կը խրկես ասոնք իրենց երկիրը, և կամ կ'ուզես վար կը դընես ։» Այս խրատները ի գործ կը դրուին ։ Բայց Թէկրին իշխանը խրկած մարդիկը բռնելով կ'արգիլէ, ըստ որում անոր երկրէն կ'անցնէին . և կ'ըսէ Թէ՝ «Ինձ կը վերաբերի եպիսկոպոս առաջնորդ մը բերել տալը ըստ հին օրինաց և սովորութեան ։»

Վակշում–Կոլագի մեծ իշխանին բանակը համնէնուս հետեւեալ առաւօտուն իւր կողմէն մէկը գալով, զոր մեզի իբր Պալտըրըավայ ցոյց տուած էր, ըսաւ . «Տէրս կը բարեւէ ձեզի . երէկ ձեր գալու ժամանակը կ'ուզէր Նկարիններով (զինուորական Թմբուկներով) զձեզ իւր բանակը ընդունել, բայց քնացած ըլլալով չկարացուստ

ներումն կը խնդրէ։ „Այս տեսակ կեղծ քաղաքականութեանց խիստ վարպետ են Հապէշք։ Յետոյ կը հրաւիրէ զմեզ իւր տիրոջը քով տեսութեան երթալու։ Ներս մտած ատեննիս ոտքի կը կանգնի կը բարեւէ. իւր աջդին նստած էր հոգեւոր Տեսուչնին, որ մեր տուած ողջոյնը խոժոռ դէմքով ընդունեց, և բաւական կրօնաւորներ կային իւր քովը, որոնց ամենուն աչքը մեզ կը նայէին։ Հարցուց մեզի մեծ իշխանը կրկին անգամ մեր այն երկիրը գալնուս պատճառը, և մենք պատմելով՝ սա ալ աւելցուցինք ու ըսինք. “ Ժամանակ ժամանակ թէ Ռաս-Ալին և թէ Թէկրիի Ուպիէ իշխանին օրով մեր սրբազան Պատրիարքին գրութիւններ և մարդիկներ գալով առաջնորդ խնդրած են, բայց անոնց խնդիրքը զանց առնուած են թէ ճանապարհին վտանգներուն և թէ այս երկրիս միշտ խռովութեան և պատերազմի մէջ ըլլալուն պատճառաւ։ Այժմու Թէոդորոս Թագաւորն ալ ասկէ 15 տարի առաջ և երկրորդ անգամ 3 տարի առաջ առաջնորդ եպիսկոպոս մը խնդրեց մեր սրբազան Պատրիարքէն, բայց նա պատասխանեց թէ Հապէշու երկրին առաջնորդական իրաւաբանութիւնը Ղպտուոց կաթողիկոսին կը վերաբերի. մենք չենք ուզեր անոր այս իրաւունքը յափշտակել. անիկայ խեղճ է, թող անոր հատուցանեն 10.000 թալէր իրաւունքը և առաջնորդ մը խնդրեն՝ եթէ Ապունա-Սելամին մեռած է։„

Մեր այս կերպ խօսելուն վրայ՝ Տեաչին երեսին վրայ քաղցր ժպիտ մը երեւեցաւ. բայց և այնպէս իրենց սովորութեան համեմատ կը պարտաւորին մեր կրօնը քննել իմանալ, թէպէտ և ուրիշներէն արդէն լսած էին։ Մեծ իշխանը աւելի քաղաքավարութիւն ցոյց տալով կ'ըսէ անանց. “Այս վարդապետները Աստուծոյ հրամանաւ եկած են հոս Թագաւորին քով երթալու. հիմայ մեր հիւրերն են. ինչ հարկ կայ հաւատաքննութեան. մանաւանդ ասոնց կրօնը ամենուս յայտնի է։„ Այսպէս խօսելով նա՝ չէր ուզեր իւր սիրտը և իւր գաղտնի խորհուրդը Տեաչին յայտնել, որու վրայ ամեն-

քըն ալ լռեցին , առանց կրօնի վրայ խօսք բանալու . և դարձանք պատուով մեր տեղը ։

Մեծ իշխանին քով առջի անգամ մտնելնուս և սնտուկները իր ներկայութեան բացուած ժամանակ թէպէտեւ քիչ շատ ընծաներ մատուցած էինք , երեք օրէն ետքը քանի մը ուրիշ արժանաւոր ընծաներ ևս նուիրեցինք , որ էին՝ պատուական գըրոց մի Երուսաղէմայ չէնք . պարսկական երկու ընտիր օթոց , կերպասեղէններ և կտաւեղէններ . նաեւ թուղթ , կարմիր կնքամոմ , ապարմաչէթ , զանազան գունով ուլունքներ , որոնք խիստ ընդունելի են իրենց քով ։ Նոյնք շնորհակալութեամբ ընդունած ատեն պատասխանեց . " Տէր , իմ ծերունազարդ Արքայական Հայրս հոգետեսութեամբ Թէոդրոս—Կոմազլի վախճանը իմանալով , չուզեց անոր և ոչ մէկ ընծայ մը շնորհել . բայց ձեր Տէրութեանն աւելի մեծնալը և թագաւորութեան պատւոյ բարձրանալը գուշակելով կը շնորհէ ասոնք . և կը խնդրէ որ գերագոյն իշխանութեան հասնելու ժամանակնիդ չը մոռնաք մեզի ։ — Ես ոչ թէ միայն չը պիտի մոռնամ զձեզ , ըսաւ , այլ և կը փափաքիմ որ ձեզի նկատմամբ իմ ունեցած բարի խորհուրդներս կատարեմ . շնորհակալ եմ ձեր այս փառաւոր նուէրներէն ։ " Իսկ եղբայրը Վակշըմ—Պրուն ալ և ուրիշ քանի մը անձինքներ ևս իրենց աստիճանին համեմատ ընծայիւք պատուեցինք , և համարէ թէ սնտուկները դատարկացան . և կամ թէ իրենց աներեսութեամբը դատարկացուցին , վասն զի շատերը գալով բան կը խնդրէին , և վերջի եկողներուն ստիպուեցանք պարապ սնտուկները ցոյց տալ ։

Ապրիլ 6 ին յանկարծ Թէոդորոսին անձնասպանութեան լուրը հասաւ Վակշըմ—Կոմազլիին , որ հրաման ըրաւ իւր զօրաց ուրախութեան հանդէսներ ընելու , ըսելով թէ՝ Աստուած ազատեց մեզի անոր հրոյ սպառնալիքներէն ։ Երկրին բոլոր եկեղեցականները թըմբուկներ զարնելով ու խաղալով խումբ խումբ իշխ- մօտ կուգային իրենց խնդակցութիւնը յայտնել ալ Գէր . Իսահակ սրբազանի կողմէն ներկայացայ

խնդակցութիւնը յայտնելէն զկնի ըսի իրեն. «Կը յիշէ՞ք, Տէր, քանի մը օր յառաջ մեր Արքայազն Հօր կողմէն ըսած քանի մը խօսքերս. ահաւասիկ այսօր կատարուեցան անոնք. և ես հիմա իմ Արքայազն Հօրս կողմանէ ձեր առջեւը կը խոնարհիմ արքայական պատիւ տալով ձեզ.» ըսի ու խոնարհեցայ, կեցցէ նոր Թագաւորը կանչելով։ Այս խօսքերուս վրայ ուրախութեամբ լեցուած՝ հրաման ըրաւ սպասաւորաց որ հալէֆէս (ընտիր) օթոցը իմ ներքեւս փռեն. նստայ վրան, և քիչ մը տեսութենէ ետեւ ըմպելիքներ մեծարելով մեկնեցայ քովէն։

Կոմաղի իշխանը հոգեւոր տեսուչէն գաղտուկ իւր մայրը մեր քովը խրկեց, որ առաւօտուն կանուխ եկաւ բղուղ մը արդար իւղ հետը ընծայ բերելով. և Արքայազն Հօր օրհնութիւնն առաւ, և յատկապէս խնդրեց որ իւր մէկ հատիկ որդւոյն անփորձութեանն ու զօրաւորութեանը համար միշտ իւր աղօթքին մէջ յիշելով Աստուծոյ օգնականութիւնը խնդրէ։ Վակշըմ-Պըրուլի մայրը զատ ըլլալուն համար, միակ որդի կ'անուանէր Վակշըմ-Կոմաղիի մայրը։

Քանի մը օր ետքը մեծ իշխանը իւր քովը կանչեց մեզի ու ըսաւ ներում խնդրելով. «Ես պարտաւորած եմ միշտ Թափառական շրջելու այս դիս այն դին ապստամբաց վրայ. ուստի իմ բանակիս հետ ձեր բեռներովը զձեզ պտըտցընելը թէ ձեզի և թէ ինծի ծանր է և անհանգստութիւն։ Այս երկրիս մէջ Տօքքա-Քիւանը-Մերէթ եկեղեցւոյն մօտ տուն մը պատրաստել տուած եմ ձեզի համար, և հրամայած եմ այն կողմի գիւղացւոց՝ որ երկու ամսուան համար պաշարք տան ձեզի. 10 չան (1) ընդեղէն (ցորեն), 100 աղ. 3 կուժ կարմիր պղպեղ, 7 կուժ սոխ. մէկ եզ. 1 բղուղ արդար իւղ և 2 բղուղ մեղր։» Անոր այս շնորհքներուն վրայ ոտքի կանգնելով շնորհակալ եղանք ու ըսինք. «Ձեր

(1) Տասը ճարա արմտիքը մէկ չան է. տասը չանը հազար հօխայէն աւելի կուգայ ։ Այս չափերը բոլոր Հապէշու երկրին մէջ մի և նոյն չեն. ամեն մէկ երկիր իրեն համար որոշեալ չափ ունի. Նոյնպէս հացերն ալ մի և նոյն չափով չեն ամեն տեղ։

հրամանները մեր գլխուն վրայ . բայց լաւ գիտէք դուք որ այս Հապէշստանի երկիրը երբէք խաղաղութեան երես չէ տեսած , մանաւանդ այս միջոցներուս մէջ . ուստի երբոր դուք մեզմէ հեռանալու ըլլաք , մեր վիճակն ինչպէս կ'ըլլայ . չորս կողմերնիս միշտ վտանգները պակաս չըլլալէն զատ , քանի մը ամիսէն ձմեռն ալ վրայ պիտի գայ հասնի , և մեր դժուարութիւնները պիտի աւելնան . ուստի կը խնդրեմք որ սիրով բարեհաճիք հրաման տալ մեր երկիրը դառնալու , ապա թէ ոչ՝ ձեզմէ բաժնուելիք չունինք երբէք , ուր որ երթաք՝ մենք ալ կուգանք . այս երկիրներն առանց կառավարող իշխանի մը միշտ երկիւղալի է ։ "Այս երկու ամիսը հոս կեցէք , ըսաւ մեզի , յետոյ ժողովքով պիտի խորհինք . կամ հոս մեր քով կը մնաք , և կամ ձեր երկիրը կը դառնաք . հիմակուհիմայ կատարեալ խօսք չեմ կրնար տալ ձեզի ։ " Այս խօսքերս որքան որ մենք կը հասկընայինք , թարգմանող մըն ալ ունէինք հետերնիս Յովհաննէս անուն ծերունի Ասորի մը Յամթեցի , որ 16 տարիէն ի վեր հոն է և խեղճութեամբ և մերկութեամբ կ'ապրի ։ Յետոյ հրաժարական ողջոյն տալով բաժնուեցանք իշխանին քովէն , և մեր առջի Պալորըռայի առաջնորդութեամբ Տոքքա-Բիտանը-Սէրէթ եկեղեցւոյն գիւղին մօտ մեզի համար պատրաստուած տունը եկանք ։

Հետեւեալ օրը Վակշըմ-Կոլագի ալ չուեց գնաց անկէց դէպ ի Սմպաճարա երկիրը , և ճամբայ ելնելու ժամանակը բարեւ խրկեց մեզի ըսելով . "Հոգ թող չընեն . երկու ամսէն ետքը տեղ կը պատրաստեմ և զձերնք քովս բերել կուտամ , և իմ աջակից Վակշըմ-Պլու եղբայրս կը թողում այս կողմերը Սկորայի մօտ Սըսան-Տենկեա (գըմբարոյ քար) երկիրը , որ արեւմըտեան հարաւային կողմը Թէքկէզի և Գօլա-Սկորա երկիրներուն նոր գլուխ վերցընող ապստամբները սիրով հնազանդեցընէ ։

Վակշըմ-Կոլագին Սմպաճարա եղած ատենը Թէոդորոսէն փախչող զօրքերը և զօրապետները կուգան իրեն բանակին մէջ կը զինուորին . նոյնպէս և Սակոե-

լա լեռը հազար հոգիէն աւելի բանտարկեալներէն շատերը կուգան իրեն կը հնազանդին, և Վակշըմ-Կոլագլի զօրութիւնն երթալով կ'աւելնայ:

Կոձամի իշխան Ուկալի-Տեստան, որ հօրն իշխանութեանը յաջորդելով ապստամբաց երեսէն նեղութիւններ կը քաշէր, Վակշըմ-Կոլագլին զօրանալը լսելով ընծաներ խրկեց և շնորհաւորեց անոր տիրապետութիւնը. Նա ալ ուրախանալով խոստացաւ իւր աղջիկը տալ անոր ու իրեն փեսայացընել: Այս ուրախառիթ լուրը առնելուն Ուկալի-Տեստան, իմացուց բոլոր իր երկրի ապստամբներուն ու յորդորեց զիրենք որ սիրով գան հնազանդին իրեն: Ասոր վրայ ոմանք կուգան կը հպատակին, և չեկողները բռնութեամբ կը հպատակեցընէ, և իւր եղբայրը որ հարճէ մը ծնած էր, կը բռնէ իր քովը կը շղթայէ:

Վակշըմ-Կոլագլին բնութեամբ գոռոզ և խիստ խորամանկ ըլլալով, այս անակնկալ յաջողութիւններն երբ կը տեսնէ, միտքը բերելով մեր նախագուշակութիւնները, զինքը Թագաւոր հրատարակել կուտայ առանց օծումի, և իր երկիրներուն մէջ պատերազմական նկարիները հնչեցընել կուտայ բոլոր տօնավաճառ եղած տեղուանքը. և մէկ ամիսէ ետքը իւր անունն ալ փոխելով Թէքլէ-Կորկիս (Գէորգ) կը կոչէ զինքը, և կը ծանուցանէ մունետիկի ձեռօք, որ այսուհետև ով որ Կոլագլի անունը տայ՝ պատժոյ կը հանդիպի: Ասկէ ետքը կըսկսի հասարակութիւնը գործի մը մէջ հարկ եղած ժամանակ Թէքլէ-Կորկիս Թագաւորին անունը երդուըննալ:

Երբ Թէոդորոս վտանգը նշմարելով լաւ համարեց քաջութեամբ իւր ձեռքովն իր կեանքը զրաւել քան թէ Անգղիացւոց ձեռքն ընկնիլ, Սըր-Ռոպէրդ Նաբիէր ընդհանուր հրամանատարը բանակին՝ ետ դառնալու ատենը լուր կը խրկէ Թէքլէ-Կորկիսին, ինչպէս որ պատմեցին մեզի, որ փութով իւր քովը գայ և ի նշան իւր շնորհակալութեանը վարձատրութիւն ընդունի: Վասն զի՝ Նաբիէր Լաստայի երկրէն անցած ատեն Վակ-

չըմ—Կովաղին իշխան մը անոր առաջնորդ տուած էր մինչեւ Մ՝ակտելայի լեռը (Ամպան) հետը երթալու։ Այս օրինակ ծառայութիւն մըն ալ Տէճազմաչ Բասան ըրաւ Անգղիական բանակին։ Թէքլէ—Կորկիս ուզեց ընդունել անոր հրաւէրը, և կը յուսար որ Նաբիէրի միաքը զինքը Թէոդորոսին տեղ թագաւորեցընել է․ բայց յետոյ իւր գլխաւոր մարդոցը տուած մեկնութիւններէն կասկածելով, որոնք կ՚ըսէին թէ Անգղիոյ բանակին հրամանատարը վարպետութեամբ դքեզ ձեռք ձգելով միաքը Տէճազմաչ իշխանին յանձնել է և զանիկայ թագաւորեցընել, վախցաւ ու չգնաց անոր քով, և հետեւապէս զրկուեցաւ վարձատրութենէ։ Իսկ Տէճազմաչ Բասան Անգղիական տէրութեան վեհանձնութենէն բնաւ չկասկածելով ընդունեց Նաբիէրի հրաւէրը, և վարձատրուեցաւ իւր մատուցած ծառայութեանը փոխարէն։

Ինչպէս վերը երես 79ին մէջ խոստացանք մեր Պալտըսավային վարուցը վրայ խօսել, և հոս կարգը գալուն կը փութանք կատարել մեր խոստմունքը, ըստ որում անոր մեզի մատուցած ծառայութեան հետ առընչութիւն ունին նշանաւոր դէպքեր որ մեզի պատահեցան։

Թըրոսօ—Կովաղին, ինչպէս իւր տեղը պատմած ենք, Բաշ—Ամպայէն հանելով Ակրայի Զօնկ ըսուած տեղը իր հետը տարաւ մեզի․ հոն Թէոդորոսի քովէն փախչող Պլաթտա—Պրու անունով քրիստոնեայ Հապէշ մը սկսաւ մեր քովը յաճախել։ Նոր արհեստը հիւսնութիւն էր, կամ լաւ եւս՝ փայտ տաշող, ուստի Թըրոսօ—Կովաղի ալ Զարտոգայի մէջ եկեղեցի մը շինել տալ ուզելով, այս մարդը անոր շինութեանը վերակացու կը կարգէ։ Մենք, որովհետեւ ճշմարիտ քրիստոնէի ու բարեպաշտ մարդու մի կարօտ մնացեր էինք, տեսնելով այս մարդուն ջերմեռանդ հաւատքն ու պարզութիւնը, կը զարմանայինք թէ ինչպէս եղեր է որ Հապէշստանի մէջ այսպէս քրիստոնեայ մը գտնուեր է։ Ազօթագիրքերը միշտ հետը կը պտըտցընէր․ վիզը խաչ մը կախած և ձեռքը համրիչ մը կը դարձընէր միշտ․ խօսքերը քաղցր

ու գրաւիչ, և կրօնի վրայ քիչ շատ տեղեկութիւն ունէր. և հոգեւոր խօսակցութիւններ ըրած ատեններս այնպէս ճիտը խոնարհած մռիկ կ'ընէր և կը զմայլէր, և փարելով մը մեր ձեռուըները կը համբուրէր ու կըսէր. «Սուրբ Հայր իմ, դուք ուր որ երթաք՝ ձեզմէն չպիտի զատուիմ, թէ Երուսաղէմ մեկնելու ըլլաք և թէ այս երկիրը մնաք. վասն զի դուք կենաց խօսքեր ունիք, որով իմ հոգիս կը կերակրէք»: Գիշերը մեր քով պառկելու ատեն երկար կ'աղօթէր, ամէն օր ծոմապահութիւն կ'ընէր, առաւօտները կանուխ եկեղեցի կ'երթար. ամէն շաբաթ կը հաղորդուէր: Կ'ըսէր մեզի թէ՝ իրենց երկրի մարդոց շատը գող, ստախօս և պէշ են, բազմակին են և քրիստոնէի պարտքերը չեն ճանչնար. «Ամենեւին չեմ սիրեր զանոնք, կ'ըսէր, վասն զի հաղորդուող եմ, սուտ չեմ սիրեր, մարդու պէշութիւն չեմ ուզեր, Կորավլի(1) կին ունիմ: Ես երբ իշխանութեան վրայ էի և երկրի տէր, իմ հասոյթներէս աղքատաց, եկեղեցեաց և քահանայից բաժին կը հանէի. զրկողութիւն և յափշտակութիւն ինչ է՝ չեմ գիտեր.» այս խօսքերը միշտ կը կրկնէր մեզի, և երբեմն յիշեցընել կուտար մեզ սուրբ Աւետարանի փարիսեցին: Իւր արտաքին շարժմունքներն ալ խօսքերուն կը համապատասխանէին, որոնց առջի բերան խաբուելով Աստուծոյ սըրտին համեմատ մարդ մը, ճշմարիտ Իսրայէլացի մը կը կարծէինք զինքը:

Թըլըսօ—Կոմաղի երբ Չարտոգա խրկելու եղաւ մեզի, այս մարդը տուաւ Պոլորավա և գործակատար՝ որ մեր վրայ և բոլոր ընչիցը հսկէ և հոգ տանի ամէն կողմէն. և մենք, որովհետեւ արդէն կը ճանաչէինք զինքը, շատ գոհ ու շնորհակալ եղանք մեծ իշխանին՝ որ ատանկ ջերմեռանդ ու քրիստոնեայ անձ մը յատկացուց մեզի հոգատար: Բայց Պլաթոա—Պրու երբ այս պաշտօնը առաւ, քիչ քիչ սկսաւ իւր առջի վարքը փոխել: Թըլըսօ—Կոմաղիի մահուանէն ետեւ ոչ եւըս իբրեւ պաշտօնատար կամ հոգատար, այլ իբրեւ տէր

(1) Կորավլի կը կոչուին անոնք որ կը հաղորդուին սրբազան խորհրդոյն

սկսաւ հետերնիս վարուիլ, այն աստիճան որ չէ թէ միայն իբրեւ փարխացի մը, այլ իբրեւ գող, ստախօս և յափշտակիչ, և բոլոր իր պարծենցած առաքինութեանցը հակառակ՝ մոլի անձ մը սկսանք նկատել զինքը։ Բայց որովհետեւ անիշխանութեան միջոցին էր, ստիպուեցանք համբերել՝ ձայն չհանել, թէպէտ և խիստ կը տառապէինք և շատ գիշեր արթուն կը հսկէինք իրմէ վախնալնուս, և Աստուծոյ այցելութեանը կըսպասէինք։ Այս միջոցին էր որ ամէն դիէն ապստամբութեան ձայներ կը լսէինք. գլուխը հինգ տասը հոգի ունեցողը իշխան կ'ըլլար. ամէն տեսակ պէշութիւններ և յափշտակութիւններ հասարակ եղան. զօրաւորը տկարին ընչիցը կը տիրէր, մահ և սպանութիւն պակաս չէր։ Մեր Կորավլին և սուրբ կարծուած Պալորբավան ժամանակը բարեպատեհ համարելով մեր երեք ջորիները իրեն գրաւեց, յառաջուց ասոնք իմս էին ըսելով. մենք վախերնուս ձայն չէինք կրնար հանել։ Շատ ատեն չանցաւ Մունետիկներու միջոցաւ Վաշըմ-Կոմպղի տէրապետութեան լուրը տարածուելով խռովութիւնները դադրեցան, մենք ալ եկանք այս նոր իշխանին մօտ, բայց առանց գանգատ մը ընելու անոր մեր Պալորբավայէն և քովերնէս վռնտելու, որպէս զի չըլլայ թէ մեր վրայ զանազան զրպարտութիւններ կուտելով մեր անունը աղարտէ, ինչպէս սովոր են այն երկրին ծառաները ընելու երբ տէրերնուն քովէն կը վռնտուին; այլ կ'ուզէինք որ սիրով քովերնէս հեռացընենք, բայց չեղաւ։

Տոք.քու—Իխմանը—Մերէթ եկեղեցւոյն գիւղը բնակած ատեննիս, մեծ իշխանին մեզի շնորհած արմտիքներուն և ուրիշ պարգեւներուն կէսէն աւելին ինքը կ'առնու և զանոնք դրամով ծախելով դրամը գիւղացւոց կաշառք կուտայ որ հարկ եղած ժամանակ իւր անիրաւութեանց դէմ զինքը պաշտպանեն և բարի վկայութիւն տան։ Ասոնք բոլոր գիտէինք, բայց կը լռէինք, որովհետեւ մեծ իշխանը մեզմէ հեռացած էր և կարելի չէր որ անզգամին հետն ընկնէինք, կամ խօսք մը խօսէինք։

ու դրաւիչ, և կրօնի վրայ քիչ շատ տեղեկութիւն ունէր. և հոգեւոր խօսակցութիւններ ըրած ատեննիս այնպէս ճիտը խոնարհած մօտիկ կ'ընէր և կը զմայլէր, և փարելով մը մեր ձեռուընները կը համբուրէր ու կըսէր. «Սուրբ Հայր իմ, դուք ուր որ երթաք՝ ձեզմէն չպիտի զատուիմ, թէ Երուսաղէմ մեկնելու ըլլաք և թէ այս երկիրը մնաք. վասն զի դուք կենաց խօսքեր ունիք, որով իմ հոգիս կը կերակրէք»։ Գիշերը մեր քով պառկելու ատեն երկար կ'աղօթէր, ամեն օր ծոմապահութիւն կ'ընէր, առաւօտները կանուխ եկեղեցի կ'երթար. ամեն շաբաթ կը հաղորդուէր։ Կ'ըսէր մեզի թէ՝ իրենց երկրի մարդոց շատը գող, ստախօս և պէշ են, բազմակին են և քրիստոնէի պարտքերը չեն ճանչնար. «Ամենեւին չեմ սիրեր զանոնք, կ'ըսէր, վասն զի հաղորդուող եմ, սուտ չեմ սիրեր, մարդու պէշութիւն չեմ ուզեր, Կորակի(1) կին ունիմ։ Ես երբ իշխանութեան վրայ էի և երկրի տէր, իմ հասոյթներէս աղքատաց, եկեղեցեաց և քահանայից բաժին կը հանէի. զրկութիւն և յափշտակութիւն ինչ է՝ չեմ գիտեր.» այս խօսքերը միշտ կը կրկնէր մեզի, և երբեմն յիշեցնել կուտար մեզ սուրբ Ներսէսի փարխանցին։ Իւր արտաքին շարժմունքներն ալ խօսքերուն կը համապատասխանէին, որոնց առջի բերան խաբուելով Աստուծոյ սըրտին համեմատ մարդ մը, ճշմարիտ Իսրայէլացի մը կը կարծէինք զինքը։

Թորոս-Կոլակի երբ Զարասդա խրկելու եղաւ մեզի, այս մարդը տուաւ Պալդըրալս և գործակատար որ մեր վրայ և բոլոր ընչից հսկէ և հոգ տանի ամեն կողմէն. և մենք, առաջուընէ արդէն կը ճանաչէինք զինքը, շատ գոհ ու շնորհակալ եղանք մեծ իշխանին՝ որ սաստիկ ջերմեռանդ ու քրիստոնեայ անձ մը յանձնեց մեզի հոգատար։ Բայց Պլաժտա-Պրու երբ այս պաշտօնը ստացաւ, քիչ քիչ սկսաւ իւր առջի վարքը փոխել։ Թորոս-Կոլակի մահուանէն ետեւ ոչ եւըս իբրեւ պահապան կամ հոգատար, այլ իբրեւ տէր

(1) Կորակի կը կոչուին անոնք որ կը հաղորդուին սրբազան խորհրդոյն

սկսաւ հետեւինիս վարուիլ, այն աստիճան որ չէ թէ միայն իբրեւ փախստեայի մը, այլ իբրեւ գող, ստախօս և յափշտակիչ, և բոլոր իր պարծենցած առաքինութեանցը հակառակ՝ մոլի անձ մը սկսանք նկատել զինքը։ Բայց որովհետեւ անիշխանութեան միջոցին էր, ստիպուեցանք համբերել՝ ձայն չհանել, թէպէտ և խիստ կը տառապէինք և շատ գիշեր արթուն կը հսկէինք իրմէ վախնալնուս, և Աստուծոյ այցելութեանը կըսպասէինք։ Այս միջոցին էր որ ամեն դիէն ապստամբութեան ձայներ կը լսէինք. գլուխը հինգ տասը հոգի ունեցողը իշխան կ'ըլլար. ամեն տեսակ գէշութիւններ և յափշտակութիւններ հասարակ եղան. զօրաւորը տկարին ընչիցը կը տիրէր, մահ և սպանութիւն պակաս չէր։ Մեր Կորավլին և սուրբ կարծուած Պալորբալան ժամանակը բարեպատեհ համարելով մեր երեք ջորիները իրեն գրաւեց, յառաջուց անոնք իմս էին ըսելով. մենք վախերնուս ձայն չէինք կրնար հանել։ Շատ ատեն չանցաւ մունետիկներու միջոցաւ Սակշըմ-Կոմպելի տիրապետութեան լուրը տարածուելով խռովութիւնները դադրեցան, մենք ալ եկանք այս նոր իշխանին մօտ, բայց առանց գանգատ մը ընելու անոր մեր Պալորբալայէն և քովերնէս վռնտելու, որպէս զի չըլլայ թէ մեր վրայ զանազան զրպարտութիւններ կուտելով մեր անունը աղարտէ, ինչպէս սովոր են այն երկրին ծառաները ընելու երբ տէրերնուն քովէն կը վռնտուին; այլ կ'ուզէինք որ սիրով քովերնէս հեռացընենք, բայց չեղաւ։

Տղաքս—Բիտանը—Սերբէթ եկեղեցւոյն գիւղը բնակած ատեննիս, մեծ իշխանին մեզի շնորհած արմտիքներուն և ուրիշ պարգեւներուն կէսէն աւելին ինքը կ'առնու և զանոնք դրամով ծախելով դրամը գիւղացւոց կաշառք կուտայ որ հարկ եղած ժամանակ իւր անիրաւութեանց դէմ զինքը պաշտպանեն և բարի վկայութիւն տան։ Ասոնք բոլոր գիտէինք, բայց կը լռէինք, որովհետեւ մեծ իշխանը մեզմէ հեռացած էր և կարելի չէր որ անմիջապէս հետը ընկնէինք, կամ խօսք մը խօսէինք։

Քանի մ՚օր առանց աղի և առանց իւղի շըռօ (1) բաուած կերակուրը ուտելով և այս օրինակ զրկողութեան մը չը կրնալով համբերել, Ակրայի գլխաւորին քով անձամբ գացի, և աղաչելով խնդրեցի իրմէ որ գթալով գոնէ քիչ մը աղ տայ մեզի. ընդունեց խնդիրքս ու յիսուն տրամի չափ աղ տուաւ ու ըսաւ. «Քանի մը օր ասով բաւականացէք, և շուտով սպասաւորնիդ խրկեցէք որ գիւղէ մը վրայ զօրք հանելով աղ բերել տամ ձեզի համար:» Խրկեցինք Ապպա–Պոտոս (սուրբ հայր) անունով Հապէշ սպասաւորնիս. բայց ճամբան դժբաղդաբար Պալըրրավան իրեն հանդիպելով և անոր ուր երթալը իմանալով, և բարկանալով որ իրեն վերաբերեալ գործը այն կը կատարէ, լաւ մը կը ծեծէ իր արբանեակներուն օգնութեամբը և կ՚ըստիպէ որ ուրիշ ճամբէ մը իւր երկիրը դառնայ. բայց նա անոր ոտքը համբուրելով կ՚աղաչէ որ ներէ իրեն. վերջապէս Պալըրրավան երդումն կուտայ անոր որ մեզի բան մը չըսէ. կը դառնայ սպասաւորնիս ձեռնունայն մեր քովը: Հոն սպասաւորը ծեծած տեղերնին Պալըրրավան իւր արբանեակներուն հետ կ՚երդուընեան, որ նոյն գիշերը մեզի սպաննելու համար ըրած խորհուրդնին կատարեն քընացած ժամանակնիս:

Ապպա–Պոտոս անոնց դաւաճանութեան խորհուրդը իմանալով, կուգայ՝ տըքտըքալով մը չխտակ իւր տեղը կը պառկի առանց բերանը բանալու: Զգացինք որ անոր գլխուն բան մը պատահած է, չուզեց ըսել մինչև որ տուած երդումէն չարձակեցինք զինքը. անոր վրայ պատմեց մեզի կերած ծեծը և անոնց չար խորհուրդը. որոնք մեզի սպաննելով, և մեր քով գտնըուած եկեղեցական զգեստներն ու անօթները յափշտատակելով Թագաւորի երկիրը իրենց մէկ ապստամբ բարեկամին քով պիտի փախչէին: Այս լուրը իմանալնուս պէս փութացինք Ակրայի գլխաւորին քով երթալ ու ամեն բնչ անոր իմացընել: Բայց Պլաթտո–Պրու, որ

(1) Շըռօ ըսածը տեսակ մը խիւս (լափա) է կորեկի, սիսեռի, բակլայի ալիւրով եփած, որու մէջ իւղ և կարմիր պղպեղ ալ կը խառնեն:

մարդը ծեծելէն ետքը դարձեր մեր քովն եկեր էր ան-
մեղ գառնուկի նման, չը թողուց որ ջորիները հեծ-
նանք գլխաւորին քով երթալու այն օրը, որպէս զի գի-
շերը ի գործ դնեն իրենց խաղալիք մահուան գերը։ Մեր
սպասաւորաց հարկ եղաւ որ բռնութեամբ խլեն ջո-
րիները, ուրկէց կռիւ մը ծագեցաւ երկու կողմէն,
հայհոյութիւններ տեղացին, որոնց յաջորդեց ծեծը։
Երբ շշուկն ու աղաղակները լսեցինք, դուրս վազեցինք
որ մէջ մտնենք և արգիլենք. նոյն կէտին սկսեր էին
քարի հարուածներ տալ իրարու. գաղանաբարոյ Գալ-
տըրավան և արբանեակները լաւ առիթ գտնելով այս
միջոցը, ահագին քար մը նետեցին յանկարծ Արբագան
Հօր կռնակին, որուն սաստկութենէն ընկաւ մարեցաւ.
անոր օգնութեան վազեցի առանց մտիկ ընելու իմ
վրաս ալ տեղացող քարերուն, որոնք բարեբաղդաբար
չէին դիպեր, միայն մէկ քար մը ձախ կշտիս գալով
քիչ մը ցաւցուց, բայց անվնաս էր։ Վերցուցինք Արբ-
բագան Հայրը մեր սպասաւորաց օգնութեամբը ու
ներս տարինք հարկաւոր դարմանները ընելու։ Երկու
Նազարէթցիները վրէժխնդրութեան ոգւով վառուած
ու զայրանալով ապերախտ Գալթաս—Գրուի վրայ, քա-
րերով յարձակեցան անոր և իւր մարդոց դէմ. կը բռ-
նեն զինքը և իրենց ձեռքի արջառաջիլ խարազաննե-
րու տակ ձգելով չարաչար կը ծեծեն, և անոր վեց մար-
դոցը և երկու տղացը ետեւէն ընկնելով կը հալածեն։

Գործը բաւական ծանր էր և մեր վտանգը կրնար
աւելի մեծնալ, ըստ որում Գալտըրավայի կողմը զօրա-
ւոր էր. լաւ ձեռք չէր տար, ուստի գիւղապետին լուր
խրկեցինք, որ անմիջապէս եկաւ բռնեց մարդիկը, և
գիւղի ծերունիները ժողվելով կռւոյն պատճառները
սկսաւ քննել։ Գիտցանք որ արդէն կաշառուած էին
անկէ, կ'արդարացընեն անզգամը և Արբագան Հօր կռ-
նակէն քարով զարնուիլը կ'ուրանան։ Բայց գիւղապե-
տին մէկ սպասաւորը և ուրիշ օտար մէկը հոն գտնուե-
լով իրենց տեսածը կը վկայեն։ Հետեւապէս Գալտըրա-
վան և իւր մէկ գողխաթանման սպասաւորը թեւերնէն

կը շղթայուին և միւսները կ'արձակուին , և մեր քովն ալ պահապան կը դրուի ըստ սովորութեան տեղւոյն :

Հետևեալ օրը Ակրայի գլխաւորին քով գանգատի երթալով պատմեցի իրեն բոլոր եղածները , և ըսի թէ՝ եպիսկոպոսի մը քար նետելը ուրիշ բան չէ՝ բայց եթէ եկեղեցին քարկոծել . և այս յանցանքը խիստ մեծ կը համարուի թէ որ կրօնական առենի առջև դատուելու ըլլայ : Նոր վրայ հրամանն ըրաւ գլխաւորը և խոկոյն բացօթեայ տեղ մը իրենց սովորութեան համեմատ երկու հարիւրի չափ մարդիկ ժողովեցան , որովհետև ամեն մարդ ազատ է դատաստանի մը ներկայ գտնուելու : Հոն կանչուեցաւ Պլաթոս—Պրուն պատասխանատու ըլլալու , և մենք մեր կողմէն օպատուորնուս մէկը փոխանորդ կարգեցինք . երկու կողմն ալ զրուցել տալէն ետքը՝ գլխաւորը կ'իմանայ մեր իրաւունքը , բայց հարկ է կ'ըսէր՝ վկայ բերել եպիսկոպոսին զարնուելուն : Շուարեցանք մենք քիչ մը , բայց մէկէն սիրտ առնելով ըսի . " Տէր , այս օտար երկրին մէջ մեզի համար ո՞վ կը վկայէ . մեր ճշմարիտ վկայն Աստուած է , որ ամեն ինչ կը տեսնէ և գիտէ անոնց քարկոծելը : " Երբ դեռ խօսքը բերանս էր , յանկարծ Թէֆաէրային մէկը , որ իրենց քով կարդացող և դպիր կը համարուին, ոտքի ելնելով ըսաւ . " Մտիկ ըրէք ինձի սիրով ինչ որ պիտի խօսիմ այս առենին մէջ ճշմարտութենէն թելադրուելով : Ես այս ճերմակ մարդիկը չեմ ճանչնար , և տեսութեան համար քովերնին ալ գացած չեմ բնաւ, բայց գործին եղելութիւնը սկիզբէն պատճառաւ մը հոն ներկայ գտնուելով և ծեր եպիսկոպոսին քարով զարնըւիլը աչօքս տեսնելով կը վկայեմ , որպէս զի իմ խիղճս հանդարտի . և կ'իմացընեմ այս առենին մէջ որ այն անձն էր եպիսկոպոսին քարով զարնողը : " Բոլոր ժողովը միաբերան պոռացին . " Յանցաւոր է . " և հրամանն ըրաւ գլխաւորը որ Պալտըրայի թևերը երկաթի զարնելով գիւղին մէջ իւր տունը բանտարկուի : Բայց որովհետև մեր գիւղին մէջ էր անոր բնակարանը և բոլոր գիւղացիք անոր պաշտպան և կուսակից էին , կրկին

անգամ գլխաւորին քով երթալով խնդրեցի որ մեր քովէն հեռացընէ զանիկայ, և մեզի ալ Թագաւորին քով խրկէ ։ Աւստի կանչել տալով գիւղապետը պատուիրեց անոր որ մեզի իբրև Պալորրալա հսկէ և գալիք չարիքներէ պահպանէ մինչև Թագաւորին գալը. և այն անզգամն ալ իւր տընէն հանել բանակը բերել տալ կ'ուզէր ։ Բայց նա "եղած տեղս եկեղեցի է (1), հոն ապաստանած եմ ես" ըսելով դէմ կը կենար ։ Բարկացաւ գլխաւորը և բռնութեամբ բերել տուաւ քովը ըսելով. "Եթէ հրաման ըրի որ հոն բանտարկուիս, և ոչ թէ դուն հոն փախչելով ապաստանեցար եկեղեցւոյն մէջ." և անմիջապէս բանակին մէջ բանտարկել տուաւ ։

Հոն բանտարկուած միջոցին խորամանկ Պլաթաա—Պրուն հնարքներ մտածելով բարեկամները Ամպաձարա կը խրկէ Թագաւորին մեծամեծներուն քով և անոր հոգևոր տեսչին, որուն մեզի չսիրելը լաւ գիտէր, և զանազան զրպարտութիւններ ընելով մեր վրայ՝ կը գրգռէ զանոնք, անոնք ալ Թագաւորին կ'իմացընեն, որ անմիջապէս զօրք հանելով Ակըրայի գլխաւորէն կը պահանջէ թէ մեզի և թէ մեր սոխը ։ Զինուոր մըն ալ կուգայ մեր գոյքերը պահպանելու, որ չըլլայ թէ մէջէն բան մը վերցընենք ։ Պլաթաա—Պրուի թեւերէն շղթաները քակեցին, որովհետև ինքն եղաւ մեզի դատախազ, և սկսաւ այնուհետև խրոխտալ մեր վրայ ։

Մայիս ամսոյ 22 ին Ճամբայ հանեցին մեզի խեղճութեամբ. հետերնին առին նաև գիւղապետը, ու Ռըմպըլկէ, Դըհամետա, Մարեամ Աւհա գիւղերը հանդիպելով չորրորդ օրը հասանք յԱմպաձարա Թէքլէ—Կորկիսի (Վակշոմ—Կողագիի) բանակը. ուր ամենավատ ու անարդ խուղ մը տուին մեզի բնակելու անպատիւ կերպով մը, և քովերնիս մարդ չթողուցին որ գան, և գիշերն ալ անօթի մնացինք ։ Բայց մեր աչքին ոչ հայ

(1) Երեւելի եկեղեցիները յանցաւորաց ապաստանարան կը համարուին Հապէշստանի մէջ, ուր փախչողը պատժէ կ'ազատի. նոյնպէս է նաև եկեղեցւոյն կից եղած գիւղը, որ անոր անուամբ կոչուելով եկեղեցի կը համարի ։

կ՚երեւար և ոչ ուրիշ բան. մեր հացը արտասուաց հացն էր, և մեր խմելիքը վշտաց և նեղութեանց դառն բաժակը։ Բոլոր գիշերն ուրիշ բան չէինք մտածեր, բայց եթէ մեր տարաբաղդութիւնը, կրնամ ըսել թէ՝ այն Անգղիացի բանտարկեալները, որոնց ազատութեանը համար միջնորդելու եկած էինք, մեզի չափ նեղութիւն և տառապանք չէին կրած։ Այս վիճակիս մէջ մեծ մխիթարութիւն էր մեզի մեր հոգեւոր պաշտօնը, զոր Քրիստոսի եկեղեցւոյն համար յանձն առած էինք անձնուրացութեամբ. այսու ամենայնիւ մարդս կը պարտաւորի թէ իր անձը և թէ իր պատիւը՝ որ բարոյական կեանք ըսել է, պահպանելու համար բոլոր իր ճիգը թափել, եթէ գիտնայ որ անոնց զոհողութեամբը եկեղեցւոյն օգուտ մը չկայ։ Ասոր համար այն գիշեր, մեր ազատութեան և առաջիկայ դատաստանէն պարզերես ելնելու համար խորհրդածելէն ետեւ, վերջապէս Աստուծոյ օրհնեալ կամքը յանձնեցինք մեզի։ Իսկ մեր սոխը գիշերն ի բուն մեծամեծաց դըռները պտըտելով անոնց սրտերը գրաւելու միջոցներ բանեցուց։

Առաւօտուն գացինք այն վրանը ուր տեղ դատաստանական ատեանը պիտի կազմուէր. Թագաւորը դեռ չէր եկած, այլ մեծամեծք հետզհետէ կուգային կը հաւաքուէին հոն, որոնք մեր անզգամ սոխը հետերնին խօսեցած ատեն՝ կը դառնային դէպ ի ինծի կը նայէին։ Երեք հարիւրի չափ մարդիկ եկան խռնեցան, որոնց մէջ էին նաեւ Բասր-Ամպայի իշխանները որոնք կողոպտեր էին մեզի, վասն որոյ և մեր ներկայութիւնն անոնց անհաճոյ գալով՝ ժամ մը յառաջ խայտառակութեամբ երկրէն դուրս վռնտուելնուս կը փափաքէին։ Ամենէն վերջն եկաւ Թագաւորը, ու մեզի բարեւելէն ետքը իրեն համար յատկացած երկար դիրքով բազմոցի մը վրայ նստաւ, ու ըսաւ. “Այսօր ամեն բանէն յառաջ այս մարդոց դատը պէտք ենք տեսնել։” Ու հրամայեց որ ամբաստանեալքն ու դատախազը ատեան գան։ Մենք դառնալով մեր կողմէն մեր Հապէշ

տպասաւորին մէկը փոխանորդ կարգեցինք. Նախ Պլաթ-տա—Պրուի հրամայեցին որ խօսի, որ համրիչը ձեռքը բռնած ու աղօթաւորի կերպարանքով ըսաւ բարձրաձայն. «Ո՛վ Թագաւոր, ես Կորալի (հաղորդուող) եմ, կը խնդրեմ որ մեր այս դատաստանը ճշմարտութեամբ և արդարութեամբ տեսնէք Աստուծոյ սիրոյն համար և առանց աչառելու:» Այս կերպ յառաջաբանելէն զկնի սկսաւ զրպարտութիւններու և ստութիւններու շարք մը մէջ բերել մեր Թարգմանին վրայօք, և երբեմն գլխ ալ մէջ խառնելով, և որքան Հայրը Թերեւս իւր ծերութեանը խնայելով՝ անմեղ կը ցուցընէր: Կ՛ըսէր նա իւր զրպարտութեանցը մէջ թէ՝ մեր Թարգմանին Թելադրութեամբն ու առաջնորդութեամբը բոլոր մեր գոյքերը հետերնիս առած գիշերով պիտի փախչէինք երթայինք Թէկիրիի իշխանին մօտ, որ Թէքըլէ—Կորկիսի աչքին ատելի էր. և թէ ինքն արգիլել ուզելով մեզի՝ կռուի բռնուած ու զինքը գանակոծ ըրած ենք, և գիւղացւոց վրայ հասնելովը չենք կրցած փախչիլ: Այս ինքնահնար ամբաստանութեանց վրայ զարմանալով կը մտածէինք, և անկէ ազատելու ճարը միմիայն Աստուծմէ կը սպասէինք, որպէս զի Դանիէլի ծերերուն նման խայտառակուի զանոնք հնարողը:

Մեր փոխանորդ Հապէշը մտիկ ընելէն ետքը բերանը բացաւ ու մեզի պաշտպանելով ըսաւ. «Կ՛աղաչեմ զամենքդ ալ որ լաւ ունկնդրութիւն ընէք ինծի: Մեր ոսոխին մէջ բերած ամբաստանութիւնները այս առաջին անգամն է որ կը լսենք, և մեզի խելացնոր մարդու շաղփաղփութիւններ կ'երեւան: Մեր դատը, ինչպէս որ բոլոր աշխարհ իմացաւ, Աբունային քարկոծուելուն կամ չքարկոծուելուն վրայ է. ուստի կը խնդրեմ լաւ մտիկ ըրէք:» Ու կըսկսի սկիզբէն մինչեւ վերջը Սկրոյի գլխաւորին նախագահութ երկու հարիւրի մօտ ժողովուած բազմութեան առջեւ տեսնուած դատը պատմել և կարդացող դպրին վկայութիւնը յիշել և մեր ու դատախազին մէջ տեղը կանգնող զինուորին էհրամին ծայրը կապ ընելով և իւր ձեռքը բռնելով ըսաւ. «Այս երկու Ա-

պուտնայից երկու ջորիներուն պահը (1)։ Պլաթտա—Պրու կը շուարի կը մնայ և խօսքը ուրիշ նիւթի կը փոխէ. ժողովականք կը պօռան. «Կապը քակէ, ուրիշ խօսք պէտք չէ.» Նա իւր խօսքը կը շարունակէ. բազմութիւնը կրկին բարձր ձայնով խնդալ. Թագաւորն ալ իւր էհրամին ծայրովը երեսը ծածկելով ծիծաղը չկրնար բըռնել։ Քանի մը անգամ դատաստաններու ներկայ գըտնուած եմ, բայց այս անգամինը կարծես թէ թատերական խաղ մը կը ներկայացուէր։ Վերջապէս Թագաւորը վախճան մը տալու համար մեր գիւղի Շէխը որ հետերնիս եկած էր, կանչել տալով ըսաւ. «Թէ որ ասոնց կռուոյն ժամանակ ներկայ գտնուեցար, պատմէ ճշմարիտը ինչ որ գիտես։» Պատասխան տուաւ Շէխը. «Ինձ խօսիլ հարկ չէ. Թող իմ տեղս սպասաւորս խօսի։» Եւ ասոր ըսածները համաձայն էին մեր փոխանորդին ըսածներուն։ Խորին լռութիւն մը տիրեց բոլոր ժողովականաց վրայ. յետոյ Թագաւորին հօրեղբօր որդին Ակշըմ—Թէֆարին անաչառութեամբ սկսաւ յանդիմանել Պլաթտա—Պրուն. «Դուն, ըսաւ, ասոնց վրայ Պալըրըսալա կարգեցար, որ գէշութիւն մը չթողուս ասոնց պատահի, և դո՞ւն գէշութիւն կ՚ընես, կեղծաւոր ու խաբեբայ Կորավլի։» Յետոյ Թագաւորը Գէր. Իսահակ արքայանէն խնդրեց որ խաչին վրայ երդում ընէ իւր քարկոծ ըլլալուն. «Թէպէտ և հարկ չկայ երդման, կ՚ըսէր, յանցաւորն ինքնին խոստովանեցաւ, այսու ամենայնիւ թող ամենեւին կասկած մը չմնայ արդարութեամբ ի գործ դրուելուն։» Արքայան Հայրը ի շնորհս Թագաւորին երդում տուաւ. ասոր վրայ բարձըր ձայնով մը կանոնագիրքը խնդրեց Թէքլէ—Կօրկիս, և մեղի դառնալով ըսաւ. «Դուք տեղեակ էք կանոնա-

(1) Պահը ըսածը երդման ձեւ մըն է Հապէշներուն քով։ Թէ որ սախը իր դասին փոտահելով նոյն կապը քակելու ըլլայ, և միւս կողմը չկըրնայ վկաներով հաստատել, երկու ջորի կը տուժէ։ Բայց եթէ նա ալ վըստահ է իւր դատը վաստըկելուն, տուգանքը հետզհետէ կ՚աւելցընէ, և եթէ սախը ընդունելով քակելու ըլլայ կապը, և միւս կողմի վկաներովը իր ստութիւնը յայտնուի, բոլոր տուգանքը վճարելու կը դատապարտուի սախը։

գրքին, Ինչ պատիժ կը սահմանէ Սուննայի մը քար նետողին։ —Ձեռքերը պէտք է կտրել, պատասխանեցինք։ Իսկոյն հրամայեց, և դուրս քաշեցին տարին որ ձեռքերը կտրեն։ Շուտ մը ոտքի ելայ ես և Արքադան Հօրը կողմէն այսպէս ըսի. «Ով Թագաւոր, մենք հոս եկած չենք որ մարդու վնաս տանք, այլ մարդասիրական նպատակաւ եկած ենք, հոգի մը շահելու և ոչ կորսնցընելու. Նա մեղի չարութիւններ հասուց, բայց մենք սորված չենք չարին չար հատուցանել. և ոչ Քրիստոս մեր տէրը այնպէս կը պատուիրէ մեզի. բաւական է որ մեր քովէն հեռացընես զինքը, որուն վրայ այսուհետեւ վստահութիւն չունինք։ —Ոչ, պատասխանեց Թագաւորը, օրէնք ունինք, և ըստ օրինաց պէտք է որ գոնէ դրամական պատիժ դնենք իրեն. ըսէք ուրեմն որչափ դրամ կը պահանջէք փոխարէն իւր ձեռքը կտրելուն։» Այս միջոցին դատապարտեալը ներս մտցուցին կրկին, և ես պատասխանեցի. «Մեծ գումար հատուցանելու կարողութիւն չունի, թող միայն քսան թալէր տուգանք տայ Տօքքա–Բիսանը –Մերէթ եկեղեցւոյն, որ իւր հոգւոյն փրկութեանը և յանցանաց թողութեանը համար պատարագ մատուցուի հոն։» Այս առաջարկութիւնիս բոլոր ժողովականաց զարմանք պատճառեց, որոնք սկսան իրարու կամաց ձայնով ըսել, թէ արդարեւ այս ճերմակ մարդիկը գթոտ ու ողորմած կ՚ըլլան. սուրբ գրքին՝ Աստուծոյ որդիքն բաւծը ասոնք են։ Հրաման ըրաւ Թագաւորը Գլաթտա–Գյուլի որ շուտով քսան Թալէրի համար երաշխաւոր մը ցուցընէ և ստակը անյապաղ վճարուի։ Ըսար–Ամպայի իշխանը որ հոն ներկայ էր, ինչպէս ըսինք, երաշխաւորեց։

Յետ այնորիկ արմնեաց մեծ մասը ինքը յափշտակելուն վրայ ալ գանգատ ընելով Թագաւորին, վճռուեցաւ որ եօթը չուն արմնեաց ստակը հատուցանէ. մենք դարձեալ երեք չուն իրեն բաշխեցինք և չորս չուն համար ալ, որ քառասուն Թալէր կ՚ըլլէր, երաշխաւոր մը խնդրուեցաւ իրմէն, բայց այս անգամ չգտաւ,

բոլոր բարեկամները երես դարձուցին իրմէն։ Ետքը թեւը շղթայի զարկին և անոր միւս ծայրն ալ զինուորի մը թեւին կապելով իրենց սովորութեան համեմատ խրկեցին որ երթայ նոյն սոտակը ճարէ։ Բերաւ վճարեց քանի մը օրէն ետքը, և այնպէս շղթայով կրկին թագաւորին ներկայացուցին որ դատաստանին տուրքերն ալ հատուցանէ։

Բոլոր այն ժամանակին մէջ մենք դեռ բերաննիս բան մը դրած չէինք, անօթութիւնը զմեզ կը նեղէր, ուստի պատկառանքը մէկդի թողլով ըսի մեր ինքնակալ թագաւորին. «Ով արքայ, երեկուանէն մինչեւ այս ժամս որ քու բանակիդ մէջ կը գտնուինք, ծոմապահութիւն կ՚ընենք. սակայ ոչ ձեր մեծութեան պատիւ կ՚ընէ և ոչ քրիստոնէական օրինաց և մարդկութեան կը վայելէ։» Թէքլէ-Կորկիս չգիտնալ ձեւացընելով դարձաւ ըսաւ իր սպասաւորաց իբր նեղանալով մը, թէ ստոյգ երեկուանէն ի վեր է բան չէ՞ք տուած որ ուտեն։ Ամենքն ալ լռեցին։ Եւ յետոյ հրաման ըրաւ որ ամեն օր տասներկու հաց, և երեք աման կերակուր տան։ Վակշում-Թէֆարի իշխանն ալ եզ մը շնորհեց, մենք ալ գիւղացի քահանայի մը յանձնեցինք որ պահէ, բայց յետոյ զօրաց միջոցաւ հազիւ կրցանք ձեռքէն խլելու, որ կ՚ուրանար և խուրացնել կ՚ուզէր։

Թագաւորը դարձեալ մեր առջի գիւղը խրկել կ՚ուզէր մեզի, մենք իրմէ խնդրեցինք նախ որ մեր հայրենիքը խրկէ. երբ չհաւանեցաւ նա, մենք ալ այն գիւղը չէինք երթար ըսինք, և չէինք կրնար վստահիլ այն գիւղացւոյ՝ որոնք Գլաթաա-Գրուի ազգականներն ու բարեկամներն են։ Վերջը հաւանեցաւ Գելեսաա երկրին մէջ Թէքլէհէմ-Նօթ եկեղեցւոյն գիւղը խրկել. մեր Իլիաս նազարէթցի սպասաւորը Տոքքա խրկեցինք որ երթայ մեր գոյքերը Թէքլէհէմ-Նօթ բերէ, ուր հազիւ երեք օրուան ճանապարհ կայ, բայց նա մէկ ամսուան մէջ բերաւ շատ մեծ դժուարութեամբ։

Մենք Յունիս ամսոյ սկիզբն էր երբ Գելեսաա եկանք։ Այս երկրին օդը տաք էր, և մարդիկը համե-

մատութեամբ լաւ էին, նոյնպէս և եկեղեցին քիչ շատ օրինաւոր էր քան միւս գեղերունը։ Այս կողմի գիւղերէն մէկ չուն արմտիք և տասն աղ ընդունելու հրաման ըրած էր Թագաւորը։

---

## ԳԼՈՒԽ Թ.

Տէճաջ—Ուպի և իւր որդիքը։ Թէքլէ—Կորկիսի արշաւանքները։ Ապստամբութիւններ։ Մեծամեծաց տուած խորհուրդները։ Ռաս—Վոլտէ—Մարիամ կ'ապստամբի։ Թէքլէ—Կորկիսի եկեղեցականաց դէմ ունեցած ատելութիւնը. անոնց աղքատութիւնն և սուտ գուշակութիւնները։ Ռաս—Վոլտէ—Մարիամ կը հնազանդի։ Թէքլէ—Կորկիսի քով երկրորդ անգամ մարդ խրկենին։ Ալի Փարիս։ Ըօէյթ—Մոսթայթի կրկին կ'ապստամբի, և խլամ Որդի իշխանուհին։ Բժշկութեամբ ապրելու միջոցը և հագնելեաց կողմէ քաշած նեղութիւննին։ Նամակ խրկելու դժուարութիւնները։ Հապէշ Միքայէլի հետ նամակ խրկենին։

ԹԷՈԴՈՐՈՍ Թագաւորը Թէկրի երկրին նոր տիրած ատենը Տէճաջ—Ուպի անուն իշխանը երկու զաւկընե-րովը կը ձերբակալէ. հայրերնին շղթաներու մէջ կը մեռնի, իսկ երկու եղբարք Մակտելա լեռը կը բանտարկուին 16 տարիի չափ՝ մինչեւ Թէոդորոսի մահը. յետ այնորիկ կ'ազատին. բայց Թէկրիի նոր տիրող Տէճաջմաջ Գասսա իշխանին հնազանդիլ չուզելով, կ'անցնին Սլտուպպա երկիրը, որ Թէկրիի հարաւակողմը կ'ընկնայ, և Թէքլէ—Կորկիս Թագաւորին իշխանութեան ներքեւ գտնուող նոյն կողմերը իրենց կը հնազանդեցնեն, և կը ջանան օրէ օր զօրանալով յառաջանալ։

Այն միջոցներուն Թէքլէ—Կորկիս յանկարծ իւր Վակշում—Կրու եղբօրը եղած կողմերը կը յարձակի կ'երթայ արտորանօք, և դեռ հոն չհասած՝ Վակշում—Կրու իւր եղբօրմէն արդէն խորհուրդ առնելով կը յարձակի Տէճաջ—Ուպիի տղոցը վրայ և կը բռնէ զանոնք և շղթայի կը զարնէ, ուր տեղ մէկը կը մեռնի։

Թէքլէ—Կորկիս Գոլա—Ակըրա կը մտնէ, որ Թըբսօ—Կոմազիի հայրենի երկիրն էր, որու բնակիչները Թէ-պէտ և խիստ զօրաւոր մարդիկ են, բայց հնարքով մը

կը հնազանդեցընէ զանոնք ։ Նոյնպէս Թագաւորի ապըստամբը կը հպատակի իրեն, և իր իշխանութեանը մէջ կրկին կը հաստատի ։ Թագաւորի զօրքերը Պոլսոյ բոլոր գիւղերը ցրուած էին հաց և պաշար ճարելու համար, յանկարծ պատերազմական թմբուկին ձայնը լսելով՝ գիւղերը բոլոր կը կողոպտեն ու կը մեկնին ։ Այս միջոցին էր որ մեր Իշխաս ապստամբը Թագաւորին մօտ խրկեցինք որ մեզի համար պաշար խնդրէ . ան ալ հրաման կ՚ընէ որ երեք չուն արմտիք տան մեզ գիւղացիք, և մէկ աւուր տօնավաճառին գոյացած մաքսն ալ մեզի կը շնորհէ, որու արդիւնքը աղքատօրէն երկու ամիսի չափ կը կերակրէր մեզի ։ Բայց Թագաւորական հրամանները գործադրելու համար կարող մարդ պէտք էր . մենք արդէն անձնասիրութիւնը մէկդի թողած էինք, և մեր կենաց պահպանութեանը համար շատ անգամ՝ տեսակ մը բռնութիւն ձեռք առած՝ այնպէս գործադրել կու տայինք արքունի հրամանները .

Թէքլէ–Կորկիս իր հօրեղբօր որդին Վակշում–Թէֆարին Տենպիայի և Ճըլկայի բոլոր նահանգաց իշխան կարգելով՝ հոն կը խրկէ զինքը որ կառավարէ, ասոր հետ կ՚երթան նաեւ Ճըլկայի առջի իշխանները, զոր մեր ընթերցողք լաւ կը յիշեն ։ Այս խորամանկ մարդիկը կը խրատեն Վակշում–Թէֆարին՝ որ իր զօրքերը կերակրելու համար գիւղերուն մէջ ցրուել տայ . ան ալ կը կատարէ ըսածնին ։ Այն միջոցին Կապրօ–Մետանի–Ալէմ, որ Բօար–Ամպայի առջի իշխանին հօրեղբօր որդին է, կանխաւ անոր հետ խորհուրդնին մէկ ընելով, յանկարծ կը յարձակի կուգայ, կը կոխէ Վակշում–Թէֆարիի վրանը ու զինքը բռնելով շղթայի կը զարնէ, և անոր ցրուած զօրքերը գիւղերուն մէջ կը կողոպտէ։ Թէպէտ և յետոյ կ՚արձակէ զանի և Թագաւորին քով կը դարձընէ, բայց Թագաւորը միտքը կը դնէ վրէժխնդիր ըլլալ Կապրօ–Մետանի–Ալէմէն ։ Այսպէս ահա Թէքլէ–Կորկիս որքան որ աշխարհակալութեան ըղձով յառաջ երթալ կ՚ուզէր, այնքան աւելի իրեն դէմ ապստամբաց խումբերը կը շատնային . Վասն որոյ իր

մեծամեծները խորհուրդ կուտան իրեն ըսելով. «Տէր դու քու զօրաւոր բազկովդ և սուր հանճարովդ այսքան երկիրներու տիրեցիր, և խիստ քաղցրութեամբ գիւղացուց հետ վարուեցար. բայց անոնք այս քու ցոյց տուած գթութիւնդ և մարդասիրութիւնդ չը ճանչցան, և դքեզ միշտ բամբասելով՝ ապստամբելու համար առթի կըսպասեն։ Ահա Վերացման Խաչի տօնը մօտ է, և տուրք ժողվելու սովորական ժամանակն է, ուրեմն մարդ խրկէ քեզ հնազանդող երկիրները և որրոց մէկ մասը հիմակուց սկսիր հաւաքել, ուսկէց ըստիպեալ ճանչնան իրենց Թագաւորը և ապստամբութեան խորհուրդը մէկդի թողուն, ըստ որում գիւղացիք ո՛ր իշխանին որ տուրք տալու ըլլան, այն տարին կամայ ակամայ անոր կը հնազանդին. և ասոնց ապըստամբիլը միմիայն տուրք չտալու համար է։ Եւ մինչև զանոնք ժողվելդ, կ'ըսեն իրեն, գետերուն ջրերն ալ կը նուազին, և անկէց ետքը ամենքս ալ հանգիստ ու ապահով կ'ըլլանք։ Իսկ թէ որ մենք հիմայ Ճըլկայի կամ Տենպլիսի վրայ քալելու ըլլանք, այս կողմերը կ'ապըստամբին. հոս դառնանք գանք ասոնք զսպելու, այն կողմը գլուխ կը վերցնեն դարձեալ։»

Կ'ընդունի Թէքլէ-Կորկիս իւր մեծամեծաց տուած հանճարեղ խորհուրդները, և անմիջապէս մարդիկ կը խրկէ այն երկիրները, որոնք առ երեւս իրեն հնազանդութիւն ցոյց տուած էին, մէկէն դրամ և ուրիշ մը տուրքի տեղ արմտիք կը պահանջէ։ Գելեսայու երկրէն միայն, ուր տեղ որ մենք կը գտնուէինք, 1200 թալէր և 8000 ճառա արմտիք կը պահանջէր (1)։ Այս հարկապահանջութիւններն որ միշտ փախով էին, մէկէն ի մէկ ետ թողուց՝ երբ իմացաւ Իսա-Կօլոէ Մարիամ

(1) Թէոդորոս Թագաւորը տարուէ տարի իր հարկապահանջութիւնը սաստկացընելով. վերջին ժամանակները մինչեւ 15000 թալէր Գելեսայէն, 13000 Ոկըրայէն, և 8000 Սըմինէն կը հաւաքէր. և ասոնց նման հարիւրի չափ քաղաքներ կային. այս տրոց մէկ մասը իր սիրած մարդոց կը շնորհէր, մէկ մասն ալ Մուսավայէն բերել տուած ապրանքներուն կը վճարէր.

անուն երեւելի մարդուն Պեկամըտըրի մէջ ապստամբելը ։ Այս անձը Թէոդորոսի ծառայութեան մէջ էր , և անոր մահուանէն յետոյ իւր հայրենի երկրէն զատ՝ ուրիշ քաղաքներու ալ սկսած էր տիրել․ երեւելի էր իր քաջութեամբ և պատերազմասէր բնաւորութեամբը , որ Թէքլէ–Կորկիսին իր վրայ խրկած խումբ մը զօրքը ջարդեր , կողոպտեր և ցիրուցան ըրեր էր․ ասկէ զօրանալով Պեկամըտըր երկրին կիսով չափ կը տիրէ ։

Նոյն երկրին ներսի կողմերուն ալ Թագաւորին մօր եղբօր որդի Ալի–Ֆարիսը կը տիրէ , որ երկար ժամանակ Մաքտելայի մէջ բանտարկած կը կենար , և շնորհի անգղիական բանակին անկէ ազատեր էր ։

Այս ձախորդ լուրերուն վրայ , ինչպէս ըսինք, կը Թողու Թէքլէ–Կորկիս տրոց հաւաքումը , և Կասրօ–Մեսանի–Այէմի վրէժն ալ իւր փեսային Կոճամի իշխանին կը յանձնէ , նոյնպէս և Տենպիայի աւերումը ։ Իւ ինքը Գոլա–Մկըրայի կողմերէն՝ ուր տեղ կը գըտնուէր , բոլոր պատերազմող գիւղացիները ժողվելով կուգայ Ամպաձարա , և սուրբ Խաչին հանդէսը կատարելէն ետքը կը յարձակի շուտով Պեկամըտըրի վրայ ։

Հարկ է գիտնալ որ Իչ–Թայլոյ երկրին մէջ եկեղեցականք մեծ դեր մը ունին քաղաքական գործոց մէջ, որոնք ժողովրդեան կոյր բարեպաշտութիւնը ձեռուրնին գործի ընելով կրնան շատ անգամ Թագաւորին խորհուրդները անգործադրելի Թողուլ, կամ ձախող վախճանի հանդիպցընել ։ Այս էր պատճառը որ Թէոդորոս Թագաւորը չէր սիրեր բնաւ իր եկեղեցականները ․ նոյնպէս և Թէքլէ–Կորկիսին ալ ատելի են . և եկեղեցականք ալ զինքը չեն սիրեր և միշտ ժողովուրդը անոր դէմ կը գրգռեն , և բռնած որ և իցէ գործերը կը պախարակեն ։ Ասոնք գուշակութիւն մըն ալ հաներ էին բոլոր երկրին մէջ , և կը հաւատցնէին ժողովրդեան՝ որ Թէքլէ–Կորկիս իր Թագաւորական իշխանութեանը բարձրանալէն կամ երեք օր , կամ երեք ամիս և կամ երեք տարի ետքը պիտի մեռնի և իր Թագաւորութիւնը կործանի ։ Այս օրինակ սուտ գուշակութիւններ

Թէոդորոսին համար ալ կը զրուցուի եղեր ։ Երբ երեք օրը անվտանգ անցուց նա, երեք ամիսներուն կըսպասէին. Պեկամբորքի վրայ յարձակած ժամանակ երեք ամսոյ մօտ ըլլալուն, սկսան բոլոր եկեղեցականք անոր մօտալուտ մահը գուշակելով ամենուն սիրտը յուզել, և իրենց ուրախութիւնը յայտնել ։ Այս եկեղեցականք աւելի Կապրօ-Մետանի-Ալէմը կը սիրէին. "Նա պիտի յաջորդէ կ'ըսէին, նա արդար Թագաւոր պիտի ըլլայ. անոր հնազանդեցէք, որովհետեւ եկեղեցին կը սիրէ նա. և ժողովրդին վրայ հայրաբար կը գթայ"։ Ասոնց այսպէս սուտ գուշակութիւններ տարածելնուն պատճառն էր, Թագաւորին զօրացն ու զօրապետներուն սրտին մէջ երկիւղ ու կասկած ձգել, որ պատերազմի ժամանակ անսիրտ ու թոյլ շարժին, գիտնալով որ իրենց Թագաւորը անպատճառ պիտի յաղթուի ու ընկնի, և որպէս զի անկէ յուսահատեալ շատերն ալ փախուստ տան պատերազմի սկսելէն յառաջ ։

Եկեղեցականք ոչ միայն հասարակ ժողովրդոց, այլ և Թագաւորին վրայ կ'ուզէն ազդեցութիւն ունենալ ։ Կ'ուզէն որ նա թէ իրենց և թէ ժողովրդեան գործած յանցանքներուն միշտ ներէ, պատիժ չտայ, ինչպէս կ'ընէր Թէոդորոսէն առաջ Ամրայի Ոսա-Ալի իշխանը, որու ժամանակ գողութիւնը, մարդասպանութիւնը, ստախօսութիւնը ու ամեն տեսակ յանցանք ու մոլութիւնները ներելի էին, վասն որոյ և Ոսա-Ալի սիրելի էր ամենուն. Թէպէտ և նա շատ քրիստոնէից տանջանալու պատճառ կ'ըլլար, երկիրը բոլոր մոլութեանց ասպարէզ դարձած էր, այսու ամենայնիւ զինքը իբրեւ բարի և ողորմած իշխան կը պատուէին ։ Թէոդորոս այնպէս չէր, յանցաւորի մը գործած յանցանաց համեմատ մատուընին, ոտքերնին, կամ գլուխնին կտրել կուտար. յետոյ սկսաւ կրակի մէջ ալ ձգել յանցաւորները ։ Ներկայ Թէքլէ-Կորկիս Թագաւորն ալ, ինչպէս որ կըսենք, անոր օրինակին հետեւելով սկսած է ականջ, քիթ, ձեռք, մինչեւ գլուխ կտրել. ատոնք ժողովրդին աչքին տանելի են. սակայն արդարու-

թեամբ խօսելով՝ երկու կողմէն պահանջմանց մէջ չափազանցութիւն կայ. Թագաւորին արժան է անաչառ՝ բայց միանգամայն գթասիրտ ըլլալ. Ժողովրդեան ալ հարկ է Թագաւորին գթասրտութեանը չզեղծանիլ. և գիտնալ որ շատ անգամ Աստուած Ժողովրդոց մեղքերը պատժելու համար Փարաւոնի նման իշխաններ կուտայ անոնց, որովհետեւ, ինչպէս կ'ըսէ Իմաստունը, «Սիրտ Թագաւորի ի ձեռին Աստուծոյ է»:

Թէքլէ–Կորկիսի համար ըրած գուշակութիւնները պարապն ելաւ. Պեկամերը գնաց անիկայ, բայց փոխանակ հոն իր մահուանը հանդիպելու, կը յաջողի ալ իր գործքը. Ռաս–Ալուէ Մարիամ ապստամբը կը հնազանդի անոր հետեւեալ կերպով: Իր բանակը աւուր մի ճանապարհ հեռու թողլով, ինքը քիչ մարդով կուգայ Թագաւորին վրանին ժամ մը հեռու տեղ կը մօտենայ, մեծկակ քար մը կ'առնու իր ծոծրակին վրայ (1), ու այնպէս վիզը ծռած Թագաւորին ներկայանալով կ'ըսէ. «Քեզի դէմ գործած յանցանքներուս կը խնդրեմ որ ներես»: Թագաւորն ալ ներելով կը հաշտուի: Հետեւեալ օրը բոլոր զօրքերը հետըն առած կրկին կուգայ արքունական վրանին առջեւ կը ներկայանայ. իր ձիաւորները կրակին ձիարշաւութեամբ Թագաւորին դէմ ըրած քաջութիւնները գովել և վերջը ներողութիւն խնդրել: Ռաս–Ալուէ–Մարիամ վրանին դիմացը և մերկ սուրը ձեռքին մէջ խաղցնելով ու խօսելով պոռալ կ'ընէ. «Սուտ է, կ'ըսէ նա, որ ես քու շատ մարդիկներդ ջարդեցի. և այս բազկովս (թեւը ցուցընելով) յաղթեցի իմ վրաս խրկած բանակդ, և զօրքերդ մերկացուցի ու բանտարկեցի. բայց և այնպէս մեծ գթութիւն ալ ցոյց տուի անոնց: Այս հրաշէնքները որ կը տեսնես, ով Թագաւոր, (իր զօրաց ձեռքի զէնքերը ցուցընելով,) բոլորն ալ իմ ձեռքս եղած փայտովը առի քու զօրքերուդ ձեռքէն. Դշմա-

(1) Այս սովորութիւնը ընդհանրապէս ունին, երբ յանցաւոր մը ներողութիւն խնդրելու համար մէկուն քով երթայ, քար մը իր ծոծրակին վրայ կը կրէ ու այնպէս կը ներկայանայ անոր:

րիս կ'ըսեմ որ գթացի ես անոնց. թէ որ սխալմամբ ձեռքս սուր առած ըլլայի, և ոչ մէկը ողջ կըմնար ազատիլ: Ինծի Օսմա-Սոլուէ-Մարիամ կ'ըսեն, գուցէ լսած ես. և հիմայ գլխս աչօքդ կը տեսնես. ոչ ոք կարող էր գլխս ողջ բռնել, ոչ ոք կարողէր ինծի յաղթել: Այս քու բարի համբաւդ, լաւ թագաւոր ըլլալդ լսեցի, և ըսի ինքնիրենս, թէ Աստուած ընտրեր է զինքը թագաւորելու, ես ինչո՞ւ չպիտի հնազանդիմ և չպիտի խոնարհիմ անոր լծին տակը. այսպէս ըսելով ես իմ յօժար կամօքս եկայ քեզի ծառայելու, քեզի իբրև գերի ըլլալու: Ես այսօր-Սոլուէ-Մարիամս քեզի հնազանդեցայ. ո՞վ պիտի ըլլան այն ապստամբները որ չպիտի գան քեզ հնազանդելու: Դու ո՛վ թագաւոր, հանգիստ կեցիր. քանի որ ես կամ, մի վախնար. բաւական եմ ես քու թշնամիներդ բռնելու և կամ սպաննելու շան մը պէս: Օ՛ անոնք ամենքն ալ իմ ձեռքովս պիտի մեռնեմ. . :”

Այսպէս խօսելով և իւր առջի յանցանքներուն ներում խնդրելով կը վերջացընէ: Թագաւորը անմիջապէս անոր հայրենի երկիրները իրեն կը դարձընէ, և պատուոյ և իշխանութեան զգեստներ հագցընելով անոր՝ երեք քաղաքացը վրայ իշխան կը կարգէ: Պեկամբարը երկիրը՝ Կէլպի-Թափօր ըսած տեղը գտնուած ժամանակ մեր Յոյն սպասաւորը փութացուցինք իրեն քով նամակով մը և հրաման խնդրեցինք դարձեալ մեր հայրենիքը դառնալու, ապա թէ ոչ՝ խնամք տար մեզի, ըսինք, ինչպէս քու նախորդդ կը տանէր: Երդուեմ կ'ընէ նա իւր մեռեալ հօրն անուանը վրայ՝ թէ տակաւին տուրք մը ժողված չեմ տեղաց մը, և քանի մը թալէռն ալ զօրաց պիտոյից ծախք կ'ընեմ: Սպասեցէք, հոգ մի տանիք, Աստուծոյ շնորհքովը երբոր ձեզի ամենայն պատուով կը խըրկեմ. վասն զի թէ որ հիմայ այսպէս ճամբեմ, ինծի ալ ամօթ է, ձեզի ալ: Այս կերպ պատասխան խրկելով երեք ամսուան համար ալ 10 քսն տոմոնք Պելեսայու գիւղերէն ընդունելու հրաման կ'ընէ, և անով ուրիշ պիտոյքնիդ ալ փոխանակութեամբ հոգացէք, կ'ըսէ:

Յետ այնորիկ Թէքլէ-Կորկիս դէպ ի արեւելեան

ներքին կողմերը Կալլա ըսուած երկրին սահմանագլուխըն եղած Ոտըլու և Նէձու կ'երթայ, ուր կը տիրէր Ալի-Փարիս որ Օսա-Ալիի մօտ ազգականն էր, և Թէքըլէ-Կորկիսի ալ մօրեղբօր որդին : Նախկա Մակոնլա լեռը բանտարկուած էր Թէոդորոսի ժամանակ, ինչպէս վերը ըսինք, և անոր մահուանէն ետքը կ'երթայ, կը տիրէ յիշեալ երկիրներուն, ուր խառն կը գտնուին քըրիստոնեայք և մահմետական Կալլացիք. և Ալի-Փարիս Թագաւորին հպատակելու կամք չունենալով՝ ոչ յայտնի ապստամբութիւն և ոչ հնազանդութիւն ցոյց տալով՝ կ'ուզէր ժամանակ անցընել որ կարող ըլլայ աւելի ուժովնալ և յետոյ դէմ դնել : Թէքլէ-Կորկիս անոր միտքը իմանալով, շուտ մը անոր երկրին մէջ կ'երթայ բանակը կը դնէ. և Ալի-Փարիս կը թողու կը փախչի Կալլայի սահմաններէն ներս իւր հայրենի երկիրը, և Կալլացիք զինքը կը պաշտպանեն :

Յետ այնորիկ Թագաւորը Շօայի Մենիլէք իշխանին լուր կը խրկէ անկէց, և անոր հպատակութեան կամաց հաճութիւնը կ'առնու, և երկրին բերքերէն ալ զանազան ընծաներ կ'ընդունի, և անոր փոխարէն ինքն ալ Րաէյթ (կին) Ալըմթայթի խալամ իշխանուհւոյն երկրին մէկ մասը անոր կը շնորհէ, նոյնպէս և իշխանուհին անոր ներքեւը կը հպատակեցընէ : Րաէյթ-Ալըմթայթի, որ այն միջոցին Թագաւորին բանակը կը գտնուէր, ուր իւր հպատակութիւնը ցուցընելու եկած էր, այս արհամարհութեան չկրնալով տանիլ, գիշերով կը փախչի անոր բանակէն և կրկին կ'ապստամբի : Իսկ Թագաւորին անոր այս աստիճան անարգաբար նուաստացընելը ուրիշ բանի համար չէր, եթէ ոչ վրէժխնդիր ըլլալ անոր, ըստ որում Թէքլէ-Կորկիս Թըրսօ-Կոլազիի երկրին դեռ չտիրած, այս իշխանուհւոյն հետ կռուի բռնուելով՝ իւր բոլոր զօրքերը գիշերանց ջարդուեր էին (1), և ինքը մազապուր փախուստ տուած էր : Միւս Կալլացի

(1) Կալլացւոց սովորութիւնն է. պատերազմի եղած ժամանակ, ցորեկը բոլոր աղօթքի կը պարապին, և գիշերը վրայ հասնելուն, յանկարծ թըշնամեաց վրայ կը յարձակին, կը ջարդեն ու կը կողոպտեն։

Որդի (սակուհի) անուն իշխանուհին ալ յիշեալ Հօյի իշխանին հարկատու կ՚ըլլայ Թագաւորին հրամանաւը։

Թէքիէ–Վորկիս այս կողմերն եղած ժամանակ, որ մեզմէ վեց աւուր ճանապարհ հեռի էր, զանց ըրած էր մեզի, և ամենեւին չէր հոգար մեր ապրուստին մասին, մենք ալ չէինք կարեր մեր ապասաւորներն իւր քով խըրկել ճանապարհին վախէն. ուստի ստիպուեցանք ուրիշ միջոց մը փնտռել ապրելու համար, առանց մեր անձնական պատիւը վտանգելու, այլ ընդհակառակը աւելի մեծ համարում ունեցանք ժողովրդեան քով։ Ըրած միջոցս էր հոգեւոր ու մարմնաւոր բժշկութիւնները. մարմնաւոր բժշկութիւնը ամենապարզ դեղերու՝ ժուժկալութեան և լուացումներու վրայ կը կայանար, որ բաւական օգուտ կ՚ընէին իրենց։ Իսկ հոգեւոր բըժշկութիւնն էր մեր աղօթքները և սուրբ Աւետարանը, զոր հիւանդաց վրայ կարդալով՝ շատերն իրենց պարզ հաւատոցը համեմատ առողջութիւն կը գտնէին. շատ անգամ ալ իրենց սովորութեանց յարմարելով՝ կտոր մը թղթի վրայ տուն մը աղօթք, կամ Շնորհալւոյն հասարակաց աղօթքէն տուն մը գրելով Նուսխայի նման իրենց կուտայինք որ վրանին պահեն. այս կերպը աւելի կը գրգռէր իրենց կրօնական զգացմունքը և ռամկական հաւատքը։ Եւ այս մեր գործոյն Աստուած ալ կ՚օգնէր. խիստ շատերը աղէկնալով կը դառնային կուգային մեր քով, և մինչեւ գետին խոնարհելով իրենց շնորհակալութիւնները մեզի կը յայտնէին։ Եւ անկէց ետքը մեզի ամենեւին պակաս չէր ըլլար սիսեռ, ոսպ, բակլայ և այլն. և ասոնք էր գրեթէ միշտ մեր կերածը բոլոր մեր պանդխտութեան մէջ։ Ոմանք ալ աւելի պատիւ ընել ուզելով կորեկօղի, մածուն և ուրիշ ընդեղէն կը բերէին, որ Արքայան Հօր օրհնութիւնն ընդունին։ Այս բժշկութեան ձայնը բոլոր Պելեսայու մէջ տարածուեցաւ, և հեռաւոր տեղերէ ալ հիւանդներ բերել սկսան։

Թէպէտ ապրելու համար Աստուծոյ ողորմութեամբըն ապահով միջոց մը գտեր էինք, սակայն հայրենի

երկրին յիշատակն ալ միտքէ չէր ելած , որու քաղցրութիւնն այնչափ կ'աւելնար , որչափ որ կ'երկարէր մեր պանդխտութեան միջոցը ։ Ասկէց ստիպուելով Սրբազան Հայրը կ'ուզէր Թագաւորին քով երթալ և կրկին անգամ խնդրել որ զմեզ ճամբու դնէ . բայց գիւղացիք իմանալով մեր միտքը , շատ թախանձելով չթողուցին որ երթայ , ու կ'ըսէին . « Սովորութիւն չկայ առանց Թագաւորին հրամանին անոր քով երթալու , գուցէ ճամբան աղտոտմըքի մը պատահիք ու բռնէ ձեզի , այն ժամանակ ի՞նչ պատասխան պիտի տանք իրեն ։ Թէ որ ուտելիքի կողմէ կը նեղիք , խնդրեցէք ինչ որ կ'ուզէք , և մենք կը հոգանք ձեր պակասութիւնը ։ » Ու յիրաւի անկէ յետոյ սիրով կուտային մեզի պէտք եղածը ։ Սակայն մենք ուրիշ հարկաւորութիւն մըն ալ ունէինք ոչ պակաս քան զկերակուրը , այն է հագնելիք . վասն զի մէկ ձեռք հագուստէ ի զատ ուրիշ չէր մնացեր . փոխնորդ չունէինք , այն ալ կարկտան կարկտանի վրայ . սեւպարեգօտնիս ճերմակ ու խանգրած կտաւի կտորներով բոլոր կարկտած էինք , և տեսնողը մեզի ճշմարիտ Ռոպէնսօն կը կարծէր ։ Իսկ ճերմակեղէննիս բոլորովին մաշուած ու հագնելիք տեղը չմնալով՝ ստիպուեցանք պատանքնիս , զոր հետերնիս առած էինք , շապիկ ու վարտիք կարել եղածին չափ ու հագնել ։ Ոտքերնուս մուճակներն ալ հինցած ըլլալով , փակերով տրեխներ շինեցինք ու ոտքերնիս անցուցինք ։ Այս քանին մենք գոհ կ'ըլլայինք՝ եթէ չունենայինք մարմիննուս վրայ այն անտանելի անհանգստութիւնը զոր ոջիլները մեզ կը պատճառէին , և սոնց ձեռքէն չկրնալ ազատելնիս փոխնորդ չունենալնիս էր ։ Ինչպէս մեր՝ նոյնպէս և մեր երկու Նազարէթցի և քանի մը Հաբէշ սպասաւորաց համար ալ հագուստ շինելու պէտք ունէինք , վասն որոյ հարկադրեցանք մէկ ջորին ծախել , և մնաց մէկ ջորի , երրորդն արդէն սատկած էր , և այն ջորիին սուկալը սպասաւորաց համար էհրամէր գնեցինք ։

Պելեսայու երկրին մէջ մեր պանդխտութեան միջոցը խիստ երկարելուն , ուզեցինք գրով իմացընել մեր

վիճակը սուրբ Աթոռոյն և կամ օրհնեալ ազգին, թէպէտ և ուրիշ տեղէ տեղ ալ թափառելնուս՝ միշտ կը փափաքէինք Հայէշ վաճառականի մը հանդիպիլ ու Մուսալայի վրայօք գիր մը հայցընել, բայց անկարելի եղաւ։ Եւ եթէ դրամ ճարելով սուրհանդակի նման մէկը վարձել ուզէինք անոր հետ նամակնիս ղրկելու, անշուշտ գիտէինք որ այն մարդն ալ ստակն առնելէն ետքը կամ նամակը պիտի պատռեր նետեր, և կամ անով զմեզ իշխանին մատներ տեսակ տեսակ զրպարտութեամբ, և կամ թէ բոլորովին ղանց ըներ. այս բանը փորձով գիտէինք այնպէս ըլլալը. ինչպէս անգամ մը Տօքքա մնացած մեր ինչքերը Պէքլէէմ-Անօթ բերել տալու համար, որ երեք աւուր ճամբայ է. Իշխանը ղրկեցինք, բայց ամիսի չափ երկարելուն՝ ետեւէն վարձքով մարդ մը ղրկելու հարկադրեցանք, որ մեզի լուր բերէ, նա մէկ օրուան ճանապարհ կ'երթայ և այն տեղի տօնավաճառէն սուտ ու մուտ լուրեր կը բերէ մեզի, թէպէտ և յետոյ իր սուտերուն խոստովանեցաւ, բայց ինչ օգուտ որ մեզի ալ մեծ մտատանջութեանց մէջ թողուց շաբաթի մը չափ։ Այս պատճառաւ չէինք համարձակեր թուղթ յանձնել մէկուն և պարապ տեղը ստակէ ելնել, որովհետեւ հաւատարմութիւն ընելու մէկը չգտանք բոլոր Հայէշստանի մէջ։ Ընթերցողք լաւ կը յիշեն մեր ամենէն հաւատարիմ բարեկամ և սպասաւոր Կորակլի Պլաթսա—Պրուն. ինչ չարիքներ չգործեց նա մեր քովն եղած և մեզմէ հեռացած ժամանակ։ Դէշն այն է որ, ինչպէս ըսի վերը. գրած նամակնիս կը տանին ուղղակի մեծ իշխանին ձեռքը կը մատնեն, և ծուռումուռ կարդացող մէկն ալ կը գտնեն և կ'ըսեն թագաւորին՝ թէ ասոնք լրտես են, ձեր վրայօք գէշ բաներ են գրած իրենց թագաւորին, որ զօրք ղրկէ և գան երկրին տիրեն։ Այսպիսի սուտ խօսքերու դիւրաւ կը հաւատան և մատնիչներն ալ կը վարձատրեն։

Երկու գրութիւն միայն կարողացանք ղրկել, մէկը Ըզար-Ամպայի մէջ մեզի հետ բնակող մահմետական

բարեկամնուս հետ, որ Մուսալա երթալու վրայ ըլլալով յատուկ մեր քովն եկած ու նամակ խնդրած էր տանելու, և մենք գրեցինք մահտեսի Առաքել Յ. Ճիվէլէկեանին, և մեր ողջ առողջ ըլլալն և ինչ վիճակի մէջ գտնուելնիս անոր ծանուցինք։ Երկրորդը Հապէշ Միքայէլ վաճառականին հետ, որուն մեր քովը գալուն նպատակը ուրիշ էր, բայց չյաջողեցաւ։ Ասիկա կ'ուզէր որ մեր քովը մնացած եկեղեցական ծանր զգեստները Մուսալա փախցընէ, որպէս զի օրին մէկը գողերու ձեռք չանցնի, բայց իւր միտքը այս կերպ վարպետութիւն բանեցընելով զանոնք յափշտակել էր։ Մենք իրմէ խնդրեցինք միայն որ Մուսալա գիր մը տանք իրեան որ տանի, նա ալ հաճեցաւ. և երբ իմացանք թէ Եգիպտոս երթալու միտք ունի, գիր մըն ալ գրեցինք հոն իբր յանձնարարական իրեն համար [1]։ Այս մարդը ուրիշ կողմէ կասկած ու երկիւղ կրելով և ոչ Մուսալա կ'երթայ, բայց կ'երեւի թէ ուրիշի մը ձեռօք խրկած էր հոն մեր նամակները։

---

## ԳԼՈՒԽ Ժ.

Կայրօ—Մետանի—Ալէմ։ Թէոդորոսի Մըշըշա անուն որդին և անոր մահը։ Ուկալի—Տեստա, և կալլացի զօրաց անգթութիւնն։ Կայրօ—Մետանի—Ալէմ Պելեստայու վրայ կ'արշաւէ։ Առաքել Յ. Ճիվէլէկեանի միջոցաւ Երուսաղեմէն նամակ ընդունելնիս։ Վակշըմ—Կովազին վերադարձի համար խնդրագիր տալերնիս. անոր պատասխանը։ Վերադարձ և ճանապարհի հանգամանքները, ու դժուարութիւնները։ Ակօյի երկիրը. ջրի ցամաքութիւն։ Ատուա և անկէ Աքսում գալերնիս։ Աքսումի եկեղեցին։ Տասնաբանեայ օրինաց քարեղէն տախտակը։ Աղեքսանդրիոյ անգղիական ընդհանուր Հիւպատոսին գրուած նամակը։

ԹԷՔԼԷ—ԿՈՐԿԻՍԻ Նէճուսի կողմերը գացած ժամանակ թէ իւր բուն տիրապետած գաւառը և թէ բոլոր Ամարայի երկիրը ապստամբութեան դրօշակը պար-

(1) Տես օրինակը ի Սիօն 1868 ամ. Թիւ 8, երես 170։

զած էին , և իրարու վրայ յարձակելով մէկմէկու ձեռքէ երկիրներ յափշտակելու կը ջանային ։ Նոնց մէջ անուանի էր Կարլօ-Մէտանի-Ալէմը , որ հինգ կամ վեց քաղաքի տիրած էր ։

Թէոդորոսին Մըշըշա անուն մեծ տղայն ալ իւր հօրը մահուանէն քանի մը օր յառաջ իւր հայրենի Ուկառա երկիրը փախչելով և յետոյ Թըրրսօ-Կոլօղնի Տակուսայի կողմերու պահպանութեան համար խրկած Տեստէ-Պրուի հետ միանալով ընկերութեամբ կը տիրէին Ուկառա երկրին . ետքը վերջիշեալ Կարլօ-Մէտանի-Ալէմի վրայ միասին կռուի կ'ելնեն և կը յաղթուին ։ Տեստէ-Պրու կը բռնուի և կը շղթայուի . իսկ Մըշըշա փախած ժամանակ Կոճամի Ուկալի-Տեստա իշխանին կը պատահի , (որ կրակի նման արշաւելով և հինգ աւուր ճամբան երկու աւուր մէջ առնելով արտորնօք կուգար Տէնպխա՝ Կարլօ-Մէտանի-Ալէմը յանկարծ ձերբակալելու,) և անոր ձեռքը ընկնելով կը շղթայուի. և յետոյ իւր հօրը վրէժխնդրութեան համար կըսպաննուի , ինչպէս որ պատմեցին ։

Կարլօ-Մէտանի-Ալէմ իւր զօրքերը գիւղերը ցրուելով անպատրաստ կեցած ժամանակ՝ Ուկալի-Տեստային գալուստը լսելուն պէս Արամաճուհօ երկրին կողմերը փախուստ կուտայ ինքն առանձին և կը ճողոպրի ձեռքէն ։ Ուկալի-Տեստան իւր աներոջը Թէքլէ-Կորկիսի հրամանը կատարելու համար Տէնպխան կ'առնէ և Մէտանի-Ալէմին բոլոր զօրքերը կը կողոպտէ և կը դառնայ կ'երթայ ։ Նոր բանակին մէջ կային Կալլացի զօրքեր , որոնք իրենց քաջութիւնը յայտնելու համար ըստ սովորութեան Կալլայի երկրին՝ սպաննած և կամ գերի բռնած մարդոց մարմնոյն վրայ ընդդէմ պատուոյ անդամահատութիւններ կ'ընեն , և կը խրկեն զանոնք իրենց ընտանեացը իբր ապացոյց գործած քաջութիւններնուն , որոնք աւելի պատիւ և գերազանցութիւն մի կ'ունենան քաղաքակցաց մէջ ։

Այս Կալլացիները քրիստոնէից հետ միշտ անհաշտ թշնամութեամբ կը վարուին փոխադարձապէս . բայց

Կալլացիք ասով կ'արդարանան քրիստոնէից քով, որ բռնած գերիները իրենց կրօնին դար՝, նելէն յետոյ՝ կը կարգեն տուն տեղ կ'ընեն, և գերութե է ազատ կը Թողուն և քաղաքացւոյ իրաւունք կու տան. իսկ ընդհակառակը քրիստոնեայք Կալլացւոցմէ բռնած գերիները քրիստոնէութեան դարձընելէն յետոյ, դարձեալ իբրև գերի կը գործածեն, և եթէ ուզեն՝ դրամով ուրիշի ալ կը ծախեն ։

Կապրօ—Ս՛ետանի—Ս՛լէմ իւր զօրքերը քովը ժողովելով կրկին կը զօրանայ, և Կոնտէր քաղաքին վրայ գալով անոր տիրող ապստամբ գլխաւ ր կը հալածէ ու ինքը կը տիրէ անոր, և Թէկրիի մեծ իշխանին կը հըպատակի, և կ'ուզէ որ օրէ օր իւր իշխանութեան երկիրն ընդարձակէ մինչև Թէկրիի սահմանագլուխը ։ Պելեսայու վրայ կուգայ, ուր տեղ որ մենք կը գըտնուէինք. Պելեսացիք չկրցան դէմ դնել անոր, ըստ որում երկրին կէս մասը անոր հնազանդիլ կ'ուզէր, այլ և գիւղացի զօրքերը իրենց Տէճաջ—Մնինէ իշխանին հետ Թէքլէ—Կորկիս Թագաւորին քով կը գտնուէին ։ Այն միջոցին ժողովուրդը մեր սրտին մէջ սարսափ կը ձգէին ըսելով թէ՝ Կապրօ—Ս՛ետանիի զօրքերը գիւղը կոխեցին և պիտի կողոպտեն. ասով կ'ուզէին մեր քովն եղած միակ դոյքերը՝ այսինքն եկեղեցական զգեստները յափշտակել. և մենք զանոնք ազատելու համար առաջուց խորհելով ծածուկ տեղ փոս մը փորեր և հոն պահեր էինք. և այն կողմէն միամիտ ըլլալով՝ սովորական աղօթից կը պարապէինք Աստուծոյ յանձնելով մեր անձինքը։ Իշխանը լուր կը խրկէ Պելեսայու ծերերուն ու կ'ըսէ թէ “Ես ձեր ստացուածքը յափշտակելու չեմ եկած, այլ միայն պատերազմող մարդիկ կ'ուզեմ ձեզմէ ։” Պատասխան խրկեցին անոր քահանայից ձեռքով, թէ “Որքան պատերազմող մարդիկ որ ունինք, Թագաւորին քով կը գտնուին. այդ խնդիրքնիդ անհնարին է. իսկ թէ որ արմտիք պաշար կ'ուզէք՝ տանք ձեզի ։” Կապրօ—Ս՛ետանի—Ս՛լէմ առանց բան մը ընդունելու կը թողու կ'երթայ՝ ըսելով. “Թէ որ Աստուած տուաւ, իմն է

պդ երկիրը ։» Աշու տիրեց միայն Վոլկայէն մինչեւ Սըմին, որոնք Թէկրիին արեւելեան կողմը կ'ընկնան ։

Այս միջոցին մէջ էր յանկարծ Մուսաւա բնակող խալաճա Առաքէլ Յ. Ճիվէլէկեանի Հապէշ սպասաւորը մեզի ներկայացաւ, եւ երկու տարիէն ի վեր սուրբ Երուսաղէմէն եւ ուրիշ տեղայմէ եկած նամակներու ծրար մը մեզի յանձնեց ։ Անհնարին է նկարագրել մեր ուրախութեան չափը, որու սաստկութիւնը կարծես թէ մեր ջիղերուն ցնցում տալով ձեռուընիս դողալով ինչպէս բանալնիս չէինք գիտեր․ մենք զմեզ կորսուած եւ մարդոցմէ մոռցուած կը համարէինք․ վասն որոյ այլ ընդ այլոյ եղած՝ մեր հայրենեաց եւ սուրբ երկրի կարօտը այն նամակներէն կ'առնէինք ։ Բացինք վերջապէս եւ սկսանք կարդալ, եւ մեր այրած սրտերնէս աչուըներս ցամքած աղբիւրները մէկէն ի մէկ սկսան հոսել, բայց այս անգամ ուրախութեան եւ քաղցր յոյսերու արտասուք էր․ կարծես թէ յանկարծ տեղափոխուեցանք եւ լուսաւոր աշխարհի ճերմակ մարդոց հետ սկսանք խօսիլ, եւ մեր բազմակարօտ սուրբ Հարց եւ Եղբարց հետ տեսակցիլ, եւ անոնց քաղցր խօսակցութիւնը վայելել ու մխիթարուիլ ։ Մեր երեւակայութիւնը քիչ մը ժամանակ մեզի խաբեց․ կը կարծէինք թէ ալ յաւիտեան հեռացանք այն սեւադէմ ու վայրենաբարոյ ժողովրդէն, որոնց կերպարանքը եւ աւելի եւս իրենց բարքն ու վարքը ատելի ըրած էին մեզի բոլոր այն երկիրը ։ Նոյն ծրարին մէջ կար նաեւ Առաքէլ աղայի մէկ նամակը, որով կ'իմացընէր մեզի Մուսաւայի Անգղիական հիւպատոսարանէն մեր վերադարձը խնդրելու համար Թէքլէ-Կորկիսին նամակ խրկուիլը, եւ Թէկրիի իշխանէն ալ մեզի ճամբայ տալու համար հաճութիւն ընդունիլը ։

Այս ուրախառիթ լուրերուն վրայ աճապարեցինք մենք ալ մեր կողմէն աղերսագիր մը խրկել Թէքլէ-Կորկիսին որ հրաման տայ մեզի երկիրը դառնալու ։ Այս նամակը Հիւպատոսին գրութիւնն ընդունելէն քանի մը օր յետոյ ձեռքը հասնելով, ակամայ կամօք կըստիպուի հրաման տալու, եւ յատուկ մէկու մը հետ պա-

տախտան ալ կը գրէ. իւր ըրած տմարդութեանցը համար ալ ներողութիւն կը խնդրէ բերնով, և կ'աղաչէ ևս որ Թէկրիի իշխանին քով գացած ատեննիս իւր և անոր մէջտեղ միջնորդ ըլլալով հաշտութիւն ձգենք, ըստ որում գժտութիւն ինկած էր մէջերնին։ Ահաւասիկ նամակին պատճէնը։

«Եւթոպիոյ Թէքլէ—Կէորկիս Թագաւորը այս նամա-
«կը կ'ուղարկէ առ Ապունա Իսահակ և առ Ապունա
«Տիմոթէոս։ Ի՞նչպէս էք, շատ լա՞ւ էք։ Առաջ ճամ-
«բայ չըլլալով սպասեցիք։ Հիմայ ձեր Թագաւորէն նա-
«մակ եկաւ մեզի. գացէք երկիրնիդ։ Երկուքնուդ հա-
«մար Տէճաջ—Մինինէէն երկու ջորի ընդունեցէք. ինչ որ
«ունիք՝ առէք հետերնիդ տարէք ձեր երկիրը։ Ձեր
«վերադարձը տխրեցուց ու լացուց մեզի։»



Բնագրին մէջ իւր առիւծադրոշմ կնիքը կ'երեւի, որու բոլորտիքը գրուած է «Եւթոպիոյ Թէքլէ—Կէորկիս Թագաւոր։» Որուն օրինակն է հոս դրածնիս։

Այն հրամանը ընդունենէս 15 օրի չափ ետքը Տէճաջ—Մինինէ իշխանին եղբայրը երկու ջորի խրկեց, և նոյն օրը՝ որ էր Ապրիլ 16, աւագ չորեքշաբթի, պատրաստուեցանք ճամբայ ելնելու։ Բեռներու մասին մեր քով՝ բաց ի եկեղեցական զգեստներէն ու անօթներէն ուրիշ բան չթողուցինք. պարապ սնտուկները և ուրիշ մեզի անպէտ եղող ծանրութիւնները, որոնց մէջ կար Թէյի ամաններու սնտուկ մը, նամակը բերող մարդուն հետ Թագաւորին խրկեցինք։

Մեր մեկնելու ձայնը՝ եղած գիւղերնուս մէջ լսուելով, բոլոր ժողովուրդն եկան լեցուեցան մեր բոլորտիքը, որոնք արդարեւ վերջին ժամանակները իբրեւ իրենց հոգեւոր հովիւն և խնամատարն ընդունած էին

զմեզ, կ՚անարգէին նոր գալէք Խպտի եպիսկոպոսը, կ՚անիծէին և զԹագաւորը մեզի ճամբելուն համար։ Բոլոր այս բազմութիւնը, հազարէն աւելի անձինք, նոյնպէս և Տէճաջ—Նինէի եղբայրը 400 զօրքով փառաւոր հանդէսով ուղեկից եղան մեզ մէկ օրուան ճամբու մօտ Թէպէտեւ Թագաւորը Վօկըրայի ճամբով հրամայած էր որ տանին մեզի Թէ դիւրութեան և Թէ կարճ ըլլալուն համար, այսու ամենայնիւ այն կողմերուն ապստամբութիւն տիրած ըլլալով ժողովուրդն ալ չուզեց որ անկէց երԹանք, ու ստիպուեցանք Ակօյի ամենադժուարին ճամբով գնալ, որ էր Թէքլէ—Հորկիսին բուն երկիրը։

Ելնելու ժամանակնիս Թէքլէ—Հորկիս ըստ սովորութեան՝ մեր ճամբու պաշարը որոշեց որ ամեն պատահած գիւղերէն ընդունինք. կռտած քօշ մը, գառ մը, բղուղ մը արդար իւղ և բղուղ մը մեղր. վեց ամսն կերակուր, ութսուն հաց և երեք ճառայ կորեկօղի և ջորիներուն կեր։ Այսչափ պաշար Թէպէտ ծանր էր գիւղացւոց, և մեզի ալ՝ որ տասը հոգւոյ չափ կայինք, բաւականէն աւելի էր, բայց Թագաւորին այսպէս հրաման տալը երկու նպատակ ունի. նախ իմացընել կ՚ուզէ գիւղացւոց՝ ճանապարհորդաց պատուաւոր անձինք և Թագաւորի կողմէ եկած ըլլալնին. երկրորդ՝ գիտնալով անոնց բնաւորութիւնը, չափազանց պահանջմունք կ՚ընէ, որպէս զի որոշուած պաշարէն գոնէ կէսը տան։

Աւելորդ կը համարիմ հոս այս վերադարձի ճամբորդութեան մէջ, իւրաքանչիւր գիւղ հասնելնուս պաշար ընդունելու կողմէ քաշած տարօրինակ նեղութիւնները մանրամասնաբար յիշատակել, այլ ընդհանուր տեսութեամբ մը բաւականանամք։ Նախ Պելեսայէն մինչեւ Թէկրի եկած ճամբանիս, որ հազիւ 10 օր կը տեւէ, մենք 42 աւուր մէջ առինք, ըստ որում օրը հազիւ Թէ շատ շատ 3 ժամ կը քալէինք. և մեր առաջնորդները շատ անգամ իրենց դիւրութեանը համար ուղիղ ճանապարհէն կը խոտորէին, և մօտ գիւղ մը մեզի կը յանձնէին, որով գիւղացիները կռուելու և չըն-

գունելու իրաւունք կ'ունենային ։ Նման խոտորնակ ճանապարհներէ երթալով և բարձր լեռներ հետիոտս ելնելով իջնելով աւելի ժուռ կուգայինք՝ քան թէ ճամբայ կ'առնէինք, համարէ թէ Իսրայելացւոց անապատները պտըտելու նման մենք ալ կը պտըտէինք, և խօսք չէինք կրնար հասկըցնել անոնց, և իրենք ալ հասկընալ չէին ուզեր ։

Ճանապարհորդութիւննիս այս կերպով էր. նախ Պելեսայէն ելնելնուս՝ Տէճաջ-Վանինէի եղբայրը մեզմէ բաժնուելով ետ դառնալուն 200ի մօտ զօրք տուաւ մեզ ընկերանալու. բայց որովհետեւ անոնց բազմութիւնը աւելի մեծ ծանրութիւն և զրկողութիւն կ'ըլլար խեղճ գիւղացւոց, որով մեզի ալ վնասին կը հասնէր, քանի մը օրէն զկնի զանոնք ետ դարձնելով խնդրեցինք որ գիւղերուն աղաներուն (1) վրայ յանձնարարութիւն ըլլուի ։ Ուստի անկէց յետոյ գիւղ մը հասնելնուս՝ առջի գիւղին աղային կողմէն մէկը հետերնիս գալով, նոյն հասած գիւղի աղային և ժողովրդոց առջեւ բարձր ձայնով կը յայտնէր Թագաւորին հրամանը, և տալիք պաշարնին մէկիկ մէկիկ յիշելով Թագաւորին անուանը երդում ալ կ'ընէր ճշմարիտ ըլլալուն վրայ ու կը դառնայր ետ ։ Այսպէս բոլոր հանդիպած գիւղերուն եկեղեցպանք իրարու յանձնարարութիւն ընելով զմեզ՝ Թագաւորին հրամանը կը հաղորդեն ։ Բայց այս հրամանները գոնէ կիսով չափ և առանց կռւոյ կը կատարուէին արդեօք, և թէ ո՞րքան նեղութիւն ու տառապանք կը կրէինք մինչեւ որ պատառ մը հաց բերել կուտայինք բերաննիս դնելու, անհնարին է մեզ պատմել առանց նորոգելու մեր սրտին յուզմունքն ու վիշտերը։ Շատ անգամ գիւղ մը հասնելնուս, ուր առանց կռւոյ վար չէինք իջներ ջորիներուն վրայէն, մինչեւ իրիկուան արեւներու, և երբեմն մինչեւ կէս գիշեր

(1) Աղայ կը կոչուի հոգեւոր գործոց տեսչութեան գլխաւորը. և այս Աղաները կարդացող դպիրներուն մէջէն կ'ընտրուին իրենց առաջնորդ խպտի եպիսկոպոսին, կամ Չէկիին (ծայրագոյն վարդապետին) ձեռքով. Ասոնց մէջ ալ աստիճանի կարգեր կան զինուորականաց կարգերուն նման ։

աստղերու տակ կը մնայինք, և տեղ մը չէին ցուցըներ մեզի հանգչելու, և մինչև այն ժամանակ անօթի կը մնայինք: Երբեմն քանի մը հաց միայն կը բերէին անով գոհ ընելու մեզի, բայց չէինք ընդունէր, ըստ որում եթէ ընդունելու ըլլայինք, իրաւունք կ'ունենային թագաւորին հրամայած միւս պաշարները չտալու. իսկ թէ որ անօթի մնալու ըլլայինք, հետևեալ օրը մենք իրաւունք կ'ունենայինք գանգատ ընելու մօտակայ տեղւանք գտնուող շէխին կամ իշխանին, և այն ժամանակ գիւղացիք կը դատապարտուէին կրկինը հատուցանելու կամ ուտելիք և կամ դրամական փոխարինութիւն. բայց մենք սպասելու ժամանակ չունենալով՝ մաս մը միայն կը պարտաւորէինք երբեմն ընդունելու իրենց տուածէն ըստ սովորութեան երկրին, և զանոնք մեր հետ եղող սպասաւորաց իբր վարձ կը հատուցանէինք:

Այս ուտելեաց և բնակարանի մասին ինչ որ կը կըրէինք, անկէց պակաս չէր նաև ճանապարհներուն անհանգստութիւնը: Ստոյգ է որ Թուրքիոյ մէջ ալ ուղեգնացութիւնը Եւրոպայինին պէս իւր ամեն հանգստութիւնները չունի, այսու ամենայնիւ Հապէշըստանի մէջ՝ մանաւանդ Եւրոպացիի կամ Թուրքաստանցիի համար անտանելի է ճանապարհորդելը: Ինչպէս ուրիշ տեղ ալ ըսած ենք, երկիրը բոլոր լեռնային է, և երբեմն մինչև երեք լեռ իրարու վրայ բարձրացած են, որոնց վրայէն կ'անցնէինք ոլորուն ճամբաներով, տեղ տեղ ալ սողալով, ուսկէց եթէ սահելով վար ընկնայինք անդնդային ձորերուն մէջ, անմիջապէս մահուան զոհ կ'ըլլայինք: Իսկ թէ որ դաշտաձև տեղ մըն ալ հանդիպէինք, այն ալ դարձեալ գետինը քարուտ և փշաբեր ծառերով խեղդուած էր: Եւ այս փշերը երեք տեսակ են, ոմանք կեռ, ոմանք ուղիղ, որոնց մէջ կան երկարըն ու կարճը. երրորդ տեսակ փուշ մըն ալ կայ երեքճղի՝ գետնին երեսը ցցուած և անոր ամանը հողին տակ ծածկուած, այս ամանին մէջ պարունակուած հունտը սովու ժամանակ կ'ուտեն տեղացիք: Այս ըսած փշերուս մէջէն անցնիլը իւր վտանգներն ունի

միշտ. Ճամբորդներուն ոչ դէմքերն ու ձեռքերը կը մնան անվնաս և ոչ վրանուն հագուստը։ Արդեօք այս երկրին համա՞ր ըսաւ Աստուած Ադամայ, թէ «փուշ և տատասկ բուսուսցէ քեզ երկիր։»

Մեր դժբաղդութեան չափը լրանալու համար այնպիսի ժամանակ հանդիպեցաւ (ապրիլ,) որ ջրի մեծ ցամաքութիւն կը տիրէր նոյն կողմի բոլոր երկրին մէջ։ Հանդիպած գիւղերնուս մօտ գտնուած ջրի ակերը պուտ պուտ կաթելով մինչեւ իրիկուն հազիւ թէ կուժ մը ջուր կը լեցուէր, ճամբորդի ողորմող ու գաւաթ մը ջուր խմցընող չէր գտնուէր այն տաք եղանակին որ կը տիրէր Ակօյին մէջ։ Ստանգը մեզ կրպառնար և մեր ջորիները ծարաւութենէ տանջուելով ուժէ կ'ընկնէին։ Քանի մը տեղ իջեւանած ժամանակնիս գիւղացիք կուգային և իմանալով մեր եկեղեցական ըլլալը՝ կ'աղաչէին որ աղօթք ընենք որ Աստուած անձրեւ տայ իրենց, թէպէտև եղանակը անձրեւի չէր, և երբէք լսուած չէր որ ապրիլ ամսոյ մէջ անձրեւ գայ այն կողմերը, խղճալով անոնց նեղութեան վրայ որոնց մենք ալ հաղորդ էինք, քանի մը տեղ ըստ թախանձելոյ գիւղացւոց խաչհանգիստ ըրինք և աղօթք ընելով Աստուծոյ ողորմութիւնը խնդրեցինք։ Չենք գիտեր թէ արդեօք մե՞ր աղօթքը լսելի եղաւ՝ թէ Աստուած ժողովրդոց և մեր երեսին ողորմեցաւ, երկու երեք անգամ այնքան յորդ անձրեւներ իջան, մինչեւ հեղեղներ կապեցին ու գետեր յորդեցին. եթէ այս անձրեւները չգային, ամենեւին յոյս չկար մեր ողջ մնալուն, այլ ծարաւատանջ պիտի զրկուէինք մեր կեանքէն։

Ակօյի երկիրը կարծես թէ անիծուած էր Աստուծմէ. այսչափ նեղութեանց վրայ մարախներու բազմութիւնն ալ միւս կողմէն աւերակ էր դարձուցեր երկիրը, բոլոր արմտիքները լափեր էր բաց ի կորեկի տեսակներէն, որոնց հունձքը անձրեւային ժամանակ ըլլալուն համար ազատ կը մնան անոնց բազմածախ ժանիքէն։ Այս աշխարհաւեր կենդանին այն կողմերը անպակաս գտնուելուն՝ առէպ կը պատահի հոն հացի նեղութիւն,

և Կրատխպուլին տեղացիք վերը յիշած գետնափիչին հունտերը քաղել ուտելու, որոնք հողոյն ներքեւ ծածկուած ըլլալուն՝ ազատ կը մնան անոնցմէ :

Այս է ահա Աչօյի վրայօք ըրած մեր ճանապարհորդութեան համառօտ նկարագիրը. որու համար նոյն իսկ Հապէշք կը վկայեն դժուարին և անտանելի ըլլալը : Մայիս ամսոյ 27 ին հասանք Թէկրիի սահմանագլուխին եղած Չինարվա գիւղը, որու կառավարիչը Տէճաջմաջ—Բասսայի քով գացած ըլլալով՝ անոր փոխանորդէն խնդրեցինք որ հրաման տայ մեզի նոյն եղանակով այսինքն գիւղէ գիւղ մինչեւ Ատուա հասնելնիս գիւղացիք մեզ ուտելիք տան։ Ընդունեց նա մեր խնդիրքը, և հրաման ըրաւ որ իջեւանած տեղերնիս մեզի անօթի չթողուն : Այսպէս հասանք մինչեւ Ատուայի երկու օր մնալով տեղ մը, ուրկէց Տէճաջմաջ—Բասսա մեծ իշխանին մարդ խրկելով մեր գալն իմացուցինք. նա ալ փութաց անմիջապէս Պալամպարաս մը (1) խրկել, որուն առաջնորդութեամբ մտանք Ատուա մեզի համար պատրաստուած տեղը :

Տէճաջմաջ—Բասսան այն միջոցին 5 ժամ հեռու Աքսում ըսուած հին քաղաքը կը գտնուէր, ուր հօր մը մաքրել տալու համար գացած էր. և իւր տեղը Տէճա—Պարեա անուն փոխանորդը կար, որ մեր գալուստը լսելուն պէս՝ ոչխար եզ մը, մեղրագինի և կորեկօղի և այլն, հետն առած տեսութեան եկաւ մեր քով։ Անոր հաճութեամբը հետեւեալ առաւօտուն մեր սպասաւորը մեծ իշխանին քով յուղարկեցինք Աքսում, որ մեր ողջոյնը մատուցանելով՝ միանգամայն թէ՛ զինքը և թէ նոյն քաղաքի հին եկեղեցին տեսնելու համար ունեցած փափաքնիս յայտնէ : Նա ալ կ՚ընդունի սիրով և հրաման կը խրկէ փոխանորդին՝ որ պատուով զմեզ իւր քովը յուղարկէ :

(1) Պալամպարաս կը նշանակէ արջառներու և անասուններու վերատեսուչ, որուն կը յանձնուին թագաւորին նուէր կամ իբրեւ տուրք եկած բոլոր չորքոտանիները, և ինքն է անոնց տնօրէնը : Այս պաշտօնը իրենց մէջ խիստ պատուաւոր է, և ունի իւր իշխանութեան տակ մասնաւոր խումբ մը զօրաց, ինչպէս միւս իշխանները :

Վերը յիշուած Պալամպարսը առջեւնիս ընկնելով տարաւ մեզի Ս. Քսում, և ուղղակի եկեղեցին իջանք աղօթելու և տեսնելու։ Այս եկեղեցին որ խիստ հռչակաւոր է բոլոր Հապէշստանի մէջ, առանց կրի.քարերով հիւսուած ցանկապատի մը մէջտեղը կառուցուած է, որու չորս կողմը բոլոր գերեզմանատուն է։ Եկեղեցին քառաշէն է, և արեւմտեան գաւիթը բոլոր եկեղեցւոյն լայնութեան ընդարձակ մարմարեայ աստիճաններ կան չորս կամ հինգ ոտք, տաճարին դուռը տախտակէ շինուած բարձր և փառաւոր չէնք մըն է. եկեղեցին չորս քառակուսի հիւսուածոյ սիւներու վրայ կառուցած է յունական ճարտարութեամբ, և Յունաց խորանին ձեւով է սեղանին խաչկալը։ Ցանկապատէն դուրս տեղ տեղ բրգաձեւ արձաններ կան զանազան բարձրութեամբ, որոնց ձեւը քառակուսի է և երթալով դէպ ի ծայրը կը նեղնայ. ոմանց վրայ գիր ալ կը տեսնուին՝ բայց անընթեռնլի են, շատերն ինկած կոտրած են և գետնին մէջ խրած։

Եկեղեցիէն դուրս ելած ժամանակնիս Պրլդհամ անուն Անգղիացի գնդապետի մը ձեռօք նոր կրթուած 50ի չափ զօրք բարեւ կանգնած էին, որոնց առաջնորդութեամբը մօտեցանք Ռասսա մեծ իշխանին վրանին քով, որ հեռուանց մեզի տեսնելով փութաց խոյն մեր դիմացը, և երեք անգամ մինչեւ գետին խոնարհելով Գեր. Իսահակ սրբազանի ձեռքի խաչը համբուրեց. նա ալ խաչակնքելով օրհնեց զանիկայ։ Եօթը զօրքերը երկու կարգի բաժնուած՝ տարին մեզի անոր վրանին տակը, որ կարմիր կերպասէ էր, ուր կարճ տեսութենէ մը ետքը՝ իւր քովը ուրիշ վրան մը կանգնել տալով հոն հանգիստ առինք։ Եւ երեկոյին յուղարկեց մեզի եզ մը, ոչխար մը, մեղրադինի, հաց և այլն, որոնց համար յատուկ մէկը խրկելով իրեն շնորհակալ եղանք։

Հապէշից մէջ մեծ համբաւ ստացած է և մեծ յարգութեան առարկայ եղած է Տամաքանեայ օրինաց քարեղէն տախտակը, որոյ համար Մովսէս մարգարէին

Աստուծոյ տուածն է կ'ըսեն, և Մենիլէք անունով առաջին հին Թագաւորին ժամանակ Երուսաղէմէն հոն բերուած է։ Քրիստոսի քարոզութեանը ժամանակ Եղեկիէլ անունով բարեպաշտ ու հոգեւոր անձ մը կ'առնու Երուսաղէմ կը տանի նոյն տախտակը և Փրկչին ներկայանալով կ'ըսէ. «Այս քարին վրայ գրուած աստուածագիր օրինաց համար ի՞նչ հրաման կ'ուտաս, ընդունի՞նք թէ ոչ։» Յիսուս առանց բերանը բանալու կ'առնու տախտակը ձեռքը ու միւս երեսին վրայ ոսկեգրով կը գրէ. «Ընդունեցէք ինչ որ գրուած է։» Եւ այն ժամանակէն ի վեր ընդունած են զայն իբրեւ աստուածատուր օրինաց տախտակը։ Այս պատմութիւնը իրենց գրքերուն մէջ աւանդուած ըլլալը կը հաստատեն. բայց ես սուրբ Գրոց հակառակ գտնելով զայն, որուն մէջ կը պատմուի թէ քարեղէն տախտակները տապանակին մէջ գրուեցան (1), սիրտս կ'եռայր և կը յուզուէր այսպիսի մէկ այլանդակ ստութեան մը դէմ, որ իբրեւ ճշմարտութիւն ընդունուած էր բոլոր Հապէշու երկրին մէջ, և բնականապէս մեր հետաքըրքրութիւնը կը շարժէր զայն տեսնելու, և եթէ կարելի է՝ ստութիւնն ալ խայտառակելու։ Աքսումի եկեղեցւոյն բարձր մէկ պահարանի մը մէջ պահուած է կ'ըսէին, ոսկւով պատած, և կարելի չէ որ մարդ տեսնէ ու շօշափէ զայն առանց պատժուելու։ Թէոդորոս Թագաւորը ուզեր է տեսնել, և Աստուած արժանի ըրած չէ կ'ըսեն։ Իսկ մենք երբ արժանի եղանք Աքսումը տեսնելու, խնդրեցինք Տէճաջմաջ-Քասսայէն որ հրաման ընէ ցոյց տալ մեզի յիշեալ քարը որ համբուրենք, ըստ որում ձեր հօս գտնուիլը, ըսինք, մեծ պատեհութիւն մըն է մեր ջերմեռանդական բաղձանաց հասնելու։ Սիրով ընդունեց մեր խնդիրքը։ Բայց հետեւեալ առտու երեսնի չափ պատուաւոր եկեղեցականներ եկան հաւաքուեցան մեր քովը. և տեսութիւն ընելէն յետոյ խօսք բացին մեր խնդրոյն վրայ, և ըսին թէ, «Ի հնուց անտի աւանդութիւն ունինք՝ որ անոր

(1) Գ. Թագ. Ը. 9։

մարդ չկրնար մօտենալ. և եթէ տեսնել անգամ հարկ ըլլայ, պէտք է որ առաջնորդ Ապունային հաճութեամբըն ու կամքովը ըլլայ : Մեր նոր Ապունային գալը մօտ է, անոր կ'աղաչէք, թէ որ կ'ընդունի լաւ, ապա թէ ոչ՝ հնար չէ:» Պատասխանեցի ես. «Աւանդութիւնները պէտք է պահուին, բայց ձեր այդ աւանդութիւնը կը զարմացընէ մեզի թէ ինչ պատճառաւ կ'արգիլէ իւր քրիստոնէավայել յարգանքն ու պատիւը ատանկ մէկ սրբազան նիւթի մը մատուցանելու : Հոգ չէ, ըսի, թող ձեր աւանդութիւնը չքննաբարեմք. բայց ըսէք ինձ, պատուոյ և յարգանաց մասին այդ օրինաց տախտակը՞ աւելի մեծ է՝ թէ Քրիստոսի խաչափայտը, որուն վրայ իւր աստուածային արիւնը թափեցաւ մարդկային փրկութեանը համար :» Այս հարցմանս պատասխանելէն առաջ սկսան իրենց մէջ վիճաբանել. ոմանք կը պնդէին թէ քարեղէն տախտակն է պատուով և նախամեծար, և ոմանք թէ՝ կենաց փայտն է. վերջապէս պատասխան տուին որ Քրիստոսի խաչափայտը աւելի յարգոյ ու պատուական է : «Թէոր այնպէս է, կրկնեցի, ամենեւին աւանդութիւն մը չէ եղած սուրբ խաչին համար որ մարդոց տեսութենէ ծածուկ պահուի և համբուրելու չտրուի բարեպաշտ անձանց, այլ ամեն քրիստոնեայք կը պատուեն և կը համբուրեն և իբրեւ յիշատակ Քրիստոսի չարչարանաց իրենց քով և եկեղեցեաց մէջ կը պահեն. ինչպէս ահա կը տեսնէք մեր սրբազան Հօր վզէն կախուած խաչն ալ, որուն մէջ կայ կենաց փայտին մէկ պզտիկ մասը, և բոլոր աշխարհ կը համբուրէ զայն. ինչ իրաւամբք ուրեմն արգելք դրուած է ձեր մէջը այդ տախտակին մօտենալու ու համբուրելու, թէ որ աստուածային ձեռօքը գրուած տախտակն է : Կրնայ ըլլալ որ ձեր մէջն այնպիսիներ գտնուին որ չհաւատան անոր ստուգութեանը, և այդպէս կեղծ երկիւղածութեամբ ժողովրդեան չցուցընելովնին կասկած տաք անոնց. ուստի աւելի աղէկ է որ ամեն մարդ գայ ուխտ ընէ և համբուրէ զայն, և այն ժամանակ կը հաստատուի անոր ստուգութիւնը

և աւելի յարգանք կըստանայ ։"

Խորին լռութիւն մը տիրեց, և չկրցին պատասխան տալ այս խօսքերուս ։ "Դուք կարգաւոր էք, ըսի դարձեալ, և պատուաւոր էք՝ ինչպէս որ կ'իմանամ. արդ կը հարցընեմ ձեզ, այդ աւանդութիւնը մեծ է և պարտաւորիչ ձեզի համար, որ այսչափ խղճիւ կը պահէք և պահել կուտաք, թէ Քրիստոսի սուրբ Աւետարանը՝ որու խօսքերը փրկութիւն է հոգւոյ և կենսատու բոլոր աշխարհիս ։ Այս սուրբ գրքին աւանդած պատուէրները ամենևին բանի տեղ չդնելով ու չյարգելով կը տեսնեմ այսօրուան օրս ձեր բոլոր երկրին մէջ որ անոնց հակառակը կը գործուին, չնութիւն, պոռնկութիւն, ամուսնական օրինաց դրժում, մարդասպանութիւն, ստախօսութիւն, կեղծաւորութիւն, և այլն. դուք ինքնիւ քրիստոնեայ և կարգաւոր, պարտաւոր էք այս պատուէրները պահել և պահել տալ ժողովրդեան իբր Յիսուսի Քրիստոսի աւանդութիւնները, և ոչ թէ անհիմն երկիւղածութեամբ բռնէք այդ աւանդութիւնը որ ժողովրդոց բարեպաշտ զգացմանց ալ հակառակ է ։" Այս խօսքերուս վրայ համոզուելով պատասխան կուտան միաբան ։ "Երթանք կրկին անգամ մեծ ժողով մը ընենք, և կը յուսանք որ ձեր այդ խնդիրքը կը կատարուի, թէպէտ մինչև հիմայ եղած բան չէ ։"

Տէձաջմոջ—Բաստային քով կ'երթան և մեր ըսածները բոլոր անոր կը կրկնեն. նա ալ կ'ուրախանայ ու կ'ըսէ. "Տեսա՞ք հիմայ, ես արդէն ըսի ձեզ, թէ վերջը ամօթով կը մնաք ու կը խայտառակուիք. անկէց զատ Մախախի Բաղօթի տախտակին յարգն ալ օրինօք կորրեցաւ. մենք զանիկայ քան զկենաց Փայտը կը յարգէինք և գրեթէ աստուածային պատիւ կուտայինք անոր. այսօր ահաւասիկ տեսաք անոր յարգը ո՛ւր իջաւ ։" Այսպէս պատասխանելով շատ ուրախ կ'ըլլայ մեր յառաջ բերած փաստերուն վրայ, որովհետև վշտացած էր ինքը եկեղեցականներէն՝ իւր հրամանը չընդունելուն համար ։ Ուստի ժողովքի մէջ խորհուրդ ընելով կ'որոշեն ցոյց տալու մեզ քարեղէն տախտակը, և ուղ-

ղակի մեր քով գալով ժողովին որոշումը մեզի կը յայտնեն և կը հրաւիրեն երթալ տեսնելու ։ Պատասխան տըւինք . «Մենք քրիստոնեայ եմք , միայն հաւատով ալ կրնանք մեր հոգեւոր բաղձանքը լեցընել . ալ այսուհետեւ հարկ չկայ տեսնելու և մեր յարգանքը անոր մատուցանելու ։ Մանաւանդ թէ մեր քով Քրիստոսի արիւնամած խաչին մասը կայ , նա է պատուոյ արժանաւոր . իսկ այդ տախտակին մէջի գրուած օրէնքները աւելի հարկաւոր և օգտակար են և ոչ թէ քարը, և մենք արդէն այն պատուէրները մեր սրտին մէջ գրած ունիմք . » Այս մերժման վրայ , որուն չէին յուսար , ամօթով ետ կը դառնան . և Տէճաճման—Յասսան լսելով՝ ինքը կը փութայ կուգայ մեր քովը և իրենց եկեղեցականաց ամբողջութիւնը պախարակելով կ՚ըսէ . «Անոնք ոգէտ մարդիկ են , կը խնդրեմ որ ներէք և դարձեալ յանձն առնուք երթալ տեսնելու Մովսէսի Բաղօքը ։ »

Չկրցինք այս անգամ ալ մերժել , այլ սիրով ընդունելով մեծ իշխանին առաջարկութիւնը , իրեն և բոլոր մեծամեծաց և եկեղեցականաց ընկերութեամբ և կանոնաւոր զօրաց առաջնորդութեամբ և երաժշտաց երգերով գնացինք եկեղեցին և մտանք բակին մէջ . հոն նստան բոլոր ժողովուրդը , և մենք քանի մը եկեղեցականով մտանք աւանդատունը, որ եկեղեցիէն դուրս ցանկապատի դրան ձախակողմը շինուած էր ուրիշ սենեակներու կարգաւը, և հոն կը պահէին եկեղեցական զգեստներն ու անօթները ։ Այս գետնայարկը ներսի կողմէն երկրորդ առիք մըն ալ ունէր տախտակամած , ուր կ՚ելլուէր շարժական սանդխով մը . քահանային մէկը վեր ելաւ , առիքէն երկու տախտակը մէկ դի ընելով ներս մտաւ , որուն հետեւեցանք մենք ալ . սարկաւագ մը բուրվառը ձեռքը մօտեցաւ սնտուկի մը խնկարկեց , յետոյ մեզի տուաւ , մենք ալ խնկարկեցինք։ Սնտուկը Հնդկաստանի շէնքով գզրոց մըն էր , որուն վրայի աչքը դուրս քաշելով՝ երեւցաւ Տասնաբանեայ օրինաց քարեղէն տախտակը . Դուրս հանեցինք զայն և սկսանք ուշի ուշով դիտել ։ Եգիպտական կարմիր-

գոյն մարմարիոն էր քարը, քառակուսի կտրուած, երկայնութիւնը 24 հարիւրամետր և լայնութիւնը 21. իսկ հաստութիւնը գրեթէ 3 հարիւրամետր։ Եզերքները կէս բթաչափ լայնութեամբ փորուածոյ ծաղիկներէ շրջանակ մը ունէր. անոր մէջ կրկին շրջանակ մը դարձեալ քառակուսի բարակ շղթայի նման ձուլքով կը ներկայացնէր. այս երկրորդ շրջանակին մէջը պարապ էր, իսկ երկու շրջանակներուն մէջտեղի միջոցը կը պարունակէր տասը պատուիրանքները, հինգը մէկ կողմը և հինգը միւս կողմը, առ ի չեղ գրուած տաճկական ոլորութեամբ. և տակի կողմը դարձեալ երկու շրջանակաց մէջտեղը կային երեք գիր, ինչպէս կը տեսնուի դիմացի պատկերին վրայ. առաջին գիրը Հապէշից այբբենարանէն դուրս թուանշան մնէ, որ տասներորդ թիւ կը նշանակէ. իսկ միւս երկուքը նշանական տառեր են, մէկը մեր Զ ին և միւս Ը ին բուն ձայնական հրնչմամբը. սակայն թիւ չեն ցուցըներ, վասն որոյ անհնարին եղաւ մեզ բացատրութիւն մը գտնելու. Թէպէտ յայտնի կը գուշակուի որ երեք գիրն ալ մէկէն թուական մը ցոյց կու տան, բայց ոչ ոք իրենց կարգաւորներէն կրցաւ կարդալ և մեկնութիւն մը տալ։ Միւս երեսի կողմն ալ դարձեալ երկու շրջանակներ կ'երեւան ուրիշ կերպ բանուածքով. բայց հոն գրի նշան չտեսանք։ Քարը ամեն դիէն իւր անարատութիւնը պահած էր, հնութեան նշան բնաւ չէր կրեր, այսու ամենայնիւ երեք կամ չորս և կամ աւելի դար յառաջ քանդակուած պիտի ըլլայ։ Մեր յարգանաց արտաքին ցոյցերը տալով այս Եթովպական յիշատակարանիս, կրկին իւր տեղը տեղաւորեցինք շնորհակալ ըլլալով մեր ներկայացնող քահանային, և դուրս ելլելով Տէձազմաջ—Բասսա մեծ իշխանին քով գնացինք, որ իւր մեծամեծներէն և կարգա-



ւորներէն շրջապատեալ բակին մէջ մեզի կը սպասէր ։ «Ի՞նչպէս գտաք, հարցուց մեզի պատուաւոր եկեղեցականներէն մէկը․ Մովսիսական տախտակին մէջ օրէնքները անոր երկու կողմը գրուած չէի՞ն․ և այս տախտակին վրայ ալ այնպէս գրուած չէ՞ն ։ — Այո՛, երկու կողմը գրուած է, — ըսինք․» և խօսքը չուզեցինք երկարել, որպէս զի չստիպուինք ճշմարտութիւնը դուրս հանել ։ Ու մեր ստորասական պատասխանին վրայ իբր թէ մեծ յաղթութիւն տարածի պէս սկսաւ ուրախանալ ու ըսել․ «Այսօր փարատեցաւ ոմանց մտքէն կասկածը, որոնք կը կարծէին թէ մէջտեղը գրուած են տասը պատուիրանքները, և անոր համար սուտ է կ՚ըսէին»

Մենք ստոյգ է որ չուզեցինք հոն մեծ իշխանին ներկայութեանը, մանաւանդ նախապաշարեալ եկեղեցականաց առջև բոլորովին ջրել յիշեալ քարին բնագիր տախտակին ըլլալը․ որ մեծ ։և սրբազան համարում մը ունէր քովերնին, այսու ամենայնիւ սուրբ Գրոց տեղեակ եղողը անոր սուտութիւնը իմանալու համար փորձի կարօտ չէ ։ Նախ, Աստուածատուր օրինաց տախտակները երկու հատ էին (1), որոնք Տապանին մէջ դրուելով՝ անոր հետ մէկտեղ անհետացան ։ Երկրորդ, բընագիրները հին Եբրայեցւոց լեզուով գրուեցան և ոչ Հապէշից ։ Երրորդ, Թուական չունէր վրան, զոր չը յիշէր սուրբ Գիրքն ալ ։ Բայց Հապէշից նման տգէտ ազգ մը կուրօրէն ընդունելով զայն իբրև իսկական բնագիրը, սնոտի պարծանք մը տուած կ՚ըլլայ իրեն ։ Նոյնպէս իրենց աւանդութեան նայելով Յիսուսի ներկայացուած ժամանակ, ինչպէս վերը պատմեցինք, ոսկեգիր տառերով ետեւի կողմը գրուած պիտի ըլլար, «Ընդունեցէք ինչ որ գրուած է» խօսքը․ և այս ալ դարձեալ ապացոյց մը պիտի ըլլար իրենց՝ ստեղծական և ոչ ճշմարիտ ըլլալուն ։ Այս բաներս անշուշտ նոյն քարին սպասաւորող եկեղեցականք գիտնալով, որովհետև մարդկային դատումէ բոլորովին զուրկ պիտի ըլլայ մէկը որ չկարենայ ըմբռնել այս օրինակ սուտ-

(1) Ելից․ Լ․Դ․ 1։

թիւն մը, կամաւ հաւատացուցած են խեղճ ժողովուրդը, և իրենց խաբէութիւնը չյայտնելու համար աւանդական արգելք մի ևս ըլալ հնարած են, անմատչելի ընելով զայն աշխարհականներէն։ Յետ այնորիկ նոյն աւանդատան մէջ գտնուած եկեղեցական զգեստներն ու անօթները ցոյց տուին մեզի, որոնց մէջ թէպէտ նշանակութեան արժանի բան մը չկար, սակայն ասոնց և ոչ մէկ քառորդը ուրիշ եկեղեցեաց մէջ տեսնելով, բաւական նշանակութիւն մը ունէին։ Բայց մանաւորապէս յիշատակելու զանց չեմ ըներ եկեղեցական թմբուկը, որու ձևը հասարակ թմբըկի ձևէն տարբեր է իւր երկարութեամբը, և բոլորովին արծաթով քանդակուած։ — Դառնանք մեր պատմութեան։

Նոյն օրը Աքսումէն ելանք Ադուա դառնալու մեծ իշխանին հետ. զինուորական երաժշտաց խումբը մեր առջևէն կ'երթար. և մենք ջորիներ հեծած իշխանին հետ կը քալէինք, որ ի պատիւ մեզ միշտ քանի մը քայլ ետ կը քալեցընէր իւր ջորին. և մեր ետևէն կուգային սպառազինեալ զօրքերը և զօրապետները։ Քաղաքը հասնելնուս և զմեզ յատուկ պատրաստուած տան մը մէջ հանգչեցընելէն յետոյ, ինքը գնաց իւր բնակարանը, և 12 ռումբ արձակել տուաւ մեր գալուստը պատուելու համար։

Մեր Ադուա դառնալնուս առաջին զբաղմունքնիս և պարտքերնիս եղաւ նամակաւ մի մեր հոն հասնիլը ծանուցանել Ամենապատիւ Տ. Եսայի Սրբազան Պատրիարքին. որու համար յատուկ թղթատար մը հանեցինք Մասսուա առ Արժ. Առաքել աղայն Յ. Ճիլէլէկեան։ Այլ և ուրիշ նամակ մըն ալ Անգղիարէն լեզուով պարտք համարեցինք Եգիպտոսի Անգղիական ընդհանուր հիւպատոսին ուղղել, որուն մէջ մեր վերադարձին համար Բրիտանիոյ կառավարութեան ցոյց տուած ջանասիրութեանը շնորհակալութիւննիս յայտնեցինք. ահաւասիկ անոր Հայերէն թարգմանութեան օրինակը.

Ատուա ¹³/₁ Յունիս, 1869

Իսահակ Արքեպիսկոպոսէ Երուսաղեմայ, առ Մեծապատիւ Ստանթոն հաւատարապետ՝ ընդհանուր Հիւպատոս Անգլիոյ.

Ի Գահիրէ, յԵգիպտոս։

Զօրութեամբն Աստուծոյ և շնորհիւ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. ամէն։ Խաղաղութեամբ հասանք յԱտուա, և մեծաւ սիրով ընդունելութիւն գտանք Թէկրիի բարձրապատիւ Քասսա Իշխանէն։

Մեր ամենախորին շնորհակալութիւնները կը մատուցանենք շնորհաշուք Վեհափառ Վիքտորիա Թագուհւոյն մեծին Բրիտանիոյ՝ մեր վերադարձին յաջողութեանը համար օժանդակելուն. նմանապէս և Նորին պաշտօնատարաց համար գոհաբանութեան և բարեմաղթութեան աղօթքներ կը նուիրենք Նախախնամողին։

Թէկրիի Բարձրապատիւ Քասսա Իշխանէն խիստ մեծ մարդասիրութեամբ ընդունուեցանք, վասն որոյ թէ Նորին Վեհափառութեան և թէ Բարձրապատիւ Իշխանին դէմ զգացած մեր շնորհապարտութիւնը կը փութանք խոստովանիլ։

Յուսալով յԱստուած մօտ օրերս յԵգիպտոս հասնելու, մնամք՝

Ձեր ամենահաւատարիմ բարեկամ Իսահակ
Արքեպիսկոպոս Երուսաղեմայ։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

Քասսային առաջին այցելութիւնը, ընծաները ։ Պաշտօնի հոգեհանգիստ և հոգւոյ—հացը ։ Քասսային մեզի խրկած հոգերաժինը։ Ջերմակ մարգիկը ։ Միքայէլ վարդապետ և կարապետ Բոգէ Պօլսեցի Հայը և իւր որդիքը ։ Ասոնց միջոցաւ Քասսային Անգղիացւոց հետ բանակցիլը ։ Պատերազմէն յետոյ Քասսայի Նոբէլէրին հետ ըրած խօսակցութիւնն և զօրահանդեսները ։ Մեզի ցոյց տուած մեծ հաճոյութիւնը ։ Շօայի իշխանին մեզի խրկած պատգամաւորը։ Քասսայի երկրորդ այցելութիւնը և եղած խօսակցութիւնները, իւր ընծաները։ Ճամբայ ելնելնիս. զէնքն և իւր զօրքերը օրհնելնիս ։ Գինիգայի մէջ մեծ Թմբկին օրհնութիւնը։ Քասսային հրովարտակը ։

Տէճաջմաճ—Քասսան մեր քով տեսութեան եկած ժամանակ իւր սրտին ցաւը յայտնեց մեզի օր մը յառաջ Սամարա երկրէն մեզի իր քով փախցընել տալու չը կրնալուն համար. "Թէեւ, ըսաւ, այն կողմերը գտնըւող ազատամբաց մէջ ինձի կուսակիցներ ունենալով, յայտնած էի անոնց որ զձեզ այն երկրէն ազատելու աշխատին։" Պատասխանեցինք իրեն թէ՝ այդ բաղձանքը պակսած համարեցէք. դարձեալ ձեր տէրութեան երկրին մէջէն ճամբայ շնորհելովնիդ արձակուեցանք. "Կը զարմանանք, Տէր, կրկնեցինք, քու իշխանութեանըդ ներքեւ քանի մը գլխաւորներ անմտաբար Վակշում Կոլագին (1) կուսակցութիւն ցոյց կուտան և գաղտլուրեր կը հաղորդեն անոր. բայց չեն գիտեր անոնք որ, բաց ի մեծամեծներէն՝ անոր երկրի ժողովուրդին մեծ մասն ալ զձեզ սիրած են, և կը ցանկան քու իշխանութեանդ ներքեւ հպատակիլ օր յառաջ։ —Այս խօսքիս վրայ մեծամեծները իրարու երես սկսան նայիլ։ — Ահաւասիկ կը յայտնեմ Վակշում—Կոլագին սրտին բաղձանքը, որ մեր գալու ժամանակը յատկապէս իւր մէկ հաւատարիմ մարդուն միջոցաւ յայտնած էր մեզ, և խնդրած էր որ մեր միջնորդութեամբը հաճիք իրեն հետ հաշտուելու (2)։" Իսկոյն պատասխանեց նա. "Թէ որ

(1) Թէքլէ—Կորկիսի Թագաւորութիւնը դեռ Թէկրէի մէջ չը ճանչւելուն, իւր առջի անուամբը կը յիշուի ։

(2) Մեր այս կերպով առաջարկութիւն ընելնուս պատճառը իւր միտքըն ու ներքին խորհուրդը իմանալու համար էր ։

Ճշմարիտ քրիստոնեայ ըլլար անիկայ, սիրով կը հնազանդէի անոր. բայց նա բարբարոսներէն ալ վատ է, իւր ընթացքը ապօրինաւոր, և բազմակնութեան օրէնքը ծածկապէս ընդունող է. Ինչպէս ես զանիկայ ինծի տէր ընդունիմ. որ Ճշմարիտ տէրն անգամ չներեր անոր ապօրինաւոր ընթացից և խորհուրդներուն։ Թէ որ Աստուած օրին մէկը ժողովրդեան վրայ գլուխ կարգէ զինծի, հրապարակի մէջ կը յայտնուի արդարութիւնը իւր ժամանակին, ապա թէ ոչ՝ օրհնեալ ըլլայ Աստուծոյ կամքը։» Այս կերպ խօսելուն վրայ հարկ եղաւ որ լռենք, և խօսքը ուրիշ առարկայի դարձուցինք։ Նոյն օրը մատուցինք իրեն մեր քովը մնացած քանի մը սատափեայ խաչեր և պատկերներ, որ եկեղեցական անօթներուն քով պահած էինք, նաև վարպետաշէն ոսկի խաչ մը սարդիոնի(սէյլանի) գոյնզգոյն քարերով զարդարուած և մէջը սուրբ Ստեփաննոսի մասունքէն զետեղած, հանդերձ ոսկէջրած արծաթ շղթայով, զոր Արքազան Պատրիարք Հայրը տուած էր արժանաւոր անձի մը նուիրելու իւր կողմէն. և ըսինք իրեն թէ՝ «Այս երկու տարի եղաւ որ Հապէշու երկիրը կը պտըտինք, և արժանաւոր մէկը չգտանք որ այս խաչը իրեն նուիրէինք. և ոչ Վաշըմ-Կոլաղին արժանի համարեցինք զայն. բայց հիմայ զձեզ միայն արժանաւոր գտնելով կը նուիրեմք ձեր Բարձրութեանը մեր Արքազան Պատրիարքին կողմէն շնորհաւորելով ձեր նոր իշխանութիւնը։» Այսպէս ըսելով՝ Գեր. Իսահակ Արքազանը անոր վիզզէն կը կախէ. նա ալ իւր վզի փոքրիկ ոսկի խաչը հանելով Նորին Արքազնութեան կը շնորհէ ի նշան փոխադարձ սիրոյ։ Յետ այնորիկ իւր սրտին խորհուրդները յայտնելով կ'ըսէ. «Հայր, իմ մեռեալ ամուսնոյս հոգւոյն համար պատարագ և պաշտօն և հասարակութեան ալ հացկերոյթ տալու դիտաւորութիւն ունէի, բայց Ապունային (Եպսի առաջնորդին) կը քաշուէի որ անոր ձեռօք ընել տամ. հիմա Տէրը իմ սրտիս հաճելի Աբունա մը յանկարծ պարգևելով ինծ զձեզ, ձեր ձեռօքը կ'ուզեմ կատարել դիտաւորութիւնս։ Աւստի

վաղուան օրը (1 յունիս) կը խնդրեմ որ պատարագով պաշտօն կատարէք։» Պաշտօնը և գերեզմանին վրայ հոգւոյ հանգստեան կարգը կատարելու համար հաճութիւն տուինք, բայց պատարագը, ըսինք, Երուսաղէմ գտանուելուս Քրիստոսի սուրբ Գերեզմանին վրայ կը կատարեմք։

Կիրակի առաւօտուն գնացինք Մէտանի–Ալէմ եկեղեցին, ուր աղօթելէն զկնի՝ ուրիշ տան մը մէջ ընգեստաւորելով սրբազան Հայրը, և ես վեղար ու շուրջառ առած՝ երկուք գնացինք հանգուցեալ կնոջը գերեզմանը որ տան մը մէջ ամփոփուած էր. հանգստեան կարգը կատարեցինք՝ ուրիշ բարեմաղթական աղօթքներ ևս ընելով ի ներկայութեան Տէճաջմաջ–Բասսային։ Աղօթքէն յետոյ կ'ուզէինք զգեստները հանել, բայց իշխանը չհաճելով՝ այնպէս զգեստաւորեալ՝ ջորիի վրայ հեծցընել տուաւ Սրբազան Հայրը, թագը գլուխը և գաւազանը առջեւէն տանելով. նոյնպէս ես ալ շուրջառը կռնակս ջորին հեծած գնացինք հացկերութին տեղը, որ բացօթեայ ընդարձակ տեղ մըն էր, վրան ու բոլորտիքը փայտերով ու ծառի ճիւղերով շինուած, որուն տակը երկար սեղաններ պատրաստուած էին և տախտակ հացեր իրարու վրայ դիզուած զատ զատ. և մեծ իշխանին համար ալ յատուկ տեղ մը պատրաստուած էր, ուրկէց կը դիտէր բազմականները առանց ինքը սեղանին մասնակցելու։ Հոն դարձեալ հանգըստեան մը կարդացինք հանգուցեալ ամուսնոյն հոգւոյն համար. օրհնեցինք սեղանը, և Սրբազան Հայրը հաց մը ձեռքը առնելով և օրհնելով զայն, նախ ինքը պատառ մը առաւ անկէց և յետոյ մեծ իշխանին և անոր մեծամեծներուն մէկմէկ բրդուճ տուաւ։ Տէճաջմաջ ձեռքը առնելով զայն՝ ըսաւ. «Իբրեւ հաց կենաց կ'ընդունիմ այսօր զայս ձեր ձեռքէն։» Օրհնութենէն ետքը դարձեալ զգեստաւորուած՝ ջորիներն հեծցընելով մեր բնակարանը տանիլ տուաւ զմեզ՝ հանգըստանալու համար. ուր հասած ատեննիս իշխանապետին կողմէն մատուցին մեզի 5 եզ, 5 ոչխար, 300

հաց, մեղր, արդար իւղ, կարաս մը մեղրագինի և կարաս մը կորեկօղի, զոր ամեն մէկը հինգ վեց հոգի բարձեր էին։ Այս պարգևներն էին իբր հոգեբաժին և պատարագուց։ Անմիջապէս յառաջ մէկը խրկեցինք ըստ սովորութեան իւրեանց մեծ իշխանին որ մեր շնորհակալութիւնները անոր մատուցանէ։ Յետոյ եղին երկուքը աղքատաց բաժնել տուինք, եզ մը կանոնաւոր նորավարժ զօրաց խմբին յուղարկեցինք ի քաջալերութիւն իրենց, ոչխար մը զանանք կրթող Անգղիացի Բրանէլ Բրքհամին, և մնացեալ երկու եզը մեր սիրելի բարեկամաց սիրոյն մորթել տուինք. այս մեր ձրի առատարտութիւնը լսելով Տէձաջմաջ-Բասսան խիստ ուրախ եղաւ։

Ասուայի մէջ բաւական Եւրոպացի և Թուրքիացիներ գտանք, որոնց հետ քաղցր տեսութիւն ընելով մեր քաշած տառապանքները կը թեթևնային. մեր սրտերը կրնային ասոնց դիմացը բանալ, և փոխադարձ համակրութիւններ առանալ։ Այս ձերմակ մարդոց տեսութիւնը վայելած ժամանակնիս մենք մեզի հայրենեաց երկրին մէջ կը համարէինք. թէ ասոնց և թէ մեծ իշխանին քաղցր բնութիւնը եւ ուրախ դէմքը հարկադրեցին մեզի քանի մը օր երկարել մեր բնակութիւնը յիշեալ քաղաքին մէջ։ Բարեկամներէն մէկն էր Հապէշ Միքայէլ վարդապետը, որ տղայ հասակէն սուրբ Յակոբայ վանքին մէջ սնած և անոր բարիքն ու շնորհքները վայելած է, և մեզի ալ ծանօթ սիրելի եղած էր։ Յիշեալ վարդապետը ըստ իւր կարողութեանը մեր խիստ կարևոր հագուստները հոգալով մերկութիննիս ծածկեց, և մէկ դի թողուցինք մեր հագած Եւրոպական վայրենի ծածկոյթները. վասն որոյ խիստ շնորհակալ եղանք անոր մարդասիրութենէն։

Հոն Ասուայի մէջ մէկ տուն ալ Հայ կային բնիկ Պօլեցի, ոսկերիչ Կարապետ Աղա անուանով. ասիկայ երկու մանչ զաւակ ունէր, որ Հապէշից լեզուով մէկը Կասպօ-Աղա և միւսը Միրձա-Աղա կ՚անուանին, երկուքն ալ աշխոյժ ու եռանդուն երիտասարդներ, քաջ

անգղիագէտ, որոնք ուսմունքնին Գոմպայի ուսումնարանին մէջ առած էին ։ Թէ այս սիրուն անձինքը և թէ Միքայէլ վարդապետը խիստ սիրելի եղած էին իշխանապետին աչքին՝ Անգղիոյ բանակը Հապէշստան մտած կէտին ։ Մանաւանդ երբ կը լսէ Տէճաջմաջ—Քասսան անոնց գալուստը, կը զայրանայ անոնց դէմ, և քանի մը անգամ իւր մեծամեծաց հետ խորհուրդ ընելով՝ վըճռական կերպիւ կ՚որոշուի պատերազմիլ անոնց հետ իբրեւ հաւատոյ թշնամիներու, և չթողուլ որ ներս մտնեն ։ Միքայէլ վարդապետը և երկու Հայ եղբարք առանձին իշխանին մօտ երթալով կ՚աշխատին անոր սիրտը գրաւել, և համոզել որ պատերազմելու խորհուրդը եւ թողու և բարեկամական միջոցներ ձեռք առնու Անգղիացւոց հետ ։ "Անոնց տէրութիւնը, կ՚ըսէին, բնութեամբ գործ տեսնել չուզեր, այլ ինչ որ կ՚ընէ՝ սիրով և իմաստութեամբ է . հաւատոյ դէմ բընաւ չեն պատերազմիր . իրե՛նց կրօնական սկզբունքն է ազատութիւնը, վասն որոյ չե՛ն հաճիր բնաւ որ և է ազգի մը կրօնքը բռնաբարել հակառակ խղճի ։ Եթէ դուք անպատճառ պատերազմելու ըլլաք, մենք ալ ձեզի հետ թէպէտ սուր կ՚առնենք մինչեւ ի մահ կռուելու, բայց գիտցած ըլլաք, ո՛ Տէր, որ մեր բոլոր բանակին զօրութիւնը ջնջելը՝ Անգղիական զօրութեան քով պուտ մը ջուր խմելու պէս է ։ Համարձակ կ՚ըսեմք մենք . թէպէտ եւ Անգղիացի չեմք, բայց Անգղիոյ Տէրութեան լաւութիւններն ալ մոռնալ չենք ուզեր ։" Այսպէս խօսելով՝ վերջապէս կը համոզեն զինքը, ինչպէս որ մենք ալ յետոյ բաւական գովութեամբ խօսեցանք Անգղիացւոց վրայ, որպէս զի աներկիւղ վստահանայ անոնց վրայ՝ իւր նորահիմն իշխանութեան յառաջանալուն մասին ։ Յիշեալ Հայազգի եղբարք Անգղիացւոց եւ Տէճաջմաջ—Քասսայի մէջ բանակցութիւն սկսելուն՝ իրենք խորհրդական թարգմանի պաշտօնը կը վարեն, և երկու կողմին մէջ սէր եւ բարեկամութիւն ձգելու պատճառ կ՚ըլլան . Տէճաջմաջ իբրեւ հայր կ՚ընդունի իրեն Սըր Ռոպերտ Նափիէր մեծ զօրապետը Անգղիա-

կամ բանակին. և քանի մը հարիւր Հապէշ զօրք կը խրկէ անոր քով որ դժուարուտ ճամբաներուն մէջ անոր բանակին առաջնորդեն. և ամեն գիւղ՝ ուրկէց որ պիտի անցնէին Անգղիոյ զօրքերը, պատուէր կը խրկէ որ պէտք եղածները տրկով տան անոնց թէ եղ, ոչխար, այծ, փայտ, արմտիք, և թէ ուրիշ ինչ բանի որ պէտք ունենան։

Սըր Ռոպերտ Նաբիէր իւր արշաւանքէն յաղթութեամբ ետ դառնալուն լուր կը խրկէ Տէճաջմաջ-Քասային որ գայ տեսութիւն մը ընէ իրեն հետ, որուն մեծամեծները կասկածելով՝ թէպէտ չէին ուզեր որ անոր քով երթան, բայց Տէճաջմաջ վերոյիշեալ Հայկազուն երիտասարդաց և Միքայէլ վարդապետին՝ իւր հաւատարիմ խորհրդակցացը խրատին հետևելով, ամեն երկիւղ մէկդի դրած քանի մը հոգւով կ'երթայ Անգղիացւոց բանակը։ Նաբիէր իւր զօրքերը երկու կարգ շարած պատրաստ կը սպասէր անոր գալստեանը, և դիմացն ելլելով կ'ընդունի զինքը և ձեռք ձեռքի տուած իւր վրանը կը բերէ, և ի պատիւ Քասային զինուորական և պատերազմական կրթութիւն մը ընել կուտայ։ Ռումբերուն որոտալու ձայնը և հրացաններուն իրարու ետեւէ հանած շառաչիւնը լսելով Քասան և իւր հետն եղող մարդիկը և բոլոր իւր բանակը որ հեռուն կեցած էին, կը սարսափին կը դողան՝ աշխարհիս վերջին օրը հասած կարծելով։ Զօրահանդէսէն ետքը նախաճաշ մը կուտայ իշխանին, որ տեսած ընդունելութեանը վրայ խիստ ուրախանալով՝ իւր թեւն ունեցած ոսկի և բանուած բազպանը կը հանէ Նաբիէրի աջ բազուկը կ'անցընէ, նոյնպէս իւր վահանը, նիզակը և բոլոր պատերազմական զարդերը և հեծած ջորին անոր կը պարգեւէ, և ինքը որդեգիր կ'ըլլայ իբրեւ հայր ընդունելով իրեն մեծ զօրապետը։ Յետ այնորիկ թեւ թեւի տուած կ'առնու կը տանի Նաբիէրը իւր վրանը և ինքն ալ իրենց պատերազմական խաղերը ներկայացընել կուտայ և սեղան կը հանէ ըստ իւրեանց սովորութեան։ Կերակուրէն ետքը Նաբիէր փոխարէն իւր ընդունած

պարգեւներուն՝ ինքն ալ կը շնորհէ Քասսային 12 թըն-դանօթ, երկու հարիւր մօտ հրացաններ, վառօդ, ձի և ջո-րի, և բանակին գրեթէ բոլոր աւելորդ ծանրութիւն-ները անոր կը թողու ։

Տէճաջմաջ Քասսային մեծամեծները երբ կը տեսնեն անոր ոգւամբ և փառաւորութեամբ ետ դառնալը, զար-մանալով Անգղիացւոց վեհանձն ընթացքին և մարդա-սիրութեանը վրայ՝ կը գովեն զիրենք, միանգամայն և բոլոր ճերմակ մարդոց վրայ մեծ համարում կ'ունենան։ Այս բարեկամական և սիրոյ յարաբերութեանց պատ-ճառ յիշեալ Հայկազուն երիտասարդներն և վարդապե-տըն ըլլալով, անկէց յետոյ աւելի համակրութիւն մը կըստանայ մեծ իշխանը անոնց վրայ, և հրաման կ'ընէ որ երբ և ուզեն՝ ազատ մտնեն իւր քովը, որոնց շատ անգամ խորհուրդներ կը հարցընէ գաղտ և կը կատարէ։

Մենք դեռ Լոնտոն չեկած քիչ մը յառաջ ասոնք ի-մացուցած էին Քասսային թէ մեր և թէ սուրբ Աթո-ռոյն վրայօք. Ղպտւոց և Հայոց ազգին, նմանապէս ա-նոնց հոգեւոր իշխանութեան և մեր պատրիարքական իշխանութեան մէջ եղած մեծ տարբերութիւնը՝ ազ-դեցութեան և փառաւորութեան մասին, և Երուսա-ղէմի Հայոց Պատրիարքին երեք ազգաց վրայ ալ, այս-ինքն սուրբ երկրին մէջ գտնուող Ղպտւոց, Հաբէշից և Ասորւոց վրայ ունեցած իրաւասութիւնը, և հոն բնակող Հաբէշներուն թէ ուտելիք տալը և թէ ուրիշ ամեն գործերնուն գտնուիլը բոլոր հակըցընելով անոր, այս-պէս պատասխան տուած է Տէճաջմաջ Քասսան. "Ա-տոնք են ճշմարիտ քրիստոնէութեան նշանները։ Եւ ես լսած եմ առաջուց ձեր պատմածները, և մեր ազգէն Երուսաղէմի մէջ գտնուող կրօնաւորաց Հայոց վանքէն կերակրուիլը։ Այն օրէն միտքը կը դնէ որ արտաքոյ կար-գի ընդունելութեամբ զմեզ պատուէ, ինչպէս որ ըրաւ ալ։ Եւ մեզի տեսութեան եկած ժամանակ ըսաւ. "Կ'ուզեմ որ Հայոց Ապունան բոլոր իմ ժողովրդիս ցոյց տամ և անոնց սրտին մէջ համակրութեան սերմ ձգեմ, որ իրենք իրենց աչօք տեսնելով ձեր և Ղպտւոց

կամ բանակին. և քանի մը հարիւր Հապէշ զօրք կը խրկէ անոր քով որ դժուարուտ ճամբաներուն մէջ անոր բանակին առաջնորդեն. և ամեն գիւղ՝ ուրկէց որ պիտի անցնէին Անգղիոյ զօրքերը, պատուէր կը խրկէ որ պէտք եղածները տրկով տան անոնց թէ եզ, ոչխար, այծ, փայտ, արմտիք, և թէ ուրիշ ինչ բանի որ պէտք ունենան։

Սըր Ռոպերտ Նաբիէր իւր արշաւանքէն յաղթութեամբ ետ դառնալուն լուր կը խրկէ Տէճաջմաչ-Քասսային որ գայ տեսութիւն մը ընէ իրեն հետ, որուն մեծամեծները կասկածելով՝ թէպէտ չեն ուզեր որ անոր քով երթան, բայց Տէճաջմաչ վերոյիշեալ Հայկազուն երիտասարդաց և Մէքայէլ վարդապետին՝ իւր հաւատարիմ խորհրդակցացը խրատին հետևելով, ամեն երկիւղ մէկդի դրած քանի մը հոգւով կ'երթայ Անգղիացւոց բանակը։ Նաբիէր իւր զօրքերը երկու կարգ շարած պատրաստ կըսպասէր անոր գալստեանը, և գիմացն ելլելով կ'ընդունի զինքը և ձեռք ձեռքի տուած իւր վրանը կը բերէ, և ի պատիւ Քասսային զինուորական և պատերազմական կրթութիւն մը ընել կուտայ։ Ռումբերուն որոտալու ձայնը և հրացաններուն իրարու ետևէ հանած շառաչիւնը լսելով Քասսան և իւր հետն եղող մարդիկը և բոլոր իւր բանակը որ հեռուն կեցած էին, կը սարսափին կը դողան՝ աշխարհիս վերջին օրը հասած կարծելով։ Օրահանդէսէն ետքը նախաճաշ մը կուտայ իշխանին, որ տեսած ընդունելութեանը վրայ խիստ ուրախանալով՝ իւր թևն ունեցած ոսկի և բանուած բազպանը կը հանէ Նաբիէրի աջ բազուկը կ'անցընէ, նոյնպէս իւր վահանը, նիզակը և բոլոր պատերազմական զարդերը և հեծած ջորին անոր կը պարգևէ, և ինքը որդեգիր կ'ըլլայ իբրև հայր ընդունելով իրեն մեծ զօրապետը։ Յետ այնորիկ թև թևի տուած կ'առնու կը տանի Նաբիէրը իւր վրանը և ինքն ալ իրենց պատերազմական խաղերը ներկայացընել կուտայ և սեղան կը հանէ ըստ իւրեանց սովորութեան։ Վերակաւրէն ետքը Նաբիէր փոխարէն իւր ընդունած

պարգևներուն՝ ինքն ալ կը շնորհէ Բասսային 12 Թընդանօթ, երկու հազարի մօտ հրազէնք, վառօդ, ձի և ջորի, և բանակին գրեթէ բոլոր աւելորդ ծանրութիւնները անոր կը Թողու։

Տէճաջմաջ-Բասսային մեծամեծները երբ կը տեսնեն անոր ողջամբ և փառաւորութեամբ ետ դառնալը, զարմանալով Անգղիացւոց վեհանձն ընթացքին և մարդասիրութեանը վրայ՝ կը գովեն զիրենք, միանգամայն և բոլոր ձերմակ մարդոց վրայ մեծ համարում կ'ունենան։ Այս բարեկամական և սիրոյ յարաբերութեանց պատճառ յիշեալ Հայկազուն երիտասարդներն և վարդապետըն ըլլալով, անկէց յետոյ աւելի համակրութիւն մը կըստանայ մեծ իշխանը անոնց վրայ, և հրաման կ'ընէ որ երբ և ուզեն՝ ազատ մտնեն իւր քովը, որոնց շատ անգամ խորհուրդներ կը հարցընէ գաղտ և կը կատարէ։

Մենք դեռ Ասուա չեկած քիչ մը յառաջ ասոնք իմացուցած էին Բասսային Թէ մեր և Թէ սուրբ ԱԹոռոյն վրայօք. Ղպտւոց և Հայոց ազգին, նմանապէս անոնց հոգևոր իշխանութեան և մեր պատրիարքական իշխանութեան մէջ եղած մեծ տարբերութիւնը՝ ազդեցութեան և փառաւորութեան մասին, և Երուսաղէմի Հայոց Պատրիարքին երեք ազգաց վրայ ալ, այսինքն սուրբ երկրին մէջ գտնուող Ղպտւոց, Հաբէշից և Ասորւոց վրայ ունեցած իրաւասութիւնը, և հոն բնակող Հաբէշներուն Թէ ուտելիք տալը և Թէ ուրիշ ամեն գործերնուն գտնուիլը բոլոր հասկցընելով անոր, այսպէս պատասխան տուած է Տէճաջմաջ Բասսան. «Ատոնք են ճշմարիտ քրիստոնէութեան նշանները։ Ես ես լսած եմ առաջուց ձեր պատմածները, և մեր ազգէն Երուսաղէմի մէջ գտնուող կրօնաւորաց Հայոց վանքէն կերակրուիլը»։ Այն օրէն միտքը կը դնէ որ արտաքոյ կարգի ընդունելութեամբ զմեզ պատուէ, ինչպէս որ ըրաւ ալ։ Նոյն մեզի տեսութեան եկած ժամանակ ըսաւ. «Կ'ուզեմ որ Հայոց Աբունան բոլոր իմ ժողովուրդիս ցոյց տամ և անոնց սրտին մէջ համակրութեան սերմ ձգեմ, որ իրենք իրենց աչօք տեսնելով ձեր և Ղպտւոց

կան բանակին. և քանի մը հարիւր Հապէշ զօրք կը խրկէ անոր քով որ դժուարուտ ճամբաներուն մէջ անոր բանակին առաջնորդեն. և ամէն գիւղ՝ ուրկէց որ պիտի անցնէին Անգղիոյ զօրքերը, պատուէր կը խրկէ որ պէտք եղածները ստըկով տան անոնց թէ եղ, ոչխար, այծ, փայտ, արմտիք, և թէ ուրիշ ինչ բանի որ պէտք ունենան:

Այս Ռոպերտ Նափիէր իւր արշաւանքէն յաղթութեամբ ետ դառնալուն լուր կը խրկէ Տէճաջմաջ-Քասային որ գայ տեսութիւն մը ընէ իրեն հետ, որուն մեծամեծները կասկածելով՝ թէպէտ չէին ուզեր որ անոր քով երթան, բայց Տէճաջմաջ վերյիշեալ Հայկազուն երիտասարդաց և Մ՛էքայէլ վարդապետին՝ իւր հաւատարիմ խորհրդակցացը խրատին հետևելով, ամէն երկիւղ մէկդի դրած քանի մը հոգւով կ՚երթայ Անգղիացւոց բանակը: Նափիէր իւր զօրքերը երկու կարգ շարած պատրաստ կըսպասէր անոր գալստեանը, և դիմացն ելլելով կ՚ընդունի զինքը և ձեռք ձեռքի տուած իւր վրանը կը բերէ, և ի պատիւ Քասային զինուորական և պատերազմական կրթութիւն մը ընել կու տայ: Ռումբերուն որոտալու ձայնը և հրացաններուն իրարու ետևէ հանած շառաչիւնը լսելով Քասան և իւր հետն եղող մարդիկը և բոլոր իւր բանակը որ հեռուն կեցած էին, կը սարսափին կը դողան՝ աշխարհիս վերջին օրը հասած կարծելով: Զօրահանդէսէն ետքը նախաճաշ մը կու տայ իշխանին, որ տեսած ընդունելութեանը վրայ խիստ ուրախանալով՝ իւր թեւն ունեցած ոսկի և բանուած բազպանը կը հանէ Նափիէրի աջ բազուկը կ՚անցընէ, նոյնպէս իւր վահանը, նիզակը և բոլոր պատերազմական զարդերը և հեծած ջորին անոր կը պարգեւէ, և ինքը որդեգիր կ՚ընէ իբրեւ հայր ընդունելով իրեն մեծ զօրապետը: Յետ այնորիկ թեւ թեւի տուած կ՚առնու կը տանի Նափիէրը իւր վրանը և ինքն ալ իրենց պատերազմական խաղերը ներկայացընել կու տայ և սեղան կը հանէ ըստ իւրեանց սովորութեան: Կէրակուրէն ետքը Նափիէր փոխարէն իւր ընդունած

պարգեւներուն՝ ինքն ալ կը շնորհէ Պասսային 12 թնդանօթ, երկու հազարի մօտ հրացանք, վառօդ, ձի և ջորի, և բանակին գրեթէ բոլոր աւելորդ ծանրութիւնները անոր կը թողու։

Տէճավճալ Պասսային մեծամեծները երբ կը տեսնեն անոր ողջամբ և փառաւորութեամբ ետ դառնալը, զարմանալով Անգղիացւոց վեհանձն ընթացքին և մարդասիրութեանը վրայ՝ կը գովեն զիրենք, միանգամայն և բոլոր ճերմակ մարդոց վրայ մեծ համարում կ'ունենան։ Այս բարեկամական և սիրոյ յարաբերութեանց պատճառ լինելով Հայկազուն երիտասարդներն և վարդապետըն ըլլալով, անկէց յետոյ աւելի համակրութիւն մը կըստանայ մեծ իշխանը անոնց վրայ, և հրաման կ'ընէ որ երբ և ուզեն՝ ազատ մտնեն իւր քովը, որոնց շատ անգամ խորհուրդներ կը հարցընէ գաղտ և կը կատարէ։

Մ՚ենք դեռ Նոուա չեկած քիչ մը յառաջ ատոնք իմացուցած էին Պասսային թէ մեր և թէ սուրբ Աթոռոյն վրայօք. Խպտուց և Հայոց ազգին, նմանապէս անոնց հոգեւոր իշխանութեան և մեր պատրիարքական իշխանութեան մէջ եղած մեծ տարբերութիւնը՝ ազդեցութեան և փառաւորութեան մասին, և Երուսաղէմի Հայոց Պատրիարքին երեք ազգաց վրայ ալ, այսինքն սուրբ երկրին մէջ գտնուող Խպտուց, Հապէշից և Ասորւոց վրայ ունեցած իրաւասութիւնը, և հոն բնակող Հապէշներուն թէ ուտելիք տալը և թէ ուրիշ ամեն գործերնուն գտնուիլը բոլոր հասկըցնելով անոր, այսպէս պատասխան տուած է Տէճավճալ Պասսան. «Ատոնք են ճշմարիտ քրիստոնէութեան նշանները։ Ես լսած եմ առաջուց ձեր պատմածները, և մեր ազգէն Երուսաղէմի մէջ գտնուող կրօնաւորաց Հայոց վանքէն կերակրուիլը։ Այն օրէն միտքը կը դնէ որ արտաքոյ կարգի ընդունելութեամբ զմեզ պատուէ, ինչպէս որ ըրաւ ալ։ Իւր մեզի տեսութեան եկած ժամանակ ըսաւ. «Կ'ուզեմ որ Հայոց Աբունան բոլոր իմ ժողովրդիս ցոյց տամ և անոնց սրտին մէջ համակրութեան սերմ ձգեմ, որ իրենք իրենց աչօք տեսնելով ձեր և Խպտուց

եպիսկոպոսին մէջ եղած մեծ տարբերութիւնը բարոյական և քաղաքական մասին, մանաւանդ կրօնական և եկեղեցական արարողութեանց և պաշտամանց մէջ, ձեր եկեղեցւոյն ունեցած վսեմութիւնը, իրենք անձամբ վճիռ տանին»։

Հապէշստանի միւս երեք մասին, այսինքն Ամարայի, Շօայի և Կաֆայի ժողովուրդը և անոնց բոլոր իշխանները մեծ համակրութեամբ ընդունած էին մեզի հաւատոյ քննութիւններէն յետոյ. վասն որոյ Թէքըլէ-Կորկիս Թագաւորին քովէն բաժնուելով դէպ ի Թէկրի գալու ժամանակնիս՝ Շօայի Մէնէլիք իշխանը լսելով մեր մեկնիլը, անմիջապէս պատգամաւոր մը խըրկած էր մեր ետեւէն, և կ'աղաչէր որ անոնց տանի զմեզ Շօա և հոն առաջնորդ կարգէ. որուն պատասխանեցինք. «Ձեր իշխանին կրօնասէր և մարդասէր բարուց վրայ շատ ուրախ եմք, որ սիրով ընդունիլ կը ցանկայ մեզի. բայց նախ պէտք է որ նա մեր Պատրիարքը ճանչնայ և պարտ ու պատշաճ մեծարանքն անոր ցուցընէ, յետոյ այնորիկ դիւրին է Հայ եպիսկոպոս մը իրենց առաջնորդ ունենալ»։ Պատգամաւորը իր իշխանին կողմէն խոստանալով իրենց երկրէն եղած բերքերէն՝ այսինքն առիւծի և ուրիշ գազանաց մորթեր և ուրիշ ընծաներ խրկելու Աթոռական Պատրիարքին, ինքն անկէց ետ դարձաւ դէպ ի Շօա։ Անոնց և Ամարայի ու Կաֆայի ժողովրդոց մեզի ցոյց տուած համակրութեան պատճառ Խօպտի եպիսկոպոսներուն անարժան վարմունքն և ագահութիւնին եղած է, որոնցմէ բոլորովին զզուած են։ Իսկ Թէկրէի ժողովուրդը որչափ որ նոյն սէրը ունեցան մեր վրայ, սակայն Տէճաջմաչ Գասաայի Թշնամի իշխաններուն դրդումէն և Թելադրութենէն տակաւին կասկածներ կային Խօպտի առաջնորդին, վասն որոյ մեծ իշխանը չէր համարձակած անոնց ժողովրդեան սիրտը դրաւելու՝ մէկէն ի մէկ առաջնորդի փոփոխութիւն ընել, իրենց աչքին օտար երեւցած եկեղեցիէ առաջնորդ ընդունելով։

Նաւուն մէջ ութ օր մնալէն յետոյ, յունիս 4 ին

ճամբայ ելլելու օրերնիս Տէճաջիմաջ–Բասսա մեր քովը եկաւ մեր վերջին հրաժարականն ընդունելու և զմեզ ճամբու դնելու համար։ Նոյն տեսութեան ժամանակ յայտնեց մեզի իւր սրտին ցաւը զոր եկեղեցականաց կողմէն կը կրէր։ «Այսքան խնամք կը ցուցնեմ անոնց, ըսաւ, և դարձեալ Մոկսի ժողովրդոցը նման ապերախտ են։ Տէվրէ–Տամօ լերան կրօնաւորները այսօր ապստամբած են ինձմէ, և լեռը պաշարման մէջ դրած եմ. վաղը խոյսի Նշուշան գալուն՝ գալը կը խրատեմ զինքը. նա ալ ձեզի պէս ականջը ծակ և բարակը մըտածող ու կատարեալ խելաց տէր չըլլալուն, ինչպէս որ գիտեմ, առանց կարող ըլլալու իրաւունքն ու ճըշմարտութիւնը իմանալու՝ անոնց չար խրատներուն ականջ կը կախէ։ Այս ծախքը քաշած ու դրած եմ որ գայ. բայց շատ հաւանական է որ նա կարդաւորաց խօսքին մտիկ ընելով՝ օր մը Կոխադին (Թէքլէ–Կորկիսին) քով խոյս տայ երթայ։ Նոր այսպէս ըլլալիքն առջէն գուշակելով, գրած եմ եկող Նշուշային որ ճամբան՝ ուր տեղ որ պատահելու ըլլայ ձեզի, առանց հետերնիդ տեսնուելու հոս չգայ. և Նշուշա–Մերամի Նախորդ վախճանեալ առաջնորդին խոյսի սպասաւորներէն մէկը հետը չբերէ, վասն զի ամեն գէշութիւն անոնց գլխէն տակէն ծագեցաւ ու կը ծագէ։ Կրօնի մասին եղած գեղծմունքները արդէն յայտնի են ձեզի. քըրիստոնէի անունը միայն կը կրենք։ Այս ըսած չարիքներուս առաջքին առնելու համար կը խնդրեմ ձեզմէ որ Նշուշային պատահած ժամանակնիդ, հոն եղած տեղը ժողովակ մը կազմէք իրեն և իւր հետն եղող կարգաւորաց հետ, և երկու տարիէն ի վեր ինչ որ տեսաք աչքով եղած կրօնական ու բարոյական գեղծումները, հոն ժողովոյն մէջ պատմէք, և անոնց անմիջական դարմաններուն վրայ ինչ որ խելքերնիդ կը կտրէ՝ առաջարկէք, որպէս զի եկող Նշուշան ալ մեռնողին ընթացքին չը հետեւի, այլ ինչ որ կը պահանջէ իւր պարտաւորութիւնները՝ զանոնք ի գործ դնէ յօժար և ի պայծառութիւն մեր եկեղեցւոյն։ Իսկ ձեզի համար, կրկնեց

մեծ իշխանը, գրած եմ ձեր գնալը ճանապարհին վը-
րայ գտնուող բոլոր իմ իշխաններուս՝ որ զձեզ ըն-
դունին ինչպէս որ ես ընդունեցի. այս մասին ապա-
հով եղէք որ հանգիստ պիտի ըլլաք ամէն տեղ:» Ա-
բուն պատասխանեցինք. — Ձեր այդ խօսքերը լաւ կը
համոզեն զմեզ որ դուք բարի ու ճշմարիտ քրիստոնեայ
մի էք, ուստի ի մտերմական սիրոյ շարժեալ կ'ուզեմք
մենք ալ մեր ըրած դիտողութիւնները յայտնել ձեզ:
Թէկրիի երկրին ժողովուրդը գրեթէ ամէնքն ալ զէնք
ունին, բայց իրենք խիստ վախկոտ են, ինչպէս որ ճամ-
բան փորձեցինք: Կոմազիի գալուն ձայնը որ լսեն, ե-
րեսնին գոյն չմնար, սարսափը զիրենք կը պատէ, ուս-
տի անոնց զօրութեան վրայ այնքան ապաւինելու չէ,
երբ պատերազմի դէպք պատահելու ըլլայ. այլ ձեր
բոլոր զօրութիւնը այս նոր կրթուող կանոնաւոր զօր-
քերդ միայն թող ըլլան, և անոնց թիւը պէտք է շատ-
ցընէք: Թէոր Կալլացի ու Շանկալլացի գերիներ բըռ-
նելով ասոնց հետ կրթելու ըլլաք, կարծեմ թէ հազար
հոգիէ բաղկացեալ գնդով մը և 12 թնդանօթով կըր-
նաք Կոմազիին բազմաթիւ զօրաց դէմ դնելու: Ուս-
տի մի երբեք կասկածիք ձեր զօրքերը կրթող Անգղիա-
ցիէն. ճերմակ մարդիկը ձեր երկրին բարգաւաճելուն
օգուտ ունին քան թէ վնաս, մանաւանդ Անգղիացւոց
նման վեհանձն ազգ մը, ինչպէս յայտնի ցոյց տուաւ
իւր անշահասէր ընթացքը և առանց աշխարհակալու-
թիւն ընելու մտօք ըրած զոհողութիւնները: Նա եւ
ձեր բարձր հրամանին համեմատ՝ եկող առաջնորդ Ա-
բունային պատահելնուս՝ ժողով ընելով ամէն բան անոր
պիտի իմացընեմք, օգտակար խորհուրդներ տալով ա-
նոր, և կը յուսամք որ ձեր բաղձանքները բոլոր պիտի
կատարուին Աստուծոյ յաջողութեամբը. Ապահով եմք
դարձեալ, որ եթէ մեր տուած խորհուրդներին ալ յար-
գելով զանոնք ի գործ դնէք, չեմք կասկածիր բնաւ որ
Աստուած պիտի շնորհէ ձեզի թագաւորական Աթոռն
ալ:» Այս վերջին խօսքերուս գլուխը ծռած և աչքե-
րը դէպ ի գետին դարձուցած՝ խորին ուշադրութեամբ

մօրիկ կ՚ըլլէր. յետոյ պատասխանեց [illegible]
հուրդնիդ ընդունեցի սրտանց, և [illegible]
րոպական կրթութեամբ վարժւած [illegible]
ցընելու, ըստ որում ականատես եղայ [illegible]
նակին պատերազմական հանդէսին [illegible]
զօրութեանը, և շատ սիրեցի. Նաւաստ[illegible]
ցեր է ինծի համար, հաճելի է ինծի. և [illegible]
աղօթից օժանդակութեամբը Թագա[illegible]
նութիւն տալու ըլլայ ինծի Աստուած, [illegible]
որ արքայական Թագը ձեզմէ պիտի ընդունիմ [illegible]
նարհեցանք իրեն ի նշան հաճութեան։

Այս իշխանը առջի իրիկունէն իւր գանձապետին հետ հազար հատ Աւստրիոյ Թալէռ խրկեց մեզի իբր ճամբու ծախս, միանգամայն և ներողութիւն խնդրելով աւելին չունենալուն համար որ տայ, նոյնպէս և երկու զարդարուն ջորի հեծանելու և երկու ալ բեռնաբարձ գրաստ։ Իւր ճամբու դնելու համար քովերնիս եկած ժամանակ իւր սրտին շնորհապարտ զգացմունքները մեզի յայտնելով կը ցաւէր նոյն միջոցին իւր գանձը դատարկ գտնուելուն, և խօսք կուտար բարեպատեհ առթիւ մը ցոյց տալու իւր խորին շնորհակալութիւնները զոր ունէր սուրբ Աթոռոյն դէմ, որուն սուրբ քաղաքին մէջ գտնուող Հայէշ կրօնաւորաց ըրած մարդասիրութիւնը եւ անոնց ուտելիքը Հայոց վանքէն հոգացուիլը լսած եմ կ՚ըսէր, և երախտապարտ եմ ձեր Ազգին և Պատրիարքին։

Այս տեսութենէս յետոյ ճամբայ ելանք, և նոյն ինքը Բասսան կէս ժամու չափ տեղ մեզի ընկերացաւ իւր զօրքերովը։ Հոն վար իջնելով ջորիներէն, բաժնուելու ժամանակ Գեր. Իսահակ Արքայեան Հայրը օրհնեց Նորին Բարձրութիւնը, բարեմաղթութիւններ ընելով։ Նոյնպէս և ես դէպ ի զօրքերուն և զօրապետներուն դարձընելով իմ խօսքս, և Ն. Արքայնութեան կողմէն օրհնութիւններ տալով՝ խրախուսեցի զիրենք իրենց լեզուովը և յորդորեցի որ հաւատարմութեամբ ծառայեն իրենց իշխանին, և անոր ազգային պատիւն

ու փառքը աւելցնելու համար տարած աշխատութեանը և բարինախանձաւորութեանը իրենք ալ ձեռնտու և օգնական ըլլան ։ Իրենց զէնքերը հայրենեաց պաշտպանութեան համար անոր թշնամեացն դէմ միայն գործածեն . Իբրև հայր ու տէր պատուեն իրենց արժանաւոր իշխանը , զոր Աստուած պարգևած է ձեզ , ըսի . և չըլլայ որ ձեր հաւատարմութեան ուխտէն դրժելով՝ ուրիշ իշխանաց կողմը բռնէք . ապստամբութեան խորհուրդ երբեք տեղի չգտնէ ձեր սրտին մէջ . գիտցած ըլլաք որ Տէճաքմաք—Բասայէն ի զատ ուրիշ որ և է իշխան մը ապստամբ կը համարուի , և անոնց վախճանը Թէոդորոսին վախճանին պէս պիտի ըլլայ ։ Այս խօսքերուս վրայ բոլոր զօրքերն ու զօրապետները , որոնք խոնարհութեամբ և ուշի ուշով մտիկ կ՚ընէին , եկան և փղձկելով սրտով Աբբայան Հօր աջը համբուրեցին ։

Տէճաքմաք—Բասան ետ դառնալուն մեզի Պալըրբավա տուաւ Միքայէլ վարդապետը մինչև սահմանագլուխը հետերնիս գալու և ճանապարհին պէտք եղածը հոգալու ։ Անկէ ի զատ դարձեալ իւր փոխանորդը Տէճաք—Պարիս իւր անձնական վաշտովը ընկերացաւ մեզի մինչև իւր գիւղը Պիհիզա , որ երեք ժամու ճամբայ է . ուր հանելնուս՝ եզ մը և մէկ ոչխար խաւրեց մեզի ի պատիւ , և մենք ոչխարը վար դնելով եզը կըկին ետ դարձուցինք՝ որ մեր կողմէն գիւղացի հասարակութեան պարգև տրուի ։ Հետևեալ օրն ալ հոն մնալով , խնդրեց մեզմէ որ հանդիսով օրհնենք պատերազմական նորաշէն մեծ Թմբուկը , ինչպէս որ իրենք սովորութիւն ունին . և այն առթիւ հացկերոյթ մը տալով հասարակութեան , ելանք գնացինք սեղանին գլուխը զգեստաւորեալ , և հոն թէ Թմբուկը և թէ սեղանը օրհնելով ետ դարձանք ։ Իսկ զօրքերն ու գիւղացիք անմիջապէս սկսան նոր Թմբուկը զարնել և ուրախանալ ։

Պիհիզայէն դեռ չմեկնած Տէճաքմաք—Բասային կողմէն յատուկ Թղթաբերով գիր մը առացանք , ուր

իւր կնքոյ մատանին մեզ ծանօթացընելով կը խնդրէր մեզմէ որ այսուհետեւ առանց իւր կնքովը թուղթ ունենալու եկող Հապէշները սուրբ Երուսաղեմի մէջ չընդունուին մեր կողմէն ։ Այս է գրին օրինակը և կընիքը ։

"Կ'ուղարկէ նամակս Տէճաջմաջ–Քասսան, գլուխըն իշխանաց և Աստուծմէ կարգուած իշխանը, Աքսում արքայանիստ քաղաքէն (1) ։ Հասցէ առ Աբունա Իսահակ Հայոց Պատրիարքը (Վիքաբաբատազ) և առ Աբունա Տիմոթէոս Երուսաղէմի եպիսկոպոսը ։ Աստուածային ողջոյնը ձեզի պահապան ըլլայ ։ Կնիքս այս ձեւով է ։ Մենք Քասսային (մարդիկն) ենք ըսելով Երուսաղէմ ձեր քովն եկողները (Հապէշները) այս կընիքս որ չեն ստացած, մի՛ ընդունիք ։ Գրուեցաւ Մաթէոսի աւետարանչին(2) տարին, Մէնի ամսոյ 12 ին, Քրիստոսի 1861 թվին (3) ։"



Կնքոյն նշանը առիւծ է՝ գլուխը թագով, և բոլորտիքը գրուած է իւր անունը ։ "Եթովպիոյ բոլոր իշխանաց բարձրագոյնը, Տէճաջմաջ Քասսա ։"

(1) Առջի ժամանակ թագաւորները Աքսում նստէին, սովորութիւն եղած է նոյն քաղաքին անունը տալու հրովարտակները ։

(2) Հապէշք քառամեայ շրջանին ամեն մէկ տարին մէկ Աւետարանչին նուիրած են կարգաւ ։

(3) Թուական գործածելու սովորութիւն չունին Հապէշք ո՛չ գրոց և ոչ նամակաց մէջ ։ Վերջին ժամանակներս խոյսի առաջնորդողաց ոմանքը թէպէտեւ ընդունած են Քրիստոսի թուականը բանեցընել, բայց յետոյ իրենք ալ շփոթելով և մինչ թիւը մոռնալով. հիմայ գործածածնին՝ որ ընդհանրացած է իրենց մէջ, մեր հասարակ թուականէն ութ տարի պակաս է։ Ամիսներն ալ մեր Հայոց ամիսներուն պէս 30 ական օր է, և հինգ օր յաւելուած ունի. և Մէնի ամսոյ 12ը՝ մեր յունիսի 3 օրին կը համապատասխանէ ։

# ԳԼՈՒԽ ԺԲ.

*Սամարա հասնելնիս ։ Նորընտիր Խապտի առաջնորդը․ անոր և մեր մէջ եղած խօսակցութիւնը․ կրօնական ժողովքը ։ Սամարայէն մեկնելնիս . և ճամբուն մէջ Նազարէթցի Իլիասին մկրտութիւնը ։*

ՊԻՀԻՋԱՑԷՆ մեր Պալտըրալա Մխքայէլ վարդապետին և սպասաւորաց հետ ելանք ճանապարհ դէպ ի Սամարա երթալու որ Թէկրիտ իշխանութեան սահմանագլուխն է ։ Օրը երկու կամ երեք ժամ միայն կը քալէինք, որպէս զի մինչև մեր Սամարա հասնիլը՝ Խապտի առաջնորդն ալ հոն եկած ըլլայ, և հոն հանդիպինք իրեն, և ժողովն ալ հոն կազմենք ։ Ճանապարհին վրայ որ գիւղը որ իջնէինք, մեծ պատուով կ'ընդունէին մեզի . և մեծ իշխանը հրաման ըրած էր որ պատահած տեղերնիս եզ մը, ոչխար մը, բղուղ մը արդար իւղ, մեղր, քանի մը աման կերակուր, 100 հաց, կորեկողի և ջորիներուն կերը ընդունինք ։ Թէև հրամայած պաշարները տալու չըլլային, պարտաւոր էինք թէ սիրով և թէ բռնութեամբ դրամն ընդունել անոնց փոխարէն . բայց մեր խիղճը չէր տանիր այսչափ ծանր պահանջմունք մը ընել խեղճ գիւղացիներէն, և աւելի քաղցր էր մեզի առանց մէկուն սիրտը ցաւցընելու մեր ճամբանիս շարունակել. այսու ամենայնիւ առանց նեղութիւն մը կրելու 7 աւուր մէջ հասանք Սամարա քաղաքը ։ Խապտի առաջնորդը դեռ հոն հասած չէր, ճամբան ակարացած ըլլալով, և քաշած անտանելի նեղութիւններէն յուսահատած, ինչպէս որ յետոյ ինքը պատմեց, զզջացեր՝ ու ետ դառնալ ուզեր է, վասն որոյ Սամարայի քաղաքապետը իմանալով փութացեր գացեր էր անոր դիմաց, զոր հետն առնելով բերաւ հոն մեր հասնելէն երկու օր ետքը ։ Սիրով և ողջագուրմամբ ընդունեցինք զինքը, և համառօտ տեսութեան մը մէջ յիշեց նա մեծ իշխանին ժողովքի համար ըրած պատուէրը, զոր իրեն ալ գրելով խնդրած էր, մենք ալ մեր հոն սպասելը անոր համար ըլլալը իմացուցինք ։ Քիչ մը հանդստա-

նալէն յետոյ՝ լուր տուաւ մեզի որ իւր քովն երթանք առանձին . և մենք մեր մասնաւոր խօսակցութեան մէջ պէտք եղած տեղեկութիւնները հաղորդեցինք իրեն ։ Գոհութեամբ պատմեցինք Տէճաչիմաչ—Բասայի կրօնասիրութիւնը , քրիստոնէական բարի զգացմունքները , ընտիր եկեղեցականները պատուելը ։ “Զգուշ կեցիր , ըսինք իրեն , այս երկրիս մարդիկներէն , որոնք շողոքորթութեամբ և սուտումուտ խօսքերով բանսարկութիւն կ'ընեն ձեր և մեծ իշխանին մէջ տեղը , որոնք խիստ վարպետ են այս կերպ գործքերու մէջ . և եթէ դուք միամիտ գտնուելով՝ անոնց խաբեբայութիւններուն մտիկ ընելու ըլլաք , մէկէն կ'ընկնիք որոգայթի մէջ։ Կարծք կը համարիմք նաեւ ըսել ձեզ , որ ձեր քովը չը պահէք ամենեւին նախորդ Ապունային սպասաւորներէն մէկը , զոր հետերնիդ բերած էք , վասն զի այս բանը մեծ իշխանին կամացը խիստ հակառակ է ։ —Ասոնք իմ քովս ընդունելը , պատասխանեց , Հապէշերէն գրանալուն համար է , որոնց պէտք ունիմ։ —Շատ լաւ ըսինք ։ Բայց այս գիտնաք որ այս մարդիկը Ապունա Սելամին գլխուն ալ շատ բաներ բերին . առջի բերան լաւ ծառայութիւն ըրած են իրեն , յետոյ այն սովորութիւնները թէպէտ եւ անմեղ՝ բայց ժողովրդեան աչքին գայթակղութիւն և յանցանք համարուելով , ինչպէս է օղի խմելը , ծխախոտ քաշելը , պաս օրերը ծոմ չպահել՝ կամ պասն ուտելը , անոր ընել ու գործածել տալով , հոգ չէ՝ մարդ չտեսներ ըսելով , մօրուսը ձեռք առին , ու յետոյ բան չմնաց որ գլխուն չբերին ։ Եւ Ապունա առաջնորդ մը որ անոնց քաղցր ու մոքիչ լեզուէն խաբուելով՝ իրեն ներելի չեղած սովորութիւնները թէեւ գաղտնի գործածէ , ալ կը պարտաւորի բոլորովին անոնց ձեռքը անձնատուր ըլլալ . ինչ որ ուզեն և ինչ որ ընեն՝ պէտք է լռէ ու ձայն չը հանէ , եթէ կ'ուզէ որ իւր պատիւը չխայտառակի ։ Ապունա—Սելամին իւր մօրուսը ձեռք տալէն յետոյ՝ երբ մտիկ ընել չէր ուզեր , շատ փնասուեցաւ ։ Ասոր համար ահա երբեւ հոգեւոր եղբայր կ'իմացընեմք ձեզ անոնց որո-

գայթները, որպէս զի անոնց մէջ չըյնկնանք։ Անոնց արտաքին շարժմունքներուն, հաւատարիմ ու հարազատ բարեկամի և պաշտպանի նման ցոյց տուած խօսքերնուն ու կերպերնուն չհաւատաք երբէք, և ձեր իշխանութեան սանձը չտաք անոնց ձեռքը՝ որ ուզածնուն պէս վարեն։ Ապունային համար Թէկրիի իշխանութեան երկրին մէջ բաւական հողեր ու կալուածներ կան իրեն սեփական, որոնց արդիւնքովը կրնայ բաւականանալ. չըլլայ թէ տանք մեզի չեն բաւեր ըսելով, և Վակշըմ-Կոպազին տիրած Ամարա ընդարձակ երկրին մէջ աւելի շատ հողեր Ապունային սեփականուած կան ըսողներուն ականջ կախելով, և աւելի մեծ հարստութիւն մը ձեռք ձգելու բաղձանքով անոնց խաբուիք ու Վակշըմ-Կոպազին քով խոյս տաք։ Այդ մարդոց ջանքերը միայն իրենց շահուն համար է, յիշեալ իշխանին կողմէն կաշառուելով կ'ընեն անոնք և ոչ ձեր շահուն համար։ Հապէշի բոլոր երկրին մէջ դեռ յայտնի չէ ճշմարիտ թագաւորն ով ըլլալը. պէտք է սպասէք մինչև որ Հոգին սուրբ մէկն ընտրէ ու ժողովրդեան յայտնէ։ Այս օրուան գտնուող իշխանապետաց մէջ ամենէն ընտիրն ու թագաւորութեան արժանաւորն է Տէճաջմաջ-Քասսան։ Ասիկայ, ինչպէս ըսինք, քրիստոնեայ ու կրօնասէր մարդ մըն է. քան զՎակշըմ-Կոպազին, որուն բռնած ընթացքը գուցէ Թէոդորոսէն վատ ըլլայ, և դէպ ի կործանում տանի իւր իշխանութիւնը։» Այս խօսքերուս, որոնք բոլոր իրեն օգտին համար էին, սիրով միտ դնելով շնորհակալ եղաւ։

Մեր հետն եղող Գալորրալա Միքայէլ վարդապետը իւր թշնամիներուն բերնովը Ապունային քով բամբասուած ըլլալով, ամենևին ընդունած չէր զինքը իւր քովը. մենք անոր վրայօք գովութեամբ խօսելով առաջարկեցինք իրեն որ ընդունի զինքը իւր ներկայութեանը, և հաշտեցուցինք հետը։

Յետ այսորիկ ժողովը կազմեցաւ, ուր ներկայ գտնուեցան Ապունային հետն եղող հրաւիրակ Հապէշ կարգաւորները և ուրիշ կարգացողներ՝ քահանանի

չափ անձինք։ Ժողովոյն մէջ առարկութիւն եղաւ մեր կողմէն քահանայից տգիտութիւնը, որոնք առանց օրինաւոր ձեռնադրութեան հինգհարիւրը մէկէն քահանայ կը կոչուին, առանց նայելու անոնց վարքին ու բարքը, գիտութիւնն ու արժանաւորութիւնը։ Խոստովանեցաւ Ասուան ալ ասոր ապօրինաւորութիւնը, և յայտնեց որ այսուհետեւ չպիտի ընդունի ինքը ձեռք դնել մէկուն վրայ՝ առանց ընդունելու կանխաւ ժողովրդեան հաճութիւնն ու վկայութիւնը։ Դարձեալ առարկեցինք սուրբ եկեղեցւոյ եօթը խորհրդոց խափանումն ու անոնց զեղծումները, պատմելով ժողովոյն մէջ ինչ որ աչօք տեսեր և ականջօք լսեր էինք։ Զարմացաւ Ասուան և դժուարութեամբ հաւատաց մեր ըսածներուն, ու հարցուց ժողովականներուն թէ՝ ստո՞յգ են այս զեղծումները՝ թէ ոչ։ Չկրցին ուրանալ անոնք, բայց զիրենք ալ անմեղադիր ընելու համար, նախորդ առաջնորդներուն վրայ դրին բոլոր յանցանքը. "Անոնք, ըսին, իրենց հոգեւոր պաշտօնին մէջ թոյլ գտնուած են. ժողովուրդն չեն սորվեցուցած. մենք անոնց լեզուն չենք գիտեր, անոնք ալ մեր լեզուին ծանօթ չըլլալով անմիջական խօսակցութիւնները դժուարացած են, և հետզհետէ սկսած է զեղծումները եկեղեցւոյ մէջ, և անկէ ժողովրդոց բարուց ու վարուց ալ ածանցած է։ Մանաւանդ թէ, յաւելցուցին, մէկ առաջնորդ մը Հապէշստանի բոլոր երկրին ի՞նչ օգուտ կրնայ ընել, և ի՞նչ կարգ կանոն կրնայ մտցնել ու սորվեցընել։ — Այս պատասխանները թերեւս իրաւացի ըլլալով Ասուան ձայն չհանեց. բայց երբ լսեց անիկայ որ եկեղեցեաց մէջ կանթեղ մը և լոյս մը անգամ չվառիր, ալ չկրնալով համբերել՝ դարձաւ ըսաւ. "Ասոր ի՞նչ ունիք զրուցելիք. միթէ ատոնց ալ պատճառ առաջնորդնե՞րն են։" Յետոյ մեղմացնելով իւր ձայնը՝ դարձաւ մեզի ու բոլոր ժողովականներուն ըսաւ. "Աստուծով այս գայթակղելի կանոնազանցութիւնները և զեղծումները կը ջնջուին. երբ տեղերնիս հասնելու ըլլանք, ընդհանուր ժողով մը կը կազմենք և հետզհետէ բարեկար-

գութիւններ կը հաստատենք ։ »

Քօղովը վերջանալէն յետոյ, մի՛ շատ չմնացինք Ասմարայի մէջ. վերջին հրաժարական ողջոյնը տալով Ապունային՝ բաժնուեցանք իրարմէ, հետերնիս տանելով անոր սրտին ճշմարիտ գթացմունքը հետ իւր շնորհակալութիւնները։ Ելանք մենք դուրս այն դժոխատիպ երկրէն՝ փառք տալով Աստուածային սուրբ կամացը, որուն ողորմութեամբն և Անգղիոյ վեհափառ և բարեսիրտ Թագուհւոյն միջնորդութեամբն ազատեցանք, և նա (Ապունան) մնաց փորձութեան մէջ, ինչպէս որ զգացեր էր և կ՚ըսէր մեզ անգիտութեամբ յանձնառու ըլլալը։ Մեր երեսաց տրտմութիւնները փարատեցան, և սրտերնուս մէջ նոր ուրախութիւն մը տիրեց լուսաւորեալ երկրի մէջ ոտք կոխելնուս համար, ինչպէս է Եգիպտոսի բարձրապատիւ Կուսակալին և մեր Օսմանեան բարեգութ Տէրութեան երկիրները։ Աճապարեցինք մեր մնացեալ ճանապարհը դէպ ի Մուսուլ հասնելու, ինչպէս որ տղու մը ձեռք մտնուած ճնճղուկի ձագը յանկարծ անոր ձեռքէն պրծելով իւր մայրենի բոյնը կը թռչի կ՚երթայ։ Աւստի երեք աւուր ճանապարհը երկու օրուան մէջ առնելով՝ հասանք ողջամբ Մուսուլ։

Դեռ Մուսուլ չհասած, մեր քովն եղող Նազարէթցի Իլիաս անուն սպասաւորը մկրտուած չըլլալով, և արդէն իւր բոլոր խորհուրդներն ու գաղտնիքը տուած ըլլալով մեզի, կէս ճանապարհին խնդրեց մեզմէ որ զինքը մկրտենք. հոն գետի մը հանդիպելով վար իջանք և մկրտելով քրիստոնէութեան սրբազան կնիքն ընդունեց՝ Գեր. Իսահակ Սրբազան Հօր ձեռօք, և կնքահայր եղաւ իրեն իւր հայրաղատ ընկերն ու քաղաքակիցը Գէորգ անուն երիտասարդը։ Որոնք երկուքնին մեկէն մինչեւ Մուսուլ հետերնիս գալով և չուզելով իրենց քաղաքը դառնալ, ի վարձատրութիւն իրենց հաւատարիմ ծառայութեանցը՝ քանի մի հարիւր թալէր և երկու ջորի շնորհեցինք իրենց, որոնք ուրախութեամբ ետ դարձան Ասուա վաճառականութիւն ընելու ։

## ԳԼՈՒԽ ԺԳ.

Մուսավայի մէջ տկարանալնիս։ Մահտեսի Առաքել Ց. Ճիվէլէկեանը։ Մեր վերադարձի լուրը Եգիպտոս հասնելը։ Մուսավա կղզեակը։ Սեվագին և Ճիտտէ հասնելնիս։ Մալէզեան Տօքթօր Ֆրանկիւլ էֆէնտին։ Եգիպտոս և Աղէքսանդրիա հասնելնիս։ Հիւպատոս պարոն Ըսթանլէյի հետ տեսութիւննիս։ Անգղիոյ արտաքին գործոց պաշտօնեայ Քլարէնտընի նամակը։ Հիւպատոսին փոխադարձ այցելութիւնը, և զը-մեզ Խըտիվէ Իսմայիլ փաշային ներկայացընելը։ Յոպպէ և Յերուսաղէմ մտնելնիս։ Մեր վերադարձին ժամանակ Աղէքսանդրիոյ անգղիական Հիւպատոսին ձեռօք հանդերձեղէն և ստակ խրկուիլը։ Սթանլէյի մեզ գրած նամակին օրինակը։ Անոր երկրորդ նամակը, և մեր պատասխանը։

ՄՈՒՍԱՎԱ ոտք կոխելնուս՝ մեր անձին և սրտին անհանգստութիւնները փարատեցան, և իբր թէ խաղաղութեան նաւահանգիստը հասնելով թեթևութիւն մը զգացինք։ Սակայն երկար և դժուար ճամբորդութեան յոգնութիւններէն, որուն կէս մասը գրեթէ ոտքով քալած էինք, ջղային տկարութիւն մը մնացեր էր մեր վրայ, զոր թէպէտ և բանի տեղ դրած չէինք, բայց երբ հանգստութիւնը գտանք՝ աւելի զգալի եղաւ այն և սկսաւ անհանգիստ ընել զմեզ, և ուռեցք մը ևս երևան ելաւ բոլոր մեր մարմնոյն վրայ։ Նաև Մուսավային օդը որ հեղձուցիչ տաքութիւն մը ունի, աւելի նեղութիւն պատճառեց մեզի։ Այսպիսի օտար երկրի մը և վտանգաւոր հիւանդութեան մէջ, որով երկուքնիս ալ կըտառապէինք, աստուածային խնամքը կը կարօտէինք, որ և շուտով հասաւ մեզ յօգնութիւն, մեր դիմացն հանելով մահտեսի Առաքել աղայն Ճիվէլէկեան, ազգաւ Հայ, բարեպաշտ և բարեսիրտ անձը, որ մեր հոն գալը լսելուն պէս՝ անմիջապէս եկաւ գըտաւ զմեզ և տարաւ մեզ համար պատրաստուած բընակարանը, և ամէն կերպով մեր հանգստութեանը հոգ տարաւ. զինուորական բժիշկը բերել տալով քիչ շատ դարմանեց մեր հիւանդութիւնը, և մահուան վտանգը հեռացուց մեզմէ։ Այն անձին մեզ մատուցած բարիքները և մխիթարութիւնները մեծ նշանակութիւն

ունին մեր քով, և մշտնջենաւոր յիշատակութեան արժանաւոր են. կը ցաւինք որ մենք չկրցանք մեր կողմէն հատուցումն ընել անոր հիւրասէր ու մարդասէր վարմանցը։

Ադուայէն առ Ամենապատիւ Պատրիարքն գրած նամակնիս եկանք հոս յիշեալ Աղային քով գտանք, որովհետեւ թղթատար շոգենաւին ղեկը կոտրուելով՝ ճանապարհը չէր կրցած շարունակել, և 15 օրէն միւս շոգենաւը գալով կ'առնու կը տանի զայն, և այս պատճառաւ ամիս մը չափ շոգենաւ չգար Մուսավա. մեր ցաւը չէ թէ միայն մեր հօն արգիլեալ մնալնիս եղաւ, այլ առաւել մեր ողջամբ վերադարձի լուրը մեզմէ առաջ Երուսաղէմ Սրբազան Պատրիարքին չհաղորդուիլը։ Բայց Եգիպտոսի Անգղիական ընդհանուր Հիւպատոս Քօլօնէլ Ստանթօնին Ադէնի վրայօք խրկած նամակնիս կը հասնի հօն, ըստ որում Մուսավայի Անգղիոյ գործակատար պարոն Մանզինճէր այն միջոցին գործքի մը համար Ադէն երթալով՝ հետը կ'առնու կը տանի նամակը, և անկէց Եգիպտոս խրկելով կ'իմացու մեր վերադարձը։ Այն բարեսիրտ անձը դեռ Ադէն երթալու համար Մուսավայէն ճամբայ չելած՝ իրեն համար յատուկ եկած շոգենաւը քանի մը օր սպասել կուտայ, որ մենք Մուսավա հասնելնուս պէս՝ առնու հետը Ադէն տանի զմեզ, և անկէ ուղղակի հանգիստ կերպով մը Սուէյշ խրկէ։ Բայց դժբաղդաբար մեր ուշ մնալը, անոր մեկնելէն երկու օր յետոյ հասանք։

Մուսավա պզտիկ կղզեակ մըն է ցամաք երկրէն երկու քառորդ հեռաւորութեամբ. գիւղը տափարակ և դաշտաձեւ է և գեղեցիկ նստուածքով. օդը սաստիկ տաք կ'ընէ, մանաւանդ երկիրը չոր բլուրուն, վասն որոյ հազիւ կրնայ տոկալ օտարական մը։ Այս պատճառաւ ընիկ ժողովուրդը գրեթէ մերկ կը պտըտին՝ ղենջակ մի միայն պլլուելով, կամ լոկ շապիկ մը հագնելով իրենց տանը մէջ։ Նոր ներս մտած ժամանակնիս բաղնիք կարծեցինք քաղաքը, երբ կիսամերկ կամ լոկ շապիկով մի մարդիկը տեսանք։ Ժամանակ առ ժամանակ այն-

պէս աՀագին փոթորիկներ կ՚ելլեն յանկարծ, որ ա-
նապատի աւազներն երկինքն Հանելով օդը կարծես թէ
ամպով ու մշուշով կը պատի, և յետոյ բոլոր այն բա-
րակ աւազները անձրեւի նման քաղաքին վրայ կը տե-
ղան: Բնակարանները ընդՀանրապէս կնիւնէ (տաղէ)
Հիւսուած խեղճ խրճիթներ են, որոնք շատ անգամ
պզտիկ կայծէ մը բռնկելով յանկարծ մոխիր կը դառ-
նան. վասն որոյ ստէպ պատուէր կը տրուի Հասարա-
կութեան ու խրճիթէն դուրս կրակ վառեն կերակրոյ
Համար:

Այն կղզին Օսմանցւոց կառավարութեան կողմէն
Եգիպտոսի Խտիվին յանձնուած օրէն ի վեր սկսած
է շէննալ ու պայծառանալ. և Հիմայ քանի մը պատուա-
ւոր տներ ու քարաշէն շինուածքներ կը գտնուին:
Խանին կղերը վանք մի և դպրոց մը ունին, ուր աղքատ
տղայոց ձրի դաստիարակութիւն և ուսմունք կուտան:
Օտար տէրութեանց կողմէ միայն Գաղղիոյ Հիւպա-
տոս մը կայ, այն է վերոյիշեալ պարոն Մանզինձերը, որ
միանգամայն և գործակալ էր Անգղիոյ կառավարութեան:
Մուսավայի Հարաւային կողմը կ՚ընկնայ ցամաք երկիրը,
ուր նաւակաւ մը կ՚անցնին, և նաւամատոյց տեղւոյն
անունն է Մինքուլու: Այս տեղէն ճամբայ կ՚ելլուի
նաեւ դէպ ի Հապէշու երկիրը երթալու Համար: Մու-
վեզերքէն սկսեալ մինչեւ երեք աւուր ճանապարՀներ
որ Մուսավայի կառավարիչը կ՚իշխէ, և անկէ անդին
Հապէշու իշխանութիւնն է:

Ազիզիէ ընկերութեան Հիճազ անուն շոգենա-
ւուն գալու օրերը պարոն Մանզինձերն ալ Մուսավա
դարձաւ Ատենէն, որու Հետ տեսնուեցանք: Այն ան-
ձը Հապէշու մէջ իւր ունեցած Համբաւուն Համեմատ
մարդասէր ու քաղցր բնաւորութեան տէր մէկն էր,
որ մեծ Համարում ցոյց տուաւ մեզ, և մինչեւ շոգե-
նաւուն վարձը Անգղիոյ տէրութեան կողմէն ինքը վը-
ճարեց ամբողջ: Յուլիս 5/17 օրը մեզի Համար խիստ
տրտմալի օր մը եղաւ՝ թէ յիշեալ Հիւպատոսէն և թէ
մեր Համազգակից մաՀտեսի Ռափայել աղայէն բաժնը-

ւենուս պատճառաւ, որոնց ձեռքը վերջին անգամ թօթուելով և մեր օրհնութիւնները տալով մտանք շոգենաւ, ու խարխալը վերցուաւ, և ծանրաշարժ ընթացքով բրգաձեւ կոթողներուն մէջէն, որ զգուշութեան համար հաստատուած են, սկսաւ քալել և ոլորուն նեղուցներէ պտըտելով դուրս ելնել։ Թէպէտ և Պիտտէի և Սեվագինի նեղուցներուն մէջ ալ կան պալեր, բայց այս կողմինները խիստ աւելի ու խիթալի են, որոնց դէմ կարծես թէ շոգենաւը մաքառելով մը կ'անցնի մեծ նեղութիւններ կրելով իւր ընթացքին մէջ, մինչեւ գիշեր ժամանակ անոնց վտանգէն կըստիպուի կանգ առնել կենալ, որպէս զի չմնասուի ջրերուն տակը ծածկուած պալեղներու դեղերէն։ Երբեմն ցորեկն անգամ կը պատահի որ յանկարծ փոթորիկ փրթելով աւազները երկնքին երեսը ամպի նման կը ծածկեն ու կը մթնցնեն, ուսկէ կը հարկադրի շոգենաւը խարխս ձգել ու սպասել մինչեւ լուսնալը։ Այս օրինակ պատճառներով երեք աւուր ճանապարհը հազիւ թէ վեց աւուր մէջ առինք մինչեւ Սեվագինի նաւահանգիստը, ուսկէց ալ 26 ժամուն հասանք ի Պիտտէ։

Մեր երկամեայ պանդխտութենէն վերադառնալնուս կրկին անգամ գտանք հոս մեր նախածանօթ բարեկամը և այն ազնիւ հոգին, որուն յիշատակը մեր հետ ընկերացած էր օտարութեանս մէջ, այն է մեծապատիւ Մաւէզեան Տօքթօր Փրանկիւլ էֆէնտին, վասն որոյ մեր սրտին ուրախութիւնը կրկնապատկեցաւ և հայրենեաց հոտ բուրեց երբ յանկարծ եկաւ փարեցաւ նա մեր ճիտը։ Նոր առաջին հարցումն եղաւ մեր առողջութեանը վրայ. և երբ իմացաւ տկարութիւննիս, ըստ որում ինչպէս ըսինք, Մուսավայի մէջ կատարեալ առողջութիւննիս չէինք գտած, փութաց իւր յատուկ բնակարանին մէջ զմեզ հանգստացընելէն յետոյ անմիջապէս հարկաւոր դարմաններն ի գործ դնել, որոնցմով քանի մի աւուր մէջ կատարելապէս առողջութիւն գտանք։ Հոս չենք կրնար զանց առնել մեր սրտագին շնորհակալութիւնները հրապարակաւ մատուցանել այն ազ-

նիւ անձին, որ ինչպէս առաջին անգամ անկէ անցած ժամանակնիս, նոյնպէս և այս անգամ աւելի մտերմաբար սէր և խնամք ցոյց տուաւ մեզ, մեր կարեւոր պիտոյքն անգամ հոգալով. որու քով քանի մը օր հանգստանալէն և իւր քաղցր տեսութիւնը վայելելէ յետոյ շարունակեցինք մեր ճամբան ուրիշ շոգենաւի մը մէջ փոխադրուելով, և եօթն օրին հասանք Սուէզ: Անմիջապէս հեռագիր մը հաղորդեցինք Եգիպտոս՝ Երուսաղէմի վանուց կողմէ կալուածոց գործակալութեան պաշտօնին հոն գտնուող Արժ. Աստուածատուր վարդապետին Տէր Յովհաննէսեանց, և մեր հոն հասնիլը իմացընելով հետեւեալ օրը մենք ալ շոգեկառքով մըտանք Եգիպտոս: Յիշեալ սուրբ եղբօր մեզ ցոյց տըւած մարդասիրութեան գոհ սրտիւ մեր շնորհակալութիւնը կը յայտնեմք: Տեղւոյն Անգղիոյ փոխ—հիւպատոսը մեր գալը լսելով, համեմատ իրեն եղած յատուկ ազդարարութեանը՝ փութաց մեր այցելութեանը գալ և Աղէքսանդրիոյ ընդհանուր հիւպատոսի տեղապահ պարոն Սթանլէի սիրալիր ողջոյններուն հետ՝ Անգղիոյ արտաքին գործոց պաշտօնէի կողմէն նամակի մ' ալ գալը մեզի հաղորդեց. ասոր հետ ըրած տեսութիննիս երկար էր և համակրական, ինչպէս էին նաեւ Ճիտէի, Սուէզի և միւս քաղաքաց Անգղիացի հիւպատոսաց հետ ըրած տեսութիւննիս:

Ուզելով օր յառաջ Երուսաղէմ հասնիլ, շոգեկառք մտնելով եկանք Աղէքսանդրիա և իջեւանեցանք Մեծ. Աշըքեան մահտեսի Յակոբ էֆէնտիի տունը. հոն փութացինք պարոն Սթանլէի տեսութեանը երթալ, որ խիստ մեծ համակրութեամբ և պատուով ընդունեց զմեզ, և Անգղիոյ արտաքին գործոց պաշտօնէի վերյիշեալ թուղթը մեզ տուաւ: Ընթերցողք կը յիշեն անշուշտ մեր գրած նամակը, զոր Լոնտրա եկած ժամանակնիս անգղիարէն լեզուով ուղղեցինք Եգիպտոսի ընդհանուր հիւպատոս Քոլոնէլ Սթանթօնին. որ նոյն ժամանակները Լոնտրա գտնուելով նամակը ընդունած ժամանակ արտաքին պաշտօնէին կը հաղորդէ, և նա

ուրախանալով կը բարեհաճի անձամբ պատասխանել մեր նամակին ։ Ահաւասիկ յիշեալ նամակին օրինակը .

Արտաքին գործոց պաշտօնատուն ։
Յուլիս 22/10, 1869

Տէր իմ Արքեպիսկոպոս,

Եգիպտոսի ընդհանուր Հիւպատոս և Ն. Վ. Թագուհւոյ գործակալ Սթանթօն հազարապետէն, որ այժմ մասնաւոր հրամանաւ բացակայ ըլլալով հոս կը գտնուի, իմացայ՝ Ձեր Սրբազնութենէն վերջին ամսոյ 13 թուով նամակ մը ստանալը, որով Ձեր Ադուա հասնիլը կը ծանուցանէիք ։ Այս լուրը ուրախութեան առիթ պիտի ըլլայ թէ Թագուհւոյն և թէ Անգղիոյ ազգին, որոնք մեծապէս յարգեցին Ձեր Սրբազնութեան Հապէշստան երթալնուդ շարժառիթ պատճառը, և միանգամայն հետաքրքրութեամբ մասնակցեցան Ձեր կրած նեղութեանց և տառապանաց վրայօք այս կողմերս առնուած լուրերուն ։

Իմ երախտագիտութեանս յայտարարութիւնն աւելցնելով պատիւ ունիմ մնալ Ձերդ Սրբազնութեան

Ամենախոնարհ և հնազանդ
ծառայ Քլարէնտն ։

Առ Նորին Գերապատիւ
Սրբազնութիւն Իսահակ
Արք Եպիսկոպոս ։

Մեր այցելութեան գնալուն երկրորդ օրը պարոն Սթանլէյ փութաց մեր փոխադարձ տեսութեանը գալու Մեծ. Աշըքեան մահտեսի Յակոբ էֆէնտիին բնակարանը, ուր բաւական տեսութիւն ընելէն յետոյ, կանխաւ մեր հաճութիւնն առած ըլլալով տարաւ ըզ մեզ անձամբ Բարձրապատիւ Խըտիվի Խամիլ փաշային ներկայացընելու . որ նմանապէս պատուով ընդունեց զմեզ, և զանազան հարցումներ ըրաւ Հապէշստանի

երկրին և անոր կառավարութեանցը վրայօք ։ Քանի մը օր միայն Աղէքսանդրիա մնալով և պատուաւոր անձանց այցելութիւններն ընդունելէն զկնի մտանք շոգենաւ, և երկու աւուր մէջ հասանք ի Յոպպէ ; ուր շաբաթ մի յառաջ Ամենապատիւ Տէր Եսայի Սրբազան Պատրիարքը սուրբ Աթոռոյս աւագ Թարգմանը քանի մը վարդապետով խրկած էր ։ Շոգենաւէն դեռ դուրս չելած, անոր գալը լսելով Ամերիկայի և Պրուսիոյ Տէրութեանց գործակատար յարգոյ պարոն Սիմէօն Մուրատեանը, յիշեալ Տէրութեանց դրօշակները պարզելով՝ նաւակով շոգենաւուն եկաւ քանի մը բարեկամաց և վերոյիշեալ սուրբ եղբարց հետ զմեզ ընդունելու ։ Քաղաքին մէջ ալ նոյնպէս բոլոր մեզ ծանօթ բարեկամք ազգայինք և օտարազգիք փութացին մեր տեսութեանը, ինչպէս նաև Ռամլա հասնելնուս հոն ալ ցոյց տուին մեզ իրենց համակրական սէրը ։ Որչափ աւելի կմօտենայինք սուրբ Երուսաղէմի, այնչափ աւելի բարեկամաց և մեր քաղաքացի ժողովրդոց թիւը կ'աւելնար, որոնք լսելով մեր գալը մեր դիմացը փութացեր էին ։ Գալինեա ըսուած տեղը, որ մէկ ժամ է քաղաքէն, գտանք զԳեր. Կարապետ և Սիմէօն Սրբազան Եպիսկոպոսները, որոնք Սրբազան Պատրիարք Հօր կողմէն եկած էին մեզ դիմաւորելու ։ Նոյնպէս Անգլիոյ Հիւպատոս Նոէլ Թէմբըլ Մօր իւր Թարգմանը և երկու խաւաշները խրկած էր ։

Աւելորդ կը համարիմ վանքը հասած ժամանակնիս եկեղեցական թափօրիւ զմեզ ընդունելնին նկարագրել. բայց չեմ կրնար լռել ու չյայտնել այն յուզմունքն ու սրտագին զեղմունքը, զոր փոխադարձաբար կը կրէինք մեր հոգւոյն մէջ՝ տեսնելով ողջ առողջ բոլոր Միաբան եղբարքն ու Հարքը և Ամենապատիւ Պատրիարք Սրբազան Հայրը, երբ իրարու փարելով և քաղցր արտասուքներ թափելով զիրար կը համբուրէինք, և փառք կուտայինք Աստուծոյ, որ զմեզ գրեթէ մեռելութենէ յարուցանելով եւ զմիաբան եղբարքը ողջ պահելով՝ արժանի ըրաւ մէկզմէկ տեսնելու ։

Հոս չեմ ուզեր զանց ընել հարկաւոր պարագայ մի, որուն վրայօք տեղեկութիւն ստացանք Երուսաղէմ դառնալնէս յետոյ։ Վերը երես 116 ըսած էինք Պելեսայէն նամակ մը խրկեինիս Եգիպտոս և մեր վիճակը այն տեղի ազգայնոց իմացընելնիս։ Այն նամակը Երուսաղեմէն Սրբազան Պատրիարքին խրկուելով, և իմանալով մեր Պելեսայի մէջ արգիլուած ըլլալը, անմիջապէս կը հեռագրէ Կոստանդինուպոլիս Ամեն. Տէր Պօղոս Նախորդ Պատրիարքին, և անոր միջոցաւ Անգղիոյ Վսեմ. դեսպանին կ՚իմացնէ, և կը խնդրէ որ մեր վերադարձին համար հոգ տանի։ Նա ալ առանց ժամանակ անցընելու՝ յԱնգղիա կը հեռագրէ անկէ հրաման ընդունելու համար։ Վեհափառ Թագուհւոյն կառավարութիւնը այն լուրը առնելուն պէս՝ Եգիպտոսի իւր ընդհանուր հիւպատոսին (1) հրաման կը խրկէ որ մեր վերադարձին համար ինչ որ հարկ է՝ ի գործ դնէ և մեր գալը դիւրացընէ, ուստի այն հրամանին վրայ նա ալ կը փութայ Արժանապատիւ Աստուածատուր վարդապետի ձեռօք երկերկու ձեռք հագուստ և հազար արծուէդրոշմ ռուբլ պատրաստել, և Երուսաղէմայ հիւպատոսին ալ գրելով Սրբազան Պատրիարքէն եւս առ մեզ ուղղեալ նամակներ բերել կուտայ, զորոնք իւր գրութիւններուն մէջ դնելով և պատրաստել տուած հագուստներով ու դրամներով Եգիպտոսի կառավարութեան ձեռօք Բարձրապատիւ Իսմայէլ Փաշայի մարդոց հետ ճամբայ կը հանէ մեր ձեռքը հասցընելու. ի Մէդէմմա (Կալլապատ)։

Այս լուրը Սուէիշ եկած ժամանակնիս իմացանք, և մեզմէ քանի մը օր յառաջ տեղւոյն կառավարիչը ճամբայ հանած էր զանոնք. և յԱղէքսանդրիա հասնելնուս ճիշդ եղելութիւնը իմանալով՝ մեր շնորհակալութիւնը մատուցինք Աղէքսանդրիոյ ընդհանուր Հիւպատոսի տեղակալին, և ընդունեցինք Անգղիոյ տէրութեան ցոյց

(1) Այն միջոցին ընդհանուր Հիւպատոսը բացակայ գտնուելով՝ Աղէքսանդրիոյ Հիւպատոսը կը վարէր անոր պաշտօնը՝ իբր տեղապահ և կամ փոխանորդ կարգուելով անոր կողմէն։

տուած սոյն մարդասիրական հաւատոյ նշանը, ոչ իբր փոխարէն մեր անձնանուիրութեանը, այլ ի սպատիւ Վեհափառ Թագուհւոյն բարեսէր անօրէնութեանը [1] ։

Ահաւասիկ Եգիպտոսի ընդհանուր Հիւպատոսի տեղապահ Սթանլէյի մեզ ի Հապէշտան յուղարկած նամակին պատճէնը, որ թէպէտև մեր ձեռքը չհասաւ, ըստ որում մենք ճամբայ ելած ու Եգիպտոս արդէն հասած էինք, սակայն անոր մէկ օրինակը Ամեն. Սրբազան Պատրիարքին խրկած էր, ինչպէս վերը պատմեցինք ։

Ամենապատիւ սրբազան Հայր

Յարգանացս ողջոյնը մատուցանելէն յետոյ, պատիւ ունիմ ծանուցանելու թէ, Երուսաղեմայ Ամեն. Պատրիարքը Կ. Պօլոյ Վսեմափայլ դեսպանին ձեռօք Բրիտանիոյ Վեհ. Թագուհւոյ կառավարութեան աղերսագիր մը ուղղած է, որով կը խնդրէ ձեր վերադարձը այն ճանապարհորդութենէն զոր քրիստոնէական սիրոյ զգացմամբ յանձն առիք, յուսալով թերևս ազատէք Հապէշտանի հանդուցեալ Թէոդորոս Թագաւորը և իւր ժողովուրդը պատերազմի հարուածներէն. վասն որոյ սոյն առթիւ Վեհափառ Թագուհւոյն կառավարութենէն յատուկ հրամանագիր ստացայ ձեր վերադարձը դիւրացնելու համար ամեն միջոց և ջանք ի գործ դնելու, որպէս զի յիշեալ Ամեն. Սրբազանին խնդիրը կատարուած ըլլայ ։ Ուստի այժմ Վեհափառ Թագուհւոյն կողմէն գիր մի կ'ուղղենք Նորին բարձրութեան Կովաղի իշխանին, խնդրելով իրմէ որ դիւրացընէ ձեր վերադարձը և անվտանգ հասցընէ զձեզ մինչև ի Մէդէմմա. ուր բարձրապատիւ Փոխարքային՝ ի

(1) Յիշեալ աղանելիքները եւ դառնալուն, ըստ որում իրենց համար յատկապէս ձեւած էին, անցեալ տարի մարտ ամսոյն մէջ սուրբ Աթոռս խրկուեցան բաց ի 1000 րուբլէն, և իրենց տրուեցաւ Ամեն. Սրբազան Հօր միջոցաւ ։ Ծանօթ. Հրատարակչին ։

պատիւ Ն. Վ. Թագուհւոյն և ձեր կրած սուրբ պաշտօնին՝ յատուկ հրամաններ խրկած է ձեզ ամենայն սիրով ընդունելու և մինչեւ ի Գահիրէ անվտանգ հասցընելու ։ Նորին Բարձրապատուութեան շնորհիւն է նաեւ թէ՛ այն նամակին և թէ ասոր մէջ ներփակեալ Ամեն. Սրբազան Պատրիարքին գրութիւնները յղելու պատեհութիւնը և դիւրութիւնը գտնելնիս։ Ասոր հետ կ'ուղարկեմք նաեւ հազար ըռեալ և լաթեղէնք, որ Սէդեմմա համնէնուդ՝ ըստ ձեր հաճոյից կարենաք գործածել ։

Ընդունեցէք կանխաւ մեր խնդակցութիւնը զոր ձեր երջանիկ վերադարձին համար կը նուիրեմ, բարեմաղթելով առ Աստուած որ զձեզ անվտանգ և խաղաղութեամբ հասցընէ, ազատելով չարին փորձութիւններէն՝ որոնց ենթակայ էիք ։

Մօտերս զձեզ տեսնելու յուսով պատիւ ունիմ մնալ, և այլն ։

Սթանլէյ ։

Գէլեսայէն եւ դառնալնուս Էմարայի իշխան Վակշըմ-Կոլվազին, կամ ինչպէս որ իրենք կը կոչեն, Թէքլէ-Կորկիս Թագաւորը՝ ուզելով մեր վերադարձին առթիւը Անգղիոյ տէրութեան առջեւ շնորհք մը գտնել յատուկ նամակաւ մը կ'իմացընէ անոր զմեզ պատուով ճամբու դնելը, և իբր փոխարէն իւր բարեաց ու խնամոց՝ զոր մեզի ըրած ցոյց կուտայ, կը խնդրէ պատուական օթոց մը, դիտակ մը և ուրիշ քանի մը կտոր պարգեւներ ։ Տէրութիւնը այս նամակս ընդունելով, անոր խնդիրքը չկատարած կ'ուզէ ստոյգը մեզմէ իմանալ, թէ արդեօք ճշմարի՞տ է Վակշըմ-Կոլվազիի մեզի ցոյց տուած բարիքները, և թէ վարձատրութեան արժանաւո՞ր է նոյն անձը ։ Այն գիրը Եգիպտական ընդհանուր հիւպատոսի տ՚ղապահ Սթանլէյին կ'ուղղէ. նա ալ իւր առանձին նամակաւը անոր իմաստը մեզի հաղորդելով պատասխանը կը խնդրէ, որուն փութացինք բացատրութիւն տալ Վակշըմ-Կոլվազիին մեզի հետ ըրած

վարմանցը։ Աւասիկ յիշեալ տեղապահին գրած նամակին պատճէնը։

Աղեքսանդրիա, 15 սեպտեմբեր, 1869։

Գերապատիւ սուրբ Հայր,

Ձեր սուրբ օրհնութիւնը խնդրելէն յետոյ, պատիւ ունիմ ծանուցանել որ Վեհափառ Թագուհւոյն կառավարութիւնը նամակ մը ընդունած է Ադենի վսեմափայլ կառավարչէն, որով կ'իմացընէ թէ Կոպազի իշխանը ի նպաստ Ձեր Սրբազնութեան ըրած իւր մարդասիրութեանը և Քասսա իշխանին քով երթալնուդութիւ ի գործ դրած իւր ջանից փոխարէն, դիտակ մը, քանի մը օթոց և ուրիշ բաներ խնդրած է։ Բայց կառավարութիւնը այդ նուէրները շնորհելէ յառաջ, կամեցաւ իմանալ Ձեր Սրբազնութենէն յիշեալ իշխանին արժանաւորութիւնը։ Այսու առթիւ կառավարութեան կողմէն եկած պաշտօնագրին օրինակը սոյն նամակիս հետ կը ներկայացընեմք ի ծանօթութիւն Ձեր Սրբազնութեան։

Ընդունեցէք և այլն։

Սթանլէյ։

Մեր Պատասխանը.

Վսեմափայլ Տէր,

Ստացանք մեծաւ հաճութեամբ Ձեր Վսեմութեան գիրը, որու մէջ ամփոփած էիք նաեւ Վեհ. Թագուհւոյ կառավարութեան կողմէն խրկուած նամակը, որով կը ցանկայ իմանալ Վակշըմ-Կոպազի իշխանին մեզ ցոյց տուած վարմունքը։

Կը փութամք, Վսեմափայլ Տէր, պատասխանելու անկեղծաբար, որ մենք տարիի մը չափ յիշեալ իշխանին ձեռաց տակ թափառեցանք, և թէպէտ ծանր նեղու-

թիւններու ենթակայ չեղանք, բայց իր սրտին զգացմունքներուն և արտաքին շարժմունքներուն նայելով՝ սպիտակ մարդկանց հետ այնքան համակրութիւն ունենալ չէր երեւեր, ինչպէս վկայած է տեղւոյդ ընդհանուր հիւպատոս հազարապետ Աթանթոնը։

Եւ եթէ կը ներուի մեզ խոստովանիլ, աւելի մարդասիրութիւն և շնորհքներ գտանք Թէքրիի իշխան Տէճաջմաջ-Բասսայէն, որ մեզի իբրեւ կրօնակից ընդունեց՝ հոգեւոր և մարմնաւոր պարտքերը մեզի հատուցանելով։

Մնամք անկեղծ զգացմամբ սրտի, մաղթելով վասն Ձեր օրհնութիւն ի Տեառնէ։

Իսահակ արքեպիսկոպոս։



# ՑԱՆԿ

## ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐՈՅ

---

### ԳԼՈՒԽ Ա.



### ԳԼՈՒԽ Բ.



### ԳԼՈՒԽ Գ.



### ԳԼՈՒԽ Դ.

## ԳԼՈՒԽ Ե.



## ԳԼՈՒԽ Զ.



## ԳԼՈՒԽ Է.



## ԳԼՈՒԽ Ը.

## ԳԼՈՒԽ ԺԳ.

*Մուսավայի մէջ տկարանալնիս։ Մահտեսի Առաքել Յ. Ճիվէլէկեանը։ Մեր վերադարձի լուրը Եգիպտոս հասնելը։ Մուսավա կղզեակը։ Սեվագին և Ճիտտէ հասնելնիս։ Մալէզեան Տօքթօր Ֆրանկիւլ էֆէնտին։ Եգիպտոս և Աղէքսանդրիա հասնելնիս։ Հիւպատոս պարոն Ըսթանլէյի հետ տեսութիւննիս։ Անգղիոյ արտաքին գործոց պաշտօնեայ Քլարէնտընի Նամակը։ Հիւպատոսին փոխադարձ այցելութիւնը, և ըղմեզ Խըտիվէ Իսմայիլ փաշային ներկայացընելը։ Յոպպէ և յԵրուսաղէմ մտնելնիս։ Մեր վերադարձին ժամանակ Աղէքսանդրիոյ անգղիական Հիւպատոսին ձեռօք հանդիրձեղէն և ստակ խրկուիլը։ Սթանլէի մեզ գրած Նամակին օրինակը։ Անոր երկրորդ Նամակը, և մեր պատասխանը։* **153—164։**



# ԵՐԿԱՄԵԱՅ

# ՊԱՆԴԽՏՈՒԹԻՒՆ

# Ի ՀԱՊԷՇՍՏԱՆ

ԵՐԿԱՄԵԱՅ

# ՊԱՆԴԽՏՈՒԹԻՒՆ

## Ի ՀԱՊԷՇՍՏԱՆ

ԿԱՄ

*ԲԱՐՈՅԱԿԱՆ, ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՒ ԿՐՕՆԱԿԱՆ*
*ՎԱՐՔ ՀԱՊԷՇԻՑ*

---

ՅՕՐԻՆԵՑ
ՏԻՄՈԹԵՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՍԱՓՐԻՉԵԱՆ
ԿՈՍՏԱՆԴԻՆՈՒՊՕԼՍԵՑԻ
Ի ՄԻԱԲԱՆՈՒԹԵՆԷ Ս. ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

---

ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

---

*ՅԵՐՈՒՍԱՂԷՄ*
Ի ՏՊԱՐԱՆԻ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅ Ս. ՅԱԿՈԲԵԱՆՑ
1871

*Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ*

**Տ. Տ. Գ Է Ո Ր Գ Ա Յ**

**ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ**

**ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ**

ՀՐԱՄԱՆԱՒ

**ՊԱՏՐԻԱՐՔԻ ՍՐԲՈՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ**

**Տ. ԵՍԱՅԵԱՅ**

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

**ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Կ. ՊՈԼՍՈՅ**

**Տ. ՄԿՐՏՉԻ**

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

# ՊԱՆԴԽՏՈՒԹԻՒՆ

## Ի ՀԱՊԷՇՍՏԱՆ



## ՀԱՊԷՇՆԵՐՈՒՆ ԲՆԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ

### ԳԼՈՒԽ Ա.

*Անողորմութիւնն.*

Գթութիւնն, որ մարդկային խղճին արտաքին պատկերն է, և բնածին յատկութիւն կը համարուի ընկերական մարդուն, Հապէշից սրտին մէջ երբեք տեղի գտած չէ։ Այս սառ պակասութիւնը բարոյականի խանգարումը կ'ենթադրէ։ Գազանաց մէջ տեսնուած են այնպիսիներ որ մարդոյս ձեռքէ բարիք մը տեսնելով, իրենց վայրենութիւնը մէկդի դրած՝ անոր վրայ գութ ունեցեր և փոխարինութիւն ալ ըրած են, ինչպէս շունն ու առիւծը և այլն։ Ընդհակառակը այս կէս մը վայրենի ազգը ոչ միայն օտարի մը, այլ և ոչ իրենց ազգակցաց վրայ գութ ունին։ Վերջին աստիճան թշուառութեան և կարօտութեան մէջ գտնուող անձի մը սրտաշարժ աղաչանքներին ու պաղատանքները անոնց սրտին վրայ և ոչ ամենափոքր ազդեցութիւն մը կ'ընեն. որոնց ականջին այն աղաչաւորին ողորմուկ ձայները վնասակար քամիի նման հնչելով, չլսելու համար խոյս կուտան և տներնուն մէջ կը փակուին։ Բարբարոս Արաբացւոց հետ բաղդատելով այս քրիստոնեայ համարուած Հապէշները (1) առաջիններէն աւելի մարդասէր

(1) Այս գրքիս մէջ մեր խօսքը միայն քրիստոնեայ Հապէշից վրայ է. բայց որովհետև ուրիշ տարբեր կրօնքներով ալ Հապէշներ կան, որոնց վրայ ետքէն պիտի խօսինք։

և գթութեան զգացմունքներ ունին մանաւանդ առ
օտարս , ինչպէս որ փորձեցինք ճանապարհին իրենց
հանդիպած ժամանակնիս ։ Իսկ Հապէշից քով , ընդ-
հանրապէս խօսելով , ոչ միայն քրիստոնէի մը յատկու-
թիւններն , այլ և մարդկային բնական յատկութիւ-
ներն անգամ վերջացած գտանք ։ Իրենց ազգին աղ-
քատաց թէ որ խիստ թախանձանքներէ բռնադա-
տեալ պատառ մը հաց տալու ըլլան , մեծ ողորմութիւն
և գթութիւն մը գործած կը համարին, որպէս թէ անոր
կեանքը մօտալուտ վտանգէ մը ազատած ըլլային ։ Ա-
սոնց անողորմութիւնը պատճառ տուած է աղքատաց
ալ աներես ըլլալու և պատառ մը հաց ձեռք ձգելու
համար տեսակ տեսակ հնարքներ ու եղանակներ բա-
նեցընելու , ինչպէս քիչ մը ետքը պիտի խօսիմք ։ Թէ որ
մէկը անօթութենէ մեռնելու ըլլայ , իրենց խիղճը հան-
գստացնելու համար , թէ որ ունին երբեք մարդկային
խիղճ , սա խօսքը կ'ըսեն . «Աստուծոյ կամքը այնպէս
ուզեր է .» և յանցանքը Աստուծոյ կուտան . զԱստուած
յանցաւոր կ'ընեն՝ զիրենք արդարացընելու համար ։

Գիւղի մը մէջ պատահմամբ օտարական մը գտնուե-
լու ըլլայ , ուր տեղ ուրիշ երկիրներու նման հաց կամ
ուրիշ ուտելիք ծախելու սովորութիւն չկայ , ամենե-
ւին մէկը գութը շարժելով կտոր մը հաց չտար անոր ,
թէ և օտարականը անոր ոտքը ընկնալով աղաչելու ըլ-
լայ ։ Այնքան քարացած է իրենց սիրտը , որ հաց չտա-
լէն զատ , աղաչաւոր խնդրողին վրայ ալ կը ծիծաղին ու
կը ծաղրեն ։ Մենք ալ օրերով անօթի մնացինք իրենց
երկրին մէջ , և ամօթը մէկդի դրած մուրացկանութեան
ալ ելանք , բայց գթոտ սիրտ մը և հաց (1) կարկառող
ձեռք մը չտեսանք ։ Մհնիէն ատդին Գաալըը—Սարեամ
լերանը վրայի գիւղին մէջ կրեցինք անգամ մը հայի նե-
ղութիւնը ։ Ստոյգ է այն իմաստուն խօսքը սուրբ Գր-

(1) Հապէշից չինած հացերուն մէջ ամենէն աղուորն է փափուայէ չի-
նածնին . որ մանանեխի հունտի նման սերմ է , տափարակ ձեւով , ցեխի
նման թաց և դժուարամարս . Յիշեալ հունտէն օղի ալ կը չինեն . որ
խիստ զօրաւոր կ'ըլլայ .

րիգոր ՚Նարեկացիին որ կ՚ըսէ թէ, «Ուր տեղ որ մարդկային օգնութիւնները կը դադարին, հոն Աստուծոյ զարմանալի ողորմութիւնները յայտնի կը տեսնուին։» Այն նեղութեան մէջ երբ անօգնական գիւղացիք պատառ մը հացը խնայէին մեզմէ, Աստուած իւր ողորմութիւնը զգալապէս յայտնի ցուց մեզի, ինչպէս որ գրած եմ առաջին գրքին մէջ յերես 29։ Իսկ երբ ընտելացանք անոնց բնաւորութեանը, յետ այնքան փոխանակ անոնց ընկերական և քրիստոնէական պարտաւորութիւնները յիշեցընելու, և խղճերնուն դուռը զարնելու, զոր երբեք չտեսանք բացուած, սկսանք մենք ալ բռնութիւնը ի գործ դնել և անոնց սիրտը բռնաբարել, որով միայն կարողացանք ողջապահիկ հաց մը ճարել. երկիւղը աւելի գործ տեսաւ իրենց քով՝ քան թէ գթութիւնը։ Դրամով անգամ հաց տալու չէին համարձակեր երկիւղ կրելով իրենց մեծ իշխանէն, որպէս զի չպատժուին. բայց առանց դրամի չտալու համար ալ խիստ վարժեր էին, ու կրնային պատշաճ ստութիւններով և հնարագիտութեամբ զիրենք արդարացընել հարկ եղած ատեն։

---

## ԳԼՈՒԽ Բ.

Կեղծ հիւրասիրութիւննին։

ՀԵՌԱՒՈՐ ու օտար երկրէ եկող մարդոց շատ հիւրասիրութիւն կը ցուցընեն, բայց միայն խօսքով և արտաքին շինծու ձևերով։ Ամէն առաւօտ իրենց սովորութեան համեմատ տեսութեան կուգան անոնց քով, որպէս թէ վաղածանօթ մտերիմ ու սերտ բարեկամ մը եղած ըլլային անոնք։ Հետերնին կ՚ուտեն կը խմեն, ճշմարիտ բարեկամի մը կերպարանք ցոյց կ՚ուտան, բայց ներսէն կը ծիծաղին ու կը ծաղրեն անմտի մը տեղ դնելով զանոնք, մանաւանդ եթէ ձերմակ մար-

դիկ ըլլան օտարականները՝ որոնք աւելի շուտով կը խաբուին իրենց . և ատոնց հետ ուտել խմելէն յետոյ՝ խանդոհութիւններ ընելով կը թողուն կ'երթան իրենց գործին ։ Իսկ թէ որ այն օտարական հիւրը գաւաթ մը ջուր օր մը պէտք ունենայ , տարակոյս չկայ երբէք չտալնուն , ինչպէս որ ատոր ալ փորձը մենք անձամբ շատ անգամ տեսած ենք ։

Օտարականին առջեւ նախ ամեն կերպ կեղծաւորութիւններով կը վարուին , և անոր աչքին հաճոյ և սիրելի երեւալու համար ամեն տեսակ սրտագրաւ ձեւերով արտաքուստ կը կեղծաւորին ։ Հիւրը ինչ որ խօսելու ըլլայ՝ թէ հաճոյ և թէ անհաճոյ , չեն ընդդիմանար , չեն ցաւիր ու այլայլիր . այլ իրաւունք ալ տալով անոր խօսքերուն՝ այո կ'ըսեն , մինչեւ որ կարողանան ձուկը կարթը ձգելու՝ անոր սիրտը գրաւելու , և իրենց ակնկալութեանը և բաղձանքին հասնելու , այն է խեղճ օտարականին քովին եղածները խլելու ։ Իսկ թէ որ այս կերպով ալ չկարողանան յաջողել , կըսկսին ուրիշ աւելի սրտագրաւ ու համակրական միջոցներ ձեռք առնել ։ Անոր պաշտած կրօնքը կը գովեն իբրեւ միակ ճշմարիտ կրօնք, իրենք ալ կ'ընդունին զայն ու կը համակերպին անոր կրօնական զգացմանցը ։ Յետոյ բարեկամութեան պայմանները կը յիշեն , որ է կարեկցութիւն ու օգնութիւնը . պէտք է , կ'ըսեն , բարեկամ բարեկամի նեղ ժամանակի մէջ իրարու օգնեն ։ Քիչ քիչ կըսկսին իրենց միտքը պարզել և կ'իմացընեն քանի մը թալէրի պէտք ունենալնին . և այնչափ կեղծ ձեւեր ու եղանակներ կը բանեցընեն՝ որ աներեւութեամբ ու յայտնապէս մուրալով ուզածնին կ'առնեն անորմէ ։ Ամենք ալ իրենց վրայի ցնցոտի լաթերնին բանալով ու աչամային մերկութիւննին ցոյց տալով անամօթաբար՝ հագնելու լաթեղէններ կը խնդրեն ։

Անոնք որ քիչ շատ բան մը կը խլեն օտարականէն և իրենց նպատակին կը հասնին , ուրիշ ընկեր մ' ալ կ'առնուն կը բերեն և անոր ներկայացնելով կը ծանօթացընեն , իսկ թէ զինքը շատ սիրենուն՝ անոր բարեկա-

մաց Թիւր ամենլընել կ՚ուզեն. բայց ներքին գիտաւորութիւններին խեղճ օտարականը մօրէ մերկ ձգել է իրենց մէջ։ Թէ որ երեւը կակուղ մէկն է, Թող այնուհետեւ գնացող եկող մուրացկան բարեկամներուն խօսք հասկընէ, հետերնին նստի ելնէ։ Թէ որ անոնց աներես բաղձանքը լեցնելու համար բան մը չունենայ քովը կամ սպառած ըլլայ, չեն հաւատար. իրենց մէջ ստախօս կը կարծեն. Թէ որ տայ՝ կը ծաղրեն. չտայ՝ գէշ կը խօսին վրան, կը վատահամբաւեն սուտ զրպարտութիւններով։ Իսկ Թէ որ օտարականը իր բարեկամ կարծած մարդուն բան մ՚ալ տալու ըլլայ. քիթմուլինչ ընելով կ՚առնէ զայն առանց բանի մը տեղ դնելու, անկէ յետոյ ժամանակ մը իր այցելութիւնները կը դադրեցընէ։ Թէ որ հարկաւորի ուրիշ բան մ՚ալ խնդրելու անկէ, ամօթ չհամարիր. դարձեալ կուգայ կ՚ուզէ. Թէ որ չտայ՝ խօսքը չերկնցըներ, այլ ինքն իրեն ցաւելով կը Թողու կ՚երթայ։

Ուզածնին առնելէն յետոյ՝ դարձեալ իրենց սիրտը մի եւ նոյն է. երախտագիտական զգացմունք բնաւ չունին. եւ եթէ միտքերնին դրած են չարիք մը հասցընելու, ընդունած բարիքնին զիրենք չարգիլեր բնաւ պատեհ առթիւ զայն ի գործ դնելու, ինչպէս որ պատահեցաւ մեզի Բար-Ամայի մէջ։ Այս լերանը եւ Արդ՚ամայի իշխանները որոնք առաջները այնչափ սերտ բարեկամութիւն ցոյց կուտային մեզի, մինչեւ անգամ պատրաստ էին իրենց անձը մեզի համար ի վտանգ դնելու, որոնց ամեն մէկուն իրեն աստիճանին համեմատ պարգեւատրեցինք Թէ՛ դրամ եւ Թէ հագնելիք տալով, անոնց փոխարէն փախչելու օրերնին անողորմաբար հետերնիս վարուեցան։ Այս Հայէշ ազգին քով բարեկամութիւնը ու Թշնամութիւնը մի եւ նոյն նշանակութիւնն ունի։ Բարեկամ են աղէկ ժամանակի մէջ. իսկ նեղութեան մէջ երեսը չնայելէն զատ՝ Թշնամաբար ալ հետը կը վարուին։ Անոնց ակնկալութիւն մը ունենալու բարեկամ չեն ձեւանար օտարականի մը հետ. եւ ակնկալածնին ստանալէն յետոյ բարեկամութիւնին

ալ կը վերջանայ, և ատենութեան կերպարանք մը ցոյց կուտան անոր, որպէս զի անոր սրտին մէջ վախ ձգեն:

Թէ որ աշխարհական է ատորականը, աշխարհականի քննցը յարմար ձեւեր կը գործածեն. իսկ թէ որ կարգաւոր է, ըստ այնմ կը վարուին հետը, որպէս զի թէ մէկին և թէ մէկալին հաճոյ ու սիրելի ընծայեցընեն զիրենք մինչեւ որ իրենց բաղձանացը հասնին: Իրենց խորին առաջնորդ Նշունա—Սելամի կենդանութեան օրով, Յակոբ (Նշունա—Լշագուդ) անունով պատպատաւան եպիսկոպոս մը կու գայ Հապէշստան. որուն քով կախսին մէկը մէկալը երթալ գալ. նախ անոր կրօնքը ընդունածի պէս զիրենք կը ցուցընեն, ամեն կերպ բարեկամութիւն ու ծառայութիւն ցոյց կուտան, կը գովեն զինքը և իւր կրօնքը, մինչեւ որ անկեղծութիւննին ձեռք ձգեն: Ասպածնին անկէ ընդունելէն յետոյ դարձեալ կը միանան Նշունա—Սելամին հետ, և իրենց մայրենի եկեղեցին կը դառնան, կըսկսին գովել իրենց առջի կրօնքը, ի Քրիստոս մի բնութիւն դաւանելը ուղղափառական է կ'ըսեն, մինչեւ անգամ երկու բնութիւն դաւանող խեղճ հռոմէական կարգաւորը առջի հալածողը և անոր գրքերն ու դրամը յափշտակողը իրենք կ'ըլլան. ինչպէս որ ըրին ալ յիշեալ Նշունա Լշագուդը գիշերանց գողի նման երկրէն հալածելով մերկ ու խայտառակ անձամբ: Նոյնպէս ըրին գրեթէ մեզի ալ վերոյիշեալ ամպանիրոն գող իշխանները. նոր գացած ժամանակնիս ամենայն ջերմեռանդութեամբ և իբրեւ Քրիստոսի ճշմարիտ աշակերտ՝ սէր, պատիւ ու երկրպագութիւն կուտային մեզի(1), և իրենց անկեղծութենէն աւելի ալ ստացան մեզմէ, բայց իրենց չարութենէն ետ չկեցան: Իրենց քով ամենեւին ստորական կարգաւորը կարգաւորի և ոչ աշխարհականը աշխարհականի պատիւն ունի, թէ որ պատիւ բառը բուն նշանակութեամբ իմանալու ըլլանք: Իբրև Քրիստոս պաշտածնին իբրեւ սատանայ կը

(1) Երկրին իշխանը ինչ կերպով որ վարուեցաւ ըլլայ ստորականի մը հետ, բոլոր իր հպատակ ժողովուրդն ալ անոր կը հետեւին:

հալածեն. Առաքելոյն ըսածին պէս՝ իրենց Աստուածն իւրեանց որովայնն է ։

Եւրոպայէն Հապէշստան գնացող հարուստ օտարականները իրենց առատօրէն պարգեւաբաշխութեամբ անոնց արտաքին կեղծուպատիր հիւրասիրութիւնին տեսնելով՝ չեն կրցած իսկական բնաւորութիւնն իմանալ, և միամտաբար կոչած են զանոնք հիւրասէր և մարդասէր (1). ըստ որում Եւրոպացի ճանապարհորդաց և միսիոնարաց առատ պարգեւներն են առեր գործ տեսնողը քան թէ իրենք, և անոնցմով է որ տեղական ժողովուրդն իրենց գրաւելու կը յաջողին շատ անգամ։ Բայց նոյն յաջողութիւնն չեն գտած երբէք Հապէշստանի մէջ ալ, ուր իրենք խաբուած են քան թէ խաբած. անոնց արտաքին ձեւերը տեսնելով հիւրասէր կոչած են, և անոնք ալ իրենց դրամներն առնելով՝ անխելքի տեղ դրած են զիրենք։ Եւ եթէ գովելի յատկութիւն մը ունի այս ազգը, այն է իրենց խարդախ մարդասիրութեան և կեղծ հիւրասիրութեանը և առերեսս օտարականաց դէմ ցուցուցած համակրութեան մէջ իրենց բուն համոզումին չփոխելը. որով պահած են մինչեւ ցայսօր իրենց մայրենի հին եկեղեցւոյն անարատութիւնը, առանց մուտ գտնելու մէջերնին օտար վարդապետութիւններ և աղանդներ։ Իսկ ուրիշ մասամբ իրենց որ և իցէ անձի կամ ազգի մը յարելնին իրենց շահուն համար է. երբ շահը կը դադրի, իրենք ալ կը դառնան իրենց բուն էութեանը։ Վերջապէս Հապէշները մարդկեղէն կապիկներ են, պահելով իրենց բոլոր բնական յատկութիւնները։

(1) Տես Հ. Ստեփաննոսի Թարգմանած աշխարհագրութեան մէջ, հտ. Դ. երես 531։

## ԳԼՈՒԽ Գ.

### Ստախօսութիւնն .

ՍՏԱԽՕՍ մարդիկ թէպէտ և ամեն տեղ և ամեն ազգաց մէջ կը գտնուին, բայց ոչ ամեն պարագայից և ամեն դէպքերու և խօսակցութեանց մէջ կը ստեն։ Իսկ Հայաստանի մէջ այս մոլութիւնը ազգային յատկութիւն մը եղած է և վերջին ծայրը հասած։ Ուրիշ երկիրներ ստախօս մարդիկ յարգ չունին. ընդհակառակը այս երկրիս մէջ որքան աւելի ճարտար ու հնարագիւտ ըլլան ստախօսութեան մէջ, այնքան աւելի յարգ ու պատիւ կ'ունենան։ Մանաւանդ մեծամեծ մարդիկը ստախօսներուն յարգն աւելի ճանչնալով, քաջ ու ճարպիկ մարդոց կարգը կը դասեն, կը գովեն և կ'ուրախանան ստախօսութեան մէջ անոնց ցոյց տուած գերազանցութեան և հանճարեղութեն վրայ։ Ստողոց մարդու համար ամօթ ու պատկառանք չկայ, որովհետեւ ճշմարտախօս մը չկայ որ անկէ ամչնայ ու պատկառի։ Այնքան սովորական եղած է մէջերնին այս մոլութիւնը, որ մինչեւ անգամ՝ շիտակը խօսիլ ուզեն, չեն կրնար. բերաննին սուտը խօսելու սորված ըլլալով կը ստեն ընդդէմ իրենց կամաց։ Բերաննին միայն՝ ու ատեննին բերան դարձած է։ Մեծ ու պզտի, աշխարհական ու կարգաւոր, իշխան ու իշխանազուն, ամենքն ալ այս չար մոլութեան ծառայ եղած են, մանաւանդ կառավարութեան մէջ գտնուող մարդիկը, որոնց դեսպանական ճարտարութիւննին (տիփլօմասի) ստախօսութեան մէջ կը կայանայ։ Ամեն տեսակ խաբէութեան ծնունդ տուողն է ստախօսութիւնը. ամենէն վարպետ ստախօսը ամեն տեսակ խաբեբայութեանց մէջ ալ ճարտար կ'ըլլայ։ Եթէ Հայաստանի ազգը Եւրոպայի արդի քաղաքականութեան և դեսպանագիտութեան քիչ շատ ծանօթանային, կարծեմ որ ասոնց հետ ոչ ոք պիտի կարողանար մրցելու ելլել. Եւրոպացիք յայտնի պիտի

խոստովանեն իրենց սխալութիւնը բոլոր իրենց բանեցուցած հանճարովն ու նուրբ քաղաքագիտութեամբը։ Դժբաղդաբար ըսեմ՝ ամեն գիտութենէ զուրկ մնացած են։ Այնչափ սուր և կտրուկ միտք ունին և ներքին տեսութիւննին այնչափ զօրաւոր է, մինչև կրնանք ըսել թէ՝ գիտուն և իմաստուն ազգաց քով իրենց թանձր ագիտութեամբը ոչ թէ կոյր՝ այլ միականի են. եթէ գիտութիւն ձեռք բերելու ըլլան, բոլոր ազգերը կը գերազանցեն։ Բայց ափսոս որ իրենց ներքին տեսութիւննին՝ հեշտ ցանկութեան ու զեղխութեան երեսէն զգայարանաց ախորժութեամբ՝ այն ալ օրէ օր աւելի կը բթանայ և կը մթագնի քան թէ կը լուսաւորի։

## ԳԼՈՒԽ Դ.

### Գողութիւննին։

ԱՅՍ չար ու վնասակար մոլութիւնը Ջաւէշներու քով քաջութիւն համարուած և սովորական արհեստ դարձած է։ Ընդհանրապէս ամենքն ալ այս մոլութեան սիրով և փափաքանօք կը հետեւին. և եթէ չհետեւող ալ գտնուին, յանդուգն ու գործունեայ չըլլալնէն է։ Ըստ որում՝ գողութիւն ընելու համար քաջութիւն, հանճարեղութիւն և ճարպկութիւն կը պահանջէ, վասն որոյ յայտնի գողերը ժողովրդեան մէկ մասն են միայն, իսկ մնացեալը գողիկներ են։

Գողութեան մեղք ըլլալն իրենք ալ կը խոստովանին, բայց յաճախ և հին սովորութիւն ըլլալով իրենց ունակութիւն և երկրորդ բնութիւն եղած է. թէպէտ և կ'ուզեն հրաժարել անկէ և ետ կենալ, բայց ունակութիւնը չթողուր զիրենք։ Ոչ քրիստոնեայ կը նային և ոչ այլազգի, ոչ բարեկամ և ոչ թշնամի, ոչ եղբայր և ոչ օտար, ոչ իրերանց քահանայութեան պաշտօնէն,

և ալ ուրիշին քահանայութենէն կ'անկանձէն. այլ միայն իւր բաղդին յաջողելուն նայելով կը կողոպտեն թէ՛ ընքրիստոնեայն, թէ քահանայն և թէ եկեղեցին։ Օրէնքին իրենց խիղճն է. այն մարդուն որ մանկութենէ ունակութիւն եղած է գողութիւնը, հարկաւ անոր խիղճն ալ մեռած կ'ըլլայ, որով օրէնքն ալ անոր մտքին մէջ դրդութիւն չունի, և հետեւապէս մեղք ալ չկայ։

Աչքաբացի ու ճարպիկ գողեր աւելի Պեկամբրոր, Պելեաս, Լատտա և Գոլա-Մկրա ըսուած երկիրները կը գտնուին, ինչպէս որ կը զրուցուի։

## ԳԼՈՒԽ Ե.

### Մարդասպանութիւններ

ՏԵՂԻՈՑՆ և պարագային համեմատ օրինաւոր կը համարին մարդ սպաննելը։ Բայց զարմանալի չէ որ գողութիւն ընողը մարդասպան ալ ըլլայ, ըստ որում այս երկու մոլութիւնները աղընչական են իրարու։ Ուրիշ ազգաց քով մարդասպան մը իւր թշնամին կամ իրեն ատելին սպաննելէն ետքը, թերեւս իր վրէժխնդրութեան կամ ատելութեան հուրը մարի իր սրտին մէջ և սպանելոյն վրայ առջի դաժանութեամբը չնայի. իսկ Հալէչներու քով սպանութենէն ետքն ալ ոխը կը տեւէ, և անոր անզգայ մնացորդներուն վրայ ալ դեռ ևս թափել կ'ուզէ իւր վրէժխնդրութիւնը, վասն որոյ սպաննելէն ետքը՝ գազաններու դիմաց կը թողու անոր մարմինը առանց թաղելու։ Այսպէս կ'ընեն նաեւ Իշխանք պատերազմի մէջ ընկնող մարդոց մարմինները։

Խիստ շատ անգամ ըրած մարդասպանութիւնին՝ գողութիւնին չյայտնելու համար է. շատ անգամ ալ կնոջ կանանց համար կ'ընեն, եթէ երկու հոգի պատահելու ըլլան անոր քով, և կամ հանդամանութք վարձած

ըլլան զայն (1)։ Մարդասպան մը ձեռք ընկած ժամանակ բուն օրինաց երկրին կը դատուի, եթէ արեան տէրը փոխարէն դրամական տուգանք չուզէ ընդունելու (2)։ Թէ որ մահապարտը փախչելու ըլլայ և ձեռք չիյնայ, անոր տեղ՝ թէ որ զաւակ ունի՝ զաւակը, թէ չէ՝ մօտ արենակից և ազգականը կը բանտարկուի շղթայով, որպէս զի մահապարտին փախած տեղը յայտնէ և բերել տալու պարտաւորի. թէ որ չը կարենայ ձեռք ձգել տալ զայն, ինքն անոր տեղ կը դատապարտուի մահուան։ Ամէն տեղ որ և է յանցանքի մը տէրը եթէ փախչելու ըլլայ, անոր մօտ ազգականը յանցանքին համեմատ պատիժը կը կրէ. Ամբաստանող որ և է մէկը եթէ ապստամբ իշխանի մը կողմն անցնի, ամբաստանեալը թէ որ շղթայի դատապարտուած է՝ կ'արձակուի և ազատ թող կը տրուի, և ամբաստանողը չկրնար ետքէն իր դատը վարել, իրաւունքէ կը զրկուի։

---

## ԳԼՈՒԽ Զ.

*Շնութիւնին և ամուսնական օրինաց պղծումները.*

ՄԻՆՉԵՒ հոս ըսածներէս լաւ իմացուեցաւ Հապէշներուն քով բարոյականութեան պակասութիւնը. առաքինութենէ բոլորովին զուրկ և մոլութեանց գիրկընդխառն անձնատուր ըլլալնին։ Մոլութիւն մը հարկաւ ուրիշ մը իր ետեւէն կը քաշէ, և այն ալ մէկ ուրիշ մը, և ասանկով բոլոր մոլութիւնները ձեռք ձեռքի տուած կը համարին այն երկրին մէջ՝ ուր տեղ առաքինութիւնը տաճար մը չունի իրեն և ոչ երկրպագու մը։ Այսպէս ահա ընդհանրացած մոլութեանց կարգը կը

(1) Շատ անգամ այս տեսակ վէճերը թագաւորին առջեւը կը տեսնուին

(2) Սովորութիւն չունին գլխատելու անձը՝ թէ որ քրիստոնեայ է, նախ խոստովանեցնել, ի զեղջ բերել և հաղորդեցընել. այլ երբեմն անկրօն մէկէն կը գլխատեն։

համարի նաեւ շնութիւնը Հաբէշներուն մէջ, ուր օ-
րինօք ամուսնութիւնը նշանակութիւն մը չունի ։ Եթէ կ'ուզէ մէկը ջրհեղեղէն առաջ մարդկային ցեղի բարուց ապականեալ վիճակը երեւակայել իբր ի պատկերի, Թող երթայ Հաբէշից երկիրը, ուր կարծես թէ քրիստոնէութեան անունը ի նախատինս սուրբ Աւետարանին կը յիշուի ։

Շնութիւնն ու պոռնկութիւնը այնչափ ընդհանրացած է երկրին մէջ, որ ամօթ ու պատկառանք բառերը երբէք լսուած չեն հոն ։ Ոչ երիկ մարդոց և ոչ մանաւանդ կնիկ մարդոց երեսը համեստութե քող մնացած է, ինչպէս կենդանիք՝ նոյնպէս և մարդիկ, բաւական է որ առանձին ըլլան ։ Այս զեղծումներէն յառաջ եկած է Գաղղիական լսուած ախտը, որ օրէ օր երթալով կը ճարակի մէջերնին, սպառելով անոնց կենսական զօրութիւնը և մարդկութեան ազնիւ պատկերը․ որոնց՝ բաց ի զանազան վէրքերէ և ոտից ու ոլոքներուն վրայ հանած խոցերէն, շատերը սրտի ցաւեր ալ ունին ու չարաչար կը տանջուին․ այս ապականիչ ախտը աւելի զօրաց մէջ ճարակուած է ։ Այսու ամենայնիւ դարձեալ զգաստացած չեն և չեն տեսներ իրենց դիմաց այն վիհը ուր մարդկութիւնը պիտի կորսուի օր մը, ուր արդէն կորսուած են անոր գեղեցիկ տիպն եղող՝ ամօթն ու համեստութիւնը ։ Իրենց անհրաժարելի օրէնք եղած է չըլանալ և ոչ օր մը բնութեան պարտքը, և կանայք աւելի օրինապահ են այս մասին ։

Պատանի մը մինչեւ որ 25 կամ 30 տարուան չըլլայ, յայտնի կնկան մը տէր չըլլար․ ասոր օրինակ կուտան իբր թէ Ադամին երեսուն տարուան հասակին մէջ Եւան ճանչնալը, բայց անոնց դրախտին մէջ կուսութեան օրէնքն ալ պահելնին չեն յիշեր ։ Այս չափահաս տղաքը մինչեւ իրենց նշանակած ամուսնութեան տարիքը հասնելնին որքան շնութիւններ ըրած և որքան ծածուկ կիներ առած են․ և որ չարագոյն է, յայտնի կին մը առնալէն յետոյ ուրիշ որքան կիներ հետըզհետէ առած ու ձգած են ։ Ասոնց իբրեւ կին քովերնին

տուածներուն Թիւը իրենց դրամական կարողութիւնը կրնայ որոշել։ Անոնց մեծ մասը ինչուան մահերնին այս տեսակ անառակութեան մէջ կը յարատեւեն, եկեղեցական և քրիստոնէական օրինաց պարտաւորութիւնները բարձիթողի ընելով և իրենց հոգիները հոգեւոր մխիթարութիւններէ զրկելով։ Մէկ փոքր մասը միայն հասակնին լեցուելուն՝ կը զգաստանան և մոլութէ ձեռք քաշելով, յայտնի կին մը կ'որոշեն իրենց, կը սկսին եկեղեցի երթալ ու հաղորդուիլ, և հաղորդուողաց կարգը կ'անցնին։

Մեծ ամօթ է իրենց քով՝ Թէ չափահաս մարդիկ և Թէ տղայք, գիշերն առանձին ըլլալ. Իւրաքանչիւրը պէտք է իրեն հասակակից մը հետը ունենայ Թէ ծանօթ և Թէ անծանօթ։ Վասն որոյ իշխանք և մեծամեծ մարդիկ որքան գիւղ որ ունին, ուր շրջելու պարտաւոր են, այնքան ալ մէկ մէկ կամ աւելի կին ունին ամեն մէկ գիւղի մէջ։ Միջակ վիճակի մարդիկ տեղ մը երթալու որ ըլլան, անպատճառ կամ կնիկնին և կամ ուրիշ պատուհի կին մը հետերնին կը տանին ճամբուն պաշարը շալկած, այն է ալիւր և կծու համեմներու զանգուած մը կարմիր պղպեղով, որպէս զի իրենց հացն եփէ, կերակուր պատրաստէ, և գիշերն ալ իրեն ընկեր ըլլայ։ Քիչ մը աւելի ստորին վիճակի մարդիկ գացած տեղերնին ուր որ պիտի մնան, հասարակաց կանայք կան, որոնցմէ մէկը տարեկանով կը վարձէ եւ անոր տունը կ'ուտէ կը խմէ իբրեւ տանտէր, և փոխարէն տարուան արմտիքը կը հոգայ ինքը, և ձեռք մը երկար շապիկ և կամ երկու Թալէր կու տայ։ Աղքատ մարդիկ ալ գացած տուներնին յայտնի այր չունեցող կին մը քովերնին կ'առնեն տանտիրոջը գիտութեամբ, և այս իբր պատուոյ սովորութիւն եղած է։ Վերջապէս ուր որ ալ պատահելու ըլլան՝ օրէնք չէ մէջերնին գիշերը առանց ընկերի մնալ։

Մէկ մօրէ՝ այլ զանազան հօրէ եղած աղջիկները կրնան մէկ մարդու կին ըլլալ, Թէ և քահանայի աղջիկ ալ ըլլան։ Գիւղահամարութեան երեք խիստ մերձաւոր

ծխալերուն հազիւ խուլքերնին կը սատկի · քանի մը քայլ միանգամայն՝ ինչպէս ըսինք, մէկ մարդու կին ըլլալուն արգելքը ծխագահամարութեան մէջ կա՞յ թէ ոչ՝ չեն գիտեր ։

Ապօրինաւոր ամուսնութենէն ծնած տղաքը չափահաս ըլլալնուն՝ թէ որ իրենց ծնող հայրը մեծութեան կամ իշխանութեան հասած է, մայրերնուն երդումնովը և վկաներու հաստատութեամբը(1) անորմէ եղած ըլլալը վաւերացուելով՝ իբրեւ զաւակ կ'ընդունուին · ինչպէս Թէոդոսոս Թագաւորին ալ պատահած է անգամ մը, իւր զինուորութեան ժամանակ անծանօթ կնկան մը հետ ծանօթանալով, Թագաւորութեան հասնելուն՝ իրմէ եղած զաւակը վաւերացուելով ընդունել տուեր ։ Աղախիններն(2) ալ իբրեւ կին կը գործածուին, և անոնցմէ եղած տղաքը հարճորդի կամ անհարազատ համարուելով, միւս զաւկներուն կարգը չեն գրուիր · իսկ թէ որ ստոյգը քննելու ըլլանք, բոլորն ալ հարճորդի և պոռնկորդի են, որովհետեւ օրինաւոր ամուսնութիւն չունին ։

---

## ԳԼՈՒԽ Է.

Բարոյական ու բնական ուրիշ յատկութիւննին ու սովորութիւննին ։

1․ ՀԱԲԷՇՆԵՐԸ բնականապէս անզօր են մարմնով, երկչոտ, կասկածոտ և ծոյլ · և այս յատկութիւններին իրենց անժուժկալութեան եւ զեղխութեանը կրնանք տալ ։ Կանայք ընդհանրապէս կլիմային պահանջման համեմատ աւելի ջերմ են և տաքուտ ։ Բարոյականնին

(1) Կին մը պատահմամբ թէ որ մէկուն հետ ճանչուորուի, հետագայ օրը իւր դրացիներուն և հանդիպած մարդոց պատմելու օրէնք ունի, որպէս զի եթէ զաւակ մը ունենալու ըլլայ անկէ, իրեն վկայութիւն տան ։
(2) Գերի աղախինները քրիստոնէութեան գաւառներէն եղած ալ գերութենէ ազատ չեն ըլլար ։

այսպէս խանգարեալ ըլլալով՝ իրենց միտքն ալ անմշակ մնացած է, և գիտութեան հետեւելու փոյթ տարած չեն բնաւ։ Ուսումնական դասը կազմողները քանի մը վաշխառուներն և ունայնախնդիր աշխարհական գիտնականներ են և կարդացող դպիրներ, որոնց ուսմունքը կրօնական սպառ խնդիրներէ անդին չանցնիր։ Իրենց մտաւոր կարողութիւնն աւելի կը տեսնուի խարամանկութեան և խորագիտութեան մէջ, ինչպէս տեսանք վերը և պիտի տեսնենք ասկէ ետքն ալ։

2. Ընտանեկան խորհուրդներուն մէջ՝ ուր կը կայանայ իրենց շահը, խիստ գաղտնապահ են։ Իրարու ծածուկ մատնութիւններ յաճախ ընելուն համար վստահութիւնն ու հաւատարմութիւնը բոլորովին վերցուած է մէջերնէն. մինչեւ անգամ եղբայր եղբօր շատ պարագաներու մէջ չեն վստահիր մէկմէկու։ Զանազան սրտեր ունին իրարու հետ վարուելու ատեն։ Ազգի երկրի մարդկանց համար ինը սիրտ ունին կ'ըսեն։ Եթէ ատոնց խիստ սիրելի բարեկամներէն մէկը խորհուրդ մը յայտնելու համար զիրենք խիստ ստիպելու ըլլայ, հազիւ թէ հազարին մէկ և այն ալ հարեւանցի կերպով մը կը հաղորդեն։

Ինը սիրտ ունին ըսինք, մէկուն իրարու հետ կը հաղորդակցին, իսկ ութ սիրտն իրենց համար է. ըսել կ'ուզեն թէ, սրտերնին ինը խորշ ունի, որոնց մէկը ուրիշին կը բանան, իսկ միւսները՝ այսինքն միւս խորշերուն մէջ եղած խորհուրդները իրենց գործոյն նպաստաւոր պարագաներու մէջ կը գործածեն։ Թէ որ սրտերնուն բոլոր թաքուն խորհուրդները բարեկամ կարծած մարդոց հաղորդելու ըլլան, յետոյ զանոնք գործադրելը կամ անհնարին և կամ խիստ դժար կ'ըլլայ։ Այլ երբ առիթ և յարմար միջոց ունենան՝ գործքով միայն կը յայտնեն խորհուրդնին։

3. Իրարու առջեւ լուր երբեք չեն հաղորդեր. ամէն մարդ իրեն շահուն և կամացը համեմատ գիտումն ու կերպարանք կու տայ տարածուած լուրի մը, որով մարդոց սիրտը չհամոզուիր ու չհանգչիր, և առջեւ լուր

մը տալու ժամանակնին անգամ միշտ սուտ մը հետը կը խառնեն ։ Անոնք ալ իրենց չախորժած և չահուցը հակառակ լուրերը երբեք մոռցու չեն տար, և ուրիշէ մը զայն լսելնուն՝ չգիտցածի պէս կը ձեւանան և չլսելու կը զարնեն զայն, որպէս զի պատասխան տալու չստիպուին ։

4. Նեղութեանց և ձախորդութեանց մէջ խիստ համբերող ու տոկացող են. սրտերնուն մէջ եղած տրտմութիւնն անգամ երեսնէն յայտնի չեն ըներ. միայն անկէ ազատելու հնարքներուն վրայ առանձինն կը խորհին ։ Որ և իցէ նեղութենէ մը ազատելու հնարքն ու միջոցը գտնելնուն՝ առանց ժամ մը կորսնցնելու գործադրելու կը նային ։

5. Սակայն ըլլալնուն՝ սուտ երդում ալ կ՚ընեն յաճախ իրարու գլխու, Թագաւորին ու մեծամեծաց անուանն և անոնց գերդաստաններուն վրայ ։ Երդման տեսակ մ՚ ալ ունին գործով. Թէ որ մէկը ուրիշին վրայ ունեցած իւր սրտի կասկածն ու երկիւղը փարատել ու ապահով ըլլալ ուզէ, կ՚երդուընցընէ զանիկայ անոր բուլ մազը երեք անգամ ծծելով, որուն հետ կ՚ըլլայ իբր կաթընկեր եղբայր ։ Այս տեսակ երդումը ստոյգ և հաստատուն կը համարուի. բայց երբեմն այս ձեւ երդումն ալ ժխտող եղած է ։

6. Ճալէջները առանց բարեպաշտութեան ամենքն ալ մեծութիւն և իշխանութիւն սիրող են, և առանց աշխատանաց հաց մը ձեռք ձգելու կը խորհին, որ կ՚ըլլայ մեծութեան և պաշտօնի մը անցնելով. և այս բանիս համար թէ մատնութիւն և թէ ապանութիւն՝ ամէն բան ի գործ կը դնեն իրենց բաղձանաց ու նպատակին հասնելու ։

7. Մեծի մը քով գտնուող սպասաւորները իրենց տէրերուն հաճոյանալու համար ամէն կերպ ձեւեր, խոնարհութիւն, հնազանդութիւն և անոնց սիրտը դըրաւելու համար արտաքին ամէն ձեւերը կը բանեցնեն ։ Անոնց ամէն գաղտնիքներուն և բամբասելի գործքերուն ծածկապէս գիտողութիւններ կ՚ընեն առանց յայ-

տեղի ընելու և ամէն խորհուրդներուն կը տեղեկանան. և ժամանակ մը ծառայութեան մէջ իրենց պարտաւորութիւնները սրտով կատարելէն զկնի՝ եթէ իրենց ակնկալութեան համեմատ պաշտօն մը և իշխանութիւն մը ձեռք ձգելու ըլլան, կ'սկսին իրենց տէրը գովել և պատուել: Իսկ թէ որ յուսերնին պարապ ելլէ, կամ գաղտուկ անոր քովէն բան մը գողնալով կը փախչին, և կամ յայտնապէս անօրմէ փառաւոր պահանջմունք մը ընելով կը չարախօսեն ու դատի կը կանչեն: Եթէ անոր զօրութենէն վախնան և բնականապէս վախկոտ մարդիկ եղած ըլլան, առ երես թէպէտ և սիրով կը հրաժարին անոր քովէն, բայց յետոյ անունը անպատուելով մէկ ասկի կ'ընեն, և անոր գաղտնիքները և վատ գործերը հրատարակելով կը պախարակեն:

8. Ինչու մը վրայօք զրուցուած բամբասանքները թէ որ մեծամեծներու կողմէ տարածուած է, հասարակութիւնն ալ յայտնի բամբասելու կարող կ'ըլլայ. Ինչը յայտնի բամբասուած ժամանակը, որու բերնէ որ լսեց, թէ որ անոր վրայ դատ բանալու վստահութիւն ունի, տուգանքի կը հանդիպցնէ զանիկա և կը խայտառակէ: Իսկ թէ որ բամբասողը վկաներ բերելով վըրայ ելլելու ըլլայ, ալ անկէ ետքը հրապարակաւ կրնայ անոր վրայ եղած բամբասանքը զրուցել: Ասոր համար դժար է Հապէշից քով յայտնապէս մարդ բամբասել. և վնասուց կը հանդիպին թէ որ հաստատ վկայութիւններ չունենան. և երբեմն բամբասուողին կողմէն գործնական և բարոյական վնասներ ալ կ'ընդունին:

9. Հապէշք ուտելու խմելու մէջ ալ չափաւորութիւն չունին. թէ որ ձրի գտնեն՝ մինչև քթերնէն գալը կ'ուտեն կը խմեն: Նոյնպէս են նաև կենցաղավարութեան մէջ, նստելու ըլլան՝ ելլել չեն գիտեր թէ որ բերաննին բանան՝ գոցելը կը մոռնան. քնանալու ըլլան՝ արթննալ չեն ուզեր. այսպէս իմացիր նաև ճամբայ քալելու մէջ՝ որ խոնջենալ չեն գիտեր ընաւ- Օղաւոր ըմպելիքները շատ կը սիրեն. սաստիկ մոլի ... հարբեցող են. բայց հարբած ժամանակնին դուրս ել...

պտուղը ամօթ կը համարեն . և նոյն կէտին թէ որ մէկը տեսութեան գալու ըլլայ՝ ինքը չերեւար , տկար է կամ որդադեղ (քօսօ) խմած է ըսել տալով կը ճամբէ եկող բարեկամը :

---

## ԳԼՈՒԽ Ը.

### Ազգային զանազան սովորութիւնքն .

### Ա . Հիւրընկալութիւն .

Օտարական մը Ջաւէշու երկրին մէջ ինչ ընդունելութիւն գտնելը արդէն պատմեցինք : Ուրիշ կերպ ընդունելութիւն կը գտնէ օտարական մը կամ բնիկ տեղացի մը , թէ որ տէրութեան կամ երկրին իշխանին կողմէն գիւղ մը հիւր գնալու ըլլայ . գիւղացիք պարտաւոր են սիրով և մեծարանօք ընդունել զինքը . և քանի հոգի որ ըլլան՝ անոնց կրկնապատիկ թուովը հաց և կերակուր կը բերէ կարգը որուն որ է , գիւղին Ալաքային (1) ազդարարութեամբը : Երկու կողմէն ալ հացին և կերակրոյն համար՝ քիչ է շատ է , կամ հաւնելու չհաւնելու խօսքերը երկար բարակ ըլլալէն ետքը , հիւրը թէ որ զիջանի՝ կ'ընդունի բերածնին , ապա թէ ոչ՝ առանց բերանը բան մը դնելու ետ կը դարձընէ : Իսկ թէ որ առանց հրամանի տէրութեան կամ իշխանին հիւր երթայ տեղ մը , սովորութիւն չկայ անոր հաց ու կերակուր հանելու , այլ կը պարտաւորի այնպիսին ուտելուքը հետը տանելու ուր որ երթայ . եթէ հիւրը օտար ու անծանօթ ըլլայ , անոր և ոչ պառկելու տեղ կուտան , վախնալով որ չըլլայ թէ գող ըլլայ .

(1) Տես յերես 122 . ուր անդ Ալաքայ բառին ծանօթութիւնը տուինք . որ հոգեւոր գործոց տեսուչը կամ պաշտօնեայն կը նշանակէ .

անոր Թաղասը՝ առանց մաքրելու ու լուալու . կանխաւ բոլոր բաղմականներուն մէկ մէկ դանակ կը տրուի, որոնք ձեռքերնին բռնած կսպասեն . և գլխաւորէն լուկած ամենքն ալ մէկ մէկ մաս կտրելով անկէ, ձեռքերնին կը բռնեն, և դէպ ի բերաննին տանելով ու խածնելով դանակին օգնութեամբը պատառ պատառ կտրած կը ճաշակեն ախորժանօք, դանակին ծայրովն հոն գրուած պղպեղի համեմախառն զանգուածէն ալ առնելով :

Աղքատ մարդոց կերածը, նշանաւոր օրերը միս կամ հաւ է, հասարակ օրերը կաթ՝ մածուն և կամ ընդեղէններ, զոր աղալէն յետոյ քիչ մը արդար իւղով և շատ մը պղպեղ մէջը դնելով կ'եփեն և Թանձրաթան կը դարձնեն, որուն շըռօ կ'ըսեն : Իսկ տարին միջակի մարդոց և սպասաւորաց առ հասարակ կերածնին քանի մը ուրիշ տեսակ անհամ կերակուրներ են, այն ալ մեծ օրերը, իսկ հասարակ օրերը կերածնին կարմիր պղպեղով և կամ փոխ—այէ կամ կորեկէ շինուած լոկ հաց է :

Մեծամեծ մարդիկ ու տանուտեարք Թէ առանձին և Թէ իրենց սիրած բարեկամներու հետ սեղան նստելու որ ըլլան, յառաջ կին ունին որ իւր ձեռքովը անոնց կերակուրը կը կերցընէ, և առիկա մեծ պատիւ կը համարին իրենց :

Գետերու մէջ ձկներ կը գտնուին, բայց իրենց ծուլութեան պատճառաւ որսալու համար աշխատել չուզելնուն յարդ ալ չեն տար անոնց: Զոր ձուկը միայն երբեմն մեծ պահոց մէջ մեծ մարդոց ընծայ կը բերեն, որոնք գողի նման ծածուկ կ'ուտեն :

Թէ որ պատահի բաց տեղ մը կերակուր ուտելու, իրենց ենրամներուն մէջ պլլուելով և սպասաւորներուն կռնակը դէպ ի սեղանը դարձնել տալով ծածուկ կ'ուտեն, որ չստիպուին աղքատի մը բան տալու : Սեղանէն աւելցած հացը կամ կերակուրը ներքին սպասաւորները միայն ուտելու իրաւունք ունին, եԹէ տէրերնին ուզելու ըլլայ . և սովորութիւննին է կերակուր բերուած ժամանակ՝ տանուտէրը պատառ մը տալով անոնց,

կռնակնին դէպ ի սեղան դարձընել կուտայ, որ աչքեր-նին կերակուրին վրայ չը մնայ. իսկ միւս սպասաւորաց կերածը ուրիշ է, ինչպէս վերը գրեցինք։

---

## ԳԼՈՒԽ Թ.

Թագաւորաց և հասարակաց հագուստները։

ԳՈՒՆԱՒՈՐ կամ ճերմակ հագուստները, ինչպէս ներքին շապիկ, բաճկոն, կարճ ու երկար պարեգօտներ, Թագաւորաց պատուոյ հագուստներ ըլլալնուն, հասարակաց հրաման չկայ հագնելու. և ասիկայ հին օրէնք մի է իրենց մէջը։ Նոյնպէս է նաև հրացէնք գործածելը։ Այս գունաւոր ու անգոյն պատուոյ հագուստները, ինչպէս նաև զէնքերը, Թագաւորն ինքը կը շնորհէ պատուոյ արժանի անձանց. ամեն մէկուն աստիճանին համեմատ. և զանոնք Թէ որ պաշտօնի և աստիճանի մը կարգելու ըլլայ, Նշանը (մեծ Թմբուկը) զարնել տալով հասարակութեան կը յայտնէ։ Առաջին պաշտօնեաները և պատուաւոր ծերունիներու համար քիչ մը Թոյլտուութիւն եղած է տէրութենէ՝ ճերմակ շապիկ և պարեգօտ հագնելու։ Իշխանք ալ արտօնութիւն ունին իրենց սիրած սպասաւորներուն պատուոյ հագուստներ տալու։

Ժողովրդոց հագածը հասարակօրէն կարճ կամ երկար բամբակեայ կտաւէ ճերմակ վարտիք է, որ շատ անգամ առաւօտները տանը մէջ չեն հագնիր. Կնանին կը պլլուին կարմիր ճոլթով ճերմակ բամբակեայ կտաւէ Ենհրամ մը, որ Ճանօ կ'ըսուի հայէչերէն, և խիստ պատուոյն է, և 4—8 արծուէդրոշմ ըռեալ կ'արժէ. և կամ անոր ստորին տեսակ առանց կարմիր ճոլթերու Ենհրամ է, որ 2 ըռեալի կուտան. ճամբայ գացած ժամանակնին ալ մէջքերնին ճերմակ կտաւէ գօտի կը կապեն։ Կարողութիւն ունեցող մարդիկ իրենց աստիճանին համեմատ այս երեք տեսակ հագուստը կը հագնին. իսկ

տօթին և աղքատ մարդոց հագածն է կամ հնոտի մաշուած շորեղէններ և կամ եղան մորթի մը, որուն մէջ կը պլլուին գրեթէ կիսամերկ ։

Կանայք ընդհանրապէս Փէյլահներուն նման միայն փորանկեալ շապիկ մը կը հագնին աղտոտ ու պատըռտած, այն ալ Կիւրակէ և գործ չունեցած օրերնին․ իսկ աշխատած օրերնին կիսով չափ միայն եղան մորթիով կը ծածկուին ։ Հարուստ կանայք աւելի համեստութեամբ կը հագուին ներքէն, և ոտքերնին սրուծայր և կարմրաձեւ մաշկեներ կը կրեն ճամբայ գնացած ժամանակնին, իսկ ձի հեծնելու որ ըլլան, մաշկեները կը հանեն և ոտքերնուն երկու մատերը ասպանդակին կ'անցընեն, և ասիկայ բոլոր մարդոց սովորութիւնն է՝ թէ արանց և թէ կանանց ։ Արուեստաւոր ճամբաները սար ու ձոր ըլլալով և լեռնուն փշերով և թուփերով, վասն զի ժամանակ ըլլենք գիւղաւ աղանելու համար՝ այսպէս կ'անցընեն ասպանդակներն ոտքերնին, որոնք այս պատճառով նեղ ալ շինուած են ։

— Ժողովուրդը առհասարակ թէ մեծ և թէ պզտիկ, թէ հարուստ և թէ աղքատ գլխիբաց և բոկոտն են․ իսկ Թագաւորը երեւելի և տօն օրերը սաղաւարտի ձեւով թագ մը կը դնէ գլուխը առաւօտուն՝ երբ մեծամեծները այցելու կու գան իրեն, և երեք մարդ անոր գլխին վրայ կը բռնեն առանց հանգնելու․ իսկ սենեկին կամ վրանին տակ երբեմն միայն առանձին ժամանակ դնակ կրկրէ, և սովորաբար բաց կը կենայ ։ Հասարակ ժողովրդոց մէջ կան ոմանք որ ոռնացուկի պատճառաւորեն կը գործածեն, և ոմանք շատ ատեն խոտէ հիւսուած հովանոցներ, կամ ձերմակ և դունաւոր թաշկէններ կը կրեն գլխնուն վրայ ։

Ընծի մը ներկայանալու ժամանակնին էհրամին իրրև պատիւ ուրիշ սեւակ մը կը պլլուին․ դատաստանի ելլելու ժամանակ ալ դարձեալ ուրիշ կերպ կ'առնեն ։

# ԳԼՈՒԽ Ժ.

## Դատաստանին.

ՅԱՏԿԱՑԵԱԼ դատաստանատուններ և դատաւոր-
ներ չունին, այլ ուր որ պատահի և որու դիմաց որ
ըլլայ՝ դատերնին կը վարեն. և շատ անգամ ամենաչնչին
բաներ և էրիկ-կնկան դատեր են, որոնք Թագաւորին
սենեակներուն մէջ ալ կը տեսնուին խիստ շատ անգամ,
և զոր մենք բերաննիս անգամ առնելու կ'ամչենք.
Մինչև անգամ տղայ մը իրենց քովէն, այսինքն դատա-
ւոր ու վկայ կըկացուցանեն. եթէ վէճերնին լմըն-
ցաւ՝ լաւ, ապա թէ ոչ՝ ուրիշի մը առջև դարձեալ
կը տեսնեն, և այն տղայն իրեն լսածներուն և տե-
սածներուն վկայ կը կանչեն.

Դատ մը վարելու ժամանակ ամեն մարդ ազատ է,
ուզէ կընայ համարձակ ներկայ գտնուիլ հոն, և անհա-
մար բազմութիւն կը խառնի քովէ եղող անձին բոլոր-
տիքը. Երկու կողմէն ալ մօրիկ կ'ընեն, կըհարցափորձեն.
դատաւոր եղողը յետոյ բազմութեան տուած դատա-
ղութեանցը համեմատ վճիռ կուտայ.

Դատին ժամանակ, որ պարզ վիճաբանութիւն մըն
է, այնպէս կը բարկանան և կը զայրանան իրարու դէմ,
մինչև կարծես թէ իրարու արիւն պիտի խմեն և ի-
րարու գլուխ պատռեն, մէկ մ'ալ կը տեսնես որ կը
հանդարտին ու խնդալու ձայներ կը հանեն. Դատի
ժամանակ իրարու դէմ գէշ խօսիլ հայհոյել ու զար-
նել չունին. Երբեմն երկու կողմն ալ եթէ զօրաւոր
ըլլայ, մէկէն զէնքի կը վազեն և զէնքով կ'ուզեն դա-
տերնին կտրել իբրև նշան քաջութեան, և կանանց
նման իրարու հետ անարգական խօսքերով կռուիլը վա-
տութիւն կը համարին. Այս տեսակ դատերը, որ սովո-
րաբար գիւղերու մէջ կ'ըլլան, ծախք մը չունին. Բայց
երբեմն դատին հանգամանաց համեմատ կը հարկաւորի
տուրք տալ Թագաւորին, Նաւաջնորդ Խփտի եպիսկոպո-

սին և Չէյլին [1], և կամ մեծ իշխաններուն, որոնց երկրին մէջ կը պատահի դատը ։

Թէ որ կողմ չըլլան երկու վիճաբանող կողմերը իրաւախոհ ընել, և կամ իրենց կարողութենէ վեր դատ մը ըլլայ, որուն չկարենան վճիռ տալ, հարկ կ'ըլլայ մեծ իշխանին կամ Թագաւորին առջեւը հանել դատը, և այն ժամանակ քաղաքական կերպարանք մը կ'առնէ ։ Թէ ամբաստանողը և թէ ամբաստանեալը մէկ մէկ թեւերնին [1] գլխուղակէտին ձեռօքը կապուելով այնպէս կը ներկայանան բարձրագոյն առջեւը. հոս յանցաւորին և կամ դատը կորսնցընողին խիստ սուղ կը նստի ծախուց կողմանէ. Եթէ վերը ըսածնուս պէս մասնաւոր ժողովներու մէջ իրենց դատը տեսնուած ժամանակ պանծա ընտրեցին, անոնք ալ հետերնին կ'երթան ըսածնին վկայելու ։

Զիրար յանցաւոր ձգելու և իրարու խօսքը սուտելու և կամ յանցանքին տէրը շուտով յայտնելու համար պայմանաւոր և թէական ձեւ մը կը բանեցընեն՝ որ երդման զօրութիւն ունի. և իրենց լեզուով Պօկօ կը կոչուի. Այս է եղանակը ։ Ամբաստանողը ուրիշի հագուստին ծայրը կապ մը կ'ընէ տուգանքի մը անուն տալով, այսինքն կամ ոսկի, կամ ջորի, կով և կամ ապագրամի, դատաստանին թեթեւութեան կամ ծանրութեան համեմատ. թէ որ ամբաստանեալն իր անմեղութեանը կամ դատը վաստըկելուն վրայ վստահելու ըլլայ, իսկոյն հանգոյցը կը քակէ և վկաներ մէջ բերելով յանցանքի տէր ըլլալը կը հաստատէ. հանգոյցը կապողը կը դատապարտուի ու պայմանեալ տուգանքը դատաւորին հատուցանելէն զատ, դարձեալ դատաստա-

(1) Չէյլ բառը՝ ծայրագոյն վարդապետն է. որ Հապէշ ազգէն կ'ըլլայ, և Խիստ եպիսկոպոս աստիճանովին երկրորդը կը սեպուի ասոնց ։

(2) Ցանցանքը թեթեւ որ ըլլայ՝ շուանով կը կապուին, իսկ թէ որ ծանր՝ շղթայով. որպէս զի չփախչին ճամբան ։ Շատ մարդոց քով այս բանիս համար փոքր շղթաներ պատրաստ կը գտնուին, որպէս զի եթէ պատահի իրենց դատի մը համար շղթայուիլ, անով կապել կուտան, որ յանցաւոր երեւնուն՝ շղթային համար ալ օրական տուրք չտան, և դատաստանին ծախքը չծանրանայ ։

նին ծախսը շուտով պիտի վճարէ։ Եթէ ամբաստանեալը չկրնայ իր դատին վստահելով հանգոյցը քակել, պայմաննեալ տուգանքները ինքը կը պարտաւորի վճարել. եթէ նոյն օրը չկրնայ վճարել, թեւին շղթայ մի կ՚անցընուի կառավարութեան կողմէն, և անոր մէկ ծայրն ալ պահապան զինուորի մը մէկուն թեւին անցընելով դուրս կը տանի որ ստակը ճարէ. քանի օր որ շղթան թեւը մնայ, այնքան աւուր շղթային տուրքն ալ պիտի վճարէ։

Իսկ թէ որ վկաներ չգտնուելուն՝ դատը դժուարով չանցնուի, այն ժամանակ ամբաստանեալին երդում ընել հարկ կ՚ըլլայ Աստուծոյ անուանը վրայ և երդմամբ կը վերջանայ։ Երդում տալէն առաջ դարձեալ՝ եթէ ամբաստանողը վկայ գտնէ, անոնց վկայութեամբ կրնայ նորէն դատը վաստըկիլ, և այն ատեն երդում ընողին հատուցանելու տուրքերը կ՚աւելնայ՝ Աստուծոյ անուանը սուտ երդուընելուն համար։

Դատերու մէջ վարժուած շատ ճարպիկ մարդիկներ կը գտնուին, որոնք փաստաբանի տեղ կ՚անցնին, ասոնց բոլոր գիտութիւնն ուրիշ բան չէ, եթէ ոչ զրպարտութեանց մէջ վարպետ ըլլալնին, տեղովը անմիջապէս սուտ մը հնարելնին, որով կրնան անիրաւ դատերը վաստըկելու։ Թէպէտ շատ անգամ դատաստանին ներկայ եղողները կըզգան անոր ըրած զրպարտութիւնները և խարդախ խօսքերը, բայց չեն կրնար դատի տակ ձգելով յանցաւոր ընել զինքը։ Ու շատ անգամ եթէ երկբայութեան մէջ ըլլայ խնդիրը, քննութեան տակ կը ձգեն և դատը կ՚երկնցընեն. խիստ շատ անգամ կաշառքն ալ շատ գործքեր կը տեսնէ ընդդէմ իրաւանց։

# ԳԼՈՒԽ ԺԱ.

Որդախտութիւնին և գործածած դեղերնին։

ԲՈԼՈՐ Հապէշու երկրին մէջ, բաց իջերմերէ և մանաւանդ դաղղիական ախտէն, որոնց դէմ բժշկարար դեղերը չեն գիտեր, նշանաւոր է որդի հիւանդութիւնը, որ բոլոր երկրին մէջ տարածուած բնական ախտ մի է, որուն՝ և առանց բացառութեան ամեն մարդիկ ենթակայ են, ինչպէս միջին Հայաստանի շատ երկիրները, Համիթ, Արապկիր, Հալէպ և այլն, խուրմա խուրաս ըսուած վէրքին ենթակայ են։

Այս ախտը որդերէ յառաջ կուգայ, որոնք մարդոց փորին մէջ կը գոյանան, ամեն երկու ամսուն անգամ մը, և նշանները ասոնք են. ծնգաց թուլութիւն, աչքի նուաղիլ սեւնալ և գլխու բարակ ցաւ։ Հապէշք ասոր դեղը գտած են, որոնք նշանները զգալնուն պէս կ'առնեն կը խմեն. բայց զօրութիւնը մինչեւ երկու ամիս կը տեւէ և կարող չէ արմատապէս բժշկել ախտացեալը. թէ որ մարդ զանցառութիւն ընէ դեղը առնելու, որդերը այն աստիճան կը շատնան, մինչեւ կըսկսին ինքնին թափիլ ներքեւէն և բերնէն դուրս, և գուցէ մինչեւ մահուան ալ պատճառ կ'ըլլան։

Դեղերնին քօսօ ըսած ծաղիկն է, դեղին գունով, որուն մէջի բարակ ձիւղերը կը զատեն կ'ընտրեն փնամէջի նման. երկու ափի չափ կը չորցնեն և կը փոշիացնեն, և պաղ ջրի մէջ խառնելով՝ առաւօտ կանուխ կը խմեն. ծանր հոտ մը ունի ու թանձր ըլլալուն խմելը քիչ մը դժուար է և զզուանք կը բերէ։ Ջուրը եռացած ժամանակ քօսօն մէջը ձգուի և յետոյ պարզելով խմուի, անշուշտ աւելի դիւրին կ'ըլլայ խմելը, բայց Հապէշք աղէկ չեն համարեր, գուցէ փորձած չըլլալնուն։ Այս մաքրողական դեղը առանց մաղձի դպչելու՝ երկու երեք անգամ կը լուծէ և անով աւելորդ որդերը որ կծիկ մը եղած կ'ըլլայ, դուրս կը թափէ, բայց անոնց սերմը կամ բոյնը ներսը մնալով՝ երկու ամսէն նորէն կըսկսին աճել։

Դեղը լուծելէն յետոյ մարդոյն ախորժակը կը բացուի, և կորեկօղի ալ խմելով թեթեւութիւն մը կըզգայ. ե-թէ լուծմունքը շարունակելու ըլլայ, հաց ու կերակուր ուտելով մէկէն կը դադրի։

Ուրիշ տեսակ ծաղիկ մ'ալ կայ չէնկըլէյ ըսուած, որ Լաստայի երկիրը կը գտնուի յաճախ, և ասոր զօրու-թիւնը վեց ամիս կը տեւէ՝ կ'ըսեն, թէպէտ ձեռքեր-նիս անցաւ նոյն ծաղիկէն, բայց չփորձեցինք։

Եւրոպացիք, որոնցմէ առնելով կը գրէ նաև Հ. Ստեփաննոս Ագոնց իր աշխարհագրութեան գրքին մէջ (Հտ. Գ. Երես 529), այս ախտին պատճառ կը համարին հում միս ուտելնին։ Սակայն լոկ ենթադրութիւն մի է և ոչ ստուգութիւն. ինչպէս փորձը հաստատեց մեզ։ Պատմութենէ արդէն խմացած ըլլալով Եւրոպացւոց այն կարծիքը, Հապէշու հողը մտնելնուս օրէն սկսինք դրինք մեզի զգուշանալ հում միս ուտելէ, որու սովո-րած ալ չէինք, ինչպէս յայտնի է. այս զգուշութիւնը մինչև այն երկրէն բաժնուած օրերնիս պահեցինք, այ-սու ամենայնիւ այդ զզուելի ախտակրութենէն չկրցինք ազատ մնալ։ Տարի մը ճիշդ մնալնէս յետոյ ախտին նշ-շանները երևան ելան, անմիջապէս քօսօն խմեցինք, և յետ այնուհետև երկու ամիսն անգամ մը սկսանք գործա-ծել։ Այսչափ զգուշութենէ յետոյ երբ դարձեալ են-թակայ եղանք որդ ախտին, փորձը մեզի սորվեցուց պատճառ հում միսը չըլլալը, այլ ամենայն հաւանու-թեամբ երկրին օդէն ու ջրէն յառաջ եկած բնական ախտ մըն է։ Ըստ որում եթէ հում միս ուտելէն պատ-ճառուած ըլլար, հարկ էր որ տղաք ալ ունենային, որոնք մինչև տասնամեայ հասակը մտնելնին ազատ են նոյն ախտէն. նմանապէս և ծերունիք իրենց ծերութեան հասակին մէջ չեն ունենար, թէպէտ և հում միսէն չեն խորշիր։ Դարձեալ, եթէ Հապէշք իրենց երկրէն հեռանալով Սիրիոյ կամ Պաղեստինու օդը ծծելու ըլ-լան, թէ և հում միս գործածելու ևս ըլլան, որդէ գոյացութենէ ազատ կը մնան։ Այս ախտը ընդհանուր Եթովպիոյ մէջ առհասարակ տարածուած է, և Կարմիր

ծովու մօտակայ երկիրները միայն չպիտի ըլլայ, բայց ո-
րում չիմացանք բնաւ Մուտոլա եկած ժամանակնիս։

---

## ԳԼՈՒԽ ԺԲ.

Գործածած օձանին.

Ընտօր անուն տեսակ մը բարձր ծառի սերմ ունին, որ բամբակեղէն ու բրդեղէն կտաւները մեր երկրի օճառներէն աւելի կը մաքրէ, բայց կերպասեղէն և ապրշումէ կտաւները չեն մաքրուիր։ Այս հունտէն որչափ որ պէտք ըլլայ՝ կը չորցընեն կը փոշիացընեն և ջրով խառնելով կաւ կ՚ընեն, յետոյ եղան մորթին գետակզերքը մէկ կողմ փռելով, աղտոտ լաթերը անոր մէջ նախ կը թրջեն, ու ետքը կաւ եղած ընտօրը կը փռըռեն վրան և չորս կողմէն ոտքով կոխկրտելով և երեք անգամ ջուրը և ընտօրը նորոգելով կ՚ըլլան ձիւնի նման մաքուր ճերմակ։

Լուացքը սովորաբար էրիկ մարդիկ կ՚ընեն. կանանց համար ամօթ կը համարուի, և պատճառն իրենց օրական աշխատութենէ ետ չմնալն է. վասն զի կանանց յանձնուած է բոլոր տան ծառայութիւնը, փայտ և ջուր կրել, հացի համար ալիւրն աղալ, թրել(1) եփել և տօնավաճառ երթալ։

(1) Առհասարակ կերած հացերնին կորեկի և տեսակ մը դէֆ ըսուած հունտի ալիւրն է. որ պաղ ջրով կամ աղեբը և կամ կրակի մօտ դնելով մինչև խինկուն կը մնայ կը խմորի զլուխ հատ մը բաբախելով. յետոյ հողէ տափարակ տաքցած տաշտի մէջ չափով կը լեցընեն խիւսի նման և խիտ կը ծածկեն, որ եփելով երեսը կը ծակտի, ու վար կ՚առնուն, և կը դառնայ էսոր Եւրոպայի տեսակ հաց մը, բայց համը ու ճաշակը թթու ու ծանրահոտ է.

## ԳԼՈՒԽ ԺԳ.

Բարեւ տալու եղանակնին.

Օրուան հինգ ժամանակին համեմատ, այսինքն առաւօտուն, ճաշու, կէսաւուր, նախընթրեաց և երեկոյի, հինգ տեսակ ալ զիրար բարեւելու սովորութիւն ունին։ Բարեւելու ժամանակ մի և նոյն խօսքը զանազան կերպ բառերով կը կրկնեն և իրարու ողջութիւնը երկարօրէն կը հարցընեն։ Մանաւանդ երկու բարեկամ կամ ծանօթ մարդիկ իրարու հանդիպելնուն՝ նախ բերան բերնի տուած կը ծծեն ու կը պագնուին, ետքը իրարու՝ և իրենց ընտանեաց ողջութիւնը կը հարցընեն, նմանապէս անասնոց վարուցաններուն ինչպէս ըլլալը, իրարու երկրին մէջ ինչ պատահելը, լսածնին, կերածնին խմածնին, առած տուածնին և այլն, զատ զատ մէկմէկու կը հարցընեն և կը տեղեկանան։

Երկու ճամբորդ իրարու պատահած ատեն բարեւելէն և իրարու ողջութիւնը հարցընելէն զկնի, ուր երթալնին, ինչու երթալնին, որ երկրէն ըլլալնին իրարու տեղեկացընելու պարտաւոր են։ Խիստ մեծ ամօթ է առանց զիրար բարեւելու և ողջութիւն հարցընելու անցնիլ երթալը, որ յայտնի թշնամութեան և ատելութեան նշան կը համարուի իրենց մէջ։

Հասակաւ և աստիճանաւ փոքր եղողը իրեն ծանօթ մեծի մը պատահելուն, կամ անոր առջեւ ներկայանալուն, նախ անոր ծունկը կամ ոտքը կը պագնէ, և մեծը անոր ողջութիւնը հարցընելուն՝ փոխանակ բերնով պատասխան տալու գետին կը խոնարհի։ Նոյնպէս կ'ընէ նաև թագաւորին ներկայացողը։

# ԳԼՈՒԽ ԺԴ.

Մուրացկանները և անոնց ձեւերը։

ԻՆՉՊԷՍ որ հասարակօրէն ալ կը կարծուի, Հապէշու երկրին մէջ աղքատ մարդիկ խիստ շատ են, որոնք մուրացկանութեամբ իրենց ապրուստը կը ճարեն, և մուրալը իրենց արհեստ ըրած են։ Քանի մը տեսակները կան ասոնց։

Ա. Փողահարները, որոնք երգահան բանաստեղծներ (չէօհարէ) կը համարուին։ Ասոնք յաճախ տօնական օրերը կը շրջին երեւելի մարդոց դռները և հագւոց-հաց տուներուն առջեւը, ուր անդ քնար զարնելով գովասանքներ կ'երգեն տանտիրոջ վրայ, և մինչեւ որ ընդունած պարգեւնին կամ նուէրքը իրենց սրտին հաճութեանը համեմատ չըլլայ, չեն մեկնիր անկէ։ Շատ անգամ տանտէրը իր անբաւականութիւնը խոստովանելով կ'աղաչէ որ իր տուածին գոհ ըլլան, և հազիւ թէ ճամբայ կը դնէ զանոնք. վասն զի թէ որ անոնց տհաճութեանը ակամբ չդնէ ու գոհ չընէ, դռնէն չեն հեռանար. և քանի որ ուշանան հոն, իրենց ընդունելու պարգեւին չափն ալ սակաւաբար կ'աւելնայ. և կրակին քնար զարնելով երգելով մեծահամբաւել տանտէրը և նախատել կերպ կերպ ձեւերով, որոնցմով կրտախապոսի կանոնաց ակամայ հաճեցընել զիրենք։ Այս տեսակ երգածու մուրացկանները կանանց կարգը համարուելով՝ ազատ են իրենց արհեստին մէջ անարգանաց և պարսաւանաց երդել խօսիլ որու որ ուզեն, որոնց վրէժխնդրութիւն չըլլալէն զատ՝ կը խոնարհին եւս կամքերնին կատարելու։

Բ. Նուանց քնարի երգեցողները, որոնք հաւախօսի տանէն հետեւինին երկերկու կին առած կը շրջին հարուստներուն դռները, սուրբ Գրքէն քանի մը տուն խօսք՝ ոտանաւոր ձեւացընելով կը գովեն տան տէրերը անուննին տալով։ Կանայք ալ ամէն մէկ երգի վերջաւորութեան բարձր եղանակաւ մի և նոյն խօսք մը կը կրկ-

նեն ։ Նմանք ալ առաջիններուն նման շուտով և քիչ բանով գոհ չեն ըլլար, ուստի տան տէրը կը պարտաւորի հաճեցընել զանոնք և առանց վշտացընելու ճամբել։

Գ. Երրորդ տեսակ մուրացկաններն են, այն պատուաւոր աղքատները, որոնք յայտնի մուրալու ամչնալով, մեծամեծներու և հարուստ մարդոց պէրէքէթ (օրհնութիւն) անունով ընծայ մը կը խնդրեն որ և իցէ նիւթէ՝ կամ հագնելու և կամ վայելելու համար, և այն ալ կը պարտաւորի փոխարէնը կրկնապատիկ արժողութեամբ բան մը հատուցանելու ։

Դ. Չորրորդ տեսակն են յայտնի մուրացկանները, որոնք ամեն աւուր տօնեցեալ սուրբին, կամ իրենց երեւելի սուրբերուն և կամ տէրունական կիրակիներուն անուններովը տընէ տուն շրջելով կը մուրան, և վերջը նոյն սուրբերը ձեւի ազգական ըլլան ըսելով՝ ողորմութիւն կը պահանջեն ։ Մինչեւ որ ներսէն ձայն չտան, կամ Աստուած տայ չըսեն՝ չեն հեռանար անկէց. տուած ողորմութիւննին ալ պատառ մը սեւ հաց կամ ափ մը սիսեռ է ։

---

## ԳԼՈՒԽ ԺԵ.

Խառն տեղեկութիւններ. — անոնց զանազան տեսակ սովորութեանց վրայ.

Ա. Թէ՛ այր և թէ կանայք իրենց թնճուկ մազերնին կերպ կերպ կը հիւսեն, և յետոյ կարագ իւղով ալ կ'օծեն, որ մեծ յարգ ունի քալերնին իւղով մազերնին յարդարելը, և այս սովորութեան դէմ խօսողին ալ սուրբ Գրոց մէջէն վկայութիւն կը բերեն ։ Նմանէս օծուելէն յետոյ արեւին մէջ պտըտելով կըսկսի իւղը հալիլ, և գլուխներնէն վար վազել ու կաթել. զոր վրանուն հագած էհրամով կը սրբեն. անկէց է որ վրանին գլուխնին կը հոտի, և միշտ աղտոտ են ։

Մանր տղայոց գլխու մազերն ալ ուրիշ կերպ կ'ածիլեն, որ իբրեւ զագ մը կ'ըլլայ: Չինի մարդոց շատերուն ալ գլուխը բոլորովին ածիլուած է. անոնք Պօղոս առաքելոյն պատուէրին կը հետեւին, և կը պարսաւեն այն քրիստոնեայ էրիկ մարդիկը որ գլխընուն վրայ մազ կը թողուն, և զանոնք իբր օրինազանց կը համարին:

Բ. Իրենց մարմնոյն խիստ աղտոտութենէ և օծուած իւղին ծանրահոտութենէն ոջիլներ կը գոյանան բնականապէս իրենց գլուխը կամ վրանին, և ամենեւին ամօթ չէ իրենց քով ոջլոտիլը. զոր բնական կը համարին մարդոց, ուստի ուր որ ալ պատահելու ըլլան՝ կը քթուին և առանց սպաննելու զանոնք ասդին անդին կը նետեն. Աղտեղութիւնը առաւելապէս կանանց վրայ կ'երեւի. ասոր համար է թերեւս անուշահոտութիւն շատ սիրելնին, այսինքն փօմադ և ուրիշ հոտաւոր հեղանիւթներու տեսակները. և որովհետեւ իրենց երկիրը չգտնուիր, օտարական մը թէ որ ընծայելու ըլլայ իրենց, մեծ պատիւ կը համարին:

Գ. Մէկուն քով այցելութեան երթալու որ ըլլան, առանց դրսէն ձայն տալու և ներսէն ալ մտնելու հաւանութիւնն առնելու՝ չեն համարձակիր դէպ ի ներս ոտք կոխել. խիստ մտերիմ բարեկամաց մէջ քիչ մը թոյլտուութիւն կայ: Այս քաղաքավարական սովորութիւնը շատ հաւանական է որ փորձութիւններէն մնացած ըլլայ մէջերնին: Յանկարծ առանց լուր տալու ներս մտնող բարեկամ մը տան տիրոջ հաց ուտելը տեսնելուն պէս ետ կը դառնայ կ'երթայ, կամ դուրսը կսպասէ:

Դ. Իրարու հետ յաճախ տեսութիւն ընելու սովորութիւն չունին, որուն պատճառն է մեկմէկու վրայ վստահութիւն չունենալնին. ըստ որում տեսութեան մէջ երբեմն իրարու դէմ զրպարտութիւններ կը պատահին, դատեր կը բացուին, որով վնասներու ալ կը հանդիպին. վասն զի, ինչպէս շատ անգամ ըսած եմ, անխարդախ բարեկամութեան և անկեղծ սիրոյ ճաշակն առած չեն, և մտերիմ կապակցութիւն չկայ մէջերնին:

Ե. Ծերոց յարգը և տղայոց պատկառանքը իրենց անկեղծ վարմունքնին և համարձակ խօսքը քով վատ խօսակցութեան պատճառաւ մերժուած են։ Նանկ ալ կանայք և աղջկունք անտարբեր որ և իցէ թէ ծանօթ և թէ անծանօթ մարդոց և տղայոց հետ տեսնուելով՝ իրենց բնական պատկառանքը և համեստութեան քողը պատռած է։

Զ. Առաւօտները երեսու ձեռք լուալու սովորութիւն չունին, զոր Մահմետականաց սովորութիւն համարելով լուացուողն ալ կը ծաղրեն՝ Մահմետական է ըսելով։ Բայց կերակուրի նստած ժամանակ սովորութիւն ունին ձեռքերնին լուալու. և ճամբէ եկած տանիններն ալ տաք ջրով ոտքերնին կը լուան.

Է. Մեծ ու պզտիկ, թէ էրիկ և թէ կնիկ մարդիկ քթախոտ[1] կը քաշեն, և տարիքնին առած մարդիկ ալ ամանք փայտէ շինուած նարկիլէ կը գործածեն։ Ծխախոտ (թիւթիւն) քաշելու բնաւ սովորութիւն չունին և անծանօթ է իրենց, և քաշողն ալ եթէ օտարականաց մէջ պատահելու ըլլայ՝ կը ծաղրեն։

Ը. Հարուստ և բաւականութիւն ունեցող մարդիկ քովերնին սպասաւորներ կը պահեն, որոնց ամէն մէկը՝ մէկ մէկ ծառայութեան յատկացած են և ըստ այնմ իրենց տարեկան վարձքը որոշուած. թէ որ հարկ ըլլայ իրենց ծառայութենէ դուրս թեթև բան մ'ալ հրամայել՝ չեն կատարեր։ Մեծ սպասաւորի տարեկան վարձքն է չորսէն մինչև ութ ռեալ. տղայոցը մէկէն մինչև չորս։ Սպասուհեացը երեք կամ չորս ռեալ, որոնք իրենց բեռնակիր կը ծառայեն. Սպասաւորաց մէջ ներքինին ու արտաքինը կայ. աղջիկները աւելի պատուով են։ Զինուորաց քով ծառայող թէ այր և թէ կին սպասաւորաց ընդունած վարձքը ուրիշ կերպ է. տարին հագուստ մը և հացը կուտան, և մինչև յետոյ իրենց

(1) Թիւթիւնը կամ Թէնպէքին փոշիացնելով և անոր երեք չափին մէկ չափը մոխիր խառնելով քթախոտ կը շինեն, որ խիստ զօրաւոր կ'ըլլայ. ու-տասնիկ կը քաշեն. շատ անգամ ափերնուն և մատուըներնուն մէջ պատրաստ կը պահեն քթախոտը և երբեմն իրարու կը հրամցնեն ատիկա.

բռած կողոպուտներէն ամէն մէկուն իւր ծառայութեան համեմատ բաժին կը հանեն ։ Կանայք աւելի շատ են քան էրիկ մարդիկ, որոնք յաճախ կռիւներու մէջ սպան֊նուելով՝ թիւերնին համեմատաբար նուազած է ։

Թ. Ամենամեծայ պատուաւորները երբ իրենց տիրոջը խուխը (պալլամը) գալու ըլլայ և հանել ուզէ, կը փու֊թան իսկոյն իրենց վրայի էհրամին ծայրը անոր բերնին կը մօտեցընեն որ անոր մէջը թքնէ, և այնպիսի կերպով մը կը փորուին՝ որ քովն եղող մարդիկ չը տեսնեն ։ Բացօ֊թեայ տեղ մը երբ տէրերնին միզելու ըլլայ, իրենց վրայի էհրամով անոր բոլորտիքը կը ծածկեն որ մարդ֊ չզգայ անոր միզելը ։ Բայց հասարակ մարդիկ ուր որ գտնուին՝ յայտնի կը միզեն առանց ամօթ համարելու, և բնութեան կարիքը կը կատարեն առջեւնին գտնու֊ող որ և իցէ սեռի և հասակի մարդոց հետ խօսակցե֊լով, և անցուդարձողաց հետ ալ բարեւելով և երկար բարակ իրարու ողջութիւնն հարցնելով ։ Այսպէս կ՚ընեն նաև իրենց անամօթ սովորութեան համեմատ կանայք և աղջիկունք ալ, որոնց վրայօք երկար գրելը համեստութեան դէմ կը համարիմ ։

Ժ. Քրիստոնեայք Մահմետականաց մէջէն կերա֊կուրներէն կը խորշին չեն ուտեր, նոյնպէս ալ Մահմե֊տականք ալ Քրիստոնէից եփածը չեն ուտեր. այս խտ֊րութեան պատճառ անասուն կենդանիները յանուն Քրիստոսի և կամ Մէհեմմետի մորթուիլն է, վասն որոյ և խտրութիւննին միայն մսեղէններու մասին է ։

ԺԱ. Հապէշք քաղաքական գործերու մէջ խիստ արթուն և հեռատես են, և յաճախ սուտերով կը վա֊րուին ։ Նաեւայոյ մէջ իրարու հաւատարմութիւն չու֊նին, մինչեւ անգամ դրամը ձեռքերնուն մէջ չտես֊նեն՝ ապահովութիւն չեն ըներ, ասոր համար Թերևս վաճառականութիւնը բնաւ ծաղկած չէ մէջերնին, քան որում անոր հոգին անձնական վարկն (քրէտի) է ։

ԺԲ. Բնակարաննին փայտէ ու եղեգէ վրանաձեւ շինուած խրճիթներ են, վրան խոտերով ծածկած ։ Անե֊ծերուն փոխանակ փայտի՝ բոլորտիքը քարով և անկիր

կաւով շինուած են, ըստ որում կիր չը գտնուիր այն երկիրները։ Քանի մը տուն ըսելու չափ բնակարաններ կը գտնուին, որոնք որոշեալ յարկերու բաժնուած են՝ Թէպէտեւ տձեւ, և անոնց բոլորտիքը կտուներ ձգուած։ Այս բաւած տուներու Կոնտէր և Ադուա քաղաքները կը գտնուին, և Էգիպտոսի տուներուն կը նըմանի ըսելով կը պարծին, Թէպէտեւ անոնց պատուհաներուն չափ ալ վայելչութիւն չունին։ Այն Փորթուգէզցւոց ժամանակէն մնացած քանի մը քարուկիր շէնքեր, որոնց վրայ իրենք կը զարմանան, և իբր հրաշալեաց ձեռօք շինուած կը համարին, մարդկային կարողութենէն վեր համարելով։ Տներուն մէջ նստարաններ ու ննջարաններ ունին չոր փայտէ և կաշիէ չուաններով մէջտեղերնին հիւսուած և գետնէն ոտքերով բարձրացուցած, ասոնց վրայ փռելով կովու մորթին՝ իբրեւ անկողին կը ծառայէ. բարձերնին կակուղ քար է, վերմակնին՝ վրանուն էհրամը, բոլորովին մօրէ մերկ կը ննջեն։

ԺԳ. Օրինաւոր ոչ քաղաք ունին (բաց ի քանի մը հատէն) և ոչ գիւղ։ Հինգ տասը բնակարան կամ խըրճիթ իրարու մօտ ըլլան՝ գիւղ կ'անուանեն. և այս տեսակ գիւղեր Թէ որ իրարմէ քիչ շատ բազմաթուութեամբ խումբ մը ձեւացընելու ըլլան՝ քաղաք կ'անուանեն. ինչպէս Կոնտէրը՝ որ երեւելի քաղաքնին է, մեծ մասամբ վաճառականութեան կեդրոն և Թագաւորանիստ ըլլալուն յորդ գտած է. բայց մեր երկրի ամենէն անարգ գիւղին ալ անկէց աւելի վայելչութիւն ունի քանի մը կողմէ։

ԺԴ. Բոլոր Հապէշ քրիստոնեայք ընդհանրապէս երեք տեսակ ծառայութեան մէջ կը գտնուին, կամ եկեղեցական են, կամ զինուոր և կամ երկրագործ. եկեղեցական պաշտօններու մէջ եղողները խիստ ծոյլ են և վերջին աստիճանի ագահ։



## ՀԱՊԷՇՆԵՐՈՒՆ ԿՐՕՆԱԿԱՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ

---

### ԳԼՈՒԽ Ա.

*Եկեղեցին.*

ԱՌԱՋԻՆ *մասին մէջ Հապէշից բարուց և սովորութեանց վրայ համառօտ նկարագրութիւն մը ընելէն յետոյ կը մնայ հոս անոնց կրօնական և եկեղեցական նիւթերուն, ծէսերուն, և պաշտամանց վրայ խօսիլ։*

*Նախ՝ իրենց եկեղեցւոյն նիւթական շինուածքին վրայ խօսինք, որուն շէնքը բոլորաձեւ է, և տարբեր ուրիշ քրիստոնեայ ազգաց եկեղեցեաց ձեւերէն. առանց շրջապատի են, որուն տեղ հիւսուածոյ սիւներ կամ միջոցները բաց թողուցած, ուսկից ժողովուրդները ներս կը մտնեն կը կանգնին։ Այս սիւներուն մէջ տեղն է կանգնած բուն խորանը քառակուսի ձեւով, որ երեք դուռ ունի՝ արեւմուտքէն, հիւսիսէն ու հարաւէն, իսկ արեւելեան կողմը պատուհան մը միայն. ասոր ալ մէջ տեղը կայ քառակուսի տախտակէ սեղանաձեւ շէնք մը, իբր Տապանակ ուխտին, ինչպէս կ'ըսեն իրենք. որուն վրայ կը դնեն Բաղօթը, որ մեր վէմ քարին տեղն է։ Ոչ տաճարին մէջ և ոչ ներսի կողմը, որ է իբր Սրբութիւն սրբոցը, չեն տեսնուիր ո՛չ պատկեր (1), ոչ*

(1) Քանի մը եկեղեցի միայն տեսանք, ուր Սրբութիւն սրբոցի արտաքին շրջապատին վրայ մէկ քանի այլանդակ պատկերներ կպցուած էին։

խաչ, ոչ աշտանակ և ոչ կանթեղ մը։ Ինչպէս յայտնի է, եկեղեցին հին տաճարին նման վրանի ձեւ ունի, սեղանը Տապանակ ուխտին, և վէմ քարը տասնաբանեայ օրինաց տախտակին. ասոր վրայ գրուած կ'ըլլայ եկեղեցւոյ անունը, և հոն կը դրուի պատարագ ընելու ժամանակ խորհրդաւոր հացը ափսէով։

Այս տախտակը եթէ գողցուելու ըլլայ, և կամ քրիստոնեայ զօրքերը եկեղեցին կողոպտելու ժամանակ տար ձեռք դպցնելու ըլլան, պղծուած կը համարի, և վրան պատարագելը կ'արգելուի. և այսպիսի դէպքերու մէջ իրենց եպիսկոպոսին կը տանին յիշեալ տախտակը, և չորս աղ տալով անոր՝ հեռուէն կը խաչակնքէ և կ'օրհնէ զայն և կը սրբուի։ Շատ եկեղեցիներու Թաբօտները Թէոդորոս Թագաւորի զօրքերէն յափշտակուած կամ պղծուած ըլլալով պատարագն ալ դադրած էր. և այսպիսի եկեղեցիներու յարգութիւնն ալ վերցած կ'ըլլայ, ինչպէս էր Կոնտէր քաղաքինը։

Բոլոր եկեղեցիներուն վրայի ծածկը ընդհանրապէս փայտ կամ եղէգ է և անոնց վրայ խոտ տարածած ու կերպով մը ամրցուցած։ Իսկ յատակները թէ ներսի խորանին և թէ դրսի ժողովրդոց կայնած սիւնամէջ տեղերուն բոլորն հող է և փուշով պատած։ Եկեղեցեաց շինութեան ժամանակ հիմնարկութեան օծում չունին և ոչ ընթերցմունքներ. ով որ ուզէ՝ առանց առաջնորդին գիտութեանը և վերակացութեանը կրնայ եկեղեցի շինել տալ։ Եկեղեցւոյ մը տուած պատիւնին քառակուսի Թաբօտ ըսուած տախտակին է. ուստի ուր որ ալ ըլլայ այս տախտակը, կրնայ հոն պատարագ մատուցուիլ. վրաններու տակ պատերազմական մեծ թըմբուկը սեղան ընելով և Թաբօտը վրան դնելով կը պատարագեն։ Մկրտութեան համար հաստատուն աւազան չունին, ուր որ ըլլայ մկրտութիւն կ'ընեն, և ջուրն ալ անխտիր հանդիպած տեղը կը թափեն. նոյնպէս պատարագիչ քահանային ձեռքերը լուացած ջուրը յատկացեալ տեղ չեն թափեր։

Եկեղեցւոյն մօտ և անոր արտաքին շրջապատին մէջ

ոլոշեալ երկու տուներ շինուած են, որոնց մէկը աւանդատունն է, ուր կը պահեն շինելու անօթներն ու հնամի զգեստները, և միւսին մէջ ՝Նշխար կը գործեն ։ Նոյն արտաքին շրջապատին մէջ են եկեղեցւոյն բոլորակը գերեզմաննոց է, և ունի դուռ մը . հոն կը բնակին աղքատ մարդիկ և պահապան են եկեղեցւոյն, և կը հրակեն գիշեր ցորեկ որ գողերը չկողոպտեն զայն ։

Այս հրէական ձեւով շինուած եկեղեցիները խիստ պատուով է Հապէշից քով և անուանի կը համարին ։ Իսկ հասարակ շինուածները, որոնց վրայ չէ մեր խօսքը, ընդհանրապէս փայտեայ ու եղէգնեայ են, ներսի կողմը մութ ու ծանրահոտ, սարդոստայններով ու փոշիով լցուած ու խալխըլած, որ աւելի փոշէտուն մ'է քան թէ եկեղեցի ։ Այս տեսակ եկեղեցիները հասարակօրէն ամայի բարձր լեռներու վրայ ըլլալով, և մէջի անօթեղէնները քրիստոնեայ գողերու աւար չըլլալու համար, եկեղեցպանները իրենց տանը մէջ կը պահեն զանոնք, թէպէտ և հոն ալ ապահով չեն ըլլար ։

Փորթուգէզներուն ժամանակէն մնացած քանի մը քարուկիր շէնքով հին եկեղեցիներ կը գտնուին, որոնց շինուածքին վրայ կը հիանան, և աշխարհի հրաշալիքները կը համարին ։

Եկեղեցւոյ շինութեան գլխաւոր աշխատողները Հրեայ ու Մահմետական են . քրիստոնեայք միայն հող ու քար կը կրեն ։

---

## ԳԼՈՒԽ Բ.

*Առաւօտեան ժամերգութիւնը, պատարագը, եղանակն ու ձեւերը ։*

ԱՌԱՒՕՏԵԱՆ ժամերգութիւնները յաճախ պատմական ընթերցմունքներ և եկեղեցական ճառեր են Յունաց պէս, և անոնց ընդմիջահատութեան մէջ եղանակաւոր երգեր ալ կ'ըսեն ։ Նամունքներուն շատը

բերան կը խօսին, որոնք լռու մեծի մասին սաղմոսերգութիւններ են։ Իրենց ամէն աւուր և տօն օրերու եղանակները շատ տարիներու պէտք ունին որ լաւ սորվին, բատ որում՝ դժուար են։ Վասն որոյ քիչ կը գտնուի մէջերնին լաւ գիտցողը, և մեծ եկեղեցեաց մէջ հազիւ թէ մէկ հոգի կը գտնուի և խիստ պատուով է մէջերնին։

Դպրապետը տօն օրերը ժամերգութեան առեն դպրաց մէջ տեղը կը կանգնի բոլորաձեւ շարուելով. և ամէն մէկերնին աջ ձեռքով ձայնատու գործիք մը և ձախ ձեռքով գաւազանաձեւ երկայն ցուպեր կը բռնեն, որոնք երևելի եկեղեցեաց մէջ յատկապէս կը գտնուին, որոնց տեղ իրենց ձեռքի փայտերն ալ կը գործածուին։ Ամենքն ալ այնպէս շարուած՝ դպրապետոյն ձեռաց շարժմունքներուն կը գիտեն և անոր պէս իրենք ալ ձեռուընուն ձայնատու գործիքները և ցուպերը վեր ու վար կը շարժեն, գլուխնին Հրէից նման կ'երերցնեն, կը ցատքռտեն, ոտքերնին կը խաղցնեն, և առեն առեն ծափ կը զարնեն ու կը կաքաւեն. միանգամայն և կ'երգեն մը բարձրէն մը ցածէն առանց մէկ ներդաշնակութեան։ Ամէնախաժարն ալ ահագին մեծ թմբուկը քովնոր վիզէն կախած և դպրաց մէջտեղը մէկ մը վեր մէկ մը վար երթալով գալով կը զարնէ և անոնց հետ կ'երգէ, մանաւանդ թէ կը ղօղանչէ(1)։ Այս սամունքներուն և խուրաքանչիւր իւր ըղեղէն յառաջ եկած եղանակաւոր երգերուն միջոց առ միջոց հանդիսատ տալով կը նստին և կը խօսակցին՝ եթէ ուզեն, և զկրար կը բռնեն։ Այս հանդիսան ալ անշուշտ սաղմոսէն առնուած է։

Նաւօտեան ժամերգութիւնն աւարտելուն դպիրք և ժողովուրդք թէ որ կան՝ կը թողուն կ'երթան, բատ որում հաղորդութիւններէն չեն, և սոնք՝ ինչպէս յետոյ պիտի ըսենք, պատարագին ներկայ չեն կենար, և մնա-

(1) Իրենք ուրիշ քրիստոնէից արարողութիւնները կը ծաղրեն, որոնք որոտաշարժ չըլլալէն ի զատ՝ կ'ըսեն, հին Կտակարանի սովորեցուցած ձեւերուն ալ հակառակ են։

ցոլները քանի մը աղքատ ծեր ու պառաւ աշխարհէ ձեռք քաշած կամ աշխարհքն իրենցմէ հեռացած խըղպոտ մարդիկ են և կամ մանր տղայք՝ որոնք դեռ աշխարհք չեն ճանչնար ։

Քաներգութիւնը լմնալէն յետոյ հինգ հատ կէս հախանոց հացեր կը շինեն վրանին խաչերով ծածկած բատ յունական սովորութեան ։ Ներս բերելու ժամանակ զանգակ մը կը հնչուի. պատարագիչ քահանայն ներսի խորանէն ոտքը բոկիկ՝ գլուխը բաց, իւր էհրամին մէջ պլլուած և անոր վրայէն հին փիլոն մը առած դէպ ի հարաւային դուռը կը վազէ. ներկայացուած հինգ հացերէն, որ դեռ տաք կ'ըլլան, մէկն առնելով և ջրով լուանալով կը տանի սեղանը Թապօթին վրայ եղած ափսէին վրայ կը դնէ ։ Խորհրդոյն սպասաւորողներն ալ երբեմն անխտրիք և մերկ սարկաւագունք են, որոնք նոյն պահուն վրայի էհրամնին վար առնելով կէս մէջքերնէն վար՝ ընջակի (փէշտըմալի) նման կը ծածկուին և իրարու ներհակ դիրքերով կը կանգնին, կ'երգեն ու ռանց ներդաշնակութեան և կը խօսակցին իրարու հետ Սարկաւագին մէկը երկաթէ միջակ խաչ մը ձեռքը բըռնած, երկու սարկաւագ ալ խոշոր գրքեր Թեւերնուն վրայ պատրաստ կը կենան՝ մէկ մէկ կճատ մոմ ձեռքերնին լրելով. սպասաւոր քահանան ալ պատարագիչ քահանային քովը կանգնած անոր կ'օգնէ ։ Նա կը քաղէ Պօղոս առաքելոյն գիրքը արեւմտեան դռնէն դուրս պատին կից կանգնելով, և նոյն դրանը միւս կողմն ալ պատարագիչ քահանայն քիչ մը բարձր ձայնով Յովհաննու աւետարանի խաչերը կանանց գլուխը կը կարդայ նոյն միջոցին. և յետոյ Թափօրի կ'ելլէ քանի մը ժողովրդոց մէջէն անցնելով, և ձեռքի երկաթէ խաչը ունոնց համբուրել տալով և խնկարկելով կը մտնէ ներս ։

Պատարագին էական խորհուրդը կատարուելէն վերի ժամարարը բուլթ մատը բաժակին մէջ (1) Թաթխելով

(1) Գինի չգանուելուն համար 12 հատ սեւ չամիչ ջրի մէջ կը ճմլեն և զայն կը գործածեն ։

հացին վրայ՝ կ՚օծէ խաչաձեւ, անոր մէկ կտորը կը կըտրէ կ՚ուտէ, մնացածը քահանան ալ դգալով մը բաժակէն կը խմցընէ. որբադործեալ հացին մէկ կտորն ալ սկիհին(1) մէջ կը թողու որ աւագ սարկաւագին բաժինն է. և միւս մնացեալ մասը մէկ մէկ խաչոր պատառով կը մատուցանէ բոլոր սպասաւորներուն և սըկիհը բռնող քահանան ալ դգալով բաժակէն կուտայ:

Յունաց սովորութեան համեմատ դռները գոց կը պատարագեն և սեղանին առաջը վարագոյր մըն ալ կը ձգեն: Դուռը բացուելուն երկու սպասաւոր սարկաւագներ Թակաղ (Թասըա) մը բռնած, որու վրայ է ամփոփեալ մը որբադործեալ հացին վերջին մնացորդը, դուրս կուգան, և պատարագիչ քահանայն անոր վրան բարձրէն ձգուած ծածկոցին տակէն ձեռքովը ճմլելով հացը՝ ցանդուած մը կը դարձընէ և մէկ մէկ խաչոր բըրդուճ հոն ներկայ գտնուող ծերերուն ու տղայոց կուտայ և կը հաղորդէ զանոնք ալ. իսկ մնացեալը դարձեալ սպասաւորաց կը բաժնէ մինչեւ հատնիլը: Նոյնպէս և բաժակէն կուտայ անոնց, և վրայէն յետոյ մէկ մէկ գաւաթ ջուր կը խմեն: Քահանայքը ձեռքերը լըւանալով և վրայի լաթերնին ցամքեցընելով և ջուրը առքի տակ թափելով կը նստին սպասաւորաց հետ և ծածկոցներ դարձեալ միւս չորս կտոր հասարակ հացերը կ՚ուտեն. ասկէց ժողովրդոց մասնակցելու սովորութիւն չունին, քանի որ ժողովուրդն ալ չկան:

Տասներկու տեսակ է իրենց պատարագի խորհրդատետրը, ասոր համար շատ անգամ կը սխալին պատարագելու ժամանակնին: Պարապայութիւն չունին, և սեղանին սպասաւորող սարկաւագաց թիւը գոնէ երեք պիտի ըլլայ, անկէ պակաս որ ըլլայ՝ պատարագ չեն մատուցաներ, մանաւանդ թէ որ սպասաւորներուն մէկը քահանայ չըլլայ:

Երեկոյեան ժամերգութիւնը բոլորովին խափանուած է եկեղեցականաց անհոգութեան պատճառաւ.

(1) Սկիհը պղնձէ թափծու անօթ մըն է ժանգոտած:

և երբ իրենց առարկեցինք անոր հարկաւորութիւնը ըստ վկայութեան սուրբ գրոց, ուր գրուած է «Չօթն անգամ յաւուր օրհնեցից զքեզ վասն իրաւանց և արդարութեան քո,»[1] պատասխանեցին թէ՝ «Մենք այդ խօսքին համեմատ եօթն անգամ տէրունական աղօթքը ըսելով առաւօտները, պարտքերնիս կը վճարենք։

---

## ԳԼՈՒԽ Գ.

Եկեղեցւոյ եօթը խորհուրդները։

ՀԱՊԷՇԻՑ եկեղեցին թէպէտ և եկեղեցւոյ էական եօթը խորհուրդներն կ'ընդունի, սակայն անոնց մէկ քանին միայն կը գործածէ, և ուրիշներն անհոգութեան և ուրիշ պատճառներով խափանուած կամ այլափոխուած են։

Ա. Մկրտութիւն. — և Բ. Դրոշմ.

Ա. Մանչ տղայն քառասուն օրուան և աղջիկն ութսուն օրուան մինչև որ չըլլան՝ չեն մկրտեր. այս սովորութիւնը ընդունած պիտի ըլլան անշուշտ երկու սեռին իրենց մօրը արգանդին մէջ կենդանանալու ժամանակի միջոցէն։ Երեխային հետ մէկտեղ ամանով մը ջուր կը բերեն մկրտող քահանային, որու վրայ մկրտութեան խորհուրդը կատարելէն յետոյ՝ տղուն գլխէն վար կը թափէ և խորհուրդը կը լրանայ։ Ըստ որում հաստատուն աւազան չունին, ուր որ ըլլայ կը մկրտեն, և ջուրն ալ որ պատահի կը վաթեն, առանց յարգ մը տալու անոր։

Մկրտութեան կրկնութիւններ ալ կ'ընեն. ամեն տարի որոշեալ ժամանակներու մէջ դարձեալ երեք ան-

(1) Սաղմ. Գլ. ՃԺԸ.

հացին վրայ՝ կ՚օծէ խաչաձեւ, անոր մէկ կտորը կը կըտրէ կ՚ուտէ, մնացածը քահանան ալ դգալով մը բաժակէն կը խմցընէ. որբագործեալ հացին մէկ կտորն ալ սկիհին (1) մէջ կը թողու որ աւագ սարկաւագին բաժինն է. և միւս մնացեալ մասը մէկ մէկ խոշոր պատառ ալ կը մասնաւորէ բոլոր սպասաւորներուն և որկինը բռնող քահանան ալ դգալով բաժակէն կուտայ:

Յունաց սովորութեան համեմատ դռները գոց կը պատարագեն և սեղանին առաջը վարագոյր մըն ալ կը ձգեն: Դուռը բացուելուն երկու սպասաւոր սարկաւագներ թակաղ (թասլը) մը բռնած, որուն վրայ է ափսէ մը որբագործեալ հացին վերջին մնացորդը, դուրս կուգան, և պատարագիչ քահանայն անոր վրան բարձրէն ձգուած ծածկոյին տակէն ձեռքովը ձմլելով հացը՝ զանգուած մը կը դարձընէ և մէկ մէկ խոշոր բըրդուճ հօն ներկայ գտնուող ծերերուն ու տղայոց կուտայ և կը հաղորդէ զանոնք ալ. իսկ մնացեալը դարձեալ սպասաւորաց կը բաժնէ մինչեւ հատնիլը: Այնպէս և բաժակէն կուտայ անոնց, և վրայէն յետոյ մէկ մէկ գաւաթ ջուր կը խմեն: Ժամարարը ձեռքերը լըւանալով և վրայի լաթերովը ցամքեցնելով և ջուրը սըքի տակ թափելով կը նստի սպասաւորաց հետ և ծածկայէս դարձեալ միւս չորս կտոր հատորակ հացերը կ՚ուտեն. անկէց ժողովրդոց մասնակցելու սովորութիւն չունին, բաց որում ժողովուրդ ալ չկան:

Տասներկու տեսակ է իրենց պատարագի խորհրդատետրը, ասոր համար շատ անգամ կը փոխլին պատարագելու ժամանակնին: Պատրաստութիւն չունին, և սեղանին սպասաւորաց սարկաւագաց թիւը գոնէ երեք պիտի ըլլայ, անկէ պակաս որ ըլլայ՝ պատարագ չեն մատուցաներ, մանաւանդ թէ որ սպասաւորներուն մէկը քահանայ չըլլայ:

Երեկոյեան ժամերգութիւնը բոլորովին խափանուած է եկեղեցականաց անհոգութեան պատճառաւ.

(1) Սկիհը պղնձէ թափծու անօթ մըն է ժանկոտած:

և երբ իրենց առարկեցինք անոր հարկաւորութիւնը ըստ վկայութեան սուրբ գրոց, ուր գրուած է «Եօթն անգամ՝ յաւուր օրհնեցից զքեզ վասն իրաւանց և արդարութեան քո,»(1) պատասխանեցին թէ՝ «Մենք այդ խօսքին համեմատ եօթն անգամ տէրունական աղօթքը ըսելով առաւօտները, պարտքերնիս կը վճարենք»:

---

## ԳԼՈՒԽ Գ.

### Եկեղեցւոյ եօթը խորհուրդները.

ՀԱՊԷՇՆԻՑ եկեղեցին թէպէտ և եկեղեցւոյ եօթը խորհուրդներն կ'ընդունի, սակայն անոնց մէկ քանին միայն կը գործադրէ, և ուրիշներն անհոգութեան և ուրիշ պատճառներով խափանուած կամ այլափոխուած են:

Ա. Մկրտութիւն. — և Բ. Դրոշմ.

Ա. Մանչ տղայն քառասուն օրուան և աղջիկն ութսուն օրուան մինչև որ չըլլան՝ չեն մկրտեր. այս սովորութիւնը ընդունած պիտի ըլլան անշուշտ երկու սեռին իրենց մօրը արգանդին մէջ կենդանանալու ժամանակի միջոցէն: Երեխային հետ մէկտեղ աման մը ջուր կը բերեն մկրտող քահանային, որու վրայ մկրտութեան խորհուրդը կատարելէն յետոյ՝ տղուն գլխէն վար կը թափէ և խորհուրդը կը լրանայ: Բայց որուն հաստատուն աւազան չունին, ուր որ ըլլայ կը մկրտեն, և ջուրն ալ որ պատահի կը վաթեն, առանց յարգ մը տալու անոր:

Մկրտութեան կրկնութիւններ ալ կ'ընեն. ամեն տարի որոշեալ ժամանակներու մէջ դարձեալ երեք ան-

(1) Սաղմ. Գլ. ՃԺԸ.

հացին վրայ՝ կ՚օծէ խաչաձեւ , անոր մէկ կտորը կը կըտ-
րէ կ՚ուտէ , տպաւոր քահանան ալ դգալով մը բա-
ժակէն կը խմցընէ . որբագործեալ հացին մէկ կտորն
ալ սկիհին (1) մէջ կը թողու որ աւագ սարկաւագին
բաժինն է . և միւս մնացեալ մասը մէկ մէկ խոշոր պա-
տառով կը մանաւորէ բոլոր ապտաւորներուն և ըր-
կինը բանող քահանան ալ դգալով բաժակէն կուտայ ։

Յունաց սովորութեան համեմատ դռները գոց կը
պատարագեն և սեղանին առաջը վարագոյր մըն ալ կը
ձգեն ։ Դուռը բացուելուն երկու տպաւոր սարկա-
ւագներ թակաղ ( թասլը ) մը բռնած , որու վրայ է
ամփոփ մը որբագործեալ հացին վերջին մնացորդը ,
դուրս կու գան , և պատարագիչ քահանայն անոր վրան
բարձրէն ձգուած ծածկոցին տակէն ձեռքովը ճմլելով
հացը՝ զանգուած մը կը դարձընէ և մէկ մէկ խոշոր բըր-
դուճ հոն ներկայ գտնուող ծերերուն ու տղայոց կու-
տայ և կը հաղորդէ զանոնք ալ . իսկ մնացեալը դար-
ձեալ ապտաւորաց կը բաժնէ մինչեւ հատնիլը ։ Նոյն-
պէս և բաժակէն կուտայ անոնց , և վրայէն յետոյ մէկ
մէկ գաւաթ ջուր կը խմեն ։ Քահանայը ձեռքերը լը-
ւանալով և վրայի խաթերունը ցամքեցընելով և ջուրը տա-
քի մակ թափելով կը նստի ապտաւորաց հետ և ծած-
կապէս դարձեալ միւս չորս կտոր հասարակ հացերը
կ՚ուտեն . անկէց ժողովրդոց մանուկներու ավարու-
թիւն չունին , բաց որուն ժողովուրդ ալ չկան ։

Տասներկու տեսակ է իրենց պատարագի խորհրդա-
տետրը , զոր համար շատ անգամ կը փոխեն պատա-
րագելու ժամանակին ։ Պարապայութիւն չունին , և
սեղանին ապտաւորաց սարկաւագաց թիւը գոնէ ե-
րեք պիտի ըլլայ , ապա թէ պակաս որ ըլլայ՝ պատարագ չեն
մատուցաներ , մանաւանդ թէ որ ապտաւորներուն
մէկը քահանայ չըլլայ ։

Երեկոյեան ժամերգութիւնը բոլորովին խափան-
ուած է եկեղեցականաց անհոգութեան պատճառաւ .

(1) Սկիհը պղնձէ թափծու անօթ մըն է ժանկուտած ։

և երբ իրենց առարկեցինք անոր հարկաւորութիւնը ըստ վկայութեան սուրբ գրոց, ուր գրուած է. «Եօթն անգամ յաւուր օրհնեցից զքեզ վասն իրաւանց և արդարութեան քո,» (1) պատասխանեցին թէ՝ «Մենք այդ խօսքին համեմատ եօթն անգամ տէրունական աղօթքը ըսելով առաւօտները, պարտքերնիս կը վճարենք»։

---

## ԳԼՈՒԽ Գ.

### Եկեղեցւոյ եօթը խորհուրդները.

ՀԱՊԷՇԻՑ եկեղեցին թէպէտ և եկեղեցւոյ էական եօթը խորհուրդներն կ'ընդունի, սակայն անոնց մէկ քանին միայն կը գործադրէ, և ուրիշներն անհոգութեան և ուրիշ պատճառներով խափանուած կամ այլափոխուած են։

#### Ա. Մկրտութիւն. — և Բ. Դրոշմ.

Ա. Մանչ տղայն քառասուն օրուան և աղջիկն ութսուն օրուան մինչև որ չըլլան՝ չեն մկրտեր. այս սովորութիւնը ընդունած պիտի ըլլան անշուշտ երկու սեռին իրենց մօրը արգանդին մէջ կենդանանալու ժամանակի միջոցէն։ Երեխային հետ մէկտեղ աման մը ջուր կը բերեն մկրտող քահանային, որու վրայ մկրտութեան խորհուրդը կատարելէն յետոյ՝ տղուն գլխէն վար կը թափէ և խորհուրդը կը լրանայ։ Ըստ որում հաստատուն աւազան չունին, ուր որ ըլլայ կը մկրտեն, և ջուրն ալ ուր որ պատահի կը վաթեն, առանց յարգ մը տալու անոր։

Մկրտութեան կրկնութիւններ ալ կ'ընեն. ամեն տարի որոշեալ ժամանակներու մէջ դարձեալ երեք ան-

(1) Սաղմ. Գլ. ՃԺԸ.

և երբ իրենց առարկեցինք անոր հարկաւորութիւնը ըստ վկայութեան սուրբ գրոց, ուր գրուած է «Եօթն անգամ յաւուր օրհնեցից զքեզ վասն իրաւանց և արդարութեան քո,» Պատասխանեցին թէ՝ «Մենք այդ խօսքին համեմատ եօթն անգամ տէրունական աղօթքը ըսելով առաւօտները, պարտքերնիս կը վճարենք։

---

## ԳԼՈՒԽ Գ.

### Եկեղեցւոյ եօթը խորհուրդները։

ՀԱՅԵՑՒՈՅ եկեղեցին թէպէտ և եկեղեցւոյ էական եօթը խորհուրդներն կ'ընդունի. սակայն անոնց մէկ քանին միայն կը գործադրէ, և ուրիշներն անհոգութեան և ուրիշ պատճառներով խափանուած կամ այլափոխուած են։

### Ա. Մկրտութիւն. — և Բ. Դրոշմ։

Ա. Մանչ տղայն քառասուն օրուան և աղջիկն ութսուն օրուան մինչև որ չըլլան՝ չեն մկրտեր. այս սովորութիւնը ընդունած պիտի ըլլան անշուշտ երկու սեռին իրենց մօրը արգանդին մէջ կենդանանալու ժամանակի միջոցէն։ Երեխային հետ մէկտեղ ամանով մը ջուր կը բերեն մկրտող քահանային, որու վրայ մկրտութեան խորհուրդը կատարելէն յետոյ՝ տղուն գլխէն վար կը թափէ և խորհուրդը կը լրանայ։ Իսկ որոնց հաստատուն աւազան չունին, ուր որ ըլլայ կը մկրտեն, և ջուրն ալ ուր որ պատահի կը վաթեն, առանց յարգ մը տալու անոր։

Մկրտութեան կրկնութիւններ ալ կ'ընեն. ամեն [illegible] ժամանակներու մէջ դարձեալ երբեք ան-

գամ՝ կը մկրտուին առ հասարակ բոլոր ժողովուրդները իրենց գերեզմանատան մէջ. և ինչպէս կ'ըսեն իրենց կարգացողները, մկրտութեան յիշատակը չմոռնալու համար կ'ընեն, բայց ռամիկ ժողովուրդը իբրեւ փրկական խորհուրդ համարելով զայն՝ ժամանակին կարաներով ջուր կը բերեն եկեղեցին, եօթը օր անոր վրայ կարդացուելէն յետոյ կը լուացուին նոյն տեղը արք և կանայք, տղայք և աղջկունք: Մկրտութեան օրն ալ (6 յունուարի), առջի երեկոյէն հանդէսով Տապօրը գետեզերքը տանելով վրանի մը տակ կը դընեն: Առաւօտեան ժամերգութիւնը լմնալէն զկնի՝ մկրտութեան խորհուրդը գետին վրայ կը կատարեն. ներկայ գտնուող ժողովուրդը դարձեալ կը լուացուի, և պատարագն ալ հոն մեծ թմբուկին վրայ կը կատարեն:

Բ. Հապէշները դրոշմ չունին և մկրտութեան ժամանակ երեխային ճակատը և այլն, չեն օծեր. ասոր պատճառ կուտան գիտնականները մեռոն և օրհնած ձէթ չգտնուիլը: Ուստի այս խորհուրդը հիմակ իրենց քահանայից ու տգէտ եկեղեցականաց քով անծանօթ մընացած է, որուն և ոչ արարողութեան կերպը և գործադրութիւնը գիտեն: Անոնցմէ ոմանք գիտցողները Մուսուլայէն եկող Մահմետական վաճառականներէն ձէթ կը գնեն, և օրհնած իւղի տեղ անով կը դրոշմեն երեխային զգայարանքները:

Երեխայն ութ օրուան եղած ժամանակ Մահմետականաց նման կը թլփատեն, որ իրենց մէջ եկեղեցւոյ խորհուրդ համարուած է իբրու հետեւողութիւն Քրիստոսի թլփատութեանը. թէպէտ և գիտնականք ակամայ կը խոստովանին անոր անօգուտ և աւելորդ ըլլալը, բայց աւելորդն ալ վնաս չունի ըսելով կը գործադրեն:

Գ. Խոստովանութիւն. — Դ. Ապաշխարութիւն:

Գ. Խոստովանութեան խորհուրդն ալ բոլորովին խափանուած է Հապէշից եկեղեցւոյն մէջէն. թէպէտ

և քահանայք և ժողովուրդն ալ կը ճանչնան անոր հարկաւոր խորհուրդ ըլլալը։ Քահանայք առանց խոստովանելու կը պատարագեն, ժողովուրդն ալ առանց խոստովանելու կը հաղորդուին։ Նաև այս խորհրդոյս հարկաւորութիւնն ալ թէպէտ և մէջերնին գիտցողներ կան և բոլորովին չեն ուրանար, ըստ որում հին Կտակարանին մէջ ալ հաստատութիւն կայ, սակայն հասարակ քահանայից տգիտութենէ և անմտութենէ և ուրիշ պատճառներէ խափանուած է. և ինչ գիտութիւն և խոհեմութիւն կըսպասուի այն եկեղեցականներէն որ երկու աղադրամ, այսինքն հինգ դահեկան տալով եպիսկոպոսին, քահանայ կը ձեռնադրուին անկէ, ոչ ժողովուրդին՝ այլ իրենց կամօքը։

Հին ժամանակները, ինչպէս իրենք կը վկայեն, խոստովանանք կայ եղեր մէջերնին, բայց քահանայք անոր կանոնները և պարտաւորութիւնները չգիտնալով, և խոստովանանքը յայտնող քահանային պատժապարտ ըլլալը չիմանալով, խոստովանորդւոյն յանցանքներն ու մեղքերը կը յայտնեն եղեր որու որ ըլլայ. և ասկէ յառաջ եկած է ըստ մեծի մասին անոր խափանումը. և այսօր եկեղեցւոյ Խորհուրդ համարուած խոստովանութիւնը, քահանայից անկարգութեան պատճառաւ քաղաքական խոստովանութեան կարգն անցած է։

Երբ մէկը ըսելու ըլլայ Հաբէշ քահանայի մը, թէ խոստովանողին մեղքը յայտնելը դատապարտութիւն է քահանային, կը զարմանայ, որովհետև ինքը ոչ թէ մեղք՝ այլ իրեն վարձք ալ համարած է խոստովանութիւնը յայտնելը, որ ճշմարտութիւն մը յայտնել ըսել է՝ անոնց դատմանը համեմատ։ Նաև այն ժամանակ յանցանք կը համարին, երբ խոստովանածէն աւելի կամ պակաս բան յայտնելու և պատմելու ըլլան, այն ժամանակ ճշմարտութեան դէմ մեղանչած կը համարին զիրենք, իբր թէ խոստովանորդին խայտառակած ըլլան. ինչպէս անգամ մը պատահեցաւ մեզի ալ միամտաբար։ Երբ մեր քովն եղող սպասաւորը ծանր հիւանդութեամբ պառկեցաւ, ըստ օրինաց եկեղեցւոյն՝ զինքը խոստովանցը-

ներու համար քահանայ մը խրկեցինք քովը բռնութեամբ, բստ որում չէր ուզեր երթալ։ Սաստիկ ակամայ գնալով հիւանդին քով՝ հեռուանց կը կանգնի (1) ու կ'ըսէ. «Բու մեծդ խրկեց զիս դքեզ խոստովանցընելու համար. ըսէ մեղքերդ»։ Ան ալ մահմետական կնկան մը հետ մեղանչելը (2) կը խոստովանի. քահանայն նոյն միջոց թողութեանը փոխարէն հիւանդին վրայի էհրամը իրեն առնելու համար անոր բերնէն խօսք առնելուն պէս, թողութիւնը կուտայ՝ և անմիջապէս կը փախչի կը հեռանայ քովէն առանց հաղորդելու զհիւանդը (3)։

Հիւանդը մեռնելէն յետոյ ուրիշի մը բերնով լսուր կուտայ մեզ քահանային և անոր խոստացած էհրամը կը պահանջէ, որ մեղքերը քաւելով դժոխքի դատապարտութենէն ազատի։ Մենք կը կարծէինք թէ անոր խոստովանած մեղքը մեզի միայն յայտնած է, յետոյ բոլոր գիւղացւոցմէ լսելով զարմացանք. և գիւղացիք հիւանդին խոստովանութեամբ մեռնելուն երանութիւն կուտային ըսելով՝ թէ արդարութեան մէջ մեռաւ առանց մեղաց, և անոր համար Միքրէճ — Խոժ եկեղեցւոյն բակին մէջ թաղուելու արժանի եղաւ։ Հարցուցինք քահանային, թէ խոստովանութիւնը յայտնելդ չէ՞ որ մեղք ու յանցանք է քեզի։ Պատասխանեց. «Իմ թշնամութեամբ և նախատելու միտք չյայտնեցի որ մեղք ըլլայ, այլ անոր խոստովանած չնութեան մեղքը պարզապէս այլոց պատմեցի ամենայն ճշտութեամբ. անոնք ալ երանութիւն տուին հոգւոյն ու ըսին՝ խոստովանեցաւ և արդարացաւ իր մեղքէն։»

Դ. Ապաշխարութիւնն որ նոյնպէս եկեղեցւոյ եօթը խորհուրդներէն մէկն է, և խոստովանութենէն ետքը

(1) Քահանայք հիւանդաց այցելութեան երթալու սովորութիւն չունին, և թէպէտ տարուելու ըլլան մեր ըրածին պէս, անոր հիւանդութենէն իբր թէ վախնալով հեռու կը կանգնին։

(2) Հայրենիքնիս քով ամենածանր մեղք կը համարի Մահմետականաց հետ մեղանչելը. իսկ քրիստոնեից հետ՝ չէ թէ միայն մեղք չէ, այլ և պարտք մըն է.

(3) Թէ որ հիւանդը հաղորդ առնող կրնալի բռնածներէն չէ, հաղորդ առնելու հրաման չտար եկեղեցին բստ հին սովորութեան։

կը հարկաւորի իբր հետեւութիւն անոր, այս ալ չունին և չեն գործադրեր. ըստ որում ուրանան որ խոստովանութիւն չկայ, հետեւաբար ապաշխարութիւն ալ չկայ. և չգիտեր մէկը անոր խորհուրդ ըլլալը բայց ի քանի մը գիտնականներէ :

Ե. Հաղորդութիւն :

Ե. Հաղորդութեան խորհուրդը միայն իւր կերպով որ հանգամանքներով ընդունած և հաստատ պահած են իրենց եկեղեցւոյն մէջ, թէպէտ և այն ալ ունի գարձեալ իրեն թերութիւնները. Ըստ որում Պօղոս առաքելոյն ըսածին պէս[1], Աստուծոյ տունը հաց ուտելու տեղ ըրած են. ինչպէս տեսանք Ի. Գլխոյն մէջ. Ես շատ համոզուած եմք ըսելու, որ քահանայք իրենց որկրամոլութեան համար հաստատ պահած են այս խորհուրդս. ըստ որում, ինչպէս վերը տեսնենք և արդէն խօսած ենք, ժողովրդոց մէջ հարիւրին մէկ կամ երկու հոգի հազիւ թէ հաղորդ առնող կայ, ուստի ըսել է որ այս խորհրդոյս կատարումը վասն փրկութեան աշխարհի չէ, այլ առ ի յագուրդ որկրամոլ քահանայից:

Այս է աւելին պատճառն, այսինքն ժողովրդեան հաղորդ չառնելը, որ Պատարագը լմնալէն յետոյ սրբազան Հացէն և Բաժակէն չեն պահեր հարկաւոր պահու համար : Երկրորդ պատճառ է եկեղեցեաց մէջ ապահով տեղ չունենալնին : Երրորդ՝ խարու երկիրներ կողոպտելու առեն, որ յաճախ կը պատահի, ամբոխութիւն ունին եկեղեցիներն ալ կողոպտելու և անօթեղէններն[2] ուրիշ եկեղեցեաց ծախելու . ասոր համար զանց առնուած է կենարար Հացէն և Բաժակէն պահել թէ որ Կորավիլներէն մէկը վտանգաւոր հիւանդութեան մէջ հաղորդուիլ ուզէ, կը պատրաստուի օր յառաջ ըսել տալ քահանային և եկեղեցպանին, և հետեւեալ առաւօ-

(1) Առ կորն. Ա. Գլ. ԺԱ. 20 :

(2) Արծաթեղէն անօթ մը եթէ կողոպտելու ըլլան, իրենց հաշիւ քահանին երեսը զարդարել կուտան ակերցի ձեռօք :

տուն կանուխ Պատարագ կը մատուցուի, որուն ծախքն ալ ինքը կը քաշէ ․ Պատարագէն յետոյ սպասաւորող քահանայն սկիհը բռնած և պատարագիչ քահանայն հանդերձ միւս պաշտօնեաներով հիւանդին տունը կուգան, ու կը հաղորդեն զայն առանց խոստովանցընելու ։

Հաղորդութենէ արգելուողներն են՝ յայտնի շնութեան և պոռնկութեան հետեւողները, որոնք մեղաւոր կը համարուին Կորպաններուն ․ այսինքն հաղորդականներուն քով ։ Քահանայք անոնց Հաղորդութիւն չեն տար, թէև կենաց վերջին շունչն հասնելով փափաքանօք խնդրելու ըլլան ․ ուստի կը մեռնին առանց խոստովանութեան և Հաղորդութեան ։ Այս ցաւալի վախճանը կ'ունենայ քրիստոնեայ Հապէշից երրորդ մասը ․ և ամենեւին ոչ քահանայից և ոչ խոխոր առաջնորդին հոգն է անոնց առանց քրիստոնէական պատրաստութեան հեթանոսաբար վախճանիլը ․

Բայց այն մեղաւոր համարուած և անհաղորդ մեռնող խեղճ քրիստոնէից թաղման կարգը քրիստոնէաբար կատարելու համար կը վազեն կուգան քահանայք և կարդացող դպիրք, և անոնց հոգւոյն փրկութեան համար ալ առօրական պաշտօնագին և պատարագուց կ'առնուն ։

Կորպանները ․

Քրիստոնեայ Հապէշից մէջ երեք կարգ մարդիկ կան որոնք Հաղորդ կ'առնուն, և իրենց լեզուով Կորպանք կը կոչուին ․ և ասոնք ժողովրդեան ամենափոքր մէկ մասն են ։

Առաջին կարգինները ։ Ասոնք ճշմարիտ քրիստոնեայ և օրինապահ ձեւացողներ և սուրբ Աւետարանին մէջ յիշուած կեղծաւոր փարիսեցւոց նման ինքնահաւան մարդիկ են, որոնք հասակնին առնելէն յետոյ աշխարհքէ ձեռք կը քաշեն և Կորպան կ'ըլլան, և մեծ յարգ ունին չհաղորդուողներուն քով և դատաստաններու մէջ ․

ինչպէս օրինակի համար Տաճկաց ռամիկներուն առաջ իրենց էֆէնտիները։ Այս Կորավլինները, ինչպէս ըսինք, իրենց պատանեկութեան և երիտասարդութեան ժամանակ ամեն օր մզեկան սպասերու, շնութիւններու և տեսակ տեսակ անառակութեանց հետևելէն, ու ամիսը շաբաթը և օրն անգամ մը կնիկ փոխելէն ետքը, երբ հասակնին լցուելով ու յափրանալով կըսխթափին ու կըզգաստանան, յետ այնորիկ իրենց սրտին հաւնած մէկ կնկան հետ դաշնադրութիւն կ՚ընեն սուրբ հաղորդութեան վրայ ուխտելով իրարմէ չբաժնուելու, որով կըստիպուին ամեն շաբաթ ամեն պատարագի ներկայ գտնուելու ու հաղորդուելու՝ թէպէտեւ առանց խոստովանութեան, և կը կոչուին հորաշէ։ Ասոնց զղջումը Աստուծոյ երկիւղէն և վերջին դատաստանի սպառնալիքէն չէ, այլ կամ օրինաւոր զաւակ չունենալնուն, կամ առ ամօթոյ և կամ յետ այնորիկ դարձեալ ընելիք խաբերայութիւննին և ստութիւննին անով ծածկելով ժողովրդոց .քով յարգ ու պատիւ ստանալու յոյսէն։ Որովհետեւ զղջումի գալէն և յայտնի ամուսնութենէն յետոյ, կըսկսին անկէց ետքը ծածուկ շնութիւն ու գողութիւն ընել։

Այս Կորավլիներուն կինը թէ որ մեռնելու ըլլայ, պէտք են իրենք կրօնաւորաց կարգը մտնել, վասն զի երկրորդ անգամ կին առնելու հրաման չկայ. ասոր համար Կորավլիներէն ոմանք կիներնին մեռնելէն ետքը կը դադրին հաղորդ առնելէն, և հասարակաց կիներ կը գործածեն յայտնի, և կամ առ երեսս կրօնաւոր կ՚ըլլան և ծածկապէս կը շնան։

Ասոնց յաճախ հաղորդութեննուն մէկ պատճառն ալ իրենց դաշնադրութեամբ ընդունած կանանց սիրտը կասկածներէ ապահովցնելու համար է։ Ասոնք ժողովրդէն յարգանք ընդունելու համար երբեմն ճշմարտախօս և իրաւասէր կը ձեւանան այլոց մասին; իսկ իրենց շահուն որ գալու ըլլայ, ամեն տեսակ կեղծաւորութիւն, ստութիւն, և խաբէութիւն ի գործ դնելով՝ մտքերնուն մէջ եղածը յառաջ կը տանին։ Եթէ մէկը

տանց ապօրինաւոր և կեղծաւպատիր ընթացքնին ե-րեսնուն տալու ըլլայ, կըսկսին զիրենք արդարացնել պատիրպատ խօսքերով. Կորավի ենք մենք, կ'ըսեն և այն մեղադրող մարդուն վրայ այնպէս մուրեր կը քսեն, մինչեւ հոն հաւաքուող բազմութիւնն ալ կը համոզեն իրենց բանին, և ամենուն համակրութիւնը կըստանան և մեղադրողը յանցաւոր կ'ընեն: Ճշմարիտ փարիսե-ցիները ասանց քով արդարացեալ կը համարին առանց երկբայութեան: Գործոյ մը համար դատի մտած ա-տեններին, խաչ մը կամ համրիչ մը վիզերնին կախելով իրենց Կորավի ըլլալը բարձր ձայնով ամենուն կը յայտ-նեն, որ ըսելու խօսքերնին իբրեւ ճշմարիտ ընդունե-լով իրաւունք տան իրենց. ինչպէս որ մեր քովն իբրև ապատաւոր և կամ իբրեւ զուաւ ընդունած Պլաթա-Պրաւ անուն Կորավին բրաւ այս բանները մեզի հետ դատի մտած ժամանակը, (Տե՛ս հատ. Ա. երե՛ս 97–104):

ԵՐԿՐՈՐԴ ՆՈՐԳԻՆՆԵՐԸ. Ասոնք ալ առաջին կարգի Կորա-վիներուն նման ամեն տեսակ մոլութիւն ու ցոփու-թիւն կատարելէն յետոյ, իբր թէ հրաժարելով յետ այնորիկ կը հաւորդուին. բայց ասիկայ ուրիշ բանի հա-մար չէ, այլ իրենց ապառնի մոլութիւնները մարդոց աչքէն ծածկելու համար, որոնց առջեւը ճշմարիտ ճգ-նաւորի մը պէս խեղճ ու ողորմելի կերպարանք մը ցոյց կուտան: Նաեւ այս կարգին մէջ կը մտնեն երբ ծերանա-լու և աղքատնալու կ'ըլլան, և ժողովրդոց առջեւ իբ-րեւ մէկ սուրբ Նոտան կամ սուրբ Սակար մը կը հա-մարուին: Երիկ մարդիկ իրենք զիրենք Պապա (հայր) կը կոչեն. իսկ կնիկ մարդիկ՝ Մամահօ (մայր կանանց) կ'անուանեն: Այս կարգէն են Երուսաղէմ գտնուող Հապէշ աղօթաւորները, որոնք վիզերնին մէկ մէկ խաչ և համրիչ անցընելով, և կամ լոկ համրիչ մը, կըսկսին տադին անդին շրջելով մուրալ և ապրիլ: Ասոնք ի բնէ կրթեալ ըլլալով կեղծաւոր և փարիսական ձեւերու և շարժմունքներու, առանց աշխատութեան կրնան ամեն ձեւի յարմարցնել զիրենք, որով դիւրաւ կը հանեն իրենց նպատակին: Մարդ մը տեսնելնուն պէս կըսկսին

բարձր ձայնով աղօթել, և Հայր մերը հարիւր կամ երկու հարիւր անգամ կրկնել ու համրիչը քաշել, որպէս զի տեսնողին զարմանքն ու երանութիւնը իրենց ձգեն և անոնց սիրտը յողորմութիւն շարժեն. եթէ չկրցան յաջողիլ, չեն յուսահատիր, աղօթքը կը շարունակեն, մինչև որ կարող ըլլան մարդը կամ տանտէրը միամտեցնել իրենց վրայ. Թէ որ անոնց քով խելօք բան մը տեսնեն, աղօթելու ժամանակ զանիկայ գողնալու միջոցներուն վրայ կը մտածեն։ Ինչպէս մեր քովն ալ իր մէկ սպասաւորը, զոր սուրբ և ճգնաւոր կարծած էինք, առաւօտուն կանուխ մեզմէ յառաջ արթննալով՝ մեր խցին մէջ ման կուգար աղօթելով, մէկ ձեռքով համրիչը կը քաշէր, և միւս ձեռքով արմտեաց ամպարին մօտենալով կ՚առնէր անկէ գօգին մէջ կը լեցնէր, ու մրմնջելով դուրս կ՚ելնէր և երեսը դէպ ի արեւելք դարձուցած աւելի բարձրաձայն կ՚աղօթէր, մինչև որ իր չհացեալ կինը ձայնը լսելով կուգար և գօգին մէջ եղած արմտիքը կ՚առնուր կ՚երթար։

Այս տեսակ Սպպաները Ամահօներուն հետ ծածուկ կը տեսնուին, որոնց ցորեկը իբր թէ սաղմոս դաս կուտան և գիշերը հետևերնին կ՚ընկերանան։

Սուրբ Խոհիններ։ Այս կարգը կազմողներն են կաթնակեր և փքրահասակ տղայքը թէ մանչ և թէ աղջիկ. որոնք իրենց ծնողաց առխմամբը ամէն պատարագի կը հաղորդուին, չէ թէ իրենց գործած մեղացը թողութիւն և սրբութիւն գտնելու համար, որովհետև տղայք մեղք չեն ունենար կ՚ըսեն իրենք, այլ ընդհանուր սովորութեան մը հետևելով՝ հասարակ սեղանի պէս ուրախութեամբ կը վազեն պատարագիչ քահանային քով հաղորդուելու։ Իսկ ծնողաց դիտաւորութիւնը ուրիշ է. որովհետև տղայք երբ խելահաս ըլլան, երկրին սովորութեան համեմատ շնութեան և մոլութեան անձնատուր պիտի ըլլան բնականաբար, և այն ժամանակ պիտի արգելուին թերևս մինչև ի մահ հաղորդ ընդունելէն, գուցէ այն մեղաց հատուցքին մէջ օր մը մահը վրայ հասնելով մեռնելու ալ ըլլան,

ուստի մանկութեան մէջ ընդունած հաղորդը՝ երիտասարդութեան մէջ գործած մեղքերնուն քաւութիւն կուտայ կ'ըսեն ։ Օտարներն կարծիք ։

Փոքր տղայք կը հաղորդուին յառաջ քան զջնութիւնն. իսկ Հասակաւոր Կալվինները յետոյ քան ըղջնութիւնն ։ Չափահաս պատանեակ մը թէ և մաքուր ըլլայ ի մեղաց և երդմամբ հաստատելով աղաչելու ըլլայ որ հաղորդեն զինքը, դարձեալ չեն հաւատար իւր վկայութեան և չեն հաղորդեր ։

Զ. Կարգ ։ և ձեռնադրութիւն ։

Զ. Հապէշից եկեղեցին, ինչպէս միւս խորհուրդներուն՝ նոյնպէս և ձեռնադրութեան խորհրդոյն մէջ համաձայն չէ ուրիշ եկեղեցեաց հետ ։ Եկեղեցական ինը դասէն երեքը միայն, կամ լաւ եւս է ըսել՝ երկուքը միայն ընդունած է, այսինքն՝ Քահանայութիւնը և Դըպրութիւնը. Սարկաւագութեան աստիճան ալ թէպէտ և կը ճանչնայ և ունի, սակայն երկու աստիճանաց ալ օրհնութիւնը միակերպ է, ինչպէս պիտի խօսինք ։

Եկեղեցականի մը զաւակը հարկաւ պէտք է եկեղեցական ըլլայ, նոյնպէս ուխտիւք եղած զաւակները. վասն որոյ խիստ շատ են եկեղեցականաց մասը, և շատ ալ ցանկացողներ կան, ոմանք փառաց և ոմանք ապրուստի համար ։

Անոնք որ քահանայ, սարկաւագ և դպիր օրհնուիլ կ'ուզեն, կանխաւ իրարու ձայն տալով բոլոր շրջակայ գիւղերէն կուգան կը ժողովին և կ'ըլլան մեծ բազմութիւն մը, որոնք խաղալով երգելով Առաջնորդին տանը քով կը մօտենան ։ Առաջնորդը բացօթեայ տեղ մը վըրանը լարել կուտայ իսկոյն, և աթոռի մը վրայ բազմելով հրաման կ'ընէ որ քահանայ ըլլալիքները սարկաւագներէն ու դպիրներէն որոշուին. յետոյ իւր առջևը կը կանչէ քահանայացուները, և անոնցմէ երկերկու աղագրամ (1) առնելով կ'երդուեցընէ զանոնք որ իւր

(1) Ժամանակին համեմատ 5էն մինչև 8 դահեկան կ'արժէ ։

դաւանութիւնը միայն ընդունին և խոստովանին, եւ տարբեր դաւանութիւն ունեցող ժողովուրդներն ալ նզովել կուտայ (1). և առանց քննելու ու տեղեկանալու անոնց վարուցն ու բարուց և գիտութեանը, իւր բոլորտիքը ժողվելով Խափուց լեզուով, որ Հայէշներուն անհասկանալի է, վրանին կը կարդայ, և ձեռքը անոնց վրայ դնելով՝ երեք անգամ երեսնին կը փչէ, և երեք անգամ ալ դէպ ի բերաննին Խու Խու ընելով կը թքնէ։ Այս ձեռնադրութեան հանդէսին հասարակ ժողովուրդէն մարդ ներկայ չգտնուիր։ Նորընծայից տուած խրատն է տարուան եօթը ծոմերը (2) լաւ պահել. այս պատուէրը իւրաքանչիւրն ընդունելով կ'արձակին և կ'երթան իրենց ընտանեաց քով լաւ սովորութեան իւրեանց։ Թէպէտ և քահանայութեան բարձր ու սրբազան պաշտօն մը ըլլալը չեն գիտեր, բայց քահանայ ձեռնադրուելնին իրենց աշխարհային օգտին համար ըլլալը լաւ ըմբռնած են, և այն նպատակին համար գործ կ'ածեն միշտ։

Ներքինեաց արգելք չկայ քահանայ ըլլալու, նոյնպէս և անզաւակ աշխարհականաց։

Երկրորդ և երրորդ կարգերն են Սարկաւագութիւնն ու Դպրութիւնը։ Այս կարգերն ալ ընդունել ուզողներէն մէկ մէկ ադադրամ կ'առնու. յետոյ զանոնք ամենը մէկտեղ կը ժողվէ, և անոնց բոլորտիքը երեք անգամ դառնալով կը խաչակնքէ և կ'օրհնէ, և դէպ ի երեսնին երեք անգամ փչելով Խու Խու կ'ընէ, և կ'ըլլան որը սարկաւագ և որը դպիր, ինչպէս որ կը բաղձան իրենց ծնողքը։ Որովհետեւ այս խմբին մէջ մինչեւ անգամ մէկ տարեկան կաթնակեր տղայք ալ

(1) Նորընծայք Առաջնորդէն դաւանութիւնը ընդունելէն յետոյ, դարձեալ կը դառնան իրենց առջի խոստովանութեանը, և զիրենք ձեռնադրողը յայտնապէս կը պախարակեն, կը հայհոյեն և կը նզովեն թէ զինքը և թէ անոր դաւանութիւնը։

(2) Տարւոյն եօթը ծոմերն ասոնք են. Մեծի պահոց 55 օրը. Առաքելոց պահքը. Սուրբ Աստուածածնի 17 օրը. Ծննդեան 44 օրը. Քուսքամին 40 օրը, որ իրենց երեւելի սրբոց մէկն է. Նինուէի ապաշխարութեան 3 օրը, և շաբաթական երկու աւուր ծոմերը։

կը գտնուին, որոնց հասակը լեցուելուն կ'ըսկսին մերթ սարկաւագութեան եւ մերթ դպրութեան պաշտօնը վարել. սարկաւագ եղողը թէ որ ուզէ յետոյ կ'ամուսնանայ և ձեռնադրուելով կ'ըլլայ ամուսնաւոր քահանայ, ապա թէ ոչ՝ կ'ըլլայ կուսակրօն քահանայ. և կան ալ որ չկրնալով այս լուծը տանել, կը հրաժարին բոլորովին ծընողական կամօք ընդունած հոգեւորական կարգէն, եւ կ'ըլլան զօրք և կամ հասարակ ժողովուրդ։

Է. Պսակ. կամ Ամուսնութիւն։

Է. Այս խորհուրդս ալ զոր ամէն ուղղափառ եկեղեցիք ընդունած են իբրեւ սուրբ, ըստ առաքելոյն Պօղոսի (1) իբրեւ օրինակ Քրիստոսի ընդ եկեղեցւոյ միաւորութեանը, բոլորովին խափանուած է. և ասկէ յառաջացած է անշուշտ ապօրինաւոր ամուսնութեանց յաճախութիւնը և կերպ կերպ շնութիւններ. կնաթողութիւն և այլն։ Եւ այս օրուան օրս ոչ աշխարհականք և ոչ քահանայք կը ճանչնան և կ'ընդունին այսպիսի խորհրդոյ մը գոյութիւնը. ըստ որում քահանայք ալ փոխանակ հսկելու սուրբ խորհրդոյ անարատ պահպանութեանը, պատճառ տուած են անոնց պղծման, օրինակ առնելով իրենց սուրբ Գրոց մէջ յիշուած նախնի նահապետները։ Միայն քաղաքական պայմանադրութեան կապ մը ունին մէջերնին, բայց այն ալ յարգ և զօրութիւն չունի. ըստ որում մարդկային անզուսպ կիրքերը խոհեմութեան և բանականութեան ձեռօք չափաւորեալ որ չըլլայ, ըստ օրինակի անասնոց՝ ոչ օրէնք և ոչ պայմանք օգուտ կ'ընեն, մանաւանդ եթէ օրինազանցութիւնը բարձրագոյն իշխանութենէ մը իւր արժանաւոր պատիժը չընդունի։ Ուստի այն ժամանակ ամուսնութեան կապ՝ իւրաքանչիւր մարդոյն իւր կամքը կ'ըլլայ, ինչպէս է Հապէշներունը, որոնք այնչափ կին կրնան առնուլ՝ որքան որ իրենց դրամական կարո-

(1) Եբրա. ԺԳ. 4։

ղութիւննին կ՚ընէրէ . մեծամեծ մարդիկ մինչեւ երեք հարիւր կին ունին, ինչպէս Սուլէ իշխանը, Սառ Ալին, Թէոդորոս Թագաւորը, Թըրաօ—Կոմալին և այլք ունէին և ունին ։

Քիչ կը գտնուի մէջերնին քաղաքական դաշամբք ամուսնացեալներ. և եթէ այրը ուզէ՝ նոյն դաշանց համեմատ կընայ կինը արձակել, պայմանեալ դրամը վճարելով և փոխադարձաբար. եթէ կինը տանը կառավարութեանը մէջ հաւատարիմ է, յայտնի կը պահէ իբրեւ օրինաւոր կին, որուն կը յանձնէ իւր տանը տնտեսութիւնը և հոգը. բայց ազատ է դարձեալ այրը օրինաւոր կնոջմէն ի զատ ուրիշ կանայք ալ առնուլ որքան որ ուզէ, կամ արդէն տնական ծառայութեան մէջ գտնուողները իբրեւ կին գործածել. Նոյնպէս էն նաեւ բոլոր եկեղեցականաց, քահանայից ու սարկաւագաց ամուսնութեան ձեւն ու պայմանը. որոնց կինը մեռնելէն յետոյ թէպէտ հրաման չունին յայտնի կին առնուլ, բայց շատերը օրինաց դէմ կը մեղանչեն անխղճաբար ։

---

## ԳԼՈՒԽ Դ.

*Ննջեցելոց թաղման կարգը ։*

ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆ ունին՝ թէ որ մէկը մեռնելու ըլլայ, առաւօտուն կանուխ նոյն ննջեցելոյն տընէն մէկը բարձր տեղէ մը պոռալով՝ լուր կուտայ ժողովրդոց և շրջակայ մօտ գիւղացիներուն ։ Մեռելոյն մարմինը կը լուանան և կտաւով կը պատեն և փսիաթի մէջ կը պլլեն և յետոյ իրեն տանը բարձրկեկ նստարանին վըրայ (1) պառկեցընելով կը կապկպեն կաշիէ փոկերով ։ Քահանայն կուգայ քանի մը դպիրներով, Հայր մերով մը կըսկսին բոլոր սաղմոսը քաղել. յետոյ երգելով

(1) Տես հատ. Ա. երես 53.

կ'առնուն կը տանին և եկեղեցւոյն շրջապատի դրան առջեւ կը դնեն . ուր աւետարան մըն ալ կարդալով կը վերջնեն ներս կը տանին, և եկեղեցւոյն մէկ դռնէն խոթելով և միւս դռնէն դուրս հանելով վար կը դնեն . մեռելին հասակին ու թանձրութիւնը չափելով անոր համեմատ գերեզման մը կը փորեն և կաշիէ փոկերով դժուարութը մը վար կ'իջեցընեն և հողով կը ծածկեն :

Թէ որ մեռնողը եկեղեցական կամ երեւելի աշխարհական մըն է, յուղարկաւորութեան միջոցին թմբուկ զարնելով կ'երգեն խառնաձայն . այր և կին մարդիկ զատ զատ խումբեր կազմած բոլորաձեւ կը շարուին և դըպրաց հետ երգելով ու ցատքըռտելով կը տանին . տեղ տեղ ճաղը վար դնելով կանգ կ'առնեն :

Չրէից նման քառասուն օր սուգ կը բռնեն . և այնքան աւուր միջոցին մէջ ոչ գլուխնին կը գերծեն և ոչ իւղով կ'օծեն . Ննջեցելոց հոգւոյն համար եղած պաշտօնն ալ թաղման կարգին ձեւով է : Թէ որ եկեղեցւոյն դրան առջեւը կատարելու ըլլան, միայն դըպիրները կ'երգեն ու կը խաղան թմբուկ զարնելով . իսկ թէ որ ննջեցելոյն տանը մէջ կատարուի, կանայք ալ առանձին պար բռնելով կ'երգեն՝ և գովասանքներ կ'ըսեն մեռելոյն անձին վրայ, և լացք կ'ընեն : Եթէ ննջեցելոյն տէրը երեւելի և կարողութիւնը տեղը մարդ է, եկող բազմութեան հոգւոյ—հաց ալ կուտայ, կարեկողի կամ մեղրագինի կը հանէ, ու եկեղեցականաց և աղքատաց դրամ ալ կը բաժնէ :

---

## ԳԼՈՒԽ Ե.

*Կրօնական խորութիւններն, ու դաւանանքի տարբերութիւնները :*

ԿՐՕՆԱԿԱՆ վարդապետութեան ուսանելիքները առանձին դասատուութիւն մը ըլլալով, այս պաշտօնը աշխարհական գիտնոց ձեռքն է, որոնք Չրէից կար_

դացողներուն նման յատկացեալ տիտղոսով մը Թէֆթէրա կը կոչուին, որ կարդացող կը նշանակէ ։ Ժողովրդեան կամ եկեղեցականաց մէջ կրօնական վէճ մը պատահած ատեն՝ երկու կողմէն ալ ասոնք կը կանչուին որպէս զի սուրբ Գրոց համեմատ ուղիղ և ճիշդ լուծում մը տան։ Սակայն թէ՛ եկեղեցականաց և թէ աշխարհականաց ընդհանրութիւնը յետին տգիտութեան մէջ գտնուելով, աւելի իրենց խապտի Առաջնորդին խօսքին և դատմանը կը համոզուին քան թէ գիտնականաց ․ որովհետեւ անոնք իրենց զեղխ ու անառակ վարքովը գէշ համբաւ ունենալով իրենց գիտութեան յարգը կորսուած է և խօսքերնին ազդեցութիւն չունենար խիստ շատ անգամ․ ուստի վէճը փոխանակ խաղաղելու՝ աւելի կը զօրանայ, մինչեւ անգամ կանոնագրքերուն ալ մտիկ ընել չեն ուզեր ․ երկու կողմն ալ իրենց կարծեաց և համոզման մէջ հաստատ մնալով կըսկսին զիրար նզովել ու բանադրել, և վէճը կը մնայ ինչ որ էր ։ Այս պատճառաւ Հրէից նման իրենց մէջ ալ կրօնական և դաւանութեան խտրութիւններն ու այլայլութիւններն օրէ օր կ՚աւելնան և հաստատութիւն կը գտնեն ․ և այս մասին այնքան սաստկացած է ատելութիւնը մէջերնին, որ իրարու դաւանութեան հակառակ եղող եկեղեցականք եկեղեցիներն անգամ կը խտրեն, և չեն երթար սպասաւորութիւն ընելու իրենց դաւանակից չեղող եկեղեցեաց մէջ՝ մահու չափ խորշելով իրարմէ ։

Ահաւասիկ Հապէշից եկեղեցւոյն հաւատոյ խոստովանութեան մէջ խտրական կէտերը, որոնք երեք մասի կամ աղանդի կը բաժնուին ։ Առաջին, անոնք որ երկու ծնունդ կը դաւանին Քրիստոսի, և Որդին՝ օծումն ։ Երկրորդ, անոնք որ երեք ծնունդ կը դաւանին, և զՀոգին Սուրբ՝ ճշմարիտ օծումն ։ Երրորդ, անոնք որ կը դաւանին առաջիններուն պէս երկու ծնունդ և ըզՀոգին Սուրբ՝ օծումն ։ Այս երեք տեսակ դաւանութեանց վրայ հարկ կը համարիմ զատաբար խօսիլ եւ պարզել որչափ որ կրցայ իմանալ և որչափ որ կրցան իրենք ալ իմացընել ինծ ։

Ա. Երկու ծնունդ Քրիստոսի և Որդին օծումն դաւանողները։

Անոնք իրենց լեզուով Հու-լէթ-լէդէթ՝ Սէ-Գէլ կը կոչուին, այսինքն երկու ծնունդ կը դաւանին Քրիստոսի, մէկ մը Հօր Աստուծմէն, երկրորդ՝ սուրբ Կոյս Մարիամէն. բայց Սէ-Գէլ, այսինքն Որդին՝ իւղ կամ օծում ընելով կը տարբերին և կ'որոշուին միւս երկու մասերէն։ Անոնք Հօր Աստուծոյ իսկական ծնունդը միածին Բանն Աստուած իսկ օծումն կը խոստովանին, եւ կ'ըսեն այսպէս, թէ ինքն Որդին Աստուծոյ՝ ըստ որում Աստուած կատարեալ և ամենայնի կարող, իւր աստուածային ինքնազօր զօրութեամբը Մարիամ սուրբ Կուսին արգանդին մէջ յղացած կէտին օծուեցաւ Հօր Աստուծմէն միայն, ու երբէք չունի կարօտութիւն և հարկաւորութիւն Հոգւոյն Սրբոյ գործակցութեանը, այսինքն զՀոգին Սուրբ ընդունելու. և կամ Հոգւով Սրբով օծուելու Մարիամայ արգանդին մէջ մարմին առած կէտին։ Այս մօքով կը հակառակին միւս երկու կողմի Հայէշ․քրիստոնէից հետ, և կ'ուրանան ադամային եօթնարփեան շնորհօք զարդարեալ և աճեցեալ մարդն Յիսուս Քրիստոս ընդդէմ սուրբ Գրոց բարբանջելով։ Իսկ թէ որ Հոգին Սուրբ օծումն եւ Քրիստոս սուրբ Հոգիէն օծեալ ըլլալը սուրբ Գրքերուն վկայութեամբը և եկեղեցւոյ ընդունած գրքերով հաստատելու ելլէն միւս կողմէն, առանց ընդհամոզուելու՝ ապխտաբար յամառելով վերջին սատկութեամբ կը պնդեն անոնց դէմ իրենց բերանացի ուսած դաւանութիւնը։ Իւ եթէ խիստ նեղը մնալու ըլլան, այսպէս կ'ըսեն. "Դուք Լատիններէն (Կոպտի եգիպկոպտներէն) աւելի գիտնակա՞ն էք. անոնք բերին մեզ սուրբ հաւատը և Հանգանակը. դուք անոնցմէ և անոնց գրքերէն սորվեցաք և կը սորվիք մինչեւ հիմայ։ Անոնք ձեզմէ չսորվեցան և չեն սորվիր երբէք, նոյնպէս և մենք ձեզմէն չենք ուզեր սորվիլ. անոնք են մեր կրօնապետները և մենք անոնց դաւանակից ժողովուրդը։

Մենք Մարկոս աւետարանչի Աթոռը՝ անոր դաւանութիւնը և անկէ եկող առաջնորդները ի բնէ անոր ճանչցած և ընդունած ենք և կ՚ընդունինք մեր նախնիքներուն հետեւելով։»

Այս դաւանութիւնը վերջին դարու մէջ եկող ղըպտի Առաջնորդաց կուսան հակառակորդ կողմերը. և որովհետեւ այս դաւանանքը ընդունողները Եթէովպիու ժողովուրդներն են և անոր մօտ սահմանակից Հապէշները, վասն որոյ միւսներուն քով մոլորեալ կը համարուին։ Իսկ թէպէտ ասոնք բաղդատութեամբ միւս երկու մասերէն քիչուոր են, բայց Մուտոլյէն եկող ղըպտի Առաջնորդները իրենց երկրէն, այսինքն Եթէովպիէն անցնելով, հարկ կ՚ըլլայ իրենց՝ նախ անոնց դաւանութեանը տեղեկանալ. և կարծելով թէ՝ բոլոր Հապէշու երկիրը այնպէս կը դաւանի, իրենք ալ միամտաբար զայն ընդունելով կը մոլորին միւսներուն նկատմամբ, ապա թէ ոչ՝ իւրեանց առաջնորդական իրաւունքներու արդիւնքները կը կորսնցընեն։ Խորամանկ Եթէովպիացիք դեռ Առաջնորդը իրենց երկիրը չհասած, շուտ մը հեռաւոր երկիրները համբաւ կը հանեն թէ՝ Առաջնորդը մեր Ալտ–Գըհ կրօնքէն է, և բոլոր երկիրը խռովութեան մէջ կը ձգեն։ Խեղճ Առաջնորդը Կոնտէր գալուն կը հասկընայ իւր սխալմունքը, և իւր խօսքը եւ անունը ամօթ համարելով՝ տեսակ տեսակ վէճերու և յուզմունքներու պատճառ կուտայ. և որպէս զի իւր կողմը զօրացընէ և զէնքը պղտիկ չթողու, կ՚ըսկսի ակամայ կամօք փառաւոր ու կաշառաւէր գիտնականներն իւր կողմը որսալ, և ասով աւելի վէճը կը սաստկանայ և արմատ կը ձգէ։ Քահանայից եւ ժողովրդոց մեծագոյն մասն ալ, ինչպէս ըսինք, տգէտ ըլլալով՝ նոր եկող Առաջնորդին խօսքին համոզուելով անոր կողմը կը դառնան և անոր դաւանութիւնը կ՚ընդունին, ինչպէս և անոնք որ գիտութեամբ կը հակին իրեն, որպէս զի իւր յառաջացեալ կալուածոց վրայ տեսչութեն և հոգաբարձութեան պաշտօն մը ընդունին։ Շատ անգամ կ՚ըլլայ որ իրեն հակառակորդ կողմի գիտնականներուն ձայնը

հասարակութեան մէջ զօրանալով և տարածուելով. կարող կ'ըլլան ծանր նախատինքներով և բռնութեամբ կրկին Թէկղիի սահմանը հալածելու, ինչպէս ըրին Ապունա—Սելամին, որ Թէպէտ և Թէկղիեցւոց դաւանանքը ակամայ ընդունած էր կ'ըսեն, հոն հասած ժամանակը, բայց յետոյ երբ երեք ծնունդ դաւանողներէն Թէկղիի կողմը կը հալածուի, այն ժամանակ բոլոր սրտով կ'ընդունի անոնց վարդապետութիւնը: Ասանկ հալածական առաջնորդներու գերեզմանները ազգին անգին շատեր կան. և Նոուայի (Թէկղիի) Մէտանի Ալէմ եկեղեցւոյն մօտ է նաև Ապունա—Սելամի նախորդ առաջնորդին գերեզմանը, որ Տաճկաց Թի—ըլէի ձեւով շինուած է:

Բ. Երեք ծնունդ Քրիստոսի և զՀոգին Սուրբ՝ օծումն դաւանողները.

Երկրորդ մասը երեք ծնունդ (Սօս—լիտէթ) կը դաւանի ի Քրիստոս, և զՀոգին Սուրբ՝ իւղ կամ օծումն (Մ'էնֆէս գըտտուս գըվ): Ասոնք բացարձակապէս ընդունելով այն դաւանութիւնը, միւս երկու ծնունդ (Կըգ—գըվ) խոստովանողներու հետ մահու չափ կը հակառակին զիրար հայհոյելով քան թէ երրորդ մասին հետ: Այս աղանդէն եղողները երեք ծնունդ կուտան մարդացեալ Բանին Աստուծոյ. Հօր Աստուծմէն, սուրբ Հոգիէն և Մարիամ կուսէն: Կը ծնի կ'ըսեն, Բանն Աստուած իւր հայրական ծոցէն անհատաբար. ծնաւ ժամանակաւ Մարիամ կուսին արգանդին մէջ յղացման կէտին սուրբ Հոգիէն. և ինն ամսէն զկնի ծնաւ Մարիամ կուսէն: Եւ կամ այսպէս. անժամանակ ծնունդ Որդին սուրբ Աստուած՝ անժամանակապէս ծնանի սուրբ Հօրէն Աստուծոյ. և Մարիամ կուսին արգանդին մէջ մարմին առնելու կէտին Հոգւով Սրբով օծուելով Հոգւոյն Սրբոյ եօթնարփեան շնորհքները ընդունելով ինչպէս Ադամ ի դրախտին՝ Սուրբ Հոգիէն ալ ծնաւ. և ինն ամիս ետքը Կոյս Մարիամէն ծնաւ ու եկաւ աշխարհ նոյն Բանն Աստուած՝

ծնեալ Քրիստոս իբրեւ նոր Ադամ կատարեալ, և առաւել քան զԱդամ աստուածային անձնաւորութիւն միաւորուելով։ Անոնց այս կերպ դաւանութիւնը գուցէ յառաջ եկած ըլլայ Թէոդորիացւոց (Ալ-Գըշ) խոստովանութեան դէմ մաքառելէ, Բանին Աստուծոյ ի Հոգւոյն Սրբոյ ծնանիլը աւելի հաստատելու համար, և Բանին Աստուծոյ ի Հոգւոյն Սրբոյ ծնանելուն և կամ չծնանելուն վրայ օրէ օր եղած վիճաբանութիւններէն և հակառակութիւններէն զայրացեալ՝ մինչեւ երրորդ ծնունդ մը ևս ի Հոգւոյն Սրբոյ ըլլալը բերեր եզրակացուցած են։ Սուրբ Աւետարանին մէջ գրուած հրեշտակապետին խօսքն ալ իբր վկայութիւն մէջ կը բերեն ըսելով. «Որ ծնեալն ի Հոգւոյն Սրբոյ է։»

Այս դաւանութիւնն ընդունողներն են Կոնտերէն և Պեկամտըրէն մինչեւ Շօայի երկրին քրիստոնեայ ժողովուրդները։ Ժամանակ առ ժամանակ Հապէշստան եկող պապական միսիոնարները շատ աշխատած են որ երկու բնութեան վարդապետութիւնը ընդունել տան Հապէշներուն, և ասոր մէջ յաջողելու համար ի շնորհուկս անոնց՝ առ երեսս ընդունած են իրենք ալ երրորդ ծնունդ մը Քրիստոսի ի Հոգւոյն Սրբոյ, այսու ամենայնիւ դարձեալ չեն յաջողած և ապարդիւն ետ դարձած են։ Ինչպէս Շօա երկրին հարաւակողմը Քաֆա ըսուած նահանգը կը գտնուի դեռ պապական Մասիաս անուն ծերունի եպիսկոպոս մը. որուն համար կը պատմեն, թէ բաւական ժամանակ վաստակելէն և օգուտ մը չքաղելէն յետոյ Քաֆա կ'երթայ, և հոն կը յաջողէ բաւական մարդիկ որսալ, մինչեւ երկրին իշխանն ալ իւր դաւանութեանը դարձուցած է։ Ապունա-Յաղուպ անուն ուրիշ պապական միսիոնար մըն ալ եկած է Ապունա-Սելամիին առաջնորդութենէն առաջ, և այս երեք ծնունդ դաւանող ժողովուրդէն մեծ ընդունելութիւն և սէր կը գտնէ. և ինքը անոնց վարդապետութեան դէմ չմաքառելէն զատ՝ սիրով ալ կ'ընդունի զայն, մինչեւ որ երկու բնութեան խոստովանութիւնն ալ Հապէշից մէջ մտցընէ։ Աղջի

բերան դրամի շռայլութիւնները բաւական գործ կը տեսնեն և բոլոր ժողովուրդը գրեթէ իրեն կը գրաւէ. բայց երբ կրկին երկու բնութեան վարդապետութիւնը տարածել երկրին մէջ, այնժամանակ ժողովուրդը իրեն դէմ կը խռովի, և մինչեւ անգամ կը յանդգնի անոր տունը տեղը տակնուվրայ ընել, կողոպտել. խեղճը գաղտագողի ճամբաներով գիշերանց փախչելով շունչը Թեկրիի երկիրը կ'առնու, և անկէ Մասուա կու գայ, և իւր կեանքը մահուամբ կ'աւարտէ :

Գ. Երկու ծնունդ՝ և զՀոգին սուրբ օծումն դաւանողները.

Այս մասը ուղղափառ կարծուածներն են. և անք են Գոճամի ժողովուրդները, որ կը գտնուին Դէֆթէրաներուն՝ այսինքն կարդացողներուն մեծագոյն մասը. որոնք իբր թէ սուրբ գրոց և սուրբ հայրապետաց կանոնացը համեմատ երկու ծնունդ (Հուլէթ—լիտէթ) և զՀոգին սուրբ օծումն կամ իւղ (մէնֆէս գըտտուս գըպ) կը դաւանին ի Քրիստոս : Այսինքն Բանն Աստուած ծնեալ Հօր Աստուծմէն անժամանակ, և սուրբ Կուսէն ժամանակաւ, և Հոգւով սրբով օծեալ Հօր Աստուծմէ՝ մարմին առած կէտին՝ ճիշդ ադամային անմեղ բնութեամբը, և Հոգւոյն Սրբոյ եօթնարփեան շնորհքներովը զարդարեալ, իբրեւ նոր Ադամ ամենայնիւ կատարեալ եղաւ ըստ մարդկութեան և ըստ շնորհաց, և իբրեւ Աստուած և Որդի Աստուծոյ ըստ աստուածութեան՝ իւրով անձնաւորութեամբն կատարեալ ի նմա, և յերկուց բնութեանց միաւորեալ անճառելի, անբաժանելի և անորոշելի :

Աբունա—Սելամի Թեկրիէն անցնելով Կոնտէր մայրաքաղաքը գացած ժամանակ Թեկրիացւոց աղանդը թողով՝ ասանց կ'ընդունի, այն է երկու ծնունդ Քրիստոսի և Հոգին Սուրբ՝ իւղ կամ օծում. բայց յետոյ Ռաս—Ալի իշխանապետի Եչեկէէն (հոգեւոր Տեսչէն) Թեկրի հալածուելով, դարձեալ երկու ծնունդ և Որդին՝ իւղ կամ օծում Ուէտ—Գըպ կը դաւանի առաջուան

պէս ։ Բայց իր սրտին մէջ զայրոյթը պահելով, ժամանակէ մը յետոյ ձեռքի տակէ կը Թելադրէ զԹէոդորոս Թագաւորը. որ անորմէ գրգռեալ մահ կ'ըսպառնայ գիտնականներուն և երեք ծնունդ դաւանող կարգացողներուն, և սաստ իր նախատանացը վրէժխնդիր կ'ըլլայ Ապունա—Սելամին ։ Այս ատելութիւնն է որ մինչեւ ցայսօր կը տեւէ Հաբէշներուն երեք մասին և իրենց Ղպտի Առաջնորդաց մէջ. և կը հայհոյեն ու կը պախարակեն հիմակուան նոր եկող Առաջնորդը ։

Ապունա—Սելամի հետ եղած կրօնական հարցմունքը ։

Կոճամի երկրին գիտնականները կ'ուզեն հաստատել և ընդունել տալ Ապունա—Սելամիին՝ Բանին Աստուծոյ Հոգւոյն Սրբոյ ներգործութեամբ անոր եօԹնարփեան շնորհքներն ընդունիլը իր մարմնաւորութեան ատեն. ուստի կ'առաջարկեն այսպէս. "Երբ որ Բանին Աստուծոյ առած կատարեալ մարդկութիւնը, օրինակի համար, որոշելու ըլլանք, ինչպէս կ'ըլլայ անոր առած մարդկութիւնը ։ — Կը պատասխանէ. Մեզ նման մարդ կատարեալ ։ — Մե՞զ նման, կ'ըսեն, թէ Ադամայ նման ։ — Մենք ալ, կը յարէ Ապունա — Սելամին, Ադամայ պէս կատարեալ մարդ ենք ։" Պօղոս առաքելոյն այն խօսքն ալ մէջ կը բերէ. "Զանձն ունայնացոյց՝ զկերպարանս ծառայի առեալ[1] ։" — Թէ որ, կ'ըսեն, մեզ նման ծառայի կերպարանք առաւ Բանն Աստուած, ուրեմն առած մարդկութիւնը մերինին հետ բաղդատելով՝ աւելի յարգութիւն մը չունի, այլ աւելի անարգութիւն մը ։ Ուստի Բանին Աստուծոյ անարգ մարմին առնելովը, իր աստուածութեանը անարգութիւն մը տուած կ'ըլլայ ։ — Այս առարկութեան Ապունա—Սելամի կը պատասխանէ. "Երբ միացաւ Բանն Աստուած առեցեալ մարմնոյն հետ, յարգուեցաւ ։" Որուն կը պատասխանեն գիտնականք. "Երբ որ որոշուի՞ ուրեմն կ'անարգուի ։"

(1) Փիլիպ. Բ. 7.

Յետոյ այս խնդիրը անլուծանելի կը մնայ ։ Յիշեալ Առաջնորդը աւելի կամք բռնաբարել, և Թագաւորին սուրը ի գործ դնել տուած էր գինանկանաց դէմ, քան թէ օրէնքն ու ճշմարտութիւնը ։ Այսպէս կ'ըսեն բոլոր ժողովուրդները ։ Եւ ասկէ կրնանք չափել Աբունա—Սելամիին աստուածաբանական խնդրոց մէջ ունեցած հմտութիւնը, և ժողովուրդ մը օրինաւորապէս կառավարելու և դէպ ի ճշմարտութիւն առաջնորդելու անկարողութիւնը, որ փոխանակ երեք տեսակ աղանդներու բաժնուած մէկ ազգը խոհեմութեամբ միաբանելու և մոլորութիւնները խափանելու, ինքն ալ կոյր գործիք մը եղած է աւելի զանոնք տարաբաժանելու, երբեմն մէկ կողմին հետ համախոհ, երբեմն միւս կողմին հետ համամիտ զինքը ձեւացընելով ։

Հապէշից ուղղափառ եկեղեցւոյն և մեծ ազգին մասին ընդունած համառօտ դաւանութիւնը և անոր թարգմանութիւնը ։

Ընկըլիապ հետ ոլդը ավ քեսէմայէ սամայաթ ոըրէտէ, գասընկըլ Մարեամ թէ ոլէտէ. սօվ անմըլադ հօնօ, անմլադ սօվ հօնօ ։ Գըըլկա կարա անդադայլ, անդ պահարի հօնօ ։ Ոլդը ավ ոլդը Մարեամ հուլէթ լիտէթ պէթու վահըտօ գըլէուր ։ Աւ գըվայի, ըլդ թէ գըվայի, մէնֆէս գտտուս գըվ ։

Թարգմանութիւն Բառական ։

Աստուած՝ Որդին Հօր՝ երկնից երկնքէն իջաւ, և կոյս Մարիամէն ծնաւ ։ Մարդ կատարեալ եղաւ. կատարեալ մարդ եղաւ ։ Միայն (մարմնոյն) հետ մի անձն և մի բնութիւն եղաւ ։ Որդին Հօր (Աստուծոյ), Որդին Մարիամու, երկու ծնունդ՝ մէկ բնակարանով մեծ է ։ Հայր օծեց (իւղեց). Որդին օծուեցաւ. Հոգին Սուրբ օծումն (իւղ) է ։

Թարգմանութիւն Իմաստից ։

Աստուած, որ է Որդի Հօր Աստուծոյ, երկնքէն ի-

ջաւ յարգանդ սրբոյ Կուսին և ի նմանէ ծնաւ ։ Նա եղաւ մարդ կատարեալ յամենայնի, միացեալ աստուածութեամբն մարմնոյն հետ՝ մի անձն և մի բնութիւն եղաւ ։ Որդի է Հօր Աստուծոյ և Որդի է Մարիամայ կուսին, որով կ'ըլլայ երկու ծնունդ, մէկ բնականին՝ այսինքն սուրբ Կուսի արգանդին մէջ մեծ է աստուածութեամբն և մարդկութեամբ ըստ շնորհացն Ադամայ ։ Հայր օծեց զՈրդին իւր միածին, և Որդին օծաւ յարգանդի Կուսին ի ձեռն Հոգւոյն Սրբոյ, որ եղեւ իւղ և օծումն, ըստ այնմ. « Նա օծ զքեզ Աստուած իւղով ուրախութեան ։» Եբրայ. Ա. 9 ։

---

## ԳԼՈՒԽ Զ.

*Հապէշից նախապատուած օրէնքն ու սուրբերը ։*

ԸՆԴՀԱՆՐԱՊԷՍ Նախապատիւ համարած են հին Կտակարանի Մովսիսական օրէնքը, և անոնցմով աւելի հոգւոյ փրկութիւն կ'ակնկալեն, քան թէ Նոր Կտակարանի Քրիստոսադիր օրէնքներէն. վասն որոյ աւելի հին օրէնքով կը վարուին թէ եկեղեցւոյ և թէ արքունական դատաստաններուն մէջ, որովհետեւ անոր արագահաս պատիժները և այս կենացս մէջ տրուելիք հատուցումները, որոնց օրինակները հրաշալի կերպերով նկարագրուած են հին Կտակարանին մէջ, աւելի երկիւղ ազդելով իրենց, ստիպուած են մեծ յարգ և կարեւորութիւն ընծայել այն օրէնքներուն ։ Իսկ Նոր օրինաց մէջ հրամայուած պատիժները անագան և կամ բոլորովին հանդերձեալ կենաց դատաստանի մը ձգուելով, և Նոր Կտակարանին մէջ գրեթէ միշտ ներողութիւն և անյիշաչարութիւն քարոզուելով, անոր յարգը և ուժը նուազած է իրենց տկար ըմբռնմամբը. վասն որոյ և փոխանակ երկիւղ ունենալու անկէ, թուլամիտ կանանցմէ տուած օրէնքներու կարգը դրած են ։ Նոր

համար է որ իրենց մէջ միշտ հին Կտակարանը կը կարդան, աշակերտաց ալ սովորաբար անոր վրայ դաս կուտան, ըստ որում անիկայ իրենց օրինաւորութիւնները կը մեղմացընէ իրենց մոլար ըմբռնմամբը, և մոլութիւննին իբր թէ կը ծածկէ։ Իսկ երկրորդը, այսինքն Յիսուսի Քրիստոսի Նոր օրինաց Կտակարանը՝ Ճշմարտութեան հետ վարուց և բարուց անարատութիւն և կրից մեռուցումներ կը քարոզէ, մոլորութիւնները կը դատապարտէ սաստ խղճիւ՝ և հանդերձելոյն մէջ անշէջ հրով։ Ասոր համար այնչափ յարգ և երկիւղ ունեցած չեն Նոր օրինաց դէմ, ըստ որում իրենք սուրբ Աւետարանի պատուիրանաց համեմատ թշնամեաց ներել՝ ողորմութիւն ընել չեն ուզեր, գութ և սէր ցուցընել ընկերին իրենց ծանր է, վայրենի բարքերնին կըրթել, աւետարանական քաղցրութիւն ունենալ հեռի է իրենցմէ. վասն որոյ չեն ուզեր ընդունել Աւետարանը, որու մէջ կը կարդան իրենց յաւիտենական դատապարտութիւնը։

Ասոր պէս է նաև սրբոց պատուոյն մասին ցոյց տըւած իրենց խորութիւնը և յարգը։ Այն սուրբերը որ զինուորական դասէ ըլլալով՝ իրենց պատկերներն ալ տէգով, նիզակով ու թրով կը նկարուին, անոնցմէ կը վախնան և ակամայ կը յարգեն, անոնց տօնախմբութե̄ օրերը սուրբ կը պահեն տէրունական օրէրէն աւելի։ Այսպէս՝ Միքայել Հրեշտակապետի տօնի օրը քան ըզԳաբրիէլի տօնի օրէն մեծ և սուրբ կը պահեն, ըստ որում առաջինը թուր կը կրէ ձեռքը, իսկ երկրորդը ծաղիկ մը։ Նոյնպէս՝ սուրբ Գէորգի տօնը քան զՍէտանի Ալէմինը (աշխարհի ազատչին, որ է Քրիստոս), յարգոյ և սուրբ կը պահեն, առաջնոյն ձեռքը նիզակ, և երկրորդին ձեռքը միայն ներողութիւն ըլլալով։ Այս տիգաւոր ու թրաւոր սուրբերուն տօնը ամեն ամիս կը կատարեն։

Ասկէ յառաջ եկած է նաև դիւական զօրութիւններէ վախնալնուն՝ զանոնք յիմարաբար յարգելնին։ Ամենուն վիզը կախուած կան կախարդական և դիւական

բաներու համար տեսակ տեսակ հմայեկներ, զորոնք գրագէտները կամ քահանաները կը շինեն և կը ծախեն ժողովրդոց. մինչև քանի հատը մէկէն կախողներ կան։ Ու այս հմայեկ գրելն արհեստ մը եղած է մէջերնին։

---

## ԳԼՈՒԽ Է.

### Ծոմապահութիւնին.

ՀԱՊԷՇԻՑ եկեղեցին ծոմապահութիւն կը սահմանէ պահք օրերը, որով աւելի հին եկեղեցւոյն և հին օրինաց կը հետեւի։

Ծոմապահութեան օրերը թէ որ հարկ ըլլայ պատարագ մատուցանելու, միշտ երեկոյեան դէմ ժամը ութին մօտ կըսկսին, և ինոր քառորդ անցած ծոմերնին կը լուծեն։ Այս պատճառաւ սովորութիւն եղած է պահք օրերը միշտ երեկոյեան դէմ լուծելու, և գիշերը դարձեալ կ՚ընթրեն։

Որովհետեւ սովորութիւն ունին ծածուկ և գաղտագողի ուտել ու խմել, մեծամեծները և տանուտերց մեծ մասը իրենց զաւկըներէն և սպասաւորներէն գաղտուկ ծոմ օրերը հաւախօսի ժամանակ անկողինէն ելելով կ՚ուտեն ու կը խմեն ինչ որ գտնեն տանը մէջ և ինչ որ իրենց խորհրդապահ կինը պատրաստած ըլլայ. ամենեւին ոչ պահք կը նային և ոչ ուտիք։ Ուստի անկողնէն ելած ատեննին ալ իբրև ճշմարիտ պահեցող կը պարծենան՝ մանաւանդ ճերմակ մարդոց, որպէս թէ քան զամեն քրիստոնեայ ազգերը գերազանցած ըլլան ծոմապահութեան և ժուժկալութեան մէջ, զոր և քրիստոնէութեան ճշմարիտ մէկ նշանը կը համարին։

Ծոմապահութեան օրերը ոմանք քթախոտ կը քաշեն, մինչեւ քահանայք անգամ ժամարարութենէ ա-

համար է որ իրենց մէջ միշտ հին Կտակարանը կը կարդան, աշակերտաց ալ սովորաբար անոր վրայ դաս կուտան, ըստ որում անկէց իրենց օրինազանցութիւնները կը մեղմացընէ իրենց մոլար ըմբռնմամբը, և մոլութիւննին իբր թէ կը ծածկէ: Իսկ երկրորդը, այսինքն Յիսուսի Քրիստոսի Նոր օրինաց Կտակարանը՝ ճշմարտութեան հետ վարուց և բարուց անարատութիւն և կրից մեռուցումներ կը քարոզէ, մոլորութիւնները կը դատապարտէ սաստ խղճիւ՝ և հանդերձելոյն մէջ անշէջ հրով: Ասոր համար այնչափ յարգ և երկիւղ ունեցած չեն Նոր օրինաց դէմ, ըստ որում իրենք սուրբ Աւետարանի պատուիրանաց համեմատ թշնամեաց ներել՝ ողորմութիւն ընել չեն ուզեր, գութ և սէր ցուցընել ընկերին իրենց ծանր է, վայրենի բարքերնին կրթել, աւետարանական քաղցրութիւն ունենալ հեռի է իրենցմէ. վասն որոյ չեն ուզեր ընդունել Աւետարանը, որու մէջ կը կարդան իրենց յաւիտենական դատապարտութիւնը:

Ասոր պէս է նաև սրբոց պատուոյն մասին ցոյց տըւած իրենց խորութիւնը և յարգը: Այն սուրբերը որ զինուորական դասէ ըլլալով՝ իրենց պատկերներն ալ տէգով, նիզակով ու թրով կը նկարուին, անոնցմէ կը վախնան և ակամայ կը յարգեն, անոնց տօնախմբութեան օրերը սուրբ կը պահեն տէրունական օրերէն աւելի: Այսպէս՝ Միքայէլ հրեշտակապետի տօնի օրը քան ըզԳաբրիէլի տօնի օրէն մեծ և սուրբ կը պահեն, ըստ որում առաջինը թուր կը կրէ ձեռքը, իսկ երկրորդը ծաղիկ մը: Նոյնպէս՝ սուրբ Գէորգի տօնը քան զՍէտանի Ալէմինը (աշխարհի ազատչին, որ է Քրիստոս), յարգոյ և սուրբ կը պահեն, առաջնոյն ձեռքը նիզակ, և երկրորդին ձեռքը միայն ներողութիւն ըլլալով: Այս տիգաւոր ու թրաւոր սուրբերուն տօնը ամէն ամիս կը կատարեն:

Ասկէ յառաջ եկած է նաեւ դիւական զօրութիւններէ վախնալնուն՝ զանոնք յիմարաբար յարգելնին: Ամենուն վիզը կախուած կան կախարդական և դիւական

բաներու համար տեսակ տեսակ հմայեկներ, զորոնք գրագէտները կամ քահանաները կը շինեն և կը ծախեն ժողովրդոց. մինչեւ քանի հատը մէկէն կախողներ կան. Եւ այս հմայեկ գրելն արհեստ մը եղած է մէջերնին:

---

## ԳԼՈՒԽ Է.

### Ծոմապահութիւննին.

ՀԱՊԷՇԻՑ եկեղեցին ծոմապահութիւն կը սահմանէ պահք օրերը, որով աւելի հին եկեղեցւոյն և հին օրինաց կը հետեւի:

Ծոմապահութեան օրերը թէ որ հարկ ըլլայ պատարագ մատուցանելու, միշտ երեկոյեան դէմ ժամը ութին մօտ կըսկսին, և ինը քառորդ անցած ծոմերնին կը լուծեն: Այս պատճառաւ սովորութիւն եղած է պահք օրերը միշտ երեկոյեան դէմ լուծելու, և գիշերը դարձեալ կ'ընթրեն:

Արովհետեւ սովորութիւն ունին ծածուկ և գաղտագողի ուտել ու խմել, մեծամեծները և տանուտերց մեծ մասը իրենց զաւկըներէն և սպասաւորներէն գաղտուկ ծոմ օրերը հաւախօսի ժամանակ անկողինէն ելլելով կ'ուտեն ու կը խմեն ինչ որ գտնեն տանը մէջ և ինչ որ իրենց խորհրդապահ կինը պատրաստած ըլլայ. ամենեւին ոչ պահք կը նային և ոչ ուտիք: Նաեւ անկողինէն ելած ատեննին ալ իբրեւ ճշմարիտ պահեցող կը պարծենան՝ մանաւանդ ձերմակ մարդոց, որպէս թէ քան զամեն քրիստոնեայ ազգերը գերազանցած ըլլան ծոմապահութեան և ժուժկալութեան մէջ, զոր և քրիստոնէութեան ճշմարիտ մէկ նշանը կը համարին:

Ծոմապահութեան օրերը ոմանք քթախոտ կը քաշեն, մինչեւ քահանայք անգամ ժամարարութենէ ա-

ռաջ անխտիր կը գործածեն դաշտնապէս (1), ինչպէս ականատես եղած ենք. և ասկէ խիստ մեծ իրաւամբ կը հետեւցընենք թէ՝ ծոմապահութիւննին անգամ առերեւոյթս է և ոչ իրական. նոյնը կը վկայէ իրենց կեղծաւորական և փարիսական վարքը: Իսկ ճշմարտապէս ծոմ պահողները միմիայն աղքատներն և խեղճ սպասաւորներն են, և այն ալ ձեռքերնին միշտ հաց չընկնալէն ստիպուած կը պահեն:

Ծոմապահութիւնն իրենց քով մեծ առաքինութեան մը պէս յարգ ունի, բայց խօսքով միայն, զոր եկեղեցւոյ խորհուրդներէն աւելի կը պատուեն, որուն դէմ խօսողը իբր անկրօն կը պարսաւի:

Մեծ ծոմերը, ինչպէս սուրբ Ծննդեան, Առաքելոց, և այլն, միայն կարգաւորաց և կրօնաւորաց համար է կ'ըսեն ժողովուրդները, և իրենք չեն պահեր զանոնք:

Շաբաթ և կիրակի աւուր պատահած պահքերը ծոմ պահել կարեւոր չհամարիր Հապէշից եկեղեցին, որոնց պատիւը աւելի յայտնի ըլլալու համար առաւօտ շատ կանուխ կ'ուտեն կերակուրնին և չուտողներն անգամ կը մեղադրեն իբր թէ այն աւուր յարգը չեն պահեր:

Տղայոց համար ոչ պահք կայ և ոչ ծոմ, և ազատ են յանցանքէ և մեղադրութենէ, որոնց համար կ'ըսեն գիտնականք թէ՝ արդարոց համար օրէնք չկայ:

---

## ԳԼՈՒԽ Ը.

*Եկեղեցական տօմարնին և իրենց վիճաբանութիւնը:*

ԵԿԵՂԵՑԻՈՑ տօնած սուրբերուն յիշատակութիւնը Յունաց և Ղպտւոց նման ամսոյն օրերուն վրայ է:

(1) Աբունա—Սելամին բոլորովին արգիլած է նզովքով եկեղեցականաց քթախոտ գործածելը որ և իցէ ժամանակ: Վասն որոյ հասարակութեան աչքին գայթակղութիւն կը համարուի այսօր՝ անոնց այս պատուէրին դէմ վարուելը:

Այս հաշիւներուն վրայօք տարբերութիւններ ալ ծագելով իրենց մէջ, վէճեր ու հակառակութիւններ պակաս չեն ըլլար երբեք ։ Եգիպտոսէն եկող Ղպտի Առաջնորդներն ալ իրարու անհամաձայն գտնուելով այս մասին, վէճերուն աւելի ոյժ ու հաստատութիւն տուած են ։ Ասոնցմէ մէկը մեծի պահոց պահեցողութիւնը քառասուն օր կը հրամայէ, օրինակ բերելով Քրիստոսի քառասնօրեայ ծոմապահութիւնը։ Ուրիշ մէկը իբր թէ անոր սխալը ուղղելով՝ քառասուն և ութ օր պահելու հրաման կ'ընէ ։ Իսկ Աբունա–Սելամի վախճանեալ վերջին առաջնորդն ալ շաբաթ մի եւս վերադիր ընելով՝ յիսուն և հինգ օր պահելու պատուէր տուած է ։ Ասանկով շփոթած են եկեղեցական հաշիւները, և հարկ կ'ըլլայ ամեն մէկ երկրին մէջ իրենց սիրած Առաջնորդին հրամանին հետեւելու, տեղ մը 40 օր, տեղ մը 48 և տեղ մը ալ 55 օր պահելով ։

Այսպէս նաև սուրբ Ծննդեան քառասնօրեայ պահքը Աբունա–Սելամին ստիպելովը կը շփոթի. անոնք որ զինքը սիրած են, չորս օր յառաջ կըսկսին պահել, և չսիրողները չորս օր ետքը, այսինքն ճիշտ քառասուն օր ։

Չորս տարին անգամ մ' ալ նահանջ տարիները, Քրիստոսի ծննդեան տօնը օր մը յառաջ կ'ըսկսին տեղ տեղ կատարել. ինչպէս այս տարի 1869 ին, Յովհաննու աւետարանին կարգը բռնելով, երեք ծնունդ Քրիստոսի դաւանողները երեքշաբաթի օր կատարեցին Ծնընդեան տօնը. իսկ Որդին օծումն (Ուլդ–գըվ) դաւանողները Մատթէոսի աւետարանին կարգը բռնելով՝ չորեքշաբթի օր տօնեցին (1) ։

Եկեղեցւոյ կանոնաց ու պատուիրանաց անհամաձայնութեան խնդիրներու մէջ աւելի վիճասէր ու հակառակող են գիտնականաց դասը, և երբեք չեն ուզեր կարծեաց մէջ համաձայնիլ, թէև գիտնան ճշմարտութիւնը հակառակ կողմն ըլլալը. աւելի իրենց կամքը յառաջ տա-

(1) Այս շփոթութիւնը չորս տարին անգամ մը Յովհաննու աւետարանին կարգն եղած տարին կը պատահի, կ'ըսեն ։

նելու կ'աշխատին՝ քան թէ ճշմարտութիւնը պաշտպանելու. որովհետեւ կրօնասիրութենէ կամ ճշմարտասիրութենէ առնըւեալ վճռականութե̃ մէջ չեն նետուիր. այլ փառամոլութեամբ իրենց գիտնականութիւնը ցոյց տալու և մեծ կոչուելու համար. ասկէ կը պատճառի իրենց եկեղեցւոյն մէջ անվերջանալի հակառակութիւնն ու վէճը:

---

## ԳԼՈՒԽ Թ.

### Ա. Քանի մը կրօնական սովորութիւններ:

ՎԵՐԱՑՄԱՆ սուրբ խաչի օրը երեւելի և նշանաւոր օր համարուած է Հայէնից քով, և մեծ հանդիսով կը կատարեն զայն՝ քան թէ սուրբ Ծննդեան և սուրբ Զատկի օրերը, որոնք հասարակ օրերու պէս առանց հանդիսաւոր տօնախմբութեան կ'անցընեն:

Վերացման սուրբ խաչին առջի իրիկունէն սկսեալ մինչև առաւօտ արտաքոյ կարգի հանդէսներ կը կատարեն աշխարհային ուրախութիւններու, ինչպէս հեթանոսութեան ժամանակ Բաքոսի տօնին առթիւը կը կատարուէր, թէպէտ և Հայէններուն ռամկական հանդիսից մէջ կրօնական ցոյցեր ալ կան: Առջի գիշերէն բարձր տեղւոյ մը վրայ փայտերու մեծ կոյտ մը կը դիզեն. ժողովուրդէն մաս մ'ալ ամէն մէկերնին բարակ փայտերու խուրձ մը կապած ու ձեռքերնին բռնած բազմութեամբ կը շրջին բոլոր տուները սուրբ խաչին վրայ գովասանութիւններ ընելով. և տանտէրերէն բատակ ալ կը պահանջեն, և այն դրամով եզ մը գնելով հետեւեալ առաւօտ կը մորթեն և հանդիսիւ կ'ուտեն(1): Իսկ առաւօտուն կանուխ ժամերգութեան աւարտա-

(1) Աստուածածնի վերափոխման օրն ալ չափահաս օրիորդները այս կերպով կը շրջին և արմտիք ժողվելով կորեկօղի կը շինեն, կը խմեն ու կ'արբենան:

մէն զէնի առանց պատարագ մատուցանելու՝ քահանաներով և դպիրներով մէկտեղ բոլոր գիւղացիք կ՚երթան փայտակուտին քով, ուր քիչ մը կարդալէն յետոյ կը բռնկցնեն փայտերը գիւղի բոլոր կանայք, և աղջկունք ալ հեռուէն լէ- լէ- կ՚երգեն: Իսկ մարդիկ իրենց ձեռքերնուն եղած խուրձերը կը վառեն և ժուռ կուգան բազմութեամբ՝ դարձեալ երգեր և գովասանքներ խօսելով: Այս արարողութիւնը քիչ շատ նմանութիւն ունի Երուսաղէմի մէջ Քրիստոսի սուրբ Գերեզմանին բոլորտիքը Խթման երեկոյին Յունաց ռամիկ ժողովրդոց կատարած Լուսաւորեայի հանդէսին: Այն Վերացման սուրբ Խաչի հանդէսը զօրաց մէջ ալ կը կատարուի առանց քահանայի, ինչպէս տեսանք Ա. հատորին մէջ երես 42:

Բ. Քրիստոնէութեան արտաքին նշանին:

Գիտենք որ ուղղափառ եկեղեցին հին դարերէն ի վեր իբրեւ նշան քրիստոնէութեան ընդունած է խաչին նշանը. նոյնպէս և հաւատացելոց ալ արտաքին նշան համարուած է երեսնին խաչակնքելը: Այս բարի սովորութիւնը թէ՛ արեւելեան և թէ արեւմտեան քրիստոնեայք մինչեւ ցայսօր կը գործադրեն եկեղեցի մտած ու աղօթած ժամանակնին, նոյնպէս և ուրիշ անհամար դէպքերու մէջ, իբր յիշատակութիւն Քրիստոսի չարչարանացը և անոր պաշտպանութիւնը խնդրելու ընդդէմ փորձանաց: Այն բարի սովորութիւնը չունին բնաւ Հապէշից ժողովուրդը, ոչ խաչակնքելու եղանակը գիտեն և ոչ անոր նշանակութիւնը. թէպէտ և կ՚ընդունին սուրբ Խաչի զօրութիւնը և անոր տօնն անգամ մեծ հանդիսիւ կը կատարեն ինչպէս վերը տեսանք: Երեսը խաչակնքելը քրիստոնէից արտաքին մէկ նշանն ըլլալով, Հապէշք փոխանակ զիրենք խաչակնքելով (1) քրիստոնեայ ըլլալնին յայտնելու և Ամհետական Հա-

(1) Թէպէտ իրենց եկեղեցին կ՚ընդունի ցուցամատով միայն երեսնին խաչակնքելը, բայց իրենք չեն գործածեր. և ցուցամատով խաչակնքելնին մի բնութեան դաւանութիւնը կը նշանակէ:

պէշներէն որոշուելու, վիզերնին կապած ոլորուն կապուտ թել մը կը կրեն մկրտուած օրերնէն, որ երբ թէ Հայոց մկրտութեան նարօտին պէս բան մըն է ։ Այս թելովս կ'որոշուին ուրիշ ազգերէն ։ Անհմտականք ալ հարիւր հատէ շարուած համրիչ մը կը կրեն վիզերնին (1) ։

Գ. Անուանադրութիւննին ։

Թէ՛ եկեղեցականաց և թէ աշխարհականաց անունները նիւթական բաներէ առնուած է, ինչպէս արծաթ, ոսկի, հող, քար, կանանչ, կարմիր, որոնց վրայ թէ որ ուզեն՝ որակացուցիչ մակդիր մ'ալ կ'աւելցնեն ։ Սրբոց անունները թողլով այսպիսի անուանակոչութք անուանելնին, երեխայից մկրտութիւնը ուշացնելէն և ծնողաց ագիտութենէն յառաջ եկած է, որով իրենց քրիստոնէութեանը այս կողմէն ալ արտաքին նշան մը ունենալէն կը զրկուին, ըստ որում որ և իցէ անձի մը կրած անունէն ալ խիստ շատ անգամ յայտնի կ'ըլլայ ինչ կրօնքի ծառայելը ։ Քիչ անձինք կը գտնուին որ սրբոյ մը անունը կրեն (2) . ասոնցմէ ոմանք իշխանութեան մը հասած ժամանակնին կը փոխեն իրենց նիւթերէ առնուած անունները և քրիստոնեայ անուննին մունետիկի մը ձեռօք հասարակութեան իմաց կուտան, որ յետ այնորիկ նոյն քրիստոնեայ անուամբ կանչեն զինքը, և կերպով մը իրենց առջի աղքատութեան կամ

(1) Քրիստոնեայ կրօնաւորներն ալ համրիչ կը կրեն, բայց 42 կամ 84 հատէ բաղկացած է, որով աղօթաւոր ըլլալնին կը յայտնեն ։ Ժողովրդոց մէջէ ալ կորավլինները 41 հատով համրիչ կը գործածեն, օրական երեք աղօթից ժամանակ, որոնք համրիչը մէկ անգամ դարձնելով կը լմննայ ։

(2) Գործածած քրիստոնեայ անունները մեր գրածներէն տարբեր են որոնց՝ օրինակի համար մէկ քանին նշանակենք հոս ։ Գարա Մէնիֆէս գըտտուս (Հոգւոյն սրբոյ գերին) . Գարա—Եէսուս (Յիսուսի գերին) . Գարա—Մարեամ, (Մարեամին գերին) ։ Ասոնց վրայ ածական մ' ալ կ'աւելցընեն . զոր օրինակ . Հայլօ—Գարա—Մարեամ, (Մարիամին կարիճ գերին) ։ Երբեմն և ուրիշ սրբոց անուններուն վրայ Ոլտէ (որդի) բառն ալ կ'աւելցնեն . ինչպէս՝ Ոլտէ—Եէսուս (Յիսուսին որդին) . Ոլտէ—Կորկիս (Գէորգին որդին) . Թէքլէ—Կորկիս (Գէորգին պարտէզը կամ դրախտը) ։

նուաստութեան վիճակը մոռցընել տան ։ Ամենք Մահմետականաց Ալի անունն ալ կը կրեն, որ կալուցի Մահմետականներէն մնած է իրենց մէջ։ Քրիստոնէից անունները աւելի Քրմանդ ըսուած անկրօն ազգը ի յարգի ունի և կը գործածէ, ինչպէս տեսանք Ալմարայի մէջ։

Գ. Սրբոց ամսական տօները ։

Իւրաքանչիւր սրբոց համար, զոր իրենք կը յարգեն ինչպէս ըսինք երես 66. ամեն ամսոյ մէջ յատկացեալ օր ունին զոր իբրեւ կիրակի կը պահեն. անոնց հետ նաև քանի մը տէրունական տօներ և կիրակի և շաբաթ օրերն ալ դնելով, գրեթէ ամսոյն բոլոր օրերը տօն կը պահեն. Թերեւս այս տօնից պատճառաւ եղած դատարկակեցութենէ յառաջ եկած է իրենց բնական ծուլութիւնը և անգործութիւնը։ Շաբաթ օրերն ալ Հրէից նման պահելնին հին օրինաց պատուէրը զանց չընելու համար է, որ ինչպէս ըսինք իւր տեղը, քան զնոր օրէնքը աւելի ի յարգի ունին ։

Ամեն ամսոյ օրական թիւերը իւրաքանչիւր սրբոց յատկացեալ տօներովը կրնան գտնալ։

---

## ԳԼՈՒԽ Ժ.

Եկեղեցականաց անվայել ընթացքը և անոնց անժուժկալութիւնը։

ԻՆՔՆԸՆՏԻՐ և ինքնակոչ թէ ամուսնացեալ և թէ անամուսին եկեղեցականները իրենց անարժան վարքովն ու ընթացքով անպատիւ եղած են ժողովրդոց առջեւ։ Գողութիւնը, ստախօսութիւնը և խաբեբայութիւնը ի մանկութենէ իրենց երկրորդ բնութիւն ըլլալով՝ չեն կրնար թողուլ զանոնք, այլ և մեղք ալ չեն համարեր։ Շնութիւնն ալ շատերուն գլխաւոր մոլութիւնն է, մանաւանդ կարդացողներուն և դպիրներուն, որոնք ե-

կեղեցւոյն պաշտպանները և կրօնից վրայ հսկողները պիտի ըլլան, և ընդհակառակը անոնց խանգարման և անշքութեան պատճառն եղած են իրենց անառակ ու մոլի վարքովնին ։ Անոնք կը նախատեն միշտ զքահանաները (1), և ազխտութիւննին անոնց երեսը կը զարնեն, և եկեղեցւոյ խորհուրդները և արարողութիւնները չըգիտնալնին յանցանք կը համարին անոնց, ինչպէս և է ճշմարտապէս ։ Նոյնպէս քահանաներն ալ զանոնք կը նախատեն իրենց անկարգ և ցափ վարքերնուն համար, թէպէտ և իրենք ալ անոնցմէ շատ վար չեն մնար ։

Անանկ ալ սարկաւագներն իմացիր ։ Անոնք մինչեւ որ քսան և հինգ կամ երեսուն տարեկնին չլրացընեն, օրինաւոր կնկան մը՝ այսինքն արտաքոյ եկեղեցւոյ պայմանադրութեամբ կին մը չեն առնուր, և կ՚ըլլան այն ժամանակ ամուսնացեալ քահանայ ։ Բայց մինչեւ այն ատամայն հասակը, ինչպէս որ իրենք կ՚ըսեն, համելու ըլլան, որքան շնութիւններ և անառակութիւններ գաղտնի գործած են, այն միայն Աստուած գիտէ ։

Ամուսնացեալ քահանաներուն մէջ թէ որ գտնուի այնպիսիները որ չկարենան ժուժել ու համբերել իրենց բնութեան արտաքոյ կարգի մարմանջանաց և միով կընաւ բաւականանալ, այնպիսիներուն թոյլտուութիւն եղած է իրենցմէ, իրենց կինը թէ որ ուզեն՝ արձակել և կամ առանց զայն արձակելու ուրիշ կիներ ալ ունենալ տանը մէջ, քահանայութենէն հրաժարելով ։

Իսկ եթէ կրօնաւոր քահանայ է, իւր դրամական կարողութեանը համեմատ կրնայ կին առնուլ և չուզածը արձակել. բայց այն ժամանակ աս ալ քահանայութեան պաշտօնէն կը հրաժարի, և թէ որ ուզէ կրնայ միայն դպրութիւն ընել ու դպիր համարուիլ, ապա թէ ոչ բոլորովին եկեղեցիէն հրաժարելով Ա՛նկորաձներուն (չհաղորդուողներուն) կարգը կ՚անցնի ։ Այսու ամենայնիւ

(1) Քահանայ կը կոչեն Հայկէշք թէ ամուսնացեալ և թէ անամուսին եկեղեցականները ։ Ամուսնացեալը Պոլէէյ կը կոչուի, որ կին ունող ըսել է, ու կուսակրօնը Մոնէոէ, որ կրօնաւոր քահանայ կը նշանակէ, զոր մենք վարդապետ կը կոչենք, քարոզչութեան իշխանութիւն ալ ունենալուն համար ։

քրիստոնեայ է և որդի աղքատութեան ։

Խոսրովի կարգաւորները առանց բարի օրինակ ըլլալու տեղ՝ չար օրինակ եղած են միշտ ։ Սպունա-Մելամիի եղբայրն ալ, որ վարդապետ է, և ուրիշ Խոսրովի վարդապետ մի ևս՝ քանի մը կին առած նստած են այսօր իբր աշխարհական, և վաճառականութիւն կ'ընեն ։ Սպունա-Մելամիի համար ևս կ'ըսեն շատերը՝ թէ գաղտնի կին կը պահէր, և յետոյ գաղղիական ախտի տէր ըլլալով՝ իրեն մահուանը պատճառ եղած է այն ։ Այսպէս կը հաւատան ամենք ։

Այն ալ ամենք որ եկեղեցական պաշտօնէ հրաժարեցին ետքէն իրենց խիղճ ըլլալով՝ կը զղջան, և կ'ըլլան դարձեալ կրօնաւոր քահանայ . ամենք ալ անծանօթ երկիրներ երթալով կրկին քահանայութեան պաշտօն կը վարեն՝ անուննին փոխելով ։

---

## ԳԼՈՒԽ ԺԱ.

### Ա. Եկեղեցականաց ազատութը ։

Ամեն եկեղեցի հին Թագաւորաց ժամանակէն իրեն համար յատկացեալ երկիրներ ու արտեր ունի, որոնք նոյն եկեղեցւոյն ծառայող քահանայից, սարկաւագաց ու դպրաց կը բաժնուին, և անոնց տասանորդովը յատուկ եկեղեցպանի մը ձեռօք եկեղեցւոյն հարկաւոր պէտքերը կը հոգացուի ։ Եկեղեցպանութիւնը ժառանգական պաշտօն է ։

Ժողովուրդը թէ եկեղեցիներուն և թէ եկեղեցականաց հարկաւորութիւնները հոգալու պարտաւորութիւն չունի, և ոչ դրամ մը կամ բուռ մը կորեկ կամ ալիւր տալու պարտաւոր կը համարի զինքը, այլ ընդհակառակը իրենց աչքը եկեղեցւոյն վրայ է, և սորված են անկէ ուտել ու ապրել ։

Եկեղեցիներուն արտերը եկեղեցականք կը վարեն կը հնձեն և իրենց քրտամբը կ'ապրին, և իբրև ժողովուրդ Թագաւորին տուրք ալ կուտան։ Իրենց այս հաստատուն ու ապահով եկամուտին և ժողովրդոց հետ նիւթական յարաբերութիւններ չունենալնուն պատճառաւ է որ եկեղեցական պարտաւորութեանց մէջ միշտ անհոգութեամբ կը վարուին, և անկէ կը ծագէ օրինաց դէմ անկարգութիւններն և սրբազան խորհրդոց խափանմունքները։ Թէ որ ուզեն քահանայք՝ կը պատարագեն, ուզեն՝ կըսպասաւորեն. Նոյնպէս և դպիրք ու սարկաւագունք ուզեն՝ եկեղեցի կ'երթան, չուզեն՝ չեն երթար, զիրենք պարտաւորող մը չկայ։ Իսկ եթէ ակամայ երբեմն երբեմն հոգևոր պարտքերնին կատարելու ըլլան, եկեղեցիէն ընդունած կալուածներուն սիրոյն համար է և ոչ ուրիշ պատճառաւ։ Ամենևին հոգերնին չէ, ոչ առողջին և ոչ հիւանդին, ոչ հոգեվարին և ոչ մեռնողին հոգևոր ծառայութիւնները կատարելը, թէպէտ և քիչ շատ մեռելներէն կողոպուտ և եկեղեցւոյ տրուած պատարագուցներէն և պաշտօններէն բաժին ունին։

Կրօնաւոր քահանայք ալ ասոնց նման արտեր ունին և վարուցան ընելով կ'ապրին իրենց ընտանեաց քով. կին և մանչ սպասաւորներ ալ կը պահեն իրենց կարողութեան համեմատ։

Կան անկարգ և անկանոն մենաստաններ ալ, որոնք իրենց յատկացեալ գիւղերէն եկած արդիւնքով կ'ապրին։ Ամեն մենաստաններու մէջ գտնուած կրօնաւորները իրենց դրամական կարողութեանը համեմատ կին և մանչ սպասաւորներ պահելու սովորութիւն ունին ներքին և արտաքին ծառայութեանց համար։

### Բ. Խպտի Առաջնորդին և Չէկինի* (ծայրագոյն վարդապետին) եկամուտները:

Բոլոր Հապէշստանի Առաջնորդ կարգուած Խպտի եպիսկոպոսը եկեղեցականաց ձեռնադրութեան և օրհնութեան համար ընդունած արդիւնքներէն զատ, ունի իրեն յատկացեալ շատ մը գիւղեր և գաւառներ, որոնց տարեկան հասոյթէն և բերքերէն գոյացած եկամուտներովը կ'ապրի: Իւրաքանչիւր երկրի մէջ տնտեսներ կարգած ունի յատուկ իրենց պաշտօնական հագուստովը, որոնք եկամուտները կը ժողվեն Առաջնորդին կողմէն. և այս պատուոյ կամ պաշտօնական հագուստը Առաջնորդը կուտայ իրենց: Այս մարդիկը իշխանութիւն ունին նաև ամեն դատաստաններու մէջ իր կողմէն ներկայ գտնուելու և անկէ գոյացած տուրքերն ալ իրենք կ'ընդունին: Այսքան հարստութեանց մէջ դարձեալ աղքատ է Առաջնորդը, ըստ որում իրեն չորս կողմը պաշարուած է շողոքորթներու ու պատառաքաղներու խմբէ մը, որոնք տզրկի նման կը քաշեն և կ'ուտեն և չեն կշտանար բնաւ:

Առաջնորդին եկամուտներէն աւելի է, կ'ըսեն, Չէկինը. բայց այս ալ դարձեալ իւր անբաւ փարթամութեամբը աղքատ կը համարուի. վասն զի ուր տեղ որ շողոքորթ, ստախօս ու կեղծաւոր մարդիկ շատ կան, հոն բնականապէս հացի սղութիւն կ'ըլլայ: Այն երկրիս տիրող մոլութիւններն ընդհանրապէս ասոնք են: Անթիւ սպասաւորներ, տնանկ ու աղքատ ողորմելիները մէկ կողմէն, երեսպաշտ ու պատառաքաղ մարդիկը միւս կողմէն իրենց ընդունած ողորմութիւններով ու պարգևներով ամենևին չեն յագենար, և միշտ ողորմելի են և հացի կարօտ: Աշխատութիւնը ու վաստակը մէկդի թողած՝ ասոնց և ուրիշ հարուստ իշխանաց դռներն ինկած աներեսութեամբ մուրալու սորված են:

* Թագաւորին և Խպտի եպիսկոպոսին ընտրութեամբը և հաճութեամբը կ'որոշուի այն կուսակրօն քահանայն, և յետոյ ծայրագոյն կ'օրհնուի եպիսկոպոսէն և Չէկի կը կոչուի:

Թէ Առաջնորդը և թէ Չէկին Թագաւորին հաւասար յարգ ու պատիւ ունին . և տարեկան ամբողջ եկամուտնին մէկ միլիօն դահեկանի կը հասնի , կ'ըսեն ։ Ասկէ պէտք է հետևցնենք թէ որչափ ողորմութիւններ միշտ կը շռայլեն՝ որ իրենց քով տարւոյն վերջը բանակ մը չմնար ։ Իսկ թէ որ ասոնք ողորմութիւն և պարգև տալը զանց ընեն , իրաւ մեծ հարստութեան տէր կ'ըլլան քիչ ժամանակի մէջ , սակայն իրենց քաղաքական մեծութիւննին ու պատիւնին վրայ կուտան . ըստ որում այն պատուաբեր ու աղքատ ըսած մարդիկները իրենց լեզունին արելով կ'ընկնան ասդին անդին և զրպարտութիւն և դէշ խօսքեր չմնար որ չըրուցեն անոնց վրայօք . այնքան կը խօսին , մինչև որ մէկ սատկի կ'ընեն անոնց անունը և պատիւը , մանաւանդ այն մարդիկը որ քովերնին ծառայութեան մէջ կը գտնուին . և ժողովուրդը տրամադիր է միշտ ասոնց խօսքին հաւատալու ։ Իրենց Առաջնորդներէն և ոչ մէկը ազատ գտնուած է ժողովրդոց չարախօսութիւններէն ու բամբասանքներէն . ասոր համար մեծ մասը իրենց համարումը վերուցած են Առաջնորդներուն վրայէն առանց փորձիւ ճանչնալու անոնց անձնական յատկութիւնները ։ Սակայն իրենց իրաւասութենէ կախեալ չէ Եգիպտոսէն Առաջնորդ բերել տալը կամ չտալը , այլ Թագաւորներուն բացարձակ կամքէն կախեալ է . ինչպէս այս անգամ Թէկլէի իշխանապետ (1) Տէճաճմաչ—Գասսան ինքը բերել տուաւ նոր առաջնորդ Աբունա Աթանագիոսը ։

Գ. Եկեղեցականաց հագուստը ։

Կարգաւորաց , գիտնականաց և դպրաց գլուխը ճերմակ գունով խոշոր ու ահագին փաթթոցներով զարդարուած են , որոնցմով կ'որոշուին աշխարհականներէն ,

(1) Այս իշխանապետը թէպէտ Թագաւոր հրատարակուած չէ , բայց իր ժողովուրդը զինքը Թագաւոր կը կոչէ , ինչպէս ուրիշ տեղ ըսած ենք։

բայց որովհետեւ Հրէից ու Մահմետականաց կրօնապետներն ալ անոնց նման փակեղներ կը կրեն , ուստի անծանօթ և օտարական մարդոց շփոթութիւն չըլլալու համար՝ կանխաւ կը յայտնեն և կ՚իմացնեն իրենց քրիստոնեայ Հապէշից կարգաւորներն ըլլալը ։ Երեւելի վանահայրերուն և պատուաւոր կրօնաւորներուն փակեղը կարմիր ու կանանչ գունով է ։ Նոյնք տեղ մը երթալու ժամանակ սովորութիւն ունին իրենց իշխանական գաւազանը և երբեմն մեծ խաչ մըն ալ հետերնին կրելու . և գաւազանը քարոզելու նշան չէ , ըստ որում քարոզել անգամ չեն գիտեր , այլ իրենց իշխանութիւնը միայն յայտնելու համար կը կրեն ։



# ՀԱՊԷՇՍՏԱՆԻ ՆԵՐԿԱՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՆՑՔԵՐԸ

## ԳԼՈՒԽ Ա.

*Զրնտօ և Կրայն հրէշաւոր Թագաւորները.*

Հապէշից ներկայ քաղաքական պատմութեան ձեռք չզարկած, որ Թէոդորոսի իշխանութեան ժամանակէն կըսկսի, աւելորդ չեմ համարիր համառօտ տեղեկութիւն մը տալ Հապէշից ազգային հին աւանդութեան մը վրայ, որ իրենց նախնական պատմութեանը կարեւոր մէկ մասը համարուած է. այն է Զրնտօ և Կրայն Թագաւորաց տիրապետութիւնը, որ ըստ իս ուրիշ բան չէ՝ եթէ ոչ առասպելաբանութիւն մը, որով հին ազգաց շատերուն պատմութիւնը հիւսուած կը գըտնենք, որոնք մանաւանդ գտած են հեթանոսական նախապաշարմունքներէ.

### Ա. Զրնտօ Թագաւորը.

Այս Թագաւորն է վիշապ օձը Թեւաւոր և Թունաւոր, որ Հապէշներուն քրիստոնէութեան դարձած ժամանակները տիրած է երկրին. և որովհետեւ ըստ եկեղեցական պատմութեան՝ Մատթէոս աւետարանչի ձեռօք նախ քրիստոնէութիւն եղաւ ի Հապէշստան, յայտ է թէ առաջին դարուն սկիզբները պատահած է անոր տիրապետութիւնը.

Այս գազանը զոր Զընտօ Թագաւոր կը կոչէն, ուր որ յարձակելու ըլլար, բոլոր ժողովուրդը ահուդողի մէջ կը Թողուր. ինչ որ դիմացը պատահէր՝ Թէ մարդ և Թէ անասուն, իսկոյն յարձակելով կը լափէր ու կը մարսէր. ուրտեղ որ բան չգտնէր ուտելու, ուրիշ տեղեր կ'երԹար բնութեան հարկէն ստիպեալ. Սուտի երբ տեղացիք իմանային անոր գալը, իրենց յօժար կամօքը անմիջապէս կ'որոշէին ունեցածնուն տասանորդը, կով ոչխար, այծ և այլն, և կուտային իբրեւ տուրք բռնաւոր գազանին. եւ իրենք Թողլով անոր մնացած գիւղերը, ուրիշ հեռաւոր երկիրներ կը փախչէին իրենց անասուններով մէկտեղ։ Երբեմն կը պատահէր որ փախուստ տուած տեղերնին յանկարծ վրայ հասնելով զամենքն ալ իւր դժոխային որովայնին կերակուր կ'ընէր, բոլոր երկիրը դողման ու սասանութեան մէջ կը ձգէր, և ոչ ոք կը համարձակէր երկար ճամբայ երԹալ՝ վախնալով որ անոր ճանկին մէջ չընկնայ։ Այսպէս վեց տարի ամեն տեղ սարսափ ու հարուած տալով՝ իբրեւ ինքնիշխան Թագաւոր և իբրեւ աստուած տիրած է Հապէշու երկրին։

Վերջապէս Ամթիէ—Դաւլիդ անուն քրիստոնեայ մը անոր տուած անհնարին վնասներուն և անտանելի կորուստներուն վրայ ցաւելով ու զայրանալով, Ճշմարիտ Աստուծոյն վրայ իւր յոյսը դրած՝ երկար ատեն կը խորհի կը մտածէ հնարք ու ճար մը գտնել այս գազանը սպաննելու և երկիրն անոր ձեռքէն ազատելու։ Ահաւասիկ անոր գտած հնարքը. Գազանին անցնելու ճամբաներուն վրայ երկաԹի սուրեր գամել կուտայ իրարու մօտ և երկու կարգ, այնպիսի տեղ մը որուն մէջէն պիտի ստիպուէր անցնիլ. և երկու կարգ սուրերուն քիչ մը մօտէն կարգաւ փայտեր դիզել կուտայ. Երբ Զընտօ այս տեղին կը մօտենայ, իսկոյն կը բռնկցընէ փայտերը ու ինքը կը փախչի. գազանը հոն հասած ժամանակ երկու կողմէն բոցերը տեսնելով կը սկսի անոնց մէջտեղէն քալել անցնիլ ու ազատել կեանքը. որովհետեւ ուրիշ ճամբայ չկար. բայց մէ-

կէն ի մէկ սուրերուն հանդիպելով վէրքեր կ՚ընդունի , և անոնց ցաւերուն սաստկութենէն կատղելով ու- ժուռն շարժմունքներ ըրած ժամանակ աւելի խորունկ հարուածներ կ՚առնու և հոն չարաչար կը սատկի , և ժողովուրդը անոր մարդակեր ժանիքներէն կ՚ազատի ։

Այս Զընտո Թագաւորին կը յաջորդէ զինքը սպան- նող Սաթիէ-Գալիպը, և կ՚ըլլայ Հապէշից քրիստոնեայ Թագաւոր ։ Թէ Զընտոյի և թէ Սաթիէ-Գալիպին վրայօք երկար պարագաներով գրուածք կան իրենց ազ- գային պատմութեանը մէջ , ինչպէս կ՚ըսեն իրենք ։

Զընտո , ինչպէս կը համարիմ ես , բռնաւոր մը ե- ղած պիտի ըլլայ , որուն արընթաց յարձակումներուն պատճառաւ զինքը Թեւաւոր վիշապի տեղ դրած են ։ Սաթիէ-Գալիպին երկաթի սրերով սպաննելն ալ կ՚ե- րեւի թէ երկու լերանց նեղ կիրճէ մը անցնելու ժամա- նակ դարան մտնելով մարդիկ, երկու կողմէն յանկարծ նիզակներով ու սրերով վրան յարձակուած ու սպան- նած են , և կրակ վառելն ալ այս նպատակաւ կրնայ ճշմարիտ ըլլալ ։ Ասիկայ կը հաստատուի նաեւ Թէոդո- րոս Թագաւորին դէմ ալ ունեցած կարծիքով, որ Կը- րայնէն յետոյ երրորդ հրեշաւոր Թագաւոր կը համա- րեն Հապէշք ։

Բ. Կրայն Թագաւորը ։

Տասնեհինգերորդ դարու ժամանակները յանկարծ երեւան ելած է Հապէշստանի մէջ Կրայն անուն վիթ- խարի մէկը, որուն ծագումը Կալլայի ներսի կողմի բար- բարոսաց երկրէն կը համարուի ։ Այս մարդուն հասա- կին երկայնութիւնը 5 կամ 6 կանգնոյ կը մօտենար կ՚ը- սեն, հասակին համեմատ է եղեր նաեւ մարմնոյն թանձ- րութիւնը և ձեւը , որով Գողիաթէն աւելի հսկայ և թերեւս ջրհեղեղէն առաջ եղած հսկաներէն մէկն ըլ- լայ այս այլանդակ հրեշաւոր մարդը ։

Անոր չահատակութիւններուն դէմ և ոչ մէկը կա- րենալով ելլել և փորձ փորձել յաղթելու , անարգել

տիրած է քրիստոնեայ Հապէշից բոլոր երկրին։ Իւր զէնքերն եղած են անգթութիւնը, սպանութիւնը, մարդակերութիւնն և ուրիշ շատ տեսակ եղեռնագործութիւնները, որոնք չափ ու սահման չեն ունեցեր. և կը նմանեցնեն իրենք իբրև օրինակ մէջ բերելով աշխարհիս կատարածին մօտ ըլլալիք նեղութիւններուն ու չարիքներուն։

Ժողովուրդները չկարենալով ասոր գազանային գործքերուն դիմանալ, տուներնին տեղերնին թողլով կը փախչին անմատչելի և ապառաժուտ լեռներու և այրերու մէջ կը պահուըտին։ Ալրայն անդադար մահ գալով ուր տեղ որ բոց կամ լոյս մը կը տեսնէ, գուշակելով հոն մարդիկ գտնուիլը, կը յարձակի եղեր խոկոյն անոնց վրայ, և հոն գտած իրքերը կողոպտելէն զատ՝ ձեռք անցուցած մարդիկն ալ կըսպաննէ կ'ուտէ կըսպառէ իր զօրքերովը մէկտեղ(1)։ Խեղճ ժողովուրդները կրակ վառելու և կերակուր եփելու սովորութիւնը կը թողուն անոր երկիւղէն, և գուցէ այն ժամանակէն մնացած է Հապէշներուն մէջ հում միս ուտելու սովորութիւնը։

Այս հսկայ և վիթխարի և գազանաբարոյ թագաւորին կեանքը վերջնելու համար ժողովուրդը տեսակ տեսակ հնարքներ կը մտածէ, բայց որուն ճակատ առ ճակատ կռուելու ոչ ոք կը համարձակէր, տեսնելով անոր ահռելի կերպարանքէն և զօրքերուն անյաղթելի քաջութենէն։ Ալ կը մնայ միայն իրենց յոյսը Աստուծոյ և ճերմակ մարդոց վրայ։ Ուստի ձեռաց տակէն լուր խրկելով ասիացի ճերմակ մարդիկ բերել կուտան, որոնց համար Յոյն էին կ'ըսեն։ Ասոնք թէպէտ և թըւով քիչ էր, սակայն հանճարեղ ու հնարագէտ մարդիկ ըլլալով, դարանամուտ կ'ըլլան այնպիսի ճամբու մը վըրայ, որուն երկու կողմը գահավէժ անդունդ մըն է ժայռալից և անցնելու համար միայն նեղ ճամբայ մը կայ, ուսկէց մենք ալ անցանք և Ոլօ երկրին մէջ կ'ընկնայ։

(1) Կոլլայի նեգրի կողմերը մինչև հիմայ մարդակեր մարդիկ կը գըտնուին կ'ըսեն։

Հսկայ ու մարդակեր Թագաւորը ասկէ անցնելու ժամանակ հրաշէնքները հեռուանց անոր վրան կը պարպեն դարանամուտները առանց իրենք տեսնուելու ։ Ընկկոյ հրաշինուց որոտալու ձայնին զօրութիւնը և ներգործութիւնը չիմանալով բանի մը տեղ չդնէր ։ Իւր վրայ տեղացած գնտակները և անոնց հարուածները ճանճի բզզալու և անոր խայթուածներու տեղ դնելով ձեռքերը երկու կողմ կ'երերցընէ իբր թէ ճանճերը վըռնտելու պէս ։ Բայց տեսնելով այն գնտակներուն անդադար տեղալը, զայրանալով կը քաշէ իւր լայնաբերան Թուրը և կը Թափէ բարկութիւնը հաստ ձիթենիի մը վրայ, և իր մէկ կողմէն հարուածներ ընդունած կէտին՝ ինքն ալ ծառին բունը հարուածելով երկուքնին մէկտեղ կ'ընկնան վար. ինքը հոն կը փռուի կը մնայ, զօրքերն ալ ցիրուցան կը փախչին կ'երթան ։ Մինչեւ ցայսօր անոր ինկած տեղւոյն Չէկրայի որէայ· Կրայնի ձիթենին կը կանչեն ։ Այսպէս կ'ազատի Հապէշստան իր երկրորդ վիթխարի ու գազանաբեալ բռնաւորին ձեռքէն ։ Այն պատմութեան մէջ ալ ճշմարտութեան հետ առասպելախառն չափազանցութիւններ կան ։

---

## ԳԼՈՒԽ Բ.

*Թէոդորոսի Թագաւորութիւնը։*

ՎԵՐՈՅԻՇԵԱԼ հրեշաւոր Թագաւորաց պատմութենէ ետքը կը մնայ մեզ հոս ներկայ ժամանակիս Թագաւորութեանց և անցեալ պատմութիւններն ընել, որոնց մէջ գլխաւոր մաս մը կը կազմէ Թէոդորոսի իշխանութիւնը, որ իւր առանձին յատկութիւններովը նշանաւոր եղած է. և ետքի ժամանակներս իւր ձեռք առած անգութ և վայրենի միջոցներուն պատճառաւ ժողովուրդը երկրորդ հրեշաւոր Թագաւորի, կամ լաւ եւս՝ բռնաւորի տեղ դրած էր. և շատ հաւանական է

որ քանի մը դար անցնելէն յետոյ առասպելեալ դիւցազուններու կարգն անցնի Թէոդորոս ալ իւր քաջութիւններովը․ որովհետեւ արդէն իւր կենդանութեան ժամանակ բոլոր ժողովուրդը զինքը անմահ և իւր անձը և մարմինը գերբնական զօրութեան տէր կը համարէր, որուն համար կ՚ըսէին թէ՝ ոչ սուր կը բանի վրան և ոչ գնտակ կը դպչի․ անոր համար չէին համարձակեր թշնամիք յայտնապէս անոր դէմ ճակատելու ։

Թէոդորոսի թագաւորելէն յառաջ բոլոր Հաբէշստան չորս մասի կամ նահանգներու կը բաժնուէր, արոնց կ՚իշխէին չորս գլխաւոր իշխաններ․ Թէկրին կը տիրէր Տէճած—Աւպին․ Շօային՝ Հայլը Մէլէքօթը․ Ամճամին՝ Պրու Կոշուն․ իսկ Ամարային՝ որ միւս երեք մասին մէջ տեղ կ՚ընկնոյ և ամենէն ընդարձակն է, կ՚իշխէր Ռաս—Ալին, որ թէեւ կալլայի էր, բայց Ամարան իրեն հայրենի ժառանգութիւնն էր․ Թէպէտ ժողովուրդը իրենց մեծին թագաւոր (Նըկուս) անունը կուտայ, բայց ընդհանրապէս Տէճած կամ Տէճաճմաչ կը կոչուէին, որ գրեթէ իշխանի նշանակութիւն ունի, և Ամարայի իշխանին միայն Ռաս անունը կուտայ որ գլուխ կը նշանակէ, իբր չորս իշխանաց մէջ գլխաւորը․ սակայն թագաւորական թագը Սողոմոնէն յաջորդաբար ժառանգող կարծեցեալ իշխանը կը դնէր միայն ըստ նախնական սովորութեան, և չէին յափշտակած անորմէ այս մէկ թագին պատիւը, և անուամբ լոկ թագաւոր կը կոչուէր նա․ վասն զի թագաւորական իշխանութիւնը այս չորս իշխանները վարելով, անոր պատիւն ալ իրենց սեփականած էին, և կ՚ըսուէին Գոծադիր Իշխանք ։ Իսկ թագաւորական թագը վայելողին թողուցած էին մասնաւոր քանի մը գիւղեր Կոնտէր քաղաքին մօտերը․ և տարուէ տարի ալ իբր նուէր կամ ողորմութիւն բան մը կուտային, որով իր անական ծախսը կարող կ՚ըլլար հոգալու ։

Ամարայի իշխան Ալին իւր հօրը յաջորդելով Ռաս Ալի կը կոչուի․ այն ատենները Թէոդորոս՝ որ Քասսա կ՚ըսուէր, կուգայ Ռաս—Ալիին քով զինուորութեան

կը մնէ , և իւր ցոյց տուած քաջութիւններովը սիրելի կ'ըլլայ անոր աչքին , մինչեւ կը փեսայանայ անոր աղջիկը առնելով։ Բասսան հասարակ մարդու զաւակ էր։

Օր մը ատիկայ որդադեղ (քասօ) խմած ըլլալով, իւր աներոջմէն կով մը կը խնդրէ . աներոջ մայրն ալ , որ դեռ կենդանի էր , նախատելով մը հրաման կ'ընէ սպասաւորաց ըսելով . "Որդադեղ ծախողին աղուն կտոր մը միս տուէք որ երթայ ։" Այս խօսքը խիստ ծանր կուգայ Բասսային , կը զայրանայ ու կրակ կը դառնայ կնկան մը բերնէն այնպէս նախատինք ընդունելուն ։ Իւր կինը կ'իմանայ այս բանը, ու կը դառնայ կ'ըսէ Բասսային . "Գօտիդ կապէ շուտով, ով Բասսա . ինչ ես կեցեր մնացեր կնկան մը պէս ։" Ըսել կ'ուզէ կորիճ եղիր ու ապստամբէ , և կնկան պէս նախատանաց տակ մի մնար . ըստ որում գօտի կապելու սովորութիւն ունին Հապէշք երբ հեռու տեղ մը երթալու կ'ըլլան . և հեռու տեղ երթալն ալ ապստամբել կը նշանակէ ։ Բասսա իր կնկանը խօսքերէն աւելի խրախուսուելով ու գրգռուելով, հետը կ'առնու զինքն ալ ու կը փախչի իւր հայրենի երկիրը Ակառա , և քիչ ժամանակի մէջ կը յաջողի անոր տիրելու , ըստ որում Ասա–Ալի փեսայ ըլլալով ազդեցութի ալ ունէր ժողովրդեան քով։

Ասա Ալի քանի մը անգամ զօրք կը խրկէ վրան որ բռնեն, բայց Բասսայի զօրութենէն յաղթուելով պատճառ կուտայ իւր փեսային աւելի ուժ առնելուն ։ Յետոյ ուրիշներուն միջնորդութեամբը Ասա–Ալի կը զիջանի , և իւր փեսային հայրենական Ակառա երկիրը իրեն տալով կը հաշտուի. և այն ժամանակ Տէճա–Բասսա կը կոչուի , որ կուսակալ բդեշխի համապատիւ նշանակութիւնը ունի ։

Երբ Ասա–Ալին մայրը անոնց հաշտուիլը կը լսէ , Կոնտէրէն նախատանաց խօսքեր կ'ուղղէ իւր որդւոյն . "Չէ՞ս գիտեր , կ'ըսէ , Բասսային հնարքները , ով անմիտ , անոր կեղծաւորի ձեւերուն խաբուելով փոխանակ ձերբակալ ընելու զինքը , հետը հաշտութիւն ըրիր ։ Այդ կերպով անոր իշխանութիւնը մեծցընելովդ

դու քեղի աւելի մխատեցիր : Շուտով զանիկայ կրկին ձեռք ձգելու ու շղթայելու աշխատէ : » Բոլոր այս խօսքերը Բասսային սրտանջը կը հանեն : Ոսա—Մ՛լի քանի մը անգամ կ'աշխատի հնարքով մը ձեռք ձգել զանիկայ , սիրով իւր քովը կանչելով . բայց Բասսա խոստումներով թէ անոր աշխատութիւնները պարապ կը հանէ և թէ ժամանակ վաստըկելով իւր հանճարեղ հնարքները և խորհուրդները կարգի կը դնէ , և յարմար առիթը գտնելուն պէս՝ յանկարծ ապստամբութիւնը կը հրատարակէ և զօրքերովը կուգայ աներոջը երկիրներուն մօտ ու Տէնղխային կը տիրէ :

Ոսա—Մ՛լի տակնուվրայ կ'ըլլայ , իր մեծամեծները խորհրդի կը կանչէ , որոնք կ'աշխատին դարձեալ կերպ բարեկամութեամբ ձեռք ձգելու . բայց Բասսա ասդին անդին խուսափելով ժամանակ կ'անցընէ , որպէս զի կարող ըլլայ միւս երկրի ժողովրդոց սիրտերն ալ գրաւելու՝ որ անոնց երկիրներուն ալ անաշխատ տիրէ : Երբ կը տեսնէ աները որ հնարքներով կարելի չէ զանիկայ ձեռք ձգել , չորս հինգ վաշտ զօրք կը խրկէ դարձեալ անոր վրան . Թէկրիի իշխանէն ալ օգնութիւն կուգայ իրեն , որպէս զի դիւրաւ վճարուի գործը : Բայց Բասսա պատերազմելու կամք ցոյց չտալով , այսպէս պատասխան կը խրկէ աներոջը . « Ես քեզի հետ պատերազմելու կարող չեմ , մանաւանդ որ ձմեռ մօտենալու վրայ ենք : » Այս ըսելով խոյս կուտայ ուրիշ տեղ մը : Ոսա—Մ՛լի անոր կասկածոտ ու վախկոտ խօսքերէն խաբուելով ձմրան եղքը կը թողու պատերազմը , և իր զօրքերը կը ցրուէ Տէնղխայի գիւղերուն մէջ որ կերակրուին և ձմերեն , ինչպէս սովորութիւն է :

Տէճա-Բասսա ալ թէպէտ կրնայ բռնութեամբ գիւղացւոցմէ կերակրել տալ իր զօրքերը ըստ սովորութեան երկրին , բայց անոնց աչքին զինքը սիրելի ու հաճելի ընծայելու համար չուզեր ծանրութիւն տալ իրենց , և հրաման կուտայ զօրացը որ երթան զինուորին որու քով որ կ'ուզեն . ինծի բաւական է , կ'ըսէ , չորս կամ հինգ հարիւր՝ սպառազինեալ զօրքերս : Ես-

ինքը քիչ մը զօրքով կը քաշուի Ուկաուա իր հայրենի երկիրը ։

Դեռ ձմեռը չանցած, Բասսա յանկարծ պատերազմական թմբուկը զարնել տալով բոլոր տօնավաճառներուն մէջ, ինչպէս սովորութիւն է, մունետիկներու ձեռօք լուր կուտայ բոլոր շրջակայ երկրին ժողովրդոց ըսելով. «Ով որ զիս կսիրէ, շուտով թող քովս գայ, և Ուսա–Ալիին դէմ պատերազմի երթանք»։ Բոլոր իւր ճամբած զօրքերը այս լուրը լսելով՝ կը փութան դարձեալ իւր քովը կը ժողովին ։ Տէնպիայի գիւղացիներն ալ Ուսա–Ալիին զօրքերուն տուած վնասներէն ու դէշութիւններէն ձանձրացած ըլլալով, անոնք ալ կուգան կը ժողովին Տէճա–Բասսային քով, և ուրիշ շատ մարդիկ որոնց համակրութիւնն ստացեր էր ինքը ։ Երբ Բասսա բաւականէն աւելի զօրացած կը տեսնէ զինքը, կուգայ ի Տէնպիա, և Ուսա–Ալիին բանակին դէմ ինքն ալ բանակ կը դնէ, որով աւելի ուժ կ'առնուն իր զօրքերը ։ Պատերազմին ժամանակը մօտենալուն՝ ձայն կուտայ զօրքերուն և կը խրախուսէ ըսելով. «Տեսէք ու լանկատեցէք զիս, զինուորակիցք իմ, նկատեցէք սուր աչքով իմ արտաքին կերպարանքիս, չըլլայ որ ուրիշ մէկը դաշտին մէջ սպաննուելով՝ զիս կարծէք ու շփոթիք ։ Ես եմ Բասսան Ուսա–Ալիին փեսան և անոր թշնամին ։ Ես չեմ ընկնար ու սպաննուիր պատերազմին մէջ իմ Աստուծոյս օգնականութեամբը.. ։ Չըլլայ որ վախնաք Ուսա–Ալիին անունէն և դասալիք ըլլաք. վախցէք միայն զօրութենէն ... ։ Չըլլայ որ պատերազմին ժամանակ զիս բանակին ետեւը փնտռէք. ես ամենուդ առջեւ իմ թշնամւոյս դիմացը ճակատ առ ճակատ քաջ ախոյեան պիտի կանգնիմ, հոն փնտռեցէք զիս, և ջանք ըրէք ինծի հետ մէկտեղ Ուսա–Ալին ողջ բռնելու»։ Կ'ըսէ և մէկէն թշնամւոյն դէմ կը յարձակի առիւծի նման գոռալով. իրեն հետ կ'արշաւեն քաջ զօրքերն ալ. կռուի հարուածը, թշնամին կ'ընկճի, կը տկարանայ, ինքը յաղթող կ'ելլէ շատ կոտորածներ ընելով ։ Իսկ Ուսա–Ալին չկրնար ձերբակալ ըլլել, որ միածի դէպ ի Կոճա-

մի երկիրը փախչելով մազապուր կ՚ազատի ։ Անոր ետեւէն կ՚ընկնայ Տէճա—Գասսա, կը տիրէ առանց արիւնհեղութեան Կոճամի երկրին, բայց Ռաս—Ալի անառիկ լեռան մը մէջ ապաստանելով, որուն բոլորտիքը Նեղոսի ակունքներէն հոսած գետը շրջապատած ըլլալով, որ իբրը թերակղզի մը կը կազմէ, անկարելի կ՚ըլլայ ձեռք ձգել զանիկայ ․ այլ միայն անոր որդին և մայրը կը բռնէ որ զինքը նախատեր էր, և Բասր—Ամպա լեռը խրկելով հոն շղթայել կուտայ (1), ուր տեղ որ մենք ալ բաւական ժամանակ մնացինք ։

Այս յաղթութենէս յետոյ կը դառնայ շուտով Թէկրիի Թագաւորին վրայ, և կը խնդրէ անորմէ Ապունա—Սելամի առաջնորդը՝ որ զինքը Թագաւոր օծէ ․ վասն զի անիկայ Ռաս—Ալիի Չէկիէն կրօնական խնդիրներու պատճառաւ Թէկրի փախած էր ։ Տէճաճ—Ուպի՝ Գասսայէն վախնալուն կ՚երթայ անմիջապէս Առաջնորդին քով, որ Թէկրիի ժողովուրդէն և իրմէն վշտանալով լեռ մը քաշուած կը կենար, կ՚իմացընէ անոր Տէճա—Գասսային խրկած լուրը, և շատ մը դրամ տալով կը հաշտուի հետը, և կը խնդրէ որ անոր քով գացած ժամանակ միջնորդ և բարեխօս ըլլայ իր և անոր մէջտեղը, որպէս զի իր իշխանութեանը վնաս մը չհասցընէ ։ Ապունա—Սելամի կը խոստանայ կատարել անոր խնդիրքը, կ՚օրհնէ զԹէկրիացիները և կ՚արձակէ զանոնք բանադրանքէն, և կ՚անցնի պատուով Տէճա—Գասսայի քով ։

Թէպէտ և իւր խոստումը կը կատարէ և կը ջանայ խաղաղութիւն ձգել, և Տէճաճ—Ուպի ալ իր կողմէն շատ տեսակ ընծաներ կը խրկէ Գասսային որ իւր երկրին չդպչի, այսու ամենայնիւ Տէճա—Գասսա ամենեւին չըզիջանելով՝ յանկարծ պատերազմ կը բանայ անոր դէմ, և յաղթելով կը բռնէ զինքն ալ վրանին տակ նստած ժամանակ, նոյնպէս և զաւակները, և շղթայի զարնել տալով կը նետէ զիրենք որ իրենց գանձերուն տեղը ցոյց

(1) Կը պատմեն թէ՝ Ռաս—Ալիին մօրը համար պատուէր կուտայ որ միայն քօսօ տան կերակուրի և հացի տեղ, ըսելով թէ՝ քօսօ ծախողին տղուն քով քօսօ միայն կը գտնուի և ոչ հաց ։

տան . և տիրելով անոնց՝ բոլորն ալ իւր զօրքերուն կը բաշխէ (1) ։ Թէկրիթն ալ տիրելէն յետոյ կը դառնայ Ատուպակա , և այն տեղի անուանի եկեղեցւոյն մէջ Թագաւոր կ'օծուի Նպունա — Աելամիի ձեռօք , զարմանի պայմանադրութիւններով , և կը կոչուի Թէոդորոս ։ Կը պատմեն թէ՝ Հապէշից մէկ սուրբին բրած յայտնութիւններէն ( հոգետեսութիւն ) համբաւ մը տարածուած էր հասարակութեան մէջ թէ , Թէոդորոս անունով թագաւոր մը պիտի ելլէ , որ մինչեւ Երուսաղէմի պիտի տիրէ (2) ։ Արդ այն Թէոդորոսի նման փառք ու բարք պիտի ունենայ , համբաւը բոլոր աշխարհ պիտի տարածուի և մահուանէն յետոյ անոր յիշատակը եկեղեցեաց մէջ պիտի տօնուի ։ Նպունա—Աելամի այս համբաւին տեղեակ ըլլալով , և ուզելով օգուտ մը քաղել անկէ , կ'ըսէ Տէճա—Պասսային . «Իմ անունս փոխելով՝ Թէոդորոս պիտի կոչեմ զքեզ . եւ ժողովուրդին այնպէս պիտի կարծել տամ , որպէս թէ աւանդութեան մէջ յիշատակուած Թէոդորոս թագաւորը դու ես , և թէ բոլոր երկրին տիրելէն ետքը՝ Երուսաղէմն անգամ պիտի առնես . տամ թէ՛ սիրելի և թէ ակնածելի պիտի ըլլաս ժողովուրդին առջեւ ։ Սակայն այս դաշինքով որ թէ իմ թշնամիներս սպաննես , և թէ տիրապետած երկիրներուդ կէսը ինձ տաս ։» Տէճա—Պասսա մտածելու միջոց չունենալով , ըստ որում՝ օծուելու կէտին բրաանոր այս առաջարկութիւնը , Առաջնորդին գլխուն վրայ երդուընալով խօսք կուտայ կատարելու . և այս դաշինքով թագաւոր կ'օծուի Թէոդորոս անուամբ , և միակին ըլլալուն կը հաղորդուի կենարար խորհրդոյն ։ Նանկով կը յաջողի Կալլայի արեւելեան մէկ մասին ալ տիրելու , և մեծ համբաւ կըստանայ , որովհետեւ Թէոդորոսէն առաջ ամէնեւին և ոչ մէկ թագաւոր մը կարողացեր է Կալլայի տիրել ։

(1) Կը պատմեն թէ մէկ մնտուկ միայն լեցուն ելուսէլ ոսկի ունէր , որ տկեղծութեան համար բերել տուած էր Մուսովայէն ։

(2) Ճիտտեցւոց մէջ ալ աւանդութիւն կայ թէ , Հապէշք օր մը պիտի տիրեն իրենց քաղաքին ։

Շօայի Աշըլէքօլթ թագաւորն ալ Թէոդորոսին իւր վրայ գալը լսելուն պէս՝ վախէն յանկարծամահ կ'ըլլայ․ և առանց պատերազմի անոր երկրին ալ կը տիրէ․ և գետնին տակ անոր պահած գանձերուն տեղը պզտի տղուն վիզը կախուած հմայեկէն իմանալով, կ'առնու զանոնք և զօրքերուն կը բաժնէ։ Անոր Մենիլէք անուն որդին ալ իրեն որդեգիր կ'ընէ․ բայց նա իւր հայրենի երկիրները ձեռք ձգելու համար կը փախչի Թէոդորոսին քովէն և յայտնի կ'ապստամբի անոր դէմ։ Հիմայ նոյն երկրին իշխանն է․

---

## ԳԼՈՒԽ Գ.

### Թէոդորոսի գովելի յատկութիւնները։

Երբ իրեն փափաքած իշխանութեան և փառաց ծայրը կը հասնի Թէոդորոս, յիշելով Աբունա—Սելամի հետ ըրած դաշինքը և անոր խոստացածը, ըստ մասին կը կատարէ, Առաջնորդական երկիրները միայն անոր տալով և գիտնականաց մէջ անոր ունեցած թշնամիները մէկմէկ պատճառով սպաննելով, մանաւանդ երեք ծնունդ Քրիստոսի դաւանողները։

Թէոդորոս միակին ըլլալով ըստ օրինաց քրիստոնէութեան, կրօնաւորներուն զատէն կը համարուի, և կ'ուզէ որ բազմակնութեան սովորութիւնը ջնջէ նաև ժողովրդոց մէջէն, որպէս զի եկեղեցին ալ զիրենք ընդունի և հաղորդեցընէ կրօնաւորներուն պէս։ Բայց բարի թագաւորին այս ջանքը չյաջողիր ոչ սիրով և ոչ բռնութեամբ։

Գիտնականներէ բաղկացեալ դատաստանական ժողով մը կը հաստատէ, և ամեն դատերը հոն քննել կուտայ անաչառապէս և արդարութեամբ ըստ կանոնագրքի, հաւասար իրաւունք տալով մեծին ու պզտիկին, աղքատին ու հարստին, իշխանին ու իշխեցելոյն։ Նա

ինքն ալ կը հպատակի օրինաց և կանոնաց, և կը զոհէ իւր կամաց հաճոյքը արդարութեան ձայնին։

Աշխեղէցի միշտ երթալ ու սաղմոս քաղելը իրեն առաջին պարտքն ըրած էր. մինչեւ անգամ ծանր զբաղմունքներուն մէջ զանց չէր ըներ աղօթելը։

Օրէնքը հրաման կ՚ընէր ձեռք ընկած ապստամբները գլխատելու. բայց նա առաջին անգամ ոտքերնուն ու ձեռքերնուն մատերը միայն կտրել կուտար, երկրորդ անգամուն ոտքերնին ու ձեռքերնին, իսկ երրորդին գլխատել կուտար։

Յայտնի գողերը ձեռք ընկնելնուն վիզերնին կտրել կուտար օրինաց համեմատ. և սոր օրովը միայն գողութիւնը կը խափանուի, ճամբաները ապահով կ՚ըլլան, որ երբէք տեսնուած բան չէր այն երկիրները, ինչպէս և իրենք ալ կը խոստովանին։

Ժողովրդոց վրայ ցոյց տուած խնամքներուն, առատաձեռնութեան, հիւրասիրութեան նմանը չէ տեսնուած։ Ոտքի վրայ կանգնած, ինչպէս կը վկայեն իրենք, ձեռօքը կը բաժնէր անհամար աղքատաց ողորմութիւն, և իբրեւ հայր որդեսէր՝ այնպէս կը վարուէր ժողովրդոցը հետ։

Իւր կինը մեռնելէն զկնի՝ չուզելով կրկին անգամ ամուսնանալ, երեք տարիի չափ կրօնական վարքով կ՚ապրի։ Բայց երբ Նպունա—Սելամիի առէպ յորդորմունքներովը կը համոզուի և կ՚առնու Սուպհէ Թագաւորին աղջիկը իրեն կին։ Այսու ամենայնիւ կրօնից վրայ ունեցած իւր սէրը այն աստիճան էր, մինչեւ կը փափաքէր իւր Թագաւորութենէն հրաժարել, որպէս զի կարող ըլլայ անարգել իւր բարեպաշտական կրթութեանց հետեւիլ, հոգեւորական պարտքերը կատարել

Բայց ցաւալի է որ սանկ բարեպաշտ և գթասիրտ իշխանի մը բարիքն ու խաղաղութիւն և հանդստութիւն վայելող ժողովուրդը փոխանակ երախտագէտ ըլլալու, ժամանակէ մը յետոյ յանկարծ կ՚ըմբոստանայ անոր դէմ, ինչպէս երբեմն Իսրայելացիք անապատին մէջ այնքան բարիք վայելելէն ետքը ձանձրանալով կը

հակառակէին Մոլախին դէմ։ Վասն զի այս Հաբէշից ազգը ի բնէ ծոյլ ըլլալով եւ անաշխատ ապրելու սովորած, կ'ուզեն որ միշտ իրենց Թագաւորին քովէն ուտեն ու խմեն, փոխանակ իրենք իրենց աշխատութեանց տասանորդական արդիւնքներովը եւ ուրիշ տուրքերով արքունի գանձը ճոխացընելու, որ հասարակաց գանձը կը համարուի. եւ այն ժամանակ կրնայ իշխան մին ալ իւր հպատակաց առջեւ առատաձեռն երեւալ եւ ժողովրդեան աղքատ մասին պէտքերն հոգալ։ Բայց Հաբէշք այսպէս չմտածելէն ի զատ, կ'ըսէին իրենց մէջ յայտնութեան գրքէն առնելով. «Թէ որ Թագաւորն ալ նախագուշակուած Թէոդորոսն է, պէտք է որ մէկ եզով բաւականանայ, եւ անով վարուցան ընելով ապրի. ինչ պէտք է զօրք ու զօրապետներ։» Այս խօսքերը մինչեւ անոր ականջը կը հասցընէին։

Ժողովուրդը բաց ի իրենց բնաւորութենէն, այլ եւ Աբունա—Սելամին կուսակից եղող գիտնականներուն ու քահանայից Թելադրութիւններէն ալ գրգռուելով կըսկսին յայտնապէս վատաբանել ու բամբասել զԹէոդորոս, անոր ըրած գործքերուն Թիւր մեկնութիւններ եւ անոնցմէ գէշ հետեւութիւններ հանելով մինչեւ անգամ կըսկսին հայհոյել եւ անպատիւ ընել զանիկայ։ Ապստամբութիւնը կըսկսի տեղ տեղ ծայր տալ. Թագաւորին դէմ գաղտնի որոգայթներ լարուիլ, եւ անոր զօրութիւնը տկարացընելու խորհուրդներ ըլլալ եւ հնարքներ մտածուիլ ժողովականներու մէջ. որոնց ամենուն վախճանն էր աթոռէն վար առնուլ զինքը։ Սկսին յետ այնորիկ անոր հրամանները չկատարել եւ անոր իշխաններուն պատուէրները յայտնապէս արհամարհել։ Այս համար Թէոդորոս կըստիպուի ակամայ բռնութիւն ձեռք առնուլ, եւ անոց հետ ոչ եւս իբրեւ հայր, այլ իբրեւ անաչառ դատաւոր եւ իբրեւ գործադիր գահին վարուիլ։

---

## ԳԼՈՒԽ Դ.

Թէոդորոսի բռնութիւնները և անողորմութիւնը։

ԱՌԱՋԻԿԱՅ գլխոյս մէջ պատմելիքներս բոլորովին հակապատկեր է նախորդ գլխոյն մէջ ըսածներուս։ Կարդացողը պիտի զարմանայ և դժուարաւ պիտի հաւատայ թէ ինչպէս մարդս մէկէն ի մէկ կը փոխուի. այն որ առաքինութեան ճշմարիտ տիպար էր և ժողովրդեան երջանկութիւնը կազմող, յանկարծ կ՚ըլլայ անոր գլխոյն փարաւոն մը։

Թէոդորոս տեսնելով իւր ժողովրդոց ապերախտութիւնը, և իր ըրած բարիքները փոխանակ անոնց սրտերը գրաւելու և անոնց բերանները օրհնութիւններով և գոհութիւններով լեցունելու, ընդհակառակը մէկ մէկ թշնամի կը յարուցանէ իրեն դէմ. միտքը կը դնէ հաստատապէս մէկդի թողուլ գթութիւնը, և ձեռք առնուլ խստութիւնը, և օրէ օր դաժանագին կերպարանք մը կ՚առնու իր վրան. օրէնքն ու քրիստոնէութիւնը կը ծալլէ մէկդի կը դնէ, որոնցմով չէր կրցած օրինաւորութեան ճամբուն մէջ մտցնել իւր անսաստ և անկիրթ ժողովուրդը, և եղաւ Դիոնէսիոս մը և Ներոն մը։ Մեծանձնութիւն սիրող Թագաւորը բռնաւոր մը դարձուց իւր տունը՝ անմեղ կանայք լեցնելով հոն. Մանուկ իշխաններ ընդելոյզ փողրակ պղնձէ ամնապանակ կուբակ կապերդ է մը երեւս մէջ կը ճաշէ պանակոյ կերպարանք մը կ՚առնու իր վրան. Ասոնց ինքզինքը զեղխութեան և անպարկեշտ կիրքերու, որոնց մէջ կը յուսար թեթեւութիւն և մխիթարութիւն մը գտնել իր վիշտերուն. վասն զի իւր առջի առաքինութիւնները դեռ սրտին ու հոգւոյն մէջ հետք մը թողուցեր էին, և անոնց յիշատակը նոյն իսկ անբարոյական ընթացքին մէջ կը վշտացընէր զինքը։ Այս փոխանակ առջի ճամբուն դառնալու՝ աւելի կը խստանայ, կը կեղեքէ ու կը հարստահարէ բոլոր ժողովուրդը։ Հարուստները շլթայի կը զարնէ, ու մինչեւ որ պահանջած դրամը չառնու՝ չարձակեր. և շատերը դրամնին առնելէն յետոյ դարձեալ կը բանտարկէ, կամ կը մա-

հացընէ, որ չըլլայ թէ ապստամբին: Որոնց որ հայրենի երկիրնին իրենց շնորհած էր, կրկին եւ կ'առնու զանոնք կերպ կերպ պատճառանքներով, և զիրենք ալ կողոպտելով նեղը կը ձգէ: Սպուննա—Սերամիին իրեն դէմ ցոյց տուած ապերախտութեանը վրայ զայրանալով՝ տըւած երկիրները եւ կ'առնու ըսելով. "Երկիրը թագաւորինն է. թագաւորի մը տրինով գնուած երկիրները պէտք է թագաւորին ձեռքին ըլլան: Դուն իմ հոգեւոր հայրս ես. կեր, խմէ իմ քովս ու հանգիստ նայէ:"

Նահած ապստամբները, անոնց հետն եղող մարդիկը, կանայքն ու տղաքը ոչխարներու պէս երեք կամ չորս հազարը մէկանց թրէ կ'անցընէ եւ խողխողել կուտայ, և անոնց մարմինը անթաղ պահելով գազաններուն կերակուր կ'ընէ:

Ապստամբներէն ոմանց ձեռքն ու ոտքը կտրել տալէն զինի կախաղան կը հանէ (1): Եկեղեցին ապստամբողները, որ իրենց մէջ օրէնք չկայ սպաննել հին օրինաց համեմատ, բռնութեամբ բերել տալով զանոնք՝ ոչխարի պէս կը մորթէ: Շատ անգամ ըսած է իր ժողովրդոց ու մեծամեծներուն. "Թէ որ ես գէշ թագաւոր եմ, և գործածներս Աստուծոյ կամացը դէմ են, ժամ մը յառաջ թող զիս ձեր ձեռքը մատնէ. իսկ թէ որ դուք գէշ էք, և ըրածներս Աստուծոյ հաճոյ են, զձեզ ինծի մատնէ: Գէշութիւն ընողը ես չեմ, այլ ձեր անիրաւութիւնն է որ զիս կըստիպէ բռնաբար ու չարաչար վարուելու ձեր հետը:" Այսպէս կը մտածէր նա, և հետզհետէ աւելի կը սաստկացընէր իւր անողորմութիւնները:

Ժողովուրդն ասոնք տեսնելով՝ ամէնեւին չփչէր թէ իւր անօրէն գնացից և ապերախտութեան չար պտուղներն են որ կը քաղէ, և փոխանակ ի զգաստութիւն և ի զեղջ փութալու՝ աւելի կ'ընդդիմանայ թագաւորին կամացը, և փարիսեցւոյն նման զինքը արդարացընելով բոլոր յանցանքը անոր վրայ կը թողու. չարա-

(1) Թէքլէ—կորկիս թագաւորին հայրը այս կերպով սպաննած է.

չար կը վստահամբաւէ զթէոդորոս, անկրօն և անհաւատ մարդու մը տեղ դնելով։

Կը պատմեն թէ, օր մը թէոդորոս երազ մը կը տեսնէ, որ մէկ ձեռքը սուր և միւս ձեռքը կրակ բռնած էր. Ձայն մ'ալ կուգար իրեն՝ որ կը սպառնար ըսելով. «Թէ որ այդ կրակով չայրես ժողովուրդդ, միւս ձեռքիդ սրովը գլուխդ պիտի կտրեմ։» Զարհուրելով մը կ'արթննայ թագաւորը քունէն, ու տեսած երազը պատմելով կ'ըսէ. Ահա կը տեսնէք որ ես չեմ ձեզի չարչարողը, այլ իմ Տէրս է՝ որ ինծի այնպէս կը հրամայէ. Կը տեսնէք որ հիմակ ալ կրակով կը սպառնայ ձեզի. Թէ որ վատ բնութեննէդ և անօրէն ճամբաներնէդ ես չդառնաք, չզզջաք, ահա պատրաստ է ձեզի համար կրակը։»

Հինգ տարի սուրը գործածելէն և անոնց անիրաւութիւնները իրենց արեամբը սրբելէն յետոյ, երբ կը տեսնէ որ դարձեալ նոյն շաւիղը կ'ընթանան, անկէ յետոյ ձեռք կ'առնէ կրակը։ Ափը ձգած ապստամբները՝ թէ՛ մեծ և թէ փոքր, անոնց կանայքն ու զաւակները մէկտեղ տան մը մէջ փակելով՝ քանի մը հարիւրը մէկտեղ կրակի կուտայ, ինչպէս կը հաստատեն շատերը։ Տանը բոլորտիքը, կ'ըսեն, փայտեր դիզել կուտար, և զօրքերով ալ պաշարելով կը բռնկցնէր, թէ որ փախչող ըլլար՝ հրացանի բռնել կուտար։ Եւ այսպէս ոչ ոք ազատելով, ամենն ալ մոխիր կը դառնային։

Ապունա–Սելամին ժողովուրդը գաղտնի գրգռելուն և վրդովմանց պատճառ ըլլալուն վրայ զայրանալով թէոդորոս, քանի մը անգամ կրակի մէջ ձգելու եղեր է զանիկայ։ Եւ շատ անգամ կ'ըսէ եղեր անոր սպառնալեօք. «Զիս խրատելուդ տեղը, դու զքեղ խրատէ, մեղք չնացող. թէ որ դուն անձամբ չխրատուիս, ես ըզքեղ կրնամ խրատել։» Այսպէս յանդիմանելով՝ անգամ մը կը հրամայէ իր զօրքերուն որ անոր տանը բոլորտիքը ցախեր դիզելով կրակի տան։ Հրամանը կը կատարուի, ցախերը կը պատրաստուին, բայց փոխանակ զանոնք բռնկցնելու, զօրքերը ամենքը միաբան դէպ ի երկինք ձայներնին բարձրացնելով կը պոռան.

«Ընքզիաբհէր, Ընքզիաբհէր.» որ կը նշանակէ՝ Աստուած, Աստուած: Քանի մը օրէն զկնի Թէոդորոս իւր զօրաց աղաչանքներուն կը զիջանի և հրամանը ետ առնելով կը ներէ առաջնորդին:

Թէոդորոս անգամ մը եւս միտքը կը դնէ Եգիպտոսի սահմաններուն վրայ յարձակելու (1). Փոխարքայն չուզելով անոր հետ կռուի բռնուիլ, Ղպտուց Կաթողիկոսը ծպտեալ կերպարանօք պատգամաւոր կը խրկէ անոր քով, որ զինքը յորդորէ ետ կենալու իւր Թշնամական դիտաւորութենէն: Թէոդորոս՝ Կաթուղիկոսին իշխանաբար վարուելէն և ծանր կերպով խօսելէն, միանգամայն և եգիպտական զօրաց գալուն ալ ձայներն իմանալով, սաստիկ կը բարկանայ Կաթուղիկոսին դէմ. «Դուն, կ'ըսէ, փոխանակ քրիստոնեայ Թագաւորի մը օգտին աշխատելու և զանիկայ պաշտպանելու, Մահմետական իշխան մը կը պաշտպանես. ուրեմն ըսել է թէ դուն անոր կողմէն եկած ես զիս անոր ձեռքը մատնելու. ուրեմն ես ալ կը պարտաւորիմ Մահմետին պաշտօնեայ եղողը (կաթուղիկոսը) կրակով այրել:» Բայց յետոյ եգիպտական զօրաց գալու լուրը սուտ ելլելով այրել չտար, սակայն Առաջնորդին հետ մեկտեղ տան մը մէջ եօթն օր անօթի ծարաւ կը պահէ:

Ապունա-Սելամին անոր սպառնալիքներէն երբէք չվախնալով, իւր դիտաւորութիւնը յառաջ տանելու կ'աշխատի, և օրէ օր ժողովրդոց աւելի վրդովելուն ու յուզուելուն պատճառ կուտայ, և Կոնտէրի երկիրն ալ գաղտնի կ'ապստամբեցնէ:

Օր մը յանկարծ Թագաւորը Տէնպիա կուգայ. և բոլոր գաւառը կողոպտելէն յետոյ, Կոնտէր մայրաքաղաքին եկեղեցիներն ալ ռմբակոծելով աւրել կուտայ և կը կողոպտէ. և անոնց անօթներն ու Խաչօրհնէքը Մագտելա լեռը կը փոխադրէ, նոյնպէս և Ապունա-Սելամին իբրեւ աքսոր պահել կուտայ. և յայանի կ'ըսէ ամենուն. «Ուր որ օրինաւոր քահանայ և բարեպաշտ

(1) Թէոդորոս ուրիշ անգամ ալ յարձակելով բաւական վնաս հասուցած է Եգիպտոսի սահմաններուն մէջ Սայիտ փաշայի օրով:

ժողովուրդ չկայ, հոն եկեղեցիի հարկաւորութիւն ալ չկայ. եկեղեցիները ժողովրդոց համար է, և ոչ ժողովուրդը եկեղեցիներու համար:» Այս կերպ արդարացի խօսքերը իր քովն եղող այլախոհակամոլթ մարդոցմէ սորվելով, և անոնցմէ խրատուելով կը գործէ կ'ըսէին: Թագաւորին այս աստիճան խոտորմանուն պատճառն ալ անոնց կուտան, քան որուն շատ կը սիրէր ճերմակ մարդիկը. և միշտ անոնց հետ կը վարուէր ու կը տեսնուէր:

Թագաւորին այս կերպ բռնութիւններին ու անողորմ գործքերը այն աստիճան երկիւղ ու սարսափ պատճառած էին իւր բոլոր զօրաց ու ժողովրդոց սրտին, որ մինչեւ խօսած ատենը երբ յանկարծ աչքերը վեր վերցնելու ըլլար, հեռուէն կանգնող մարդիկը սարսափելով ետ ետ կ'երթային և շատ անգամ խրտուն դարձուելով գետին կ'ընկնային: Եր կողմը և մը ապստամբին վրայ յարձակելու ըլլար, անոր գալուն ձայնը լսողը եզապատանաւ եղած փախչող փախչողի կ'ըլլային. ոմանք դէպ ի լեռները, և ոմանք դէպ ի ձորերուն մէջ շունչերնին առնելով: Յարձակած տեղերը թէ որ մարդ գըտնէր՝ կրակով կ'այրէր, թէ որ անասուն՝ իւր մարդոցը կը բաշխէր:

---

## ԳԼՈՒԽ Ե.

*Անգղիացի հիւպատոսն ու բանտարկութիւնը: Սիր Ռոպէր Նափիէրի գալը. և Թէոդորոսի մահը:*

ԹԷՈԴՈՐՈՍ Թագաւորի քով գտնուող ճերմակ մարդոց մէջ նշանաւոր է Անգղիացւոց Բարթէն-Գամէրոն հիւպատոսը, որ իւր բռնած քաղաքականութեամբը պատճառ եղաւ այս երկու տէրութեանց մէջ ծագած կռուոյն, որ և Թէոդորոսի գիւցազնական մահուամբը վերջացաւ:

Յայտնի է որ Անգղիոյ մեծազօր տէրութեան չորհիւր բաւական տարիէ ի վեր ընդունած են շատ տէ-

րութեան երկիրներու մէջ կրօնական ազատութիւնը, այն է իւրաքանչիւր անհատ ազատ ըլլայ՝ իւր խղճի ձայնին հետեւելով ուզած կրօնքը ընդունելու, առանց իւր կամքը ուրիշէ մը բռնաբարուելու։ Այս սկզբունքս ընդունող ազատութեանց երկիրներուն մէջ ազատօրէն մուտ գտան Ամերիկացի, Անգլիացի և ուրիշ կրօնից քարոզիչները, իւրաքանչիւրը ջանալով իրեն եկամուտներ ունենալ։ Այսպէս ալ նաեւ շատոնց ի վեր Հապէշու երկրին մէջ այն սկզբունքս ընդունել տալու կը փափաքէին անգղիացի քարոզիչները, բայց չկարացին յայտնի հոն մտնելու և համարձակ քարոզելու։ Մուսուլցի Հիւպատոսը հարկադրուեր էր իւր Տէրութեան կողմէն երթալ Թէոդորոս Թագաւորին մօտ զանազան ընծաներ հետը տանելով։ Մեծ սիրով կ՚ընդունի Թագաւորը թէ Հիւպատոսը և թէ անոր մատուցած ընծաները. և մասնաւոր համակրութիւն ևս ունենալով անոր՝ շատ անգամ քովը կանչել կուտար և կը խօսակցէր հետը միշտ պատուելով։ Այս կերպով ճանբան բացուեցաւ, և հետեւեցան Հիւպատոսին և անոր միջոցաւ ընդունուեցան նաեւ քարոզիչները, և պատիւ գտան Թագաւորէն իրենց ակնկալածէն աւելի։ Քիչ մը միջոց անցնելէն յետոյ, կ՚առաջարկեն ասոնք Թագաւորին և անորմէ հրաման կը խնդրեն անհաւատից մէջ քրիստոնէութիւնը քարոզելու և ճշմարիտ հաւատքի բերելու զանոնք։ Թէոդորոս հաւանելով անոնց խօսքին, և կարծելով թէ անոնց քարոզութեամբը քրիստոնէից թիւը պիտի աւելնայ իւր երկրին մէջ, ուրախութեամբ հրաման կուտայ անոնց, և անոնց ———ֆ-ը—Բ—նը դիւրացնելու համար երբեմն երբեմն չորս կամ հինգ հարիւր ռեալ ևս կը շնորհէ իրենց. բայց ի կովերէն, ոչխարներէն, մեղրէն ու արմտիքներէն։

Նաև կուգան հոն հետզհետէ քանի մը Գաղղիացի արհեստագէտներ, այսինքն վառօդ և թնդանօթ շինողներ, և քանի մը Գերմանացիներ ալ, որոնց մէկը կարգաւոր էր. արհեստագէտները իրենց արուեստովը և լեզուի ճարտարութեամբ սիրելի կ՚ըլլան և պատիւ կը-

տանում Թէոդորոսէն. իսկ Գերմանացիք կ՚արգելուին իր քով՝ ճամբաները ապստամբներու ձեռօք գոց ըլլալուն.

Սակայն, ինչպէս բնական է որ շահադիտութիւնը իրեն հետ կը քաշէ միշտ նախանձն ու ատելութիւնը, այսպէս շատ չքշեր Անգղիացւոց մէջ ատելութիւն կ՚ընկնայ Գաղղիացւոց և Գերմանացւոց դէմ, յայտնի գուշակելով իրենց նպատակին մէջ չկրնալ յաջողելնին, քանի որ անոնք այն երկրին մէջն են. Ատելութիւնն ու Թշնամութիւնները փոխադարձ կ՚ըլլան երկու կողմէն, և երկու կողմն ալ յաջողելու համար մասնութիւններու և վատաբանութիւններու կը դիմեն, ջանալով գաղտ զիրար կործանելու և իրարու ձեռնարկութիւններն ու խորհուրդները փճացընելու. Անգղիացի քարոզիչք ժողովարան մը կանգնելու հրաման կը խնդրեն Տէրութենէն, որպէս զի ժողովուրդը դիւրաւ կարենան գրաւելու. Հակառակորդները ծածկապէս դրդելով զԹագաւորը՝ արգիլել կուտան հրամանը, և կ՚իմացընեն անոր թէ՝ Անգղիացւոց ներքին նպատակը կրօնք քարոզել չէ, այլ ուրիշ քաղաքական նպատակ մը ունին. Թէոդորոս կ՚արթննայ իւր թմբրութենէն, ու կ՚ըսէ քարոզիչներուն. «Թէ որ կանգնել ուզած աղօթարանը ձեզի համար է, ահաւասիկ այսքան եկեղեցիներ ունինք, բաւական են ձեզի ալ. իսկ թէ որ բաւական չէք համարիր ձեզի և ձեր նորահաւատ քրիստոնեայներուն, ըսէք ինծի, և ես կարող եմ ուրիշ շատ եկեղեցիներ ալ շինել տալու. Մի՞թէ չէ՞ք հաւանիր և չէ՞ք ընդունիր այսքան եկեղեցիները.» Քարոզիչք չեն համարձակիր պատասխանել, և իրենց խնդիրը զօրութեամբ յառաջ բերել. Հիւպատոսը մէջ կը մտնէ այս խնդրոյն, բայց նա ալ չկարողանար յաջողիլ, ու ետ կը կենայ ակամայ նոյն դիտաւորութենէն. և քարոզիչներուն շահը կ՚ըլլայ միայն քրիստոնեայ Հաբէշից մէջէն քանի մը նորամուտներ ձեռք ձգել, որոնք աւելի արծաթոյն հետեւած էին քան թէ ճշմարտութեան, ան ալ ծածուկ և ոչ յայտնապէս.

Հիւպատոսը Կոնտէր քաղաքը բնակած ժամանակ, ա-

նոր վարուցը վրայօք կերպ կերպ տարաձայնութիւններ կը լսուէին հասարակութեան մէջ, և մինչեւ Թէոդորոսին ականջը կը հասնէին։ Ասիկայ լաւ առիթ մը ձեռքերնին առնելով անոր հակառակորդները, կ՚երթան Թագաւորին մօտ, և շատ խօսքեր կը խառնեն. «Այդ մարդը կ՚ըսեն, յանկարծ լրբութեան համար եկած է։» Իսկ որովհետեւ հասարակ ժողովրդեան պէս Թագաւորն ալ կախարդութեան կը հաւատար, կը յաւելուն իրենց զրպարտական խօսքերուն հետ սանկ ալ. «Զքեզ կախարդել կ՚ուզէ, կ՚ըսեն, և միտքը կախարդութեամբ օր մը զքեզ կապել տալ, և Անգլիոյ Թագուհւոյն զօրքերը յանկարծ բերել տալով՝ զքեզ անոնց ձեռքը մատնել է։»

Այսպիսի սուտ խօսքերով չէ թէ միայն Թագաւորին, այլ և անոր մեծամեծներուն միտքն ալ կը պղտորէին, որոնք Անգլիացւոց հակառակորդներուն հետ միանալով Թէոդորոսին սիրտը աւելի կը գրգռէին ու կը զայրացնէին։

Զիւպատոսին վարուցը վրայօք ինչ որ ըսեցինք՝ ժողովրդեան վկայութիւնն և անոնց պատմութիւնն է. և թէպէտ մենք չենք հաւատացած, այսու ամենայնիւ պատմութեանս կարգը կը պահանջէ որ առանց մեր լսածներէն պզտիկ պարագայ մըն ալ ծածկելու՝ հաւատարմութեամբ զրուցենք։ Թէոդորոս Թագաւորը որքան որ իւր ականջները մէկ կողմէն զրպարտութիւններու և թշնամանիչ խօսքերու փակ տուած էր, միւս կողմէն ալ դարձեալ կը սիրէր զՀիւպատոսը, և քանի մը անգամ ի նշան իւր անկեղծ սիրոյն քաղցրութեամբ յանդիմանած է զինքը. և օր մը եւս յայտնապէս կ՚ըսէ իրեն. «Բաւական է, Հիւպատոս, անբարոյականութեան դէմ ըրած գործերդ. միթէ դրամիդ շատութեամբը զաշխարհ ապականե՞լ կ՚ուզես։»

Կը պատմեն թէ, Թէոդորոս անգամ մը նամակ գրել տալով առ Վեհափառ Թագուհին Անգլիոյ, սեղանի վրայ եղած ժամանակին անոր խօսքը կը բանայ Հիւպատոսին։ Նա ալ գլուխը գինիէն տաքցած ըլլալով,

որովհետեւ շատ կը սիրէր, կ'ըսեն, խմելիքը, կատակ կարծելով խօսք կուտայ Թագաւորին՝ անձամբ երթալու և այն Նամակը Թագուհւոյն ձեռքը յանձնելու: Ուստի քանի մը օրէն Նամակը ձեռքը առլով Թագաւորը, մեծ պատուով Ճամբայ կը հանէ զինքը դէպ ի Անգլիա երթալու և խոստմունքը կատարելու: Բայց նա Թէկլիի Ճամբէն շեղելով կ'անցնի դէպ ի Պեսսելայի կողմը, և անկէց Կատարիֆ և Կոլըպատ (որ և Մէթէմնա կ'ըսուի), կը դառնայ և կուգայ Ճըլկայ, ուսկէց ապստամբի մը քով փախչել կ'ուզէր, կ'ըսեն: Թագաւորը Տէնպիայի կողմերը գացած ըլլալով, որ մօտ է Ճըլկայի, կ'իմացընեն իրեն Հիւպատոսին գալը. հրաման կ'ընէ ու շուտ մը կ'առնուն իւր քովը կը բերեն: “Ի՞նչ ըրիր Նամակը, և ո՞ւր է անոր պատասխանը, կը հարցընէ անոր Թագաւորը: — Ապստամբին հետ խրկեցի, պատասխան կուտայ Հիւպատոսը:» Ասոր կուգայ Թէոդորոսին այս խօսքը. “Թէ որ դու չպիտի տանէիր, կ'ըսէ. ինչո՞ւ խօսք տուիր ինծի և զիս խաբեցիր, և հիմայ յանցանքդ Ճանչնալով ապստամբի քո՞վ փախչել կ'ուզես: Ճշմարիտ է ուրեմն ինչ որ կ'ըսեն քեզի համար. դու ես, ինչպէս կ'երեւնայ, բոլոր երկիրը տակնուվրայ ընողն ու վրդովողը:» Այս խօսքերուն Հիւպատոսը խրոխտանօք պատասխան կուտայ, ինչպէս որ կը հաստատեն. “Ես քու Թղթատարդ չեմ, կ'ըսէ, ի՞նչ կ'ուզես ինծմէ որ ետեւս ընկեր ես. ես քու պաշտօնեայդ ալ չեմ. այլ այնպիսի Տէրութեան մը պաշտօնեայ եմ, ուսկէց բոլոր աշխարհ կը դողայ. և քեզ Նման իշխանները և ոչ իւր ծառայութեանը մէջ կ'ընդունի:» Այս աներկիւղ պատասխանոյն վրայ, ինչպէս բնական է, կրակ կը դառնայ Թագաւորը, և հրաման կ'ընէ անմիջապէս որ ոտքերը Թեթեւ կերպով մը շղթայի զարնեն. և իրեն ալ կ'ըսէ. “Թող գայ քու Թագուհիդ, որու վրայ այդքան կը պարծենաս, և արձըկէ շղթաներդ Թէ որ կարող է:

Հիւպատոսը այս անարգութեան վրայ աւելի յանդգնելով կ'ըսկսի աւելի ծանր ու Նախատական խօսքեր խօսիլ Թագաւորին ետեւէն, և համարձակ վատաբա-

նելով կ'անպատուէ զանիկայ. անոր հետ կըմիանայ նաև Սպու-Նաս-Սելամին, որով Թէոդորոսին զայրոյթն ալ աւելի սաստկանալով, հրաման կ'ընէ Հիւպատոսին ձախ ձեռքն ալ ոտքերուն հետ շղթայելու։ Այն ժամանակէն կ'ըսկսի Հիւպատոսը գանգատանաց նամակներ խրկել Անգղիա և իւր անտանելի վիճակը և Տէրութեան եղած անարգանքն իմացընելով, անմիջական օգնութիւններ կըպահանջէ և ի վրէժխնդրութիւն կը գրգռէ զԱնգղիոյ կառավարութիւնը.

Ժամանակէ մը յետոյ Գերմանացւոց և Գաղղիացւոց մէջ ուրիշ գժտութիւն մը ընկնալով, և Գերմանացիք, որոնց հետ կար ըսինք նաև եկեղեցական մը, կռահելով և մասնութիւններէ կասկածելով, որպէս զի չըլլայ թէ օրին մէկը իրենք ալ որոգայթին մէջ ընկնան Անգղիոյ հիւպատոսին նման, միտքերնին կը դնեն խոյս տալու երկրէն. քանի մը անգամ հրաման կը խնդրեն Թէոդորոսէն որ երկիրնին դառնան, բայց նա՝ ճամբաները ապստամբաց ձեռօք գոց ըլլալով՝ ինչպէս որ վերը յիշեցինք, հրաման չտար։ Գաղղիացւոց մէջ մէկը կար, որու անունը չեմ յիշեր, ասիկայ յաջողեր էր Թէոդորոսին մտերմութիւնը ձեռք բերելու, և անոր բարեկամ կոչուելու. և ըստ որում Գերմանացւոց հետ աւրուած էր, յարմար առիթ գտնելով անոնց մեկնելու խորհուրդը, վրէժխնդիր ըլլալ ուզելով կը մատնէ զանոնք Թագաւորին, և զրպարտելով կ'ըսէ. «Ասոնք ապստամբաց քով փախչիլ կ'ուզեն որ անոնց ուժն աւելցընեն։ Ես ալ թէպէտ առ երեսս միացած կը ցուցընէի զիս իրենց խորհրդոյն, բայց յայտնապէս կամք չեմ տուած փախչելու և ձեր երախտեացը դէմ չարիք հասցընելու»։ Թագաւորը հաւատալով այս խօսքերուն, բռնել կուտայ զանոնք ամենն ալ ու Մակտելա լեռը կը խրկէ շղթայելու (1), որպէս զի անկասկած մնայ անոնց-

(1) Հապէշու երկիրը հաստատուն չէնքով բանտեր չըլլալուն. ըստ օրում եղածները ոչ դուռ ունին և ոչ երդիք. վասն որոյ յանցաւորները կը շղթայեն կը թողուն միայն հսկողութեան մը տակ, որոնք ազատ են պտըտելու։

մէ. գերմանացի կարդաւորն ալ անոնց հետ էր։ Ա-նոնց բանտարկութիւնն եղաւ 1867 ին մէջ։

Զիւպատոսին նամակները Անգլիա հասնելով ազ-գային նախանձը քիչ շատ գրգռուեցաւ. կառավարու-թիւնը քանի մը միջոցներ բանեցուց անոր ազատու-թեանը համար, բայց կ'երեւայ որ չյաջողեցաւ։ Վեր-ջապէս յատուկ անձ մը խրկեց մեծ ընծաներով, այն է Ռասամը, որ անձամբ ներկայանալով Թէոդորոսին Մեծ. Թագուհւոյն կողմէն, մատոյց անոր խնդրանաց գիրերն ու ընծաները։ Ընդունեց զանոնք Թագաւորը և վիջաւ, և արձակեց Զիւպատոսը շղթաներէն։ Սակայն մատ-նութեան և հակառակութեան ոգին նորէն մուտ գը-տաւ Թագաւորին մօտ և անոր խորհուրդները կրկին յուզեց և գոռոզութիւնը գրգռեց. "Այդ մարդը (Ռասամը), ըսին իրեն, նամակներ ունի քովը, որուն մէջ իրեն պատուէր գրուած է, որ եթէ չընդունիք Անգլիոյ կառավարութեան խնդիրքը ու Զիւպատոսը չարձակէք, յանկարծ զարնէ սպաննէ զձեզ. և եթէ իրեն ալ վնաս և վտանգ մը հանդիպելու ըլլայ՝ ի սէր հայրենեաց անտրտունջ տանի։" Կը հաւատայ խեղճ Թագաւորը կրկին անգամ այս մատնութեան ձայնին, և ա-ռանց ստուգելու և քննելու զայն, հրաման կ'ընէ Ռասամն ալ շղթայելու, ինչպէս նաեւ Զիւպատոսը։ Տիգրա-նակերտցի Պետրոս անուն հայ մը, որ ծանօթացած էր Զիւպատոսին, ուզելով փորձ մը փորձել, հեռուանց հեռու պաշտպանութիւն ընել կ'ուզէ անոր անմեղու-թեանը, վասն որոյ ինքն ալ կասկածանաց ներքեւ ընկ-նելով կը բռնուի և անոնց շղթայակից կ'ըլլայ։

Այս լուրերը մենք Երուսաղէմ եղած ժամանակնիս լրագիրներու մէջ կըկարդայինք սոյգն անստուգին հետ, և երբեմն հանդերձ չափազանցութեամբ և տեսակ տե-սակ խորհրդածութիւններով, ինչպէս սովորութիւնն է խմբագրապետաց։ 1867 ի Մարտ ամսոյն մէջ էր, երբ օր մը Երուսաղեմի հիւպատոս Նօէլ Դէմբըլ Մօր, Եսայի Արքայան Պատրիարքին մօտ եկաւ, Կ. Պոլսոյ Անգլային Վարչութեան և Պատրիարքարանի կողմէն նամակներ

մատոյց և Ընգլիշ Պաեմ. գետպան Լորտ Լէնգլին
կամքը և խորհուրդը յայտնեց Ն. Սրբազնութեան, ո-
րանք կը խնդրէին որ Թէոդորոս Թագաւորին խնդրա-
գիրեր գրուելով յատուկ նուիրակի մը միջոցաւ իրեն
մատուցուի և բանտարկելոց ազատութիւնը խնդրուի:
Այս միջոցը վերջինն էր զոր Ընգլիշ կառավարութիւնը
ուզեց ի գործ դնել պատերազմի սկսելէն առաջ, ուսկէ
միշտ խոյս կուտար: Ն. Սրբազնութիւնը սիրով ըն-
դունեց խնդիրքը, և որոշուեցաւ Գերապատիւ Խա-
չակ Արքեպիսկոպոսը ծերունազարդ, և նուաստս եր-
թալու Թէոդորոսին քով հանդերձ նամակներով և թան-
կագին ընծաներով. և մեք ի պատիւ Ընգլիշ Տէրութեան
և յանուն մարդասիրութեան յանձնառու ըլլալով. 1867
և ապրիլի սկիզբը ճամբայ ելանք, և չորս ամսէն հազիւ
թէ Ճըլկայ հասանք մեծ նեղութիւններ կրելով, ինչ-
պէս պատմած ենք Ա. Հատորին մէջ:
Ճըլկայէն մինչև Թագաւորին եղած տեղը երեք
աւուր ճանապարհ էր, բայց թէ՛ ձմռան պատճառաւ
և թէ ճամբաները ապստամբաց ձեռքն ըլլալով՝ անկա-
րելի եղաւ անոր քով երթալու. սակայն հետը թղթակ-
ցեցանք և մեծ յոյսեր ցոյց տուաւ մեզի, այլ և խիստ
մեծ պատուով ընդունեց մեր գալուստը, և խոստա-
ցաւ անձրևները դադրելուն ինքն անձամբ գալ առ-
նուլ տանիլ մեզի իր քովը, և կամ իր զօրքերը ապա-
հովութեան համար ղրկելով անոնց հետ երթալու:
Ուստի հարկ եղաւ մեզի սպասել Ճըլկայի երկիրը Ռ-
սար—Ամպա բռուած անառիկ լերանը մէջ:
Այն միջոցներուն տարածուեցաւ Ընգլիշ բանակին
Հապէշիս երկիրը մտնելուն համբաւը, առաջնորդու-
թեամբ Սըր Ռոպէր Նաբիէրի: Եւ հոկտեմբերի մէջ
թէպէտ և անձրևները դադրած ըլլալով Թագաւորը
միտքը դրած էր մեր քովը գալ. բայց իր մօտակայ քա-
նի մը երկիրներու վրայ յարձակումներ տալու սովո-
ուելով, մինչև Ռաար—Ամպա գալու պատրաստուիլը՝
Ընգլիացւոց գալը կը լսէ, և միտքը փոխելով՝ դէպ ի
Մագտելա լեռը կ՚ուղղէ իր ընթացքը, դարձեալ ճա-

նապարհին վրայ տեղ տեղ արշաւանքներ ընելով տաղա-տամբաց վրայ. վասն զի՝ ինչպէս որ ըսինք, գրեթէ ընդ-հանուր եղած էր ապստամբութիւնը։ Մակտալա լեռը գրեթէ Թէոդորոսին բոլոր զօրութեան կեդրոնատեղին և իւր ապաստանարանն էր. հոն էր բոլոր իւր արքունի գանձերը և անթիւ բանտարկեալները։ Վասն որոյ և Անգղիացւոց բանակը խիստ մեծ և անտանելի տառա-պանքներ և դժուարութիւններ կրելով դէպ ի այն լե-ռը կը մօտենային, ուր կը գտնուէր արդէն Թէոդորոս, և պատերազմի պատրաստութիւնները կարգի դրած էր։

Հետևեալ տարին Մարտի մէջ մօտեցաւ հոն Սէր Ռոպէր Նաբիէր իւր բանակաւը. բայց իւր առջևը Թշնամւոյ բանակ մը ճակատած չտեսաւ։ Թէոդորոս իւր ամուր տեղէն հրաման կ'ընէ իր Թնդանօթաձիգ զօր-քերուն և անոնց Եւրոպացի զօրապետին, որ Անգղի-ացւոց բանակը ռմբակոծէ. հրամանը Թէպէտ և կը կա-տարուի, բայց ուղղակի չարձակելնուն՝ և ոչ մէկուն քիթը կ'արիւնոտի։ Կը զայրանայ Թագաւորը և կը պօ-ռայ զօրապետին երեսին, «Թէ որ այս Թնդանօթները այս-պիսի ժամանակ գործ չտեսնեն, Ե՞րբ պիտի տեսնեն ու-րեմն. և ինչո՞ւ ունայն տեղը իմ դրամներս առիք, և այսչափ ծախս ընել տուիք։» Ան ալ սուտ ու մուտ պատ-ճառանքներով գլխքը կ'արդարացընէ։ Անգամ մը Թէ-ոդորոս բոլոր զօրքերը Անգղիացւոց դէմ կը հանէ, կը խրախուսէ և կը սրտապնդէ զանոնք իր բոլոր լեզուին ճարտարութեամբը. պատերազմը կըսկսի և ի վնաս իր զօրացը՝ Անգղիացիք կը յաղթեն։ Երբ կը լսէ իր մար-դոց ջարդուիլը և հաւատարիմ մեծամեծաց մահը, և ոմանց ալ Անգղիացւոց կողմն անցնիլը, սիրտը կը մոր-մոքի և կը տոչորի, բայց ուրիշ ճար մը չգտնելով ա-կամայ կը զիջանի անոնց առջի խնդիրքը կատարելու, և բոլոր Եւրոպացի բանտարկեալները և իւր ծառայու-Թեան մէջ գտնուողները բոլորն ալ արձակելով պա-տուով կը յանձնէ զանոնք Անգղիացւոց. առոնց մէջ էր նաև Հիւպատոսը։ Սակայն այս անտղան զիջումը Անգղիացւոց անձնասիրութեան, ազգային պատւոյ վի-

նատուն և ըրած անչափ ծախուց և զոհողութեանց չէր կրնար փոխարինութիւն մը համարուիլ. վասն որոյ կ'ուզէին անոնք կամ սպաննել զԹէոդորոս և կամ ողջ բռնել։

Երբ կը տեսնէ Թէոդորոս որ բանտարկեալները ազատ թողլով՝ չկրցաւ գոհ ընել զանոնք և բանակը ետ ճամբել և հաշտութիւն ստանալ, ինքզինքը արբեցութեան կու տայ։ Օր մը այնպէս հարբած ժամանակ լեռնէն վար իջնելով՝ տափարակ բլուրի մը վրայ Անգղիացւոց բանակին դիմացը ձի կը խաղցնէ, և կ'ելլէ դարձեալ լեռը. ուր 160 ի չափ բանտարկեալներ՝ որոնք անօթի ծարաւ մնալով հաց կը խնդրէին իրմէ, հրաման կ'ընէ որ բոլորն ալ ջարդեն. "Լաւ է, կ'ըսէ, որ մեռնին՝ քան թէ այսպէս սովամահ ու ծարաւատանջ տառապին։"

Յուսահատութիւնը օրէ օր կը տիրէր Թագաւորին վրայ, ճակատ առ ճակատ պատերազմելու երես չունէր. ըստ որում Անգղիացւոց զօրութեան ականատես ըլլալով, իրեն քով մնացած պզտի խումբին հաւատարմութեան վրայ ալ այնքան վստահ չէր, և խելքը կըտրեց որ օր մը չէ նէ՝ օր մը անպատճառ անոնց ձեռքը պիտի ընկնայ կամ անոնց ձեռքով պիտի սպաննուի, և անարգութեան յիշատակ մը պիտի թողու աշխարհիս մէջ. ուստի լաւ է, ըսաւ, քաջութեամբ ես զիս սպաննեմ, քան թէ թշնամւոյն ձեռքը ընկնալով խայտառակուիմ։ Եւ յափշտակելով ատրճանակ մը, պարպեց իր բերնին մէջ, ու հոն փռուեցաւ ընկաւ դիւցազնաբար 1868, Ապրիլ 1/13 ին, Զատկի երկրորդ օրը։

Անգղիացիք անոր մահուանէն ետքը կրցին երեսը տեսնել, և իրենց ձեռօք ամփոփեցին պատուով անոր մարմինը Մակտելա լերան եկեղեցւոյն մէջ։ Յետոյ հոն գտնուած Թնդանօթները կոտրտեցին, և Թէոդորոսի պզտի տղան հետերնին առնելով շուտով ետ դարձան։

Հոն լերան մէջ ուրիշ շատ բանտարկեալներ կային երկրացիներէն, որոնք շղթանին կոտրտելով կ'ազատին, և լերան մէջ գտնուած արքունական բոլոր գոյքերը ու գանձերը զօրաց հետ կողոպտելով գիշերանց կը թողուն

կը փախչին, մինչեւ Թագուհին տունը նոյն իսկ հարազատ համարուած ծառաները կը կողոպտեն ու յետոյ Անգղիացւոց վրայ կը Թողուն՝ սուտ համբաւ տարածելով ի նախատինս անոնց անուանը։ Թէոդորոս Կէլլի-Թափոր եղած ժամանակ Անտանի Ալէմ անունով, որ աշխարհի ազատիչ կը նշանակէ, եկեղեցի մը շինել կուտայ ոսկւով և կերպասներով զարդարուած։ Իւր Անկտելա գացած ժամանակը ժողովուրդը բոլոր եկեղեցին կը կողոպտեն, և անոր զօրացը վրայ կը ձգեն։

Թէոդորոսի բոլոր իշխանութեան միջոցը 22 տարի է. 1846էն կըսկսի իւր ապստամբութիւնն և ինքնօրէնութեամբ վարուիլը մինչեւ 1852. և այս Թուականէն մինչեւ 1868 ապրիլ 1 է օրինաւոր իշխանութեամբ վարած միջոցը։ Տասուերեք տարի (1846–1859) իբրեւ հայր ժողովրդեան արդարութեամբ կը կառավարէ. յետ այնորիկ հինգ տարի սով (1859–1864), և երեք տարի (1864–1868 ապրիլ) հրով կը դատի իւր ժողովուրդը։

Անոր մահուանէն յետոյ զօրացաւ Լաստայի Նկօ-նահանգէն Վագշում-Կօմպալին, որ յետոյ Թագաւոր հրատարակելով զինքը՝ Թէքլէ-Կօրկիս կոչուեցաւ, և կը տիրէ հիմա Ամարայի երկրին։

---

## ԳԼՈՒԽ Զ.

Ապունա—Սելամի առաջնորդութիւնն, իւր գործքերը և իւր գըլխոյն եկած անցքերը։

Թէ՛ առաջին հատորին և Թէ երկրորդին մէջ շատ տեղ յիշատակութիւն եղաւ Ապունա—Սելամի առաջնորդին վրայօք, հոս մասնաւորապէս կ'ուզեմ խօսիլ սոյն անձին կենսագրութեանը վրայ, որքան որ կրցանք տեղեկութիւններ ստանալ։

Նախ գիտնալ պէտք է որ Հապէշու եկեղեցին ազգային հոգեւորական գլուխ մը չունի, Թէպէտ և ինքնուրոյնութեամբ կը վարուի, բայց ձեռնադրութիւն

ները Եգիպտոսի Խոպտաց Կաթողիկոսէն ըլլալով, անոր
կողմէն և Խոպտի ազգէն կ'ընդունի եկեղեցւոյն առաջ-
նորդը։ Իսկ Կաթողիկոսը անոնց ուզած առաջնորդը առ-
նէն և որոշեալ գումար առնելը ընդունելէն յետոյ՝ ա՛լ
ուրիշ բանի չխառնուիր։ Այս գումարն է տասը հա-
զար արծուէդրոշմ Թալէռ, որ իբրև պարգև կանխիկ
կը տրուի անոր Հաբէշից Թագաւորին կողմէն։ Այս
գումարէն ի զատ նաև Եգիպտոսի փոխարքային ալ
պարգև կը խրկէ ամէն անգամ առաջնորդ խնդրելուն,
և հազար Թալէռ ալ Երուսաղէմ եղող աղօթաւոր Հա-
բէշներուն խրկելով բաժնել կուտայ. Թող առաջնոր-
դին ճանապարհորդութեան ծախսերը և հրաւիրակնե-
րուն, որոնցմով ընդ ամէնը քանի հազար Թալէրի կը
հասնի.

Սպունա-Մելամին նախորդ եպիսկոպոսը վախճա-
նելուն, Թէկրիի իշխանապետ Տէճա-Ուպին հրաւիրակ-
ներ խրկելով (1842) առ Կաթողիկոսն, նոր առաջնորդ
բերել կուտայ, այն է յիշեալ Սպունա-Մելամին։ Բը-
նութեամբ անհանդարտ և խռովասէր մէկն էր, ինչ-
պէս կը վկայեն, և իւր գործքերէն ալ յայտնի եղաւ,
որոնց վրայօք պատմեցինք նախորդ գլուխներուն մէջ։
Աւելի աշխարհասէր էր քան թէ հոգևսէր, և աւելի
մարմնաւոր իշխանութեան փափաքող, փառասէր՝ քան
թէ հոգևոր առաջնորդութեանը մտադիր և իրեն
յանձնուած ժողովրդեան երջանկութեանն ու բարոյ-
ական զարգացմանը ջանացող։ Եգիպտոս եղած ժամա-
նակ այնտեղի Անգղիացւոց հետ սերտ յարաբերու-
թիւններ ունէր կ'ըսեն, և անոնց ազդեցութեան կու-
տան շատերը Հաբէշստանի առաջնորդ ընտրուիլը.
Ինքն ալ բաւական անգղիարէն գիտէ եղեր։

Հաբէշստան գալուն՝ Տէճա-Ուպին անոր կը վե-
րադարձնէ բոլոր այն երկիրները որ ի բնէ անտի խըղ-
տի Առաջնորդաց սեփականուած է իբրև պտղի իրա-
ւունք։ Իսկ Սպունա-Մելամի այնքան երկիրներով չը
բաւականանար, և աւելի իրաւունքներ ձեռք ձգելու
համար Տէճա-Ուպին հակառակորդները կը գրգռէ

և անոնց ուժը աւելցնելու ջանքեր կը ցուցնէ, որպէս զի անոնց շնորհիւն ինքն իւր երկիրներն ընդարձակէ։ Իշխանապետն իմանալով անոր խորամանկութիւնները, ցաւօք սրտի կ'ըսէ իրեն. «Ի՞նչ չարութիւն գործեցի քեզի դէմ, որ իմ հօրս կը փորես, և իմ հպատակորդներս ինծի դէմ կը յարուցանես. ո՞չ ապաքէն դու հոգեւոր հայր մըն ես, և այդպիսի չարիքներ և մատնութիւններ մոքէդ անգամ անցնելը յանցանք է քեզի։ Թէ որ ուրիշ մէկն ըլլար գործողը, քու պարտքդ էր զանիկայ խրատել և իւր չար խորհուրդներէն ետ կեցնել։» Առաջնորդը այս յանդիմանութիւնները լսելով կ'արդարացնէ զինքը վարպետ ու համոզական խօսքերով. և թէպէտ այս առաջին անգամը կը ներէ անոր, բայց անկէ յետոյ իշխանապետը արթուն կը մնայ որ վկաներ ձեռք բերելով՝ ուրիշ անգամ չկրնայ ուրանալ և արդարացնել իր անձը։

Ապունա-Սալամին առանց իր նպատակէն ետ կենալու ամենայն զգուշութեամբ կը շարունակէ իշխանապետին դէմ նենգութիւններ գործել։ Գրեր կը գըրէ ու կը խրկէ իւր բարեկամացը, որոնց և ոչ մէկը ձեռք կ'անցնի. բայց վերջապէս օր մը կը բռնուի. Ատը-լու Ռահմանի բռնած երկրին իշխանին յատուկ մարդով նամակ և հագուստ խրկելու ժամանակ ձեռք կ'անցնի մարդը։ Դատաստանի կը կանչուի Ապունա-Սելամի, գրած նամակն ու խրկած մարդը մէջ բերուելով՝ ափի բերան կ'ըլլայ, չկրնար այս անգամ արդարացնել զինքը, երեսի գոյնը կը նետէ, արիւնը կը պաղի կը մնայ, և բոլոր ժողովքին առջեւը կը խայտառակի։ Տէճա-Նուպի ինչպէս որ պէտք է՝ բուռն զօրութեամբ կըսկսի յանդիմանել երեսը վար առնուլ, և բոլոր ժողովականաց հետ կը դատապարտէ զանիկայ տասը հազար թալէր տուգանք տալով հեռանալ Հապէշստանէն, որպէս զի երկիրը խաղաղի։ Աղուէսաբարոյ առաջնորդը բոլոր իւր ջանքը թափելով կ'աղաչէ կը պաղատի որ ներէն իրեն։ «Չունիմ, կ'ըսէ, այսուհետև այս երկրիս մէջ պաշտօն մը. այլ կը խնդրեմ՝ որ եր-

կիրս երթալու տեղ՝ միայն առաջնորդութենէս հրաժարիմ, և իբրև կրօնաւոր քահանայ իմ աղօթիցս պարապիմ։ » Երբ այս խնդիրքը լալագին դիմօք կը մատուցանէ, ներողութիւն կ'ըլլայ իրեն, և կը քաշուի առանձին տեղ մը զոր Տէճա—Սուպի ցոյց կու տայ իրեն. և հոն կրօնաւորաց սքեմը հագնելով անոնց կարգը կըմտնէ։

Երկար չքշեր իր ապաշխարութեան միջոցը. իր փառասէր խորհուրդները կրկին արթննալով անոր սըրտին մէջ՝ անհանգիստ կ'ընեն զինքը. միտքը կ'ընկնայ Տէվրէ—Տամօ լերան կրօնաւորները, որոնց գաղտուկ լուր խրկելով՝ յանկարծ կու գան կ'առնուն զինքը և կը տանին իրենց անառիկ ու բարձր լեռը, ու ամէնքը մէկէն կ'ապստամբին, ըստ որում զիրենք պաշտպանելու չափ հրազէնքեր ալ կ'ունենան։

Տէճա—Սուպի լսելով Առաջնորդին հոն փախչիլը, քանի մը վաշտ զօրք կը խրկէ և լեռը պաշարել կու տայ. նեղը կը մնան կրօնաւորք և շատերը փախչելու կըստիպուին, մնացեալներն ալ պարէննին հատնելով կը հարկադրին միջնորդներ մէջ ձգելով ներողութիւն խնդրել և անձնատուր ըլլալ։ Ամենուն ալ կը ներուի բայց ի Ապունա—Սելամիէն, որ նեղը մնալով՝ կը յաջողէ ծածուկ ոտքի հանել երկրին բոլոր կարգաւորները ի պաշտպանութիւն իւր անձին, որոնց միջնորդելովը վերջապէս իրեն ալ ներողութիւն կ'ըլլայ. և իր երկիրը վերադառնալու որոշումն ալ ետ կը մնայ։ Իւր իշխանապետին վըստահութիւնը ձեռք ձգելու և անոր ծառայութիւն մը ցոյց տալու համար կը խոստանայ հոգւով չափ աշխատելու և գործակցելու անոր՝ եթէ կ'ուզէ Ամարայու ընդարձակ երկրին այն մասին ալ տիրելու, որու բնակիչները ընդհանրապէս քրիստոնեայ են և որոնց կ'իշխէ Կալլացի Ռուհմանի ըսուած ցեղէն Օսա—Ալի իշխանը (1).

(1) Օսա—Ալիին նախնիքները երբ կը տիրեն քրիստոնէից երկրին ակամայ և առ երեսս կ'ընդունին քրիստոնէութիւնը։ Իսկ Օսա—Ալիին օրով Մահմետական կրօնքը յարգ կը գտնէ անոր թոյլատրութեամբը, և քրիստոնէիցմէ շատերն ալ ի շնորհուկս իշխանին կը տաճկանան.

Ապունա–Սելամին տուած այս խորհուրդը ոչ միայն Տէճա–Սուպիին սէրն ու լիակատար ներողութիւնը ստանալ կու տայ իրեն, այլ և նոյն խորհրդոյն գործադրութեանը համար գաղտ կը խօսակցին իրարու հետ։ Որոշուածն ըլլալէն յետոյ յանկարծ Տէճա–Սուպի պատերազմ կը հրատարակէ Մուսա–Ալիին դէմ, և բանակը կը զարնէ Պէկամըրըքի ընդարձակ և բարեբեր երկրին մէջ։ Մուսա–Ալի ալ անոր դէմ կը բանակի։ Ապունա–Սելամի կըսկսի ի գործ դնել իւր դերը. կարգաւորներու ձեռօք Թշնամւոյն բանակը կը գրգռէ, նզովքներ կ'արձակէ Մուսա–Ալիին հետ դաշնաւորներուն դէմ, և անոր քովէն փախչողները կ'օրհնէ։ Առաջնորդին այս ջանքերը ապարդիւն չեն մնար. պատերազմը սկսուած օրը Թշնամւոյն բանակէն ամենք կը փախչին կ'երթան, և ամենք ալ Տէճա–Սուպիին կողմը կ'անցնին, որով կը տկարանայ Մուսա–Ալի և կը յաղթուի, և մնացեալ զօրքերն ալ փախուստ կու տան։ Անոնց ետեւէն կ'ընկնան Տէճա–Սուպիին զօրքերը որ մեծամեծները ձերբակալ ընեն և հասարակ զինուորները կոտորեն։ Նոյն միջոցին անոր քաջ իշխաններէն մէկը Պրու–Ալի–Կազանուն, Տէճա–Սուպիին կողմը կ'անցնի իր մարդիկներովը. կը տեսնէ որ անիկայ իւր վրանին տակը միայնակ նստած և բանակը իւր քովէն հեռացած է. յանկարծ կը պաշարէ անոր վրանը և կը բռնէ զինքը և կը շղթայէ, նոյնպէս Ապունա–Սելամին ալ բռնելով կը բանտարկէ իր քովը. և շուտով մարդ կը ղրկէ Մուսա–Ալիին ետեւէն, և մունետիկներու ձեռքով կ'իմացընէ Տէճա–Սուպիին բռնուիլը. այս ձայնին վրայ անոր զօրքերը վհատելով ցիր ու ցան կ'ըլլան, և միւսին զօրքերը կրկին ետ կը դառնան։ Մուսա–Ալի այս անակնկալ աւետիսը լսելուն կը դառնայ կու գայ շուտով իւր Թշնամւոյն բանակատեղին, ուր կը գտնէ զՏէճա–Սուպին ու Ապունա–Սելամին բանտարկուած։

Մուսա–Ալի փոխանակ վրէժխնդրութեամբ վարուելու Տէճա–Սուպիին հետ, մեծահանճարաբար կ'արձակէ զինքը ժամանակէ մը ետքը. և հարկատու ընելով իրեն՝

կրկին ետ կը դարձընէ իւր իշխանութեան երկիրը։ Յու-
Ապունա–Սելամին հետ ալ հաշտուելով՝ Կոնտէր քա-
ղաքը (Սմարայի մէջ) կը բնակեցընէ զինքը ։ Այսու ա-
մենայնիւ նա դարձեալ չհանդարտելով, իւր հին ունա-
կութիւնը ձեռք կ՚առնու խռովութիւններ ցանելու ։
Կոճամի իշխան Պրու–Կուշուլին, որ Օսա–Ալլին թշնա-
մին էր, ծածուկ գիր կը խրկէ և անոր հետ կը թղթակցի։
Այսօրինակ թղթակցութիւն մը երկրին քաղաքականու-
թեան համեմատ՝ խիստ յանցաւոր կը համարուի . վասն
զի իշխանապետին սիրածը պէտք է որ Առաջնորդն ալ
սիրէ, և անոր ատածը ինքն ալ ատէ ։ Օսա–Ալլի իմա-
նալով անոր այս թղթակցութիւնը և ըրած մատնու-
թիւնները, իր քովը կը կանչէ զինքը ու կ՚ըսէ . "Այդ
ըրածդ կը վայելէ՞ կարգաւորի մը, որ իմ թշնամեացս
ուժը աւելցընելու ջանքեր կ՚ընես և ինծի դէմ գըր-
գռիչ գրուածներ կը խրկես անոր։ Այդ չարութիւնը
իմ ո՞ր գործիս փոխարէնն է . ես քեզի գէշութիւն մը չը-
րի, թէպէտ և կարող էի և իրաւունք ունէի. Քու
երկիրներդ հին սովորութեան դէմ չգործելու համար
դարձեալ քեզի շնորհեցի, զորոնք կրնայի ուզածիս պէս
տնօրինել . բայց ես ատանք չըրի, չէ թէ քեզմէ վախ-
նալուս, այլ իմ վեհանձնութիւնս քեզ ցոյց տալու հա-
մար ։" Այսչափ յանդիմանութիւնը բաւական համա-
րելով իշխանապետը, դուրս կը հանէ զանիկայ իւր երե-
սէն ։ Ապունա–Սելամի անոր մօրմէն ցաւած էր իւր
երկիրներէն կտոր մը տեղ առնելուն համար . և այս էր
պատճառը Պրու–Կուշուլին հետ թղթակցելուն, որով
կ՚ուզէր ցաւ հասցընել Օսա–Ալլին ։ Բայց երբ իւր
մատնութիւնը դուրս ելաւ, ուզեց կրկին հաշտուիլ
անոր հետ, և մեծամեծները միջնորդ դնելով յաջողեցաւ ։
Այսու ամենայնիւ անոր մօրը դէմ ունեցած իւր ատե-
լութիւնը սրտէն չհանեց և պատեհութեան կը սպա-
սէր վրէժխնդիր ըլլալու . բայց այս չար կիրքը աւելի իր
անձին վնասեց, ինչպէս պիտի տեսնենք հիմա ։

Վերը Յ. Գիլսուն մէջ տեսանք Հապէշներուն մէջ
եղած դաւաճանութեան զանազանութիւնները, որոնց պատ-

ճառ առ մէջերնին ալ գժտութիւն ու վէճեր միշտ պատահելը ։ Ռաս–Ալիի տիրած երկրին մէկ մասը՝ նաեւ Շօային երեք ծնունդ կը դաւանին, իսկ Կոճամի ժողովուրդը երկու ծնունդ կը խոստովանին . ասոնց դըրմամբը Ապունա–Սելամի կը նզովէ Շօայի իշխանն և անոր ժողովուրդը որ Ռաս–Ալիին հպատակ էին . և միւսքը զանոնք Ռաս–Ալիի դէմ ապստամբեցընել ու վըրդովել է , որով անուղղակի կերպով մը անոր մօրմէն վրէժխնդիր եղած կ'ըլլար ։ Այս նզովքին ձայնը երբ Շօա կը հասնի , ժողովուրդը տակնուվրայ կ'ըլլայ և կը զայրանայ Ապունային և Ռաս–Ալիին դէմ, որուն կը գիտեն կուգան կարգաւորները որ նզովքը քակել տան, ապա թէ ոչ՝ կ'ըսեն , չենք ընդունիր զինքը իբր Ապունա , և պէտք է որ իւր երկիրը դառնայ ։ Ռաս–Ալի շատ կ'աշխատի որ արձակել տայ զանոնք նզովքէն , բայց հնար չըլլար . « Կամ զի , կ'ըսէ Ապունա–Սելամին, ես իմ եկեղեցւոյս օրինաց համեմատ պարտաւոր եմ նզովել երեք ծնունդ Քրիստոսի դաւանողները ։» Ռաս–Ալի տեսնելով անոր յամառութիւնը, կը բարկանայ և երեք օր բանտարկել կուտայ ամուր լերան մը մէջ ։ Յետոյ բոլոր եկեղեցականներով ժողով մը կազմել կուտայ Չէկիին թելադրութեամբը , որ Կոնտէր կը նստի և երեք ծնունդ դաւանողներէն է , և նոյն ժողովոյն որոշմամբը կ'ուղէ որ իւր երկիրը ճամբէ խռովասէր և վըրդովիչ Առաջնորդը ։ Հրաման կ'ընէ և լեռնէն բերել տալով, Կոնտէր քաղաքը իւր տանը մէջ բնակելու կը թոյլատրէ ։

Ռաս–Ալին հոն չգտնուած ժամանակ, Չէկին, որուն սիրտը դեռ բարկութենէ չէր հանդարտած , լուր կը խրկէ Առաջնորդին ըսելով. « Կամ թող արձակէ ժողովուրդը իւր բանադրանքէն և օրհնէ զանոնք , և կամ թող պատերազմի պատրաստուի ինծի հետ ։ Աստուած կամ ինծի կուտայ յաղթութիւնը և զինքը կը վռնտեմ այս երկրէն, և կամ անոր կուտայ՝ իւր կամքը յառաջ տանելու ։» Ապունա–Սելամի երկրորդ առաջարկութիւնը կ'ընդունի և կռուի կը պատրաստուի ։

Նորկու կողմն ալ իրենց դաւանակից եղող մարդիկը ժողվելով կը զարնուին իրարու հետ. Չէկին, որովհետեւ աւելի շատ մարդիկ ունէր իւր գլուխը, կը յաղթէ իւր հակառակորդին, եւ անոր տունը տեղը կողոպտելէն յետոյ՝ զինքն ալ գիշերանց Թէկրիի երկիրը կը հալածէ ։

Կաճառի ժողովուրդը որ Սպունա-Սեւամին դաւանակիցներն են, այս դէպքը լսելով՝ ոտք կ'ելլեն Չէկինի դէմ եւ կըստիպեն Պրու-Կոշու իշխանն ալ անոր վրայ յարձակելու. ան ալ ժողովրդոց սիրտը գոհ ընելու եւ հանդարտեցընելու համար կամայ ակամայ կուգայ Կանտէր քաղաքը. ինչ ատեն Սուս-Նըլի Պեկամբարի ներսերը գացած էր, կը բռնէ Չէկին եւ Բաար-Նըմպա լեռը շղթայի զարկած կը բանտարկէ, եւ անոր տունն ալ կողոպտել ու աւար ընել կուտայ, Սպունա-Սեւամին վրէժը կ'առնէ եւ ժողովուրդը կը խաղաղեցընէ ։

Սպունա-Սեւամի Թէկրի հասածին պէս, անոնց Սէդ-Պըվ կրօնքը սիրով կ'ընդունին դարձեալ։ Հոն իւր անուանը աղտ բերելով՝ ժողովուրդը կը գայթակղի անոր վրայ եւ կըսկսին բամբասել ու նախատել զինքը. ըստ որում որքան որ ցանկական ախտերը ընդհանրացած մոլութիւն մըն է իրենց մէջ, այսու ամենայնիւ՝ Սպունայի մը համար աններելի մեղք կը համարուի, զոր իրենք իբր անմեղ հրեշտակ կը կարծեն, եւ ինչպէս որ Իսրայելի ժողովուրդը Մովսէս մարգարէէն կ'ակնածէին եւ անոր նզովքներէն ու սպառնալիքներէն կը սարսափէին, այս համարումը ունէին նաեւ Հապէշներն իրենց Առաջնորդին վրայ ։

Այս զրպարտութիւնը երբ Սպունա-Սեւամին ականջը կը հասնի, կը բարկանայ Թէկրիացւոց վրայ, կը նզովէ ու կը բանադրէ զանոնք բոլորն ալ. եւ ինքը կը քաշուի Տէվրէ-Տամօ բռնած լեռը ճգնութեամբ ապրելու եւ ժողովուրդին երեսը չտեսնելու ։ Եկեղեցականք ալ այս նզովքներուն ներքեւ գտնուելով՝ հարկ կ'ըլլայ իրենց քահանայական պաշտօնէն դադրելու. հետեւապէս երեք տարիի չափ եկեղեցիները փակ կը մնան կ'ըսուի ։

Երբ կը լսէ Ապունա–Սելամին Տէճա–Գասային (Թէոդորոսին) զօրանալն ու Ռաս Ալիին իշխանութեան կործանիլը, ծածուկ մարդ կը ղրկէ Տէճա–Գասային անոր իշխանութիւնը շնորհաւորելու. օրհնութիւններ ու բարեմաղթութիւններ կը նուիրէ և անոր թագաւոր օծուելուն փափաքը կը ցուցնէ։ Անոնցմէ սիրտ առնելով Թէոդորոս, անմիջապէս Թէկրիի վրայ կուգայ, և անոր Տէճա–Ուպի իշխանէն Ապունա–Սելամին կը խնդրէ ու կ'առնու. Նա ալ երթալու ժամանակը բոլոր Թէկրիացիները նզովքէ արձակելով կրկին կ'օրհնէ, և կը ներէ անոնց։ Այսուպէս եկեղեցւոյն մէջ թագաւոր օծուելէն յառաջ պայմանադրութիւններ կ'ընէ անոր հետ Առաջնորդը, որոնց վրայօք արդէն խօսած եմ Բ. գլխոյն մէջ. և յետ այնորիկ Առաջնորդին և թագաւորին մէջ պատահած անցքերը. առջի օրհնութիւններուն փոխարէն նախատինք ու չարիքներ անոր գլխուն վրայ տեղացնելը և գաղտնի որոգայթներ լարելը, և իրեն ըստ պայմանադրութեան ընդարձակ երկիրներ ստանալու և իբրեւ պապ Հապէշստանի տիրաբար իշխելու ակնկալութիւններէն պարապ ելնելը, ժողովուրդը գրգռելով իրենց թագաւորին դէմ ապստամբեցնելու ջանք ընելը, և թագաւորը զասոնք լսելով իր տուած երկիրները կրկին ետ առնելը և ըրած յանդիմանութիւնները. բոլոր ասոնք արդէն յիշատակած եմք վերոյիշեալ գլխուն մէջ։

Ապունա–Սելամին պատճառ եղած է եկեղեցիներուն այրուելուն և կործանուելուն, ապստամբաց և ուրիշ շատ անմեղ մարդոց գլխատուելուն, ինչպէս շատերը կը հաստատեն։ Թագաւորին զօրքերը կը նզովէր. և անոնցմէ ով որ ապստամբաց կողմը փախչելու ըլլար՝ կ'օրհնէր։ Կ'ըսէին զօրքերը իրեն երեսին. “Դուն նախ կը գովէիր զթագաւորը, և մենք քու գովութիւններուդ վստահանալով եկանք անոր քով զինուորեցանք, և զմեզ կը քաջալերէիր ու կ'օրհնէիր. հիմայ ընդհակառակը ինչու կը նզովես թէ՛ մեզի և թէ թագաւորը։” Առաջնորդը պատասխան տալու և զանոնք համոզելու

մէջ տկար չէր, բայց Թէոդորոսին դէմ յարուցած զանազան փորձութիւններուն մէջ վերջապէս տկարացաւ, և իր ըրած չարիքները եկան իր ոտքերուն պլլուեցան։ Թագաւորը ալ չկարենալով անոր ձեռքէն ազատիլ, բռնել տալով զինքը Մակտելա լեռը բանտարկել տուաւ իբրև աքսոր հոն մնալու, ուրտեղ եղաւ իր մահն ալ յուսահատութեամբ և անպատուութեամբ։ Այսպէս աշխարհային իշխանութեան փափաքող փառամոլ ու փառասէր Առաջնորդը բանտին մէջ կը կնքէ իր կեանքը, սեպտեմբեր ամսոյ մէջ, 1867 Թուոյն. քսան և հինգ տարի առաջնորդելէն յետոյ։

Կ'ըսէին թէ, նոյն տարին Գէր. Խաչակ սրբազանը և Նուաստս Բաշ–Աճըմ եկած ժամանակնիս լուր մը տարածուեցաւ, թէ Թէոդորոս Թագաւորը խորտի Առաջնորդէն և անոնց ազգէն ձանձրացած ըլլալով, գըրութեամբ խնդրած ըլլայ սուրբ Երուսաղէմի Հայոց Պատրիարքէն, որ Եպիսկոպոս առաջնորդ մը իրեն խրկէ, որպէս զի Խոյտուոց անունը ջնջուի Հաբէշստանէն։ Եւ արդարև այս լուրը Աբունա–Սելամին ալ լսելով իր բանտին մէջ, և արդէն յուսահատութիւնը մէկ կողմէն և գաղղիական ախտը միւս կողմէն իր անձը մաշած ըլլալով, աւելի ցաւ մը կ'ըլլայ, կ'ըսեն, իրեն մեր հոն երթալը։

---

## ԳԼՈՒԽ Է.

*Սողոմոնի ցեղէն կարծուած թագաւորութեան սերունդը և անոր վերջանալուն պատճառը։*

ՀԱԲԷՇՈՒ երկրին հին թագաւորութեան համար չէ թէ միայն աւանդութիւնը, այլ և իրենց պատմութիւնն անգամ կը ջանայ ցոյց տալ թէ Սողոմոն թագաւորին ցեղէն յառաջ եկած ըլլայ, զոր Ստեփաննոս Ագոնցն (1) ալ յիշատակութիւն կ'ընէ։ Կ'ըսեն իրենք,

(1) Աշխարհագրութիւն. հատ. Ժ. երես 534.

թէ Թագուհին Սաբայ, կամ դշխոյն հարաւոյ ըսուածը Հապէշստանի Թագուհի մըն էր, որ Սողոմոնի իմաստութիւնը լսելով եւ անոր քով գնաց ընծաներով, եւ տեսութիւն ընելէն յետոյ երբ իւր Թագաւորութեան երկիրը դարձաւ, մանչ զաւակ մը ունեցաւ անորմէ, որ մեծնալէն յետոյ Երուսաղէմ իւր հօրը քովը յուղարկեց շատ գանձերով ու ոսկիով, ուսկէց հարստացաւ կ'ըսեն Սողոմոն։ Տղան հօրը քով բաւական տարի մնալով աստուածպաշտութեան եւ իմաստութեան մէջ կրթուելէն յետոյ, կը դառնայ ի Հապէշըստան շատ զօրքերով, որոնցմով կը տիրէ բոլոր երկրին, եւ իւր յաջորդութիւնը որդւոց որդի կը մնայ, կ'ըսեն, մինչեւ այս մօտ տարիները։ Հապէշները այս պատմութիւնս ճշմարիտ եւ հաստատուն համարելով կը պարծենային իրենց Թագաւորութեան թէ՛ հնութեանը եւ թէ այս կերպ ծագումն ունենալուն վրայ։ Բայց հիմայ այս Թագաւորութեանը հետ իրենց պարծանքն ալ ոչընչացած է, ինչպէս պիտի պատմեմ։

Ժամանակ մը տեւելէն յետոյ այս սողոմոնեան կարծուած Թագաւորութիւնը, իւր վերջի յաջորդներուն օրովը սկսեր է տկարանալ այս պատճառաւ։ Յիշեալ վերջին Թագաւորները առանց շրջահայեցութեան եւ վախճանը մտածելու, իրենց երկիրները կըսկսին հարուստ եւ ունեւոր իշխաններուն ծախել, որպէս զի իրենք առանց մտմտուքի հանգիստ կեանք վարեն. եւ պայման ալ կը դնեն իբր օրէնք անգիր, որ եթէ իշխաններուն զաւակաց սերունդը սպառելու ըլլայ, կըրկին Թագաւորին դառնան անոնց երկիրները։ Բայց ժամանակ անցնելով սոյն պարտաւորիչ անգիր օրէնքը չը կրնալով յարգուիլ տէրութեան տկարանալովը, զաւակաց յաջորդութիւնը սպառելուն, ազգականութեան իրաւունք մը մէջ կը բերեն, եւ անուղղակի գծէ եղող ժառանգներ բռնութեամբ կըսկսին տիրել երկիրներուն։ Ասկէց ալ կը հետեւի ազգականաց մէջ ժառանգութեան վէճեր, բռնութիւններ, իրարու ձեռքէ յափշտակութիւններ, եւ կ'ընկնան երկիրները հզօրագոյն

մէջ տկար չէր, բայց Թէոդորոսին դէմ յարուցած զա-
նազան փորձութիւններուն մէջ վերջապէս տկարացաւ,
և իր ըրած չարիքները եկան իր ոտքերուն պլլուե-
ցան։ Թագաւորը ալ չկարենալով անոր ձեռքէն ազա-
տիլ. բռնել տալով զինքը Մակտելա լեռը բանտարկել
տուաւ իբրեւ աքսոր հոն մնալու, ուրտեղ եղաւ իր
մահն ալ յուսահատութեամբ և անպատուութեամբ։
Այսպէս աշխարհային իշխանութեան փափաքող փա-
ռամոլ ու փառասէր Առաջնորդը բանտին մէջ կը կնքէ
իր կեանքը, սեպտեմբեր ամսոյ մէջ, 1867 Թուոյն.
քսան և հինգ տարի առաջնորդելէն յետոյ։

Կ'ըսէին թէ, նոյն տարին Գէր. Իսահակ սրբազա-
նը և նուաստս Բար—Մաքա եկած ժամանակնիս լուր
մը տարածուեցաւ, թէ Թէոդորոս Թագաւորը խստի
Առաջնորդէն և անոնց ազգէն ձանձրացած ըլլալով, գը-
րութեամբ խնդրած ըլլայ ասոր Երուսաղէմի Հայոց
Պատրիարքէն, որ Եպիսկոպոս առաջնորդ մը իրեն խրը-
կէ, որպէս զի Խպտուոց անունը ջնջուի Հաբէշստանէն
Նաև արդարև այս լուրը Աբունա—Սելամին ալ լսելով իր
բանտին մէջ, և արդէն յուսահատութիւնը մէկ կողմէն
և գաղղիական ախտը միւս կողմէն իր անձը մաշած
ըլլալով, աւելի ցաւ մը կ'ըլլայ, կ'ըսեն, իրեն մեր հոն
երթալը։

---

## ԳԼՈՒԽ Է.

*Սողոմոնի ցեղէն կարծուած Թագաւորութեան սերունդը և անոր վեր-
ջանալուն պատճառը։*

ՀԱԲԷՇՈՒ երկրին հին Թագաւորութեան համար
չէ թէ միայն աւանդութիւնը, այլ և իրենց պատմու-
թիւնն անգամ կը ջանայ ցոյց տալ թէ Սողոմոն Թագա-
ւորին ցեղէն յառաջ եկած ըլլայ, զոր Ստեփաննոս Ա-
գոնցն (1) ալ յիշատակութիւն կ'ընէ։ Կ'ըսեն իրենք,

(1) Աշխարհագրութիւն. հատ. Ժ. երես 534.

թէ Թագուհին Սաբայ, կամ դշխոյն հարաւոյ բռնա-
ծը Հապէշստանի Թագուհի մըն էր, որ Սողոմոնի ի-
մաստութիւնը լսելով եկաւ անոր քով գնաց ընծանե-
րով, և տեսութիւն ընելէն յետոյ երբ իւր Թագաւո-
րութեան երկիրը դարձաւ, մանչ զաւակ մը ունեցաւ
անորմէ, որ մեծնալէն յետոյ Երուսաղէմ իւր հօրը
քովը յուղարկեց շատ գանձերով ու ոսկւով, ուսկեց
հաստատուած կ'ըսեն Սողոմոն։ Տղան հօրը քով բաւա-
կան տարի մնալով աստուածպաշտութեան և իմաստու-
թեան մէջ կրթուելէն յետոյ, կը դառնայ ի Հապէշըս-
տան շատ զօրքերով, որոնցմով կը տիրէ բոլոր երկրին,
և իւր յաջորդութիւնը որդւոց որդի կը մնայ, կ'ըսեն,
մինչև այս մօտ տարիները։ Հապէշները այս պատ-
մութիւնս ճշմարիտ և հաստատուն համարելով կը պար-
ծենային իրենց Թագաւորութեան թէ՛ հնութեանը և
թէ այս կերպ ծագումն ունենալուն վրայ։ Բայց հիմայ
այս Թագաւորութեանը հետ իրենց պարծանքն ալ ոչըն-
չացած է, ինչպէս պիտի պատմեմ։

Ժամանակ մը տեւելէն յետոյ այս սողոմոնեան կար-
ծուած Թագաւորութիւնը, իւր վերջի յաջորդներուն
օրովը սկսեր է տկարանալ այս պատճառաւ։ Յիշեալ
վերջին Թագաւորները առանց շրջահայեցութեան և
վախճանը մտածելու, իրենց երկիրները կըսկսին հա-
րուստ և ունեւոր իշխաններուն ծախել, որպէս զի ի-
րենք առանց մտմտուքի հանգիստ կեանք վարեն. և
պայման ալ կը դնեն իբր օրէնք անգիր, որ եթէ իշ-
խաններուն զաւակաց սերունդը սպառելու ըլլայ, կըր-
կին Թագաւորին դառնան անոնց երկիրները։ Բայց ժա-
մանակ անցնելով սոյն պարտաւորիչ անգիր օրէնքը չը
կրնալով յարգուիլ տէրութեան տկարանալովը, զաւա-
կաց յաջորդութիւնը սպառելուն, ազգականութեան
իրաւունք մը մէջ կը բերեն, և անուղղակի գծէ եղող
ժառանգներ բռնութեամբ կըսկսին տիրել երկիրներուն։
Ասկէց ալ կը հետեւի ազգականաց մէջ ժառանգու-
թեան վէճեր, բռնութիւններ, իրարու ձեռքէ յա-
փշտակութիւններ, և կ'ընկնան երկիրները հզօրագոյն

իշխաններու ձեռք ։ Այս կերպով տէրութեան երկիրները Թագաւորաց ձեռքով վաճառուելով՝ անոնց տիրապետական իրաւունքն ալ վաճառուած կ'ըլլայ , և հետզհետէ կըսկսի տկարանալ անոնց իշխանութիւնը , և յաջորդք յետ այնորիկ կըստիպուին միայն իրենց անձը պաշտպանելու և մնացած քիչ մը երկիրը պահպանելու ։

Սողոմոնի յաջորդաց այսպէս տկարանալու միջոցին Կոլլացի բարբարոս ազգաց բաղդը կը բացուի ։ Ասոնց մէջէն մէկը բաւական ուժի տէր ըլլալով՝ քիչ քիչ կը զօրանայ և մինչև բոլոր Ամարա երկրին՝ որ ըսել է քրիստոնեայ Հապէշից կը տիրէ . նոյնպէս միւս մնացած երեք մասն ալ Շօա , Կոճամ և Թէկրի շատ չբչեր՝ հարկատու կ'ըլլան իրեն ։ Ասոր սերունդէն է նաև Ռաս-Ալի իշխանը ։ Ասոնք Թէպէտ և Մահմետական են կրօնքով , բայց քրիստոնէից երկիրներուն տիրելով՝ ի շնորհուկս անոնց առ երես կ'ընդունին քրիստոնէութիւնը ։

Հապէշից հին Թագաւորութեան ժառանգութիւնը Թէպէտ և այս կերպով կը վերջանայ , բայց Կոլլացի իշխանը անոր վերջին յաջորդին ձեռքէն կառավարութիւնը և երկիրը առնելէն յետոյ , միայն Թագաւորական պատիւն ու անունը և Թագը կը Թողու անոր , և Կոնտէրի կողմերը քիչ մը երկիր և տարեկան քիչ մըն ալ դրամ կը շնորհէ անոր իբր ծախս իւր տանը ։ Եւ այս անուանական Թագաւորութիւն ալ կը տևէ մինչև Թէոդորոսի իշխանութեան գլուխ անցնիլը , որ Թագաւոր օծուելէն ետքը անոր ձեռքէն Թագն ու անունն ալ առնելով կ'ըսէ . “ Ես իմ սրովս և արիւնովս գնեմ երկիրներն ու տիրեմ , դուն հանգիստ տունդ նստած Թագաւորական փառքը վայելես ։ Օրէնք չէ մէկ տան մէջ երկու տէր , մէկ երկրի մէջ երկու իշխան կամ Թագաւոր ։ Թէ որ ես իմ երկրին տէրը և Թագաւորը , պէտք է որ Թագաւորական փառքը ու պատիւն ալ ես վայելեմ ։ ” Այսպէս ըսելէն և իւր վերջին փառքէն ալ զրկելէն յետոյ , զինքն ալ Մաքտելա լեռը կը բանտար-

կէ. բայց յետոյ կը փախչի անկից ։ Որ եկաւ մեր քովը տեսութեան՝ Սկըտայի երկիրը Վադշըմ–Կոմագիի բանակին մէջ գտնուած ատեններս, և դարձեալ փոքրիկ իշխանութիւն մը ձեռք ձգելու համար մեզմէ օգնութիւններ կը յուսար. Ինքը մերկ էր մարմնով բուն սավորութեան երկրին, և միայն էհրամ մը պլլուած ։

---

## ԳԼՈՒԽ Ը.

*Հապէշու երկրին մէջ գտնուած զանազան ազգերն ու լեզուները ։*

Հապէշստանի ժողովուրդը թէպէտ և մեծագոյն մասամբ քրիստոնեայ են, այսու ամենայնիւ զանազան լեզուներով ու ցեղերով իրարմէ կը տարբերին, որոնք թէպէտ և ամենքն ալ Ամարայի (1) լեզուն կը խօսին, բայց անկէ ի զատ մասնաւոր լեզուներ կամ գաւառական բարբառներ ալ ունին ։ Կան նաև յետոյ ի քրիստոնէութիւն դարձող Հապէշ ցեղեր, որոնք իրենց առաջին լեզունին կորսնցուցած են հիմայ՝ չգործածելնուն պատճառաւ ։ Իսկ գործածականներն են Ամարայի ընդհանրական լեզուէն ի զատ՝ Ակցի, Սըմինի, Թէկրիի և Ակօ–Մըտըրինը, որոնք զատ զատ լեզուներ ունին իրենց մէջ միայն գործածելի ։

Քրիստոնեայ ազգերէն զատ ուրիշ երկու ցեղեր ալ կան Գըմանդ և Սյիթօ կոչուած, որոնք անկրօն են,

(1) Ամարա մէկ մը բուն իսկ նահանգը կը նշանակէ. երկրորդ քրիստոնեայ բանակի զօրութիւնն ունի. և Ամարացի կամ Ամարայի լեզու ըսելով, քրիստոնեայ կամ քրիստոնէի լեզու կ'իմացուի. և պատճառը՝ քրիստոնէութիւնը նախ նոյն նահանգին մէջ ծաղկելն է ։ Երկուքի կը բաժնուի, հին ու նոր. հին լեզուով է իրենց եկեղեցական ասմունքները. նոր լեզուն է քաղաքականը և հասարակութեան գործածածը ։ Երկրորդին մէջ կը գտնուին աղճատեալ Արաբերէն բառեր ալ, ինչպէս՝ Ալլահ, մէլամէթ, ջուլլէ, ջէհաննամ ։ Թէկրիացւոց լեզուն ալ Արաբերէնին և Ամարային աղճատեալն է ։ Արականի և իգականի տարբերութիւններ ալ ունին բառից վերջաւորութեանց մէջ ։

և ունին իրենց յատուկ լեզու ։ Այլթմները քիչուոր են, և կը գտնուին Պանա (1) ծովակին եզերները ։ Անոնք վարուցան չունին և երկիր մշակելու չեն զբաղիր, այլ միայն յիշեալ ծովակին մէջ որսորդութիւն կ՚ընեն, ուր տեղ տեսակ մը ձկնաձուկ կը գտնուի, որուն միսը կ՚ապրին իրենք և անոր հաստ մորթէն տեսակ տեսակ արջառաջիլներ (խըռպաշներ) կը շինեն կը ծախեն. անկէց է իրենց բոլոր ապրուստը ։ Այս խարազաններուն մէկ տեսակը Թագրուրի Արաբները դուրս ալ կը հանեն, և աժան գնով՝ հատը մէկ դահեկանի կը ծախեն ։

Իսկ Գըմանդ կոչուած ցեղը Ճըլկայի գաւառէն մինչեւ Ռումձուհօյի ներսերը կը տարածուի, որոնք հարիւր հազարի մօտ կը հասնին կ՚ըսեն ։ Անոնք Թէպէտ առանձին լեզու մը ունին, բայց գիր չունին ։ Քրիստոնէից մէջ սաէպ գտնուելովնին սորված են անոնցմէ և կը խոստովանին սուրբ Երրորդութիւնը. և քրիստոնէից կրօնին ալ տեղեակ են, բայց չեն պաշտեր զՔրիստոս ։ Հապէշից առջի Թագաւորները ուզած են, որ բռնութեամբ ընդունել տան ասոնց քրիստոնէութիւնը, և անոնք Թէպէտ իրենց երկիւղէն խօսք տուած են և ակամայ արտաքին ձեւերն ալ ի գործ դրած են, բայց առ երեւս, և մինչեւ Թագաւորաց մեռնելու ժամանակը, իսկ յետոյ նորէն կրկին իրենց անկրօնութեան դարձած են ։ Նոյն Թագաւորաց ժամանակ իրենց մանր տղաքը հաղորդել կուտան եղեր կենարար Մարմնոյ և Արեան, և յետոյ ծածուկ կը փսխեցընեն ի նախատինս ։ Թէոդորոս Թագաւորին ժամանակը այս Գըմանդներէն բաւական մարդիկ իրենց յօժար կամօքը ի քրիստոնէութիւն դարձած են, բայց ոչ ներքին համոզմամբ և ի սիրոյ ճշմարտութեան, այլ մասնաւոր շահերու ակնկալութեամբ և Թագաւորին հաճոյ երեւնալու համար ։ Ունին իրենց մէջ կարգաւորի պատուով անձինքներ, որոնց ձեռօք կը Թլփատեն նորածին մանչ տղաքը քրիստոնեայ Հապէշից պէս ։ Տարաժամ մահուամբ մեռնողները Թաղելու առեննին

(1) Այն է Ծանա կամ Ցանա ըստ Հ. Ստեփաննոս Ագոնցին ։

նոյն տեղը եզ մը կամ ոչխար մը կը մորթեն մեռնողին հոգւոյն փրկութեանը համար. և կենդանիին ոսկորները այրելու տանելնին՝ քնար զարնելով շուրջ կուգան բազմութեան մէջ, կ՚երգեն և կ՚ուրախանան պոռալով. “Արդարացան մեռնողները և ազատեցան անոնց հոգիները.”

Աղջիկ տղայոց ականջներուն բլթակը կը ծակեն և կլորակ փայտի մը կտոր կ՚անցընեն, և հետզհետէ աստիճանաբար աւելի հաստը անցընելով՝ ծակը այնքան կը մեծնայ, որ յետոյ դէպ ի վեր ծռելով ականջին վերի կողման վրայ կ՚անցընեն. և ասիկայ աղջկանց համար թէ թլփատութեան նշան և թէ զարդ է։ Հրէից նման շաբաթն ալ կը պահեն, և այն օրը անասուն չեն մորթեր, և քրիստոնէից ձեռօք նոյն օրը մորթուածն ալ չեն ուտեր՝ մեղք համարելով։

Նոր Հապէշու քրիստոնէից երկիրներուն մէջ տարածուած կան Մահմետական կրօնքով Հապէշներ ալ. ասոնց մեծ մասը Թէոդորոսի բռնութեան երեսէն օտար երկիրներ փախած են, զորոնք քրիստոնեայ ըլլալու համար միշտ կստիպէ եղեր. Մնացեալ մէկ մասն ալ թէպէտ առջի բերան ակամայ խօսք տուած են, բայց յետոյ Թագաւորին թոյլատրութեամբը ետ կեցած են իրենց խոստումէն։ Մահմետականները քրիստոնէից հետ բաղդատելով քիչ շատ կրօնասէր ու կրօնագէտ են։

Տենպիայի վարի կողմերը Թագրուրիներու նման սեւագոյն Հապէշներ կան, որոնք ունին իրենց առանձին լեզու. և առանձին կրօնք մահմետական։ Կալլայի արեւելեան Հապէշներուն մէկ մասը քրիստոնեայ Հապէշներէն զատ կը բնակին և իրարմէ շատ կը խորշին։ Ասոնք ալ թէ՛ լեզուով և թէ կրօնքով տարբեր են և կը ճանչնան զՄ·հմէտն և զԱլին։

Օէլան կոչուած ազգ մըն ալ կայ քրիստոնէից, որոնց մեծ մասը Տենպիայի երկիրը կը գտնուի։ Ասոնք ի հին ժամանակէ հետէ Թագաւորաց ծառայներ կոչուելով արքունի տուրքերէ ու հարկերէ ազատ էին. և իրենց սնուցած հազարաւոր եզներն ու կովերը և բռ-

լոր ստացուածքնին Թագաւորին ըլլալով անոնցմէ գոյացած արդիւնքներն ալ անոր կը յանձնէին ։ Բայց հիմայ խիստ աղքատացած ըլլալով Թէոդորոսի հարստահարութիւններէն, ստիպուած են երկրի մշակութեան և վարուցանի պարապել ։

Թէկրիի արեւմտեան հարաւակողմը կը գտնուին Ճանկըլլացիք, որոնք չունին կրօնք մը, և լեզուով ու մարմնոյն գունով կ'որոշուին ուրիշներէն ։ Բնութեամբ խիստ վայրենի են. բնակութիւննին է գետնափոր տեղերը. վարպետ նետաձիգ են և սրընթաց, աշխատասէր և հաւատարիմ ։ Քրիստոնեայ Հապէշից իշխանները գիշերանց ասոնց վրայ յարձակելով և անոնց բնակարաններուն մուտքը պաշարելով, դէպ ի ներս հրազէնքներ կը պարպեն, և անկէ ազատելու համար դուրս ելլողները գերի կը բռնեն, զորոնք խիստ յարգի ունին ։ Այս գերիներուն և Հապէշներուն խառնածնութենէն փոխուած են բուն Հապէշից գոյները ։ Քրիստոնեայ Հապէշից խիստ Թշնամի են, որոնցմէ եթէ ձեռքերնին անցնին՝ չարաչար կըսպաննեն ։ մանաւանդ ձի կամ ջորի եթէ հանդիպելու ըլլան՝ ողջ չեն Թողուր, որովհետեւ՝ Թէ որ ասոնք չըլլան, կ'ըսեն, քրիստոնեայք չեն կարող մեր վրայ յարձակել ։

Հապէշից մէջ Հրէից կրօնքն ունեցողներ ալ կան այս դիս այն դին ցրուած, որոնք դեռ Մեսիայի գալստեան կըսպասեն, և պիտի գայ բոլոր Եթովպիայի վերայ Թագաւորէ կ'ըսեն ։ Ասոնց Խախամները կամ քահանաները ներքինացեալ կ'ըլլան, որ իրենց մէջ օրէնք մըն է. կնիկ մարդոցմէ կը խորշին, մինչեւ անգամ հացերնին իրենք կ'եփեն, որպէս զի կանանց երեսը չտեսնեն ։ Ով որ ուզէ իւր որդին քահանայ ընել, պէտք է տղայութեան ժամանակ զանիկայ ներքինացնէ ։

Բոլոր Հապէշստանի բնակչաց երեք մասին մէկը խառնակրօն կամ անկրօն ազգեր ու ցեղեր են, որոնց Թիւը մէկ միլիոնի կը հասցընեն հաւանական հաշուով ։ Իսկ երկու մասը քրիստոնեայք են, որոնք ընդ ամենը հազիւ երկու միլիոնի կը հասնի ։

Հապէշու երկրէն դուրս Շօայի հարաւակողմը քանի մի Կալլայի գաւառներ կան կ'ըսեն իրենք, որուն բնակիչները մարդաշուն են, այսինքն կէսը մարդ՝ կէսը շուն. իսկ կանայք կատարեալ մարդիկ են։ Ասիկայ յայտնի առասպել մը ըլլալը ամենեւին տարակոյս չկայ, և հին ու նոր աշխարհագիրներէն և ոչ մէկը կը պատմէ այսպիսի հրեշաւոր մարդիկ գտնուիլը, որ բնութեան կարգէն դուրս է. բայց որովհետև բոլոր Հապէշք իրբեւ ստոյգ և իրական կը պատմեն ասոնց գոյութիւնը, վասն որոյ միայն տեղեկութիւն մը տալու համար հոս յիշատակեցի։ Կը հաստատեն թէ ժամանակաւ կրօնաւոր մը երթալով նոյն երկիրը, և կին մարդ մը աղջմիկը մէկտեղ հետը բերելով՝ Թէկրիի սահմաններուն մէջ կը բնակեցընէ, և անոր շանակերպ մանչ տղաքը աստուածային մէկ զօրութեամբը կատարեալ մարդու կերպարանքի կը փոխէ, և ասոնց սերունդը մինչեւ ցայսօր դեռ կը գտնուի կ'ըսեն։

---

## ԳԼՈՒԽ Թ.

### Պուտաները.

ՎԵՐՈՅԻՇԵԱԼ շանամարդոց առասպելական պատմութենէն շատ հեռու չէ Պուտայ ըսուած մարդոց ցեղն ալ, որ մեզի և բոլոր մեր ընթերցողաց ալ թէպէտ առասպել մը պիտի թուի, սակայն ասոնց ճշմարտութիւնն ու ստուգութիւնը բոլոր Հապէշու ժողովուրդը հաստատելէն ի զատ, անոնց նշանները ալ կ'երեւին, որ ամենէն սաստիկ Սկեպտիկեան եղող մ'ալ կը հաւատացընեն, կամ պահ մը կասկածի կը տանին, չը կրնալով մէկէն ի մէկ հերքել պատմութեանս ստուգութեան կերպարանքը։ Ասոնք են Հապէշի լեզուով Պուտայ ըսուածները, որոնց մէջ քրիստոնեայք ալ շատ կան։ Թէպէտ և մարդկային կերպարանք ունին, սա-

կայն բնութեամբ գայլաբարոյ և արիւնարբու են և գայլու զօրութիւնն ունին, որով կարող կ'ըլլան գուցէ մարդոց արիւնը ծծելու և կամ մահացընելու ։

Անհնարին եղաւ մեզ իմանալ անոնց գաղտնիքը, և այս պիտի ըլլայ անշուշտ պատճառը որ Եւրոպացի աշխարհագիրներէն ու պատմագիրներէն և ոչ մէկը խօսած է անոնց վրայ, և կամ թերեւս առասպելի և կամ խաբեբայութեան տեղ դրած ըլլան. այսու ամենայնիւ մենք թէ՛ գիտենք, և թէ անոնց մահացուցիչ և արիւնարբու կատաղութեանց դէմ՝ Պուտայ չեղող Հապէշներուն գործածած միջոցներն ու դեղերը տեսած ենք. և այս օրուան օրս անոնց վրայ խօսուած բաներուն ստուգութիւնը բոլոր Հապէշստանի և մինչեւ Եգիպտական սահմանները այնպէս տարածուած է, որ կասկածող և առասպելի տեղ դնող մարդիկը՝ իբր անհաւատ կը համարուին ։ Մենք ինչ որ պիտի խօսինք անոնց վրայ, առանց երաշխաւոր ըլլալու ճշմարտութեանը, լոկ պատմութիւն մի է, կամ զուարճալիք, որուն դատողութիւնը իւրաքանչիւր ընթերցողաց կը թողունք։

Յայտնի չէ թէ անոնց Պուտայութիւնը բնական և ժառանգակա՞ն է՝ թէ եկամուտ կամ ստացական. իրենց պատմածին նայելով՝ երկուքն ալ կայ ։ Կ'ըսեն թէ այս Պուտաները իրենցմէ ծնած զաւակաց գայլոց բնութիւն տալու համար տեսակ մը խոտեղէն ըմպելիք կը խմցնեն, որուն ինչ ըլլալը թագուն կը պահեն իրենց մէջ։ Թէ որ իրենց խիստ հաւատարիմ բարեկամին մէկը թախանձելով խնդրելու ըլլայ, ծանր երդումներ տալով կը հաղորդեն անոր դեղին ինչ ըլլալը և կը խմցնեն անկէ, որով կ'ըլլայ իրենց պէս Պուտայ մը ։ Ասանք ցորեկները ըստ օրինի մարդկան կը վարին իրենց բոլոր յարաբերութեանցը մէջ, և գիշերները երբ ուզեն եղեր և երբ իրենց բնութիւնը ստիպէ՝ կ'ըլլան իբրեւ գայլ և իբրեւ գազան գիշատիչ և արիւնարբու։ Այսպէս կը վկայեն և կը հաստատեն բոլոր Հապէշու երկրին բնակիչները ։ Երբ գիշերը գայլերու ոռնալուն ձայները առնեն, ըստ որում շատ գայլ կը գտնուի այն

երկրին մէջ, իրենք ալ պոռչալով դուրս կը նետուին և կրակին անոնց ետեւէն ընկնալ, և մինչեւ անգամ նոյն ժամուն, այսինքն գայլանալու կէտերնին պոչ մըն ալ կ'ունենան. այս պարագայն անշուշտ դէպ ի յայտնի առասպել կը տանի պատմութիւնը։ Գիշերը բոլոր իրբեւ գայլ իրենց արշաւանքներն ընելով, առաւօտուն կը դառնան բնակարաննին և իրենց գործքերնուն կը պարապին։

Արեւմտեան Գուտաները արտաքին յայտարար նշան մը չունին, երբ մէկը ուզէ իմանալ ուրիշ մը Գուտայ ըլլալը կամ չըլլալը, տեսակ մը դեղ կայ կ'ըսեն, (որուն յատուկ չինող վարպետը կայ,) և այս դեղը բռնութեամբ անոր կը խմցընեն, որ եթէ Գուտայ է, խոյն պոչը դուրս ելլելով կը խայտառակուի։

Նոյնք երբ մէկու մը դէմ ատելութիւն և թշնամութիւն ունենան, անոր արիւնը հեռուանց կը ծծեն, եթէ քովը մարդ չգտնուի՝ ծծելով կը մահացընեն. իսկ թէ որ մարդ ալ գտնուի քովը, այնպէս մը կը ծծեն որ ինքն անգամ չզգար, բայց մագնիսականութիւն մը կըստանայ իւր վրայ, այնպէս որ արիւն ծծող Գուտան երբ գիշերը պոռչալով գալու ըլլայ մագնիսացեալ մարդուն բնակարանին մօտ, անոր ձայնը լսելով ինքն ալ պոռչալով դուրս կը յարձակի, և կ'երթայ շիտակ զինքը մագնիսացընողին քով և կերակուր կ'ըլլայ անոր։ Իսկ թէ որ անոր մագնիսացեալ ըլլալը իմացուի, և դուրս յարձակելու ժամանակ քովը եղող մարդիկ զինքը կարող ըլլան բռնել ու չթողուլ, անմիջապէս անոր դեղը քթին հոտուըտալ կուտան և կ'ազատեն զինքը և մագնիսութիւնը կ'ոչընչանայ. և անոր թշնամի եղող Գուտան ալ ով ըլլալը յայտնուելով կըսպաննուի։

Այս պարագաները մեզի պատմած ժամանակնին՝ բնութեան ներհակ գտնելով զանոնք, և կերպով մը բացատրութիւն և լուծում չկրնալով տալ, բնականապէս չէինք հաւատար։ Ինչպէս բանական մարդս գայլ կ'ըլլայ, կ'ըսէինք, և նորէն մարդու կը փոխուի. ինչպէս կ'ըլլայ հեռուանց մարդու արիւն ծծել ու սպան-

նել։ Բայց ականատես մարդիկ այն աստիճան կը պըն-դէին անոնց անտարակուսելի ստուգութեանը վրայ, որ պահ մը հաւատալիս կուգար՝ չափազանցօրէն. քանի մը պարագաները մէկդի թողլով, և այս Պուտաներուն չա-րութեան դէմ ի գործ դրուած նախազգուշացուցիչ միջոցներուն և դեղերուն ալ ականատես ըլլալով, նոյ-նը մեզ հաւատարմացնելու կը ծառայէին։

Թէքըլէ-Վարկիս (Վակշըմ-Վոլաղի) նորընտիր Թա-գաւորին Պէկամտըր երկրին մէջ եղած և իւր զօրքերը գիւղերը ցրուած ժամանակ, այն կողմերը գտնուած Պուտաները չկրնալով զօրքերուն տուած նեղութիւն-ներուն համբերել, կըսկսին իրենց գայլենի գաղտնա-կան զօրութիւնը անոնց դէմ գործածել. ջարդուբուրդ ընելով զանոնք, արիւննին ծծելով, մահացընելով և ա-նոնց մարմինները յօշոտելով։ Այս չարաշուք լուրը Թագաւորը լսելուն պէս, իսկոյն անոր դեղը բերել տալով՝ մնացեալ զօրքերուն բաժնել կուտայ և կ'ազա-տէ զանոնք մարդակեր հրէշներուն ձեռքէն։

Այս Պուտաներուն տուած կոտորածներն շատ ան-գամ պատահած է ամեն երկրի մէջ, մանաւանդ Կոճամի երկրին. մենք ալ հոն եղած ժամանակնիս շատ անգամ կը լսէինք։ Անոնցմէ մէկը միայն բաւական կը համարիմ պատմել հոս իբր հետաքրքրութիւն։ Պուտային մէկը օտար կնոջէ բան մը կը խնդրէ, իսկ կինը տալու յանձ-նառու չըլլալով, Պուտան սաստիկ կը նեղանայ։ Իսկ կի-նը միայնակ տեղ մը չգտնելով անյայտ կերպիւ անոր արիւնը հեռուանց ծծելով կը թողու կ'երթայ։ Կինը այս կերպով մագնիսանալով, գիշերն անոր պոռչալու ձայնը առնելուն պէս՝ ինքն ալ ոռնալով կը ցատկէ տե-ղէն և գայլացեալ մարդուն քով երթալ կ'ուզէ. բայց տանը մէջ գտնուող մարդիկ անմիջապէս կը բռնեն զանի, և շուտ մը դեղը անոր քթին հասցընելով հոտուըտալ կուտան։ Նոյն դեղին վրայ կինը կըսկսի գուշակութիւն ընել, զինքը վնասող կամ մագնիսացընող Պուտային ա-նունն և ուրտեղ ըլլալը կը յայտնէ մեքենայապէս՝ դեռ ուշը վրան չեկած։ Նոյն միջոցին կը հարցընեն ի-

րեն Ի՛նչ կը խնդրես , սիրտդ ինչ կ՚ախորժէ (1) : — Իշու-
վէրք , կը պատասխանէ մագնիսացեալ կինը : » Իսկոյն
վիրաւորուած ու քոսոտ էշ մը կը բերեն , որուն վէրքը
կրակի անհնարագրելի ախորժակով մը ու մռմռալով
ու պռչալով ծծել : Քիչ ժամանակէն յետոյ կըսթափի
և ուշը վրան դառնալով կ՚առողջանայ : Իսկ Պուտան
գուշակութեանը համեմատ կ՚երթան կը գտնեն և ըս-
պաննել կուտան :

Աճամի երկրին ժողովրդոց մեծագոյն մասը Պու-
տայ են . ամենայն զարմանալին այն է որ այս երկիրս ա-
մենէն լաւն է . քրիստոնէական կրօնին աւելի նախան-
ձախնդիր են և քննասէր , քան որու մ գիտնականաց մեծ
մասն ալ հոս կը գտնուի : Եկեղեցականաց մէջ ալ
Պուտաներ կան կ՚ըսուի , որոնք գիշերը գայլ կ՚ըլլան
գիշատիչ , և առաւօտուն սրբազան խորհուրդը կը մա-
տուցանեն և կը հաղորդեցընեն Աստուծոյ Պուտաները :

Պուտաներուն մէջ իրարմէ աւելի կամ պակաս զօ-
րութիւն ունեցող կը գտնուին . զօրաւորը անզօր Պու-
տային կրնայ յաղթել՝ երբ գիշեր ժամանակ գայլցեալ
իրարու հանդիպին դուրս տեղ : Արիւն ծծելու զօրու-
թեան մասին մէջ ալ իրարմէ աւելի ճարտարը , արագն
ու անյագ կերպիւ գործողներ ալ կ՚ըլլան , որոնք իրենց
մէջ ալ անուանի են : Այս զօրութեան աստիճանաց
տարբերութիւնը իրենք աստեղաց և մոլորակաց ազդե-
ցութեան կուտան . այսինքն որ Պուտային աստղը որ
զօրաւոր է , իր զօրութիւնն ալ անոր համեմատ է . իսկ
այն Պուտան որ անզօր կամ քիչ զօրաւոր աստղի մը
տակ ծնած է , տկար կամ նուազ ազդեցութեան տէր
կ՚ըլլայ ինքն ալ :

Բոլոր Հապէշստանի մէջ ժողովուրդը մեծ երկիւղ
կը կրէ Պուտաներէն , ուստի անոնցմէ ազատ ու ապա-
հով մնալու և անոնց ազդեցութիւնը տկարացընելու

(1) Ամեն մէկ Պուտայի սրտին ուզածը այլ և այլ կ՚ըլլայ . ոմանք իշու
վէրք . ոմանք մարդու և կենդանեաց աղբ . և ուրիշ այս տեսակ զզուելի
նիւթեր . մագնիսացեալներն ալ նոյն Պուտային սիրածը գուշակելով զայն
կը խնդրեն և անով կ՚ողջանին :

և ջնջելու համար դեղն ալ գտած են, զոր շատերը իրենց վիզը կը կախեն ուրիշ տեսակ տեսակ հմայեկներու հետ։ Այս դեղը կ՚ըսեն, ոչ միայն անոնց զօրութիւնը կը խորտակէ, այլ և անոնցմէ մագնիսացեալներուն ալ կ՚օգնէ և կ՚առողջացընէ։

Պուտաներուն մէջ թագաւորական ցեղ ալ կայ Ամուլա անուն, որ Կոճամի երկրին Տէվրէ-Մէյի կոչուած տեղւոյն մօտ բարձր լերան մը վրայ կը բնակի։ Տարին անգամ մը իւր բոլոր հպատակ Պուտաներուն հրաման կը խրկէ, և անոնցմէ տարեկան հարկ կը պահանջէ. անոնք ալ տարւոյն մէջ որքան անձինք որ մահացուցեր կամ գիշատեր են, անոնց ակռաները բերելով թագաւորին կը ներկայացընեն իրենց հարկերուն հետ. և իւրաքանչիւրը բերած ակռաներուն թուոյն համեմատ՝ իրենց քաջութեանը վրայօք գովեստներ լսելով կը բաժնուին անկէ։ Իսկ թագաւորը նոյն բերած ակռաներով իւր պալատը կը զարդարէ։

Զարմանալին այս է որ Պուտայութիւնը բոլոր Հապէշստանի մէջ տարածուած և անոր համբաւը լսուած ըլլալով. այսչափ եկող գնացող Եւրոպացիք, որոնց մէջ անշուշտ գիտնականք ալ կը գտնուէին, մինչև ցայսօր և ոչ մէկը խօսած ու գրած է իւր ուղեգրութեանը մէջ. պատճառն անտարակոյս մեզի նման առասպել համարելնին է. գոնէ պէտք էին և պէտք են յիշել այս օրինակ տարածեալ համբաւ մը և փիլիսոփայապէս ջըրել զայն։ Մենք յանձն առինք խօսիլ յատկապէս անոնց վրայ, աւելի Եւրոպացի գիտնոց և ճանապարհորդաց հետաքրքրութիւնը շարժելու, որ ուշադրութիւն ընելով այս առարկային՝ իրենց քննութեամբը թէ որ չհաստատեն՝ գոնէ ջրեն, յիշելով միանգամայն մագնիսական մեսմերայական և ուրիշ այս տեսակ բնութեան գաղտնիքներ պարունակող գիտութեանց, որոնց իրենք ալ կարեւորութիւն տուած են։

Հապէշ քրիստոնէից մէջ ուրիշ տեսակ աղանդ մ՚ալ կայ, որոնք Տաճկաց Պէկտաշի ու Մէվլէվի ըսուած խումբը կը յիշեցնեն մեզ։ Ոլորաձեւ կը շարուին կը

նոտին ճիշդ. Պէկտաշիներուն պէս և այլանդակ կերպով մը կըսկսին երգել, և երգելով այն աստիճան կը կատաղին ու կը փրփրան գլուխնին երկու կողմ երերցնելով ու Ալլահ Ալլահ պոռալով, մինչև որ ուժաթափ և ուշաթափ գետինը կը փռուին կ'ընկնան, և ահռելի ձայներով կը սկսին խորդալ։ Նոյն միջոցին զանազան տեսիլքներ կ'երևայ իրենց, և վերջը սթափելով ուրախութեամբ կը պատմեն զանոնք իրարու։ Մէջերնէն ոմանք՝ այս կատղութեան սաստկութիւնը ուղեղնուն դպչելով կը խենթենան, ոմանք ալ ինքզինքնին ջրին կամ կրակին մէջ կը նետեն այսահարեալներու նման։ Այս աղանդին ծառայող կանայք ալ շատ կան, և օրէ օր թէ կանանց և թէ էրիկ մարդոց թիւը աւելնալու վրայ է, և մահմետականներէն մտած է իրենց մէջ։ Լուսին նորոգման ժամանակ, մանաւանդ Վերացման խաչէն առաջ կը կատղին ասոնք, և ամէն գիշեր գրեթէ այս իրենց գիւղական հանդէսը կը կատարեն, որուն առաւելապէս կին մարդիկ ներկայ կը գտնուին և շատ անգամ անոնք կ'երգեն։

---

## ԳԼՈՒԽ Ժ.

*Թագաւորաց, իշխանաց և զօրաց տկարութիւնները և կառավարութեան կերպը.*

ՀԱՊԷՇՍՏԱՆԻ նման կէս վայրենի երկրի մը իշխանական կառավարութիւնը որքան որ քաղաքականացեալ ու կրթեալ ազգաց կառավարութենէ տարբեր և օրինաւորութենէ խիստ հեռու կը համարուի, այսու ամենայնիւ սոյն երկրին քրիստոնեայ թագաւորաց կամ իշխանաց կառավարութեան մէջ, որոնց ի մօտոյ դիտած ու զննած եմք քաղաքական կեանքերնին, կը գտնուին այնպիսի եղանակներ վարչական օրինաց, և այնպիսի կանոնաւորութիւն, որոնք բարեկարգեալ տէրութեանց մէջ նախանձելի կրնան համարիլ։ Պարզութիւ-

նը ունի միշտ իւր մէջ նաեւ իւր ազդեցութիւնը և գրաւիչ զօրութիւնը, մանաւանդ օրինաց և դատաստանաց մէջ ։

Այն կէտերուս մասին անպատշաճ չեմ համարեր քանի մը յօդուածով խօսիլ Հապէշու Թագաւորաց և իշխանաց սովորութիւններուն վրայ ։

1․ Թագաւորին սովորութիւնն է ամեն առաւօտ կանուխ իւր բնակարանէն ելլելով՝ յատուկ պաշտօնատունը գալը, որ շատ անգամ վրան մըն է, և անոր մէջ եղած երկարադիր նստարանին վրայ օթոց մը փռելով՝ կը բազմի ։ Իւր հագուստն է ճերմակ էհրամ մը որու մէջ կը պլլուի, անվարտիք և գլուխն ալ երբեմն կարագ իւղով կ'օծէ (1) ։ Նստարանին երկու կողմերը փոքրիկ հրապէնքներ և իւր սուրը կը տեսնուին, կռնակի կողմն ալ կաշիէ և վրան արծաթակուռ և ոսկէզօծ զարդերով շինուած վահանը ու նէզը կը կախուին, և անոնց վրայ կ'երեւայ իւր կերպասեայ ծաղկաւէտ կարմիր պարեգօտը (էնթարին), որ Թագաւորաց յատկացեալ շքոյ պատմուճանն է, և հարկ եղած ժամանակ միայն կը հագնի ։ Նոյնպէս մեծամեծ իշխանք ալ կ'ունենան մէկ մէկ պատուոյ պատմուճաններ ։

Շաբաթ և կիրակի օրերը գոց կ'ըլլայ ատեանը ։

2․ Թագաւորին քովն եղող մեծամեծաց պարտաւորութիւնն է ամեն առաւօտ այցորելու համար իրեն ներկայանալ․ եթէ մէկը հիւանդ ալ ըլլայ, սպասաւորին մէկը պէտք է ղրկէ իւր կողմէն, որպէս զի Թագաւորը իրեն վրայօք կասկած մը չունենայ ։ Նոյնպէս եթէ ուրիշ տեղ մըն ալ գտնուելու ըլլայ, այն տեղի իշխանք և մեծամեծք պարտաւոր են անմիջապէս իր քովն տեսութեան երթալ․ և մինչեւ որ հրաման չտրուի իրենց՝ տեղերնին չեն դառնար ։

3․ Թագաւորն իրեն առանձին խորհրդականներ

(1) Ինչպէս ըսած ենք ուրիշ տեղ, գլուխ օծելը՝ բաց ի սովորութենէ՝ գլխի ցաւի ալ օգուտ ունի կ'ըսեն ։ Եգիպտոսի իշխանութեան տակ եղած Արաբներն ալ ճարպով կ'օծեն ։ Առաւօտներն ալ վարտիք չհագնիլը սովորութիւնն է, ըստ որում էհրամով բոլոր մարմիննին կը ծածկուի ։

ունի, որոնք Մէճ–Լիս–ի կը կոչուին, որ Թագաւորի բերան կը նշանակէ ։ Ասոնց միայն կը յայտնէ իւր խորհուրդները և կամքը, և անոնց գործադրութիւնը իրենց ձեռքովը ծածուկ կը կատարէ ։ Թէ որ հասարակութեան մէջէն մէկը գաղտնիք մը հաղորդել, կամ առաջարկութիւն ու խնդիր մը մատուցանել ուզէ Թագաւորին, պէտք է անոր խորհրդականաց մէկուն դիմել։ Զոր օրինակ, եթէ ուզէ կառավարիչ իշխանի մը տեղը անցնիլ, յանցաւոր մը շղթայէ ազատել, Թագաւորին շահաւոր բան մը առաջարկել, և կամ ասոնց նման յայտնի կամ ծածուկ խնդիր մը ընել, Մէճ–Լիսու անդամներուն միջամտութեամբ միայն կրնայ կատարել. և իւր խնդիրքը ձեռք բերելու համար ինչ կերպով և ինչ չափ դրամով յանձնառու ըլլալը ասոնց ձեռքով պէտք իմացուի, ընդունուի և կատարուի ։

4. Բոլոր դատաստանները Թագաւորին և իր քովն եղող մեծամեծաց ներկայութեան կը տեսնուին և կ'որոշուին ։ Աճիւններն ու մահուան դատակնիքներն օրինագրքին համեմատ կը տրուին ։

5. Մասնաւոր անձինք եթէ խնդրքի մը կամ գործքի մը պատճառաւ Թագաւորին ներկայանալ ուզեն, պարտին հեռուանց կանգնելով բարձր ձայնով ամէնքը մէկանց Զա՛ն հօյը, Ճա՛ն հօյը կանչել, որ Ամէնէֆ նշանակութիւն ունի ։ Թէ որ Թագաւորը ժամանակ և կամք ունենայ ունկնդրութեան, լուր կուտայ որ իրեն ներկայանան, ապա թէ ոչ՝ ներկայացուցիչ (պալտըրավա) մը կը կարգէ անոնց, որուն ձեռօք կամ կը ներկայանան յետոյ և կամ պալտըրավային ձեռօք խնդիրքնին կը մատուցանեն իրեն ։

6. Թագաւորին իշխանութիւնը թէպէտ և միապետական է, բայց ունի իւր քով բաց ի ներքին խորհըրդականներէն՝ ուրիշ երեւելի զինուորական իշխաններ, որոնց հետ ազատ խորհրդակցութիւն ընելով կ'որոշէ և կը կարգադրէ կարեւոր գործքերը ։

7. Զինուորական գլուխները և զօրապետներն իւր տիրելի բարեկամաց ու պաշտօնէից մէջէն կ'ընտրէ ։ Ա-

նի դարձեալ իշխաններ ու իշխանապետներ թէ իրեն հպատակ և թէ հարկատու , որոնց ամեն մէկուն ձեռքին տակ իրենց առանձնին համեմատ յատկացեալ զօրքեր և զօրապետներ կը գտնուին ։ Ասոնք ալ դարձեալ ունին իրարմէ տարբեր պատիւ ու իշխանութիւն աւելի կամ պակաս . և ամենքն մէկէն իրենց իշխաններէն կախում ունին , և իշխանները թագաւորէն ։ Զինւորական իշխաններէն ոմանք իրենց առանձնին համեմատ երկիրներ ընդունած են թագաւորէն և նոյն երկիրներուն կառավարութիւնն ալ միատեղ իրենց տուած , որոնք անոնց տարեկան հարկերէն կէսը և կամ քառորդը իրենք կ'առնուն իրենց մեծութեան առանձնին համեմատ ։

8. Թագաւորին մեծ զօրութիւնը կազմողն իւր հրացանակիր զօրքերն են , որոնց չեն հաւասարիր իւր իշխանաց յատկացեալ հրացանակիր զօրաց թիւը , բայց ի մէկ քանի իրեն սիրելի և խիստ մտերիմ աջակից իշխանաց գնդերէն , որոնց արտօնութիւն շնորհած է ինքը ։ Ասանց թագաւորին հրամանացը ոչ ոք կարող է հրացէնք կրել , որոնց քանակութիւնն ալ ինքը պիտի սահմանէ . և այս հրացէնք կրելու արտօնութիւնը յատուկ պատուոյ նշան համարուած է իրենց մէջ . իսկ տիգաւորներու թիւը սահմանի տակ չէ , ուզածին չափ կրնայ պահել իշխան մը իր իշխանութեան առանձնին նկատմամբ ։

9. Այն իշխանները որոնք ձեռքերնին երկիր չունին, նոյնպէս և անպաշտօն զօրապետները և զօրքերը, տարեկան հաւաքուած եկամուտներէն իրենց յատկացեալ բաժինը կ'ընդունին յարքունուստ ։

10. Տէրութեան հպատակեալ երկրի մը իշխան՝ նոյն երկրին բնակչաց խնդրանօքը թագաւորն ինքն իր ազատ կամօքը կ'ընտրէ իւր ուզած մէկը , և թագաւորական թմբուկին ձայնովը անոր անունը կը հրատարակուի ։ Նոյնպէս թագաւորը կ'ընտրէ նոյն երկրին իշխանութեն մէջ զանազան պաշտօններու և կառավարչական գործքերու յատկացեալ անձինքը , որոնք միշտ իրեն հաւա-

տարիմ կուսակիցներէն կ'ըլլան։ Իշխանին ընտրուած օրը անոր զէնք մը և կերպասեայ հագուստ մը կուտայ իբրև նշան պատուոյ, և մէկ քանի սպասաւորներով իր պաշտօնին տեղը կը խրկէ, յետոյ կամաց կամաց անոնց թիւը հարիւրի կամ երկու հարիւրի կը հասնի, և կ'ըլլան երկրապահ զօրաց գունդ մը։ Անոր ձեռքին տակ կարգուած միւս երկրորդական իշխանաց ալ հանգերձներ տալով պաշտօննին կը յայտնուի։

Թէ որ գիւղացիք իշխանին հետ թշնամանան անոր տուած զրկողութեանց և գէշութեանց պատճառաւ, և կամ իրենց հակակիր մէկն ըլլայ, բոլորը մէկանց միաբանելով կը հալածեն զանիկայ երկրէն դուրս։ Նաև երբեմն երկրին նախորդ իշխանն ալ ապստամբած ըլլալով կուգայ յանկարծ և հալածելով զինքը՝ գիւղացւոց գաղտնի հաճութեամբը երկրին կը տիրէ։ Իսկ թէ որ չուզեն գիւղացիք, դարձեալ թագաւորին կարգած իշխանին հետ կը միանան ու ապստամբ իշխանը կը վռնտեն։ Շատ անգամ կ'ըլլայ որ գիւղացիք ալ երկու կողմի կը բաժնուին, երկու իշխանաց մէկուն կողմը բռնելով, և այն ժամանակ պատերազմով կ'որոշուի անոնց վէճը. ինչպէս եղաւ մեր հոն եղած ժամանակ Պելեսա և Պէկամբոլը երկրին ժողովրդոց մէջ։ Թէ որ թագաւորական կողմը յաղթուի, թագաւորը կը հարկադրի կամ անձամբ թշնամիին վրայ քալել և կամ բաւական զօրք խրկել զանոնք հնազանդեցնելու և յաղթելու։

Այս կերպ կռիւներու և խռովութեանց պատճառ շատ անգամ գիւղացւոց մէջ եղած կուսակցութիւնն է, այսինքն նախորդ իշխանաց կողմնակիցներուն ծածուկ դրդմունքը, որով կը խռովի երկիրը։ Երկրորդ պատճառ՝ նորընտիր իշխանին նոյն երկրին տեղացիներէն չըլլալն է. որովհետև ժողովուրդը իրենց երկրէն ու տեղացւոցմէ կ'ուզեն որ իշխանը ընտրուի. և օտար երկրէ եղող իշխանը իրենց շատ սուղի կը նստի, և հայրենեաց շահերով իրենց հետ կապուած չըլլալով ծանր վնասներու պատճառ կ'ըլլայ երկրին։

11 . Թագաւորը չկարողանար գիւղացիները բռնութեամբ նուաճելու և հնազանդեցնելու . ըստ որում օրինաւոր տուն տեղ չունենալնուն, դժուարութեամբ կրնայ զանոնք ձեռքի տակ ունենալ ։ Երբ ապստամբ երկիր մը վրայ յարձակել հարկ ըլլայ, գողի նման պլուխ վարուի որ կարենայ զանոնք բռնել, ապա թէ ոչ՝ անոր գալը լսելով գիւղացիք, խոյս ապարէնին դժուարամատոյց ու հեռաւոր տեղուանք փախչելով, պարէննին ալ ստորերկրեայ գուբերու մէջ տեղաւորելով կը թողուն կը փախչին, խեղճ աղքատ ու անկարող մարդիկը թողլով իբրեւ պահապան գիւղին ։ Այս պատճառաւ շատ անգամ կը զլջանի թագաւորը անոնց կամացը . թէ որ միտքը դրած է երկիրնին կողոպտելու և աւրելու, աղէկ բերան կեղծաւորի խօսքերով և սուտ խոստմունքներով կը միամտեցնէ զանոնք, որ իրենց երկիրը դառնան ստացուածքնին մէկտեղ առած . յետոյ զօրքերը անոնց գիւղերը կը ցրուէ ըստ սովորութեան՝ որ կերակրուին . քանի մը օրէն սուտ պատճառանք մը գտնելով յանկարծ թմբուկը հնչեցնել տալով հրաման կը խրկէ ցրուած զօրքերուն որ գիւղերը կողոպտեն ու քանդեն ։ Այն ժամանակ խեղճ գիւղացիք կը հարկադրին ակամայ խոնարհիլ ու վերջին աղքատութեան մէջ թագաւորին հնազանդիլ . անոնց հետ մէկտեղ ապստամբաց գլուխ եղող մեծն ալ իրեն ապրուստի դուռ մը չգտնելով կը յուսահատի և ակամայ կամօք հնազանդութիւն ցոյց կուտայ, թերեւս հաց մը գտնելու ակնկալութեամբ ։ Իսկ թէ որ թագաւորը միտք չունենայ երկիրն աւրելու, և եթէ ապստամբութեան պատճառներն իրաւացի են, կըներէ գիւղացւոց և խնդիրքնին կը կատարէ ։

12 . Այն երկիրը կամ գիւղը որ ապստամբի մը ընդունելութիւն կ'ընէ, ինքն ալ ապստամբած կը համարուի . այն ժամանակ նոյն տեղւոյն իշխանը իրաւունք կ'ունենայ անոնց երկիրը կողոպտել տալու և անոնց կողոպուտներէն հնգին մէկն ինք կ'առնու, և մնացեալը զօրաց կը թողու ։ Իսկ թէ որ ժողովուրդը ապստամբին

ընդունելութի՛ն ընելու կամք չունենայ, անմիջապէս դեռ ապստամբը չեկած իշխանին լուր կու տան, և կամ թէ որ ժամանակ չկայ լուր տալու, իրենք շուտ մը կը ժողովին անոր հետ պատերազմելու և հալածելու. թէ որ յաղթուին և հնազանդելու ըլլան անոր, ազատ կը մնան Թագաւորին երկիւղէն։ Իշխանին ալ թէ որ երկրացւոց վրայ վստահ չըլլայ, երկիրը կողոպտելէն յետոյ կը թողու կը փախչի իւր երկիրը անառիկ տեղուանք ապաստանելով, որուն կը հետեւին նաեւ իւր երկրացիներն ալ յայտնի կամ ծածուկ ապստամբելով և կը պաշտպանեն զինքը. ըստ որում եթէ բաղդը յաջողէ ու զօրանալու ըլլայ, իրենց ալ պարծանք ըլլալէն զատ՝ տուրքերնին ալ կամ կը թեթեւնայ և կամ բոլորովին ազատ կ՚ըլլան։

13. Երբ հարկ ըլլայ Թագաւորին և կամ անոր գաւառական իշխանաց մէկուն թշնամւոյն հետ պատերազմելու, իշխանութեանը մէջ գտնուած բոլոր ժողովուրդը թէ սիրով և թէ բռնութեամբ անմիջապէս քովը ժողվելով անոր դիմաց կ՚ելլէ։ Ծեծկուելու միջոցին եթէ գիւղացիք իրենց իշխանին դէմ հակակրութիւն մը ունենան, իսկոյն խօսք մէկ ընելով յառաջուց կամ կը թողուն կը փախչին (1), կամ միւս իշխանին կողմը կ՚անցնին և կը սկսին անոր դէմ դարձընել իրենց զէնքը, որով կը յաղթուի նա։ Այս խարդախութիւնը շատ անգամ ի գործ կը դնեն գիւղացիք, յաղթանակ կանգնելու կէտին մէջ թողլով իրենց մեծը, ինչպէս ըրին Թըրաօ-Կովագիին մարդիկը Աքէչի-Կովագիի հետ կըռուելու ժամանակը։ Այն որոյ անոնց բնաւորութիւնը ճանչնալով իշխանները՝ շատ անգամ կռուոյն մէջ չմըտնելով, իրենց առանձին բանակով մօտ տեղ մը կը սպասեն, բաւական է որ նոյն բանակը բաւական զօրութիւն ունենայ թշնամւոյն դէմ դնելու։

14. Թագաւորը որ կողմն որ երթայ, այնտեղի գըտնուած ժողովուրդներէն իւր կերակուրը կ՚ընդունի,

(1) Փախչելու ժամանակնին բարձր ձայնով մը կը պօռան միւս իշխանին. Հայը կեր. որով ըսել կ՚ուզեն, տէրէ անոր երկրէն և կեր հացը.

Նոյնպէս և իւր հետն եղող մեծերը. իսկ բանակին զօրաց և անոնց սպասաւորաց Թիւը գրի առնուած ըլլալով, նոյն Թուոյն համեմատ կ'որոշէ Թագաւորը անոնց տրուելիք պարէնին որքանութիւնը և օրը, զոր իրենց նշանակուած գիւղերէն կ'ընդունին: Թէ որ այն երկրէն ալ ելնելով ուրիշ երկիր մը շուտով երթալու հարկ ըլլայ Թագաւորին, մինչեւ հոն հասնելուն ալ ճամբուն հարկաւոր կերակուրը դարձեալ առջի երկրին ժողովրդէն կ'առնու. իսկ Թէ որ հանդարտ գնացքով տեղ տեղ կանգ ու հանգիստ առնելով երթայ, ճանապարհին հանդիպած գիւղերէն կ'ընդունի, զօրքերն ալ անոնց տուները կը նստեցնէ. և ժողովուրդը յետոյ ինչ որ ծախս ըրած է, տէրութեան տրուելիք տարեկան տրոց հաշուին կ'անցընէ: Եթէ ընդդիմանան և չուզեն զօրաց պէտքերը հոգալու, և որոշեալ պարէնը չտան, զօրքերը բռնութեամբ կ'առնուն և մեծ վնասներ ալ կը հասցընեն անոնց:

15. Ժողովուրդներէն յատուկ զօրք ժողվելու սովորութիւն չկայ, որովհետեւ բոլոր Երիկ մարդիկ զինուոր կը համարուին. և հարկ եղած ժամանակ իրենց ազատ կամքը կը փութան գրօշակին ներքեւ: Ով որ ուզէ՝ կրնայ իշխանին քով զինուորութեան մտնել, եթէ նա հաճութիւն տայ. և երբ ուզէ՝ ազատ է կրկին հրաժարիլ անոր քովէն և ուրիշ իշխանի մը քով ծառայել. և կամ ծածկաբար փախչիլ ապստամբ իշխանի մը քով (1), և կամ իսպառ Թողուլ զինուորութիւնը: Հատ մարդիկ կան որ ինքնայօժար կամօք կը զինուորին անաշխատ հաց մը ուտելու համար:

16. Թագաւորը իւրաքանչիւր երկրի մէջ Թշնամեաց դէմ դնելու համար պատրաստի զօրք չունի, որովհետեւ իշխանութեան բոլոր երկիրը շատ ընդարձակ ըլլալով հազիւ իւր հետն ունեցած 15 հազարի չափ զինուորական մարդիկը իրենց ընտանեօք և սպասաւոր-

(1) Ծածուկ այն տեղն կը փախչի, երբ իշխանէն ստացած զինուորազէնքը, գրաստն և ուրիշ ընդունած բաները իւր տիրոջը ետ դարձնել չուզէ:

ներովը կերակրելու կարողութիւն ունի, որ շատ անգամ ապօրինաւոր միջոցներով կ'ըլլայ ։ Թէպէտ իւրաքանչիւր գաւառի մէջ ալ տուրքէ ազատ մարդիկ քիչ շատ կը գտնուին իրենց իշխանին հրամանին տակ, բայց հաղիւ թէ իրենց երկիրն ու իշխանը կրնան պաշտպանել նեղ կէտի մէջ. և ասոնք շատ անգամ ալ հարկ եղած ժամանակ թագաւորին կողմէն կանչուելով, իրենց մեծին հետ անոր քով կ'երթան, և երկիրներուն պաշտպանութիւնը մեծ մասամբ գիւղացւոց վրայ կը մնայ ։ Այս միջոցներուն եթէ ուզեն՝ կ'ապստամբին, ինչպէս շատ անգամ կ'ըլլայ ։

Ժողովուրդը այն աստիճան փոփոխամիտ և կասկածոտ է բնաւորութեամբ, որ եթէ թագաւորը, օրինակի համար, արեւելեան դին դիմելու ըլլայ, արեւմտեան կողմի ժողովուրդը կ'ապստամբի. եթէ արեւմտեան կողմը նուաճելու ըլլայ, միւս կողմը գլուխ կը վերցնէ. ոչ երկիրները կողոպտելով, ոչ զմարդիկ գըլխատելով, և ոչ ուրիշ տեսակ պատիժներով կրնայ գըլուխ ելլել, այլ աւելի կը բորբոքի ապստամբութեան հուրը՝ քան թէ կը մարի. ինչպէս եղաւ Թէոդորոսի օրը ։ Այս պատճառաւ չունի թագաւորը ամենեւին հանգստութիւն և դադարումն. միայն ձմռան ժամանակ գետերուն սաստիկ յորդութենէն ճանապարհները գոցուելով՝ ակամայ քիչ մը ժամանակ կը հանգատի երկրին մէկ կեդրոնական տեղը բնակելով, ուսկէց բոլոր իշխանութեանը գաւառներուն վրայ կրնայ հըսկել և երկիւղ մը տալ, որ ապստամբութիւն մը չծագի, և եթէ այնպէս բան մը պատահի՝ շուտով կարենայ վրայ հասնիլ ու նուաճել ։ Պատերազմի դռները ընդհանրապէս Վերացման խաչէն զկնի կը բացուին և յուլիսին վերջերը կը գոցուին ։

17. Ապստամբութիւնը իրենց մեծ պարծանք և կտրճութիւն համարուած է. և գրեթէ ամենուն սըրտին մէջ ծնած ժամանակնէն կայ այս աշխարհաւեր փափաքը ։ Բոլոր ժողովուրդը մեծ ու պզտիկ փառամոլ և իշխանասէր ըլլալով ապստամբութեամբ կ'ուզեն

հանել իրենց բաղձանքին. «Թող՝ կ՚ըսեն, օր մը մեծ ըլլանք և փառքի տիրանանք, և երկրորդ օրը մեռնինք, հոգ չէ։»

Այս ժողովուրդը կարծես թէ հպատակելու համար ծնած չէ, այլ հրամայելու. չկայ մէջերնին մէկը որ միամտութեամբ և անկեղծ սիրով ծառայէ իր մեծին. ինչո՞ւ է արդեօք։ Ինչպէս ուրիշ տեղ ալ ըսած եմ, օրինաւոր ամուսնութիւն և սուրբ անկողին ունեցող չըկայ մէջերնին. ծնողական, եղբայրական, թէ մերձաւոր և թէ հեռաւոր ազգականութեան և արենակցութեան առընչութիւններ չկան մէջերնին, ուստի և ոչ հաւատարմութիւն, որ հպատակութեան և ծառայութեան հարկաւոր պայմանն է։ Ասոր համար վստահութիւնը վերցած է բոլորովին. ոչ թագաւորը իր զօրապետաց և իշխանաց և ոչ անոնք իրենց զօրաց ու սպասաւորաց վրայ կը վստահին։ Շատ անգամ թագաւորը ապահով ու ազատ մնալու համար իր քովի մեծամեծները հետը կը շրջեցընէ, որոնցմէ որ կասկած ունի, և կամ գաւառական իշխանի մը որդին իր քովը պատանդ կ՚առնու որ չապստամբի, և կամ իշխանը քովը պահելով անոր որդին կամ եղբայրը կը խրկէ անոր երկիրը կառավարելու, և այս կերպով քիչ մը ապահով կ՚ըլլայ. Թէ որ երկիրը կառավարող անձը ապստամբելու ըլլայ, քովը եղած անոր պատանդը, կամ ազգակիցները իսկոյն կըսպաննէ կամ կը շղթայէ որ չը փախչի։

18. Թագաւորին կողմէն ինչ լուր որ խրկուելու ըլլայ իշխանի մը գիւղացւոց համար, պէտք է որ շուտով անոնց իմացընէ։ Թէ որ թագաւորը դրամ, պարէն, կամ ուրիշ որ և է բան մը խնդրելու ըլլայ տեղաց մը, նոյն տեղւոյն կառավարիչ իշխանը լուր կուտայ իր մարդոցը և գիւղացւոց ծերերուն, կը յայտնէ անոնց թագաւորին պահանջը, և անոնց հաճութիւնը ընդունելուն՝ կը բաժնէ խնդրածն իւրաքանչիւր գիւղերու վրայ դարձեալ անոնց ձեռօք՝ ամեն մէկ գիւղին իր կարողութեանը համեմատ. և դարձեալ իւրաքանչիւր գիւղի ընկած բաժինը նոյն կերպով կրկին կը բաժնուի

ամեն մէկ տան վրայ անոր կարողութեանը համեմատ, և կը հաւաքուի խնդրուած դրամը կամ պարէնը, և այլըն: Եթէ գիւղ մը իրեն ընկած բաժինը չպատրաստէ և չհատուցանէ և սուտ պատճառանքներով ուշացընէ, գաւառապետին կողմէ զօրապետ մը կուգայ իւր զօրքով կը նստի այն գիւղին մէջ, և այն ժամանակ որպէս զի աւելի ծանրութիւն չըլլայ գիւղին վրայ անոնց կերակուրն ալ հոգալը, կը հանեն իրենց ընկած բաժինը կուտան:

19. Թագաւորն և իւր մեծամեծները և զօրքերը շատ կանայք և սպասաւոր տղայք կը գործածեն իրենց ծառայութեանը մէջ իւրաքանչիւրն իր աստիճանին համեմատ, որոնք միշտ բանակին հետ կը շրջին: Կանայք անոնց հացն ու կերակուրը կը պատրաստեն, տղայք ալ զէնքերն ու վահանը կը կրեն և գրաստներուն խոտ կը ճարեն, որովհետեւ գարին իրենց մէջ յարգի ըլլալով իրենք կ'ուտեն, և անասնոց կերածը հասարակօրէն խոտ է միայն:

20. Հրացանակիր զօրքերը իրենք իրենց դրամով վառօդ կը շինեն. երբ պատերազմ ըլլայ՝ Թագաւորը կամ իշխանը կը պարտաւորի վառօդ չունեցողին կամ վառօդ և կամ դրամ տալու: Հրաձգութեան մէջ լաւ վարժուած չեն, նշան առնուլ չեն կրնար, և անվտանգ կերպով վիրաւորուող զօրքերն ալ վիրաբուժութեան տեղեակ չըլլալնուն՝ շատ անգամ առանց օրհասի չարաչար կը մեռնին, կամ անպարտ տեղը կը տանջուին:

21. Կռուու խառնուած ատեն, որովհետեւ յատուկ հագուստով և նշանով մը չեն որոշուիր իրարմէ, երկու կողմի իշխանաց ձիերուն պատերազմական անունները տալով կը ճանչցուին, և իւրաքանչիւր զինուոր իւր իշխանին ձիուն անունը անդադար արտասանելով կը յարձակի: Ինչպէս Թէկրիի Տէճաճմաչ—Կասայի ձիուն անունն է Աբբա—Կուղուղ, որ կը նշանակէ Աղաւ-բուններուն հայրը կամ հեղինակը (փիրը): Ամարայի Վակշում—Կոպազիի ձիուն անունն է Աբբա—Դուկէ, որ կը նշանակէ Անպարտելեաց հայրը, կամ անվեհերու-

թեամբ թշնամեաց վրայ խիզախողներուն հայրը ։ Թէագորոսին ձին կը կոչուէր Ազդա — Թօաքէզ, որոյ նշանակութիւնն է Աէջ բը պըլողներուն կամ կապողներուն հայրը. որովհետեւ ժողովուրդը իրենց մեծին ներկայանալու ժամանակ վրայի էհրամին ընջակի նման մէջքերնին կը պլեն, և անոնց մէկ ծայրը ուսերնէն անցընելով կուրծքերնուն վրայ կը բռնեն մէկ ձեռքով. և այս կերպ պլուիլը հպատակութեան նշան է. ուստի Ազդա—Թօաքէզ ըսելով կը նշանակէ այն կերպով պլուողներուն և պըլել տուողներուն հայրը ։

22. Պատերազմը մէջերնին մէկ կամ երկու ժամէն աւելի չտեւեր, դիւրաւ կը վճարեն կամ յաղթութեամբ կամ պարտութեամբ ։ Նախ իրարու հետ երկար ժամանակ կը բանակցին, կը ջանան զիրար համոզել և իրաւախոհ ընել. երբ մէկ կողմը զիջում չընէ ու չհամոզուի, պատերազմը կը բացուի ։ Սովորաբար երեք թեւի կը բաժնեն բանակը. Թագաւորը կամ մեծ իշխանը միջին թեւին կը հրամայէ, աջ ու ձախ թեւերը իւր հաւատարիմ իշխանաց տալով ։ Ասոնք իրենց իշխանութեանը համեմատ ունեցած թմբուկին մէջտեղերնին առնելով և թմբկահարները ձիերու վրայ նստելով կը սկսին պատերազմական եղանակներ հնչեցընել ։ Ամենքն ալ հրազէնք ունին, որով նեղը մնացած ժամանակնին զիրենք կը պաշտպանեն՝ որպէս զի թշնամիին ձեռքը չընկնան և կամ անոր զօրութենէն ցիրուցան չըլլան. որովհետեւ թշնամիի ձեռք ընկնալը կամ անոր երեսէն ցրուիլ փախչիլը չէ թէ միայն նախատինք կը համարին, այլ և յաղթութիւնն կը կորսընցընեն ։

Բաց մեծի մասին գործածած զէնքերնին սուր ու տէգ է, և հրացանը՝ ինչպէս ըսինք, վարժ չըլլալնին՝ կռուոյն վերջին կէտերուն միայն կը գործածեն, վասն որոյ հարիւրին տասը հազիւ չպատահիր որ գնդակէ մը զարնուի ։ Երկու կողմէն խմբովին կը յարձակին իրարու վրայ, կը զարնեն ու կը զարնուին, որոնց կը յաջորդեն հետզհետէ ուրիշ խումբեր, և առջի կռուողները երկու կողմէն իրար հալածելով ետ կը դառնան բանակը ։

Նոյն յարձակուող խումբերուն ետեւը կը գտնուին հրացանակիր զօրքերը, որոնք թէ որ վերջին կէտերուն դէպ ի թշնամեաց վրայ հրացաններ պարպելու ըլլան, իրենց մարդիկը առջեւնին ըլլալով՝ կը ստիպուին անոնց չդպչելու համար շատ անգամ դէպ ի օդը պարպել, և անոնց պայթելու ձայներէն երկու կողմին ալ սարսափ կը պատճառեն ։ Թէ որ մէկը հարուած ընդունելու կէտին զարնողին սրոյն ներքեւը չոքելու ըլլայ, ողջ կ'ազատի և գերի կ'ըլլայ անոր, որ մեծ ամօթ է իրենց մէջ և վատութիւն կը համարի, մանաւանդ եթէ կարիճ և պատուաւոր անձ մը եղած ըլլայ ։ Թշնամեաց կողմը անցնելու փախչողները շատ անգամ վարպետութեամբ մը ձեւին բերելով և նշան տալով խումբ խումբ միւս կողմը կ'անցնին ։ Նոյն ժամանակ երկու կողմէն ալ եղող ստպասաւոր կանայք բարձր բլուրներու վրայ կանգնած լէ-լէ-ներ կը հնչեցընեն և քարերը թշնամեաց բանակին վրայ կը տեղացընեն, տղայք ալ պարսաքարերով ու ցուպերով կ'օգնեն իրենց կողմին ։ Որ կողմին հրամանատարը որ սպաննուի, յաղթութիւնը միւս կողմին կ'ըլլայ և շուտով պատերազմը կը վերջանայ ։ Յաղթուած կողմը կը սկսի փախչիլ. ձեռք ընկնողը կը մերկացուի, և միայն քուրջի մը կտոր կը թողուն իրեն որ ամօթոյքը ծածկէ ։ Նոյնպէս կանայք ալ զիրար կը մերկացընեն [1] ։ Կողոպուտը կողոպտողին բաժին կ'ըլլայ բաց ի հրաղէնքերէն որ մեծին կը յանձնուի, նոյնպէս և գրաստուց հնգին մէկը ։ Հասարակ կողոպուտներէն թագաւորական զօրքերն ու պատերազմող գիւղացիք ալ ունին իրենց բաժինը ։ Զօրքերն երկու, իսկ գիւղացիք մէկ բաժին կ'առնուն ։

Զօրքակալ եղող մեծերը իսկոյն շղթայի կը զարնըւին. անոնցմէ որ կասկած ու վախ չունի թագաւորը, փրկանքն առնելով թէ դրամ և թէ ուրիշ ստացուածք, կ'արձակէ զանոնք ու թող կուտայ ։ Իսկ կասկածաւոր

(1) Ընթերցողք անշուշտ գիտեն որ սովորաբար հագածնին մէկ աղտոտ ջէհրամ մը կամ երկայն շապիկ մըն է և ոչ ուրիշ բան ։

ները երկու ոտքերնին շղթայած և ձեռքերնին ետևը-նին կապած կը նեղէ ու կը տառապեցընէ սաստկապէս, որ իրենց ունեցած հարստութիւնը և անոնց տեղը ցոյց տան. և անոնց բոլոր ունեցածն առնելէն զատ՝ դար-ձեալ զիրենք առժամանակեայ կամ մշտնջենաւոր բան-տարկութեան կը մատնէ բանակին և կամ յատկացեալ բանտարանի մը մէջ, որ սովորաբար անառիկ Անգը լե-ռան մէջն է.

23. Ապստամբներն եթէ ողջ բռնուելու ըլլան, ի-րենց օրինագրքին համեմատ անմիջապէս պէտք է գլխա-տուին։ Իսկ այն ապստամբը՝ որ Թագաւորին իր իշխա-նութեան հանելէն յառաջ անհնազանդութիւն ցոյց տուած է, մշտնջենաւոր շղթայի զարնուելով կը բան-տարկուի, և օրապահիկ հացը Թագաւորէն կը տրուի՝ թէ որ հրաման ընէ։

24. Պատերազմի ժամանակ ամէն զինուորականք և աստիճանաւորք պարտաւոր են Թագաւորին կողմէն իբր պատուոյ նշան ընդունած հագուստը հագնիլ, ո-րանցմով կ՚որոշուին իրարմէ իւրաքանչիւր աստիճանա-ւորք։ Անոնք տեսակ մը գունաւոր կերպասներէ շի-նուած գլխու ծոպաւոր գտակներ, և թեւերնին ան-ցուցած արծաթակուռ և ոսկեզօծ թեւնոցներ։ Նշա-նաւոր իշխանաց գրաստներն ալ զարդարուած են ար-ծաթեղէն գործուածներով և հին եգիպտացւոց ձիե-րուն ոսկեզօծ և արծաթեայ զարդերով զարդարուած թամբերուն նման, ինչպէս որ կը գործածեն դեռ Ե-գիպտոսի գիւղերու երեւելի Շէխերը։

25. Թագաւորական կնիքն է առիւծադրոշմ որով կը կնքէ իւր հրամանագիրները, նամակները և արձանա-գիրները, և Կոնտէր երկրին միայն կալուածագիրներուն մէջ կը գործածուի.

---

# ԳԼՈՒԽ ԺԱ.

*Հապէշի երկրին, հանքերուն, եղանակներուն և բերքերուն վրայ։*

ՀԱՊԷՇՈՒ *երկիրը լեռնային է ընդհանրապէս և սեպացեալ բլուրներու շարք մըն է իրարու վրայ բարձրացած, և անոնց ստորոտները տեղ տեղ լեռնադաշտեր և հարթ երկիրներ կը գտնուին գեղեցիկ և զուարճալի դիրքերով։ Բնակիչները սովորաբար իրենց տուները և խրճիթները լեռներուն բլուրներուն վրայ և բարձրաբերձ լեռներուն բոլորտիքն եղած լեռնադաշտերուն վրայ կը շինեն, վախնալով ապստամբներէն և գողերէն։ Այնպէս խիթալի ու ահուելի ճանապարհներ կան, ուր իրենք և իրենց գրաստները միայն կարող են աներկիւղ և անվտանգ քալելու, ըստ որում իրենք բոկոտն են և գրաստնին առանց պայտի (նալ)։ շատ ճանապարհներու նշաններն են գաղանաց ոտքերուն հետքերը և կամ լեռներէն վար հոսած անձրեւներուն բացած շաւիղները, ուր տեղայց ճերմակ մարդ քալելու համար գաղանաց ճանկերուն կարօտ են որ անվտանգ և առանց սահելու վեր ելլեն, և կամ վար իջնեն, որովհետեւ գրաստով երթալ անհնար է. այսպէս են Եկօ երկրին լեռները։*

*Բուն Հապէշի, այսինքն քրիստոնեայ Թագաւորաց տիրած երկրին տարածութիւնը, որուն մէջ կ'իմացուի Թէկրէն, Ամարան, Շօա ու Կոճամը, այնքան ընդարձակ չէ, արեւելքէն դէպ 'ի արեւմուտք, և հիւսիսէն դէպ 'ի հարաւ հազիւ թէ քսան և հինգ կամ երեսուն աւուր երկայնութիւն ունի. այսինքն Կալլապատէն (Մեթէմմայէն) ինչուան Շօա, և Մուսովայէն մինչեւ Կոճամ։*

*Երկիրը որքան որ լեռնային է, ունի իւր բնական հարստութիւնը. հանքերու կողմէ ունի պղինձ, կապար, մանաւանդ երկաթ՝ որ խիստ շատ է. ունի և մարմարիոնի հանք և ուրիշ տեսակ տեսակ գոյնզգոյն հողեր, ո-*

րոնք քիմիաբանից քննութեանց կարօտ են ։ Նաեւ այս հանքերը բոլոր անգործ կը կենան բնակչաց ագիտութեան և ծուլութեան պատճառաւ ։ Ոսկիի հանք ալ կայ կ'ըսեն իրենք, բայց մենք չտեսանք ․ Եւ աւելի արեւելեան Կալլայի և արեւմտեան Շանկըլըշի կողմերուն համար կ'ըսուի ոսկի գտնուիլը ․ և կը պատմեն թէ Շանկըլըցիք գիշեր ժամանակ ոսկիի փայլածներու վըրայ եղան թրիք դնելով, առաւօտուն կը ժողվեն, և մաքրելով կը բոհրեն, և Թէկիրացի վաճառականաց հետ կըտաւով կը փոխեն ։ Մէկ արծաթ ըռեալի ծանրութեամբ ոսկին՝ տասներկու արծաթ ըռեալի կու տան, ինչպէս Կոճամի և Շօայի սահմանակից Կալլայիները ։

Թէկիրիի հարաւային կողմերը Շօհօ և Կըլըգալ ըսուած երկիրները աղահանքեր կան, ուսկէց տեղացիք տեսակ տեսակ մեծութեամբ՝ երկարադիր, տափարակ ու ձեւաւոր կտորներ կտրելով, Թէկիրիի իշխանութեան մէջ Սէկամի ըսուած տօնավաճառը կը բերեն և բամբակեայ կտաւներու հետ կը փոխանակեն, ուսկէց կը ցըրուի բոլոր Հապէշստանի մէջ ․ և որչափ հեռաւոր տեղուանք փոխադրուին վաճառականաց ձեռքով, անոնց թիւերը նուազելուն՝ գիները կը բարձրանան և մեծ վաստակ կ'ընեն ։ Օրինակի համար, բուն տօնավաճառին տեղէն 20 կտոր աղը, որոնց ամեն մէկը հարիւր տրամ կը կշռէ, մէկ արծաթ ըռեալի կու տան ․ որքան հեռանան նոյն տեղէն, այնքան անոր գինը կ'աւելնայ, մինչեւ վեց կտոր աղը մէկ արծաթ ըռեալի գին կ'ունենայ ամառը հեռու տեղուանք ։ Ձմեռը ամեն տեղ աղերուն թիւը կը պակսի և գինը կ'աւելնայ ։ Թէկիրիի իշխանը, երբ աղը սղելու ըլլայ, բանակ մը զօրք խրկելով աղահանքին կողմը, ճամբան կ'ապահովէ, և վաճառականք աներկիւղ երթալով գալով՝ աղի առատութիւն կը տիրէ ամեն տեղ ։

Տեղ տեղ բարեբեր արտեր կը գտնուին, ուր տարին երեք անգամ կը վարեն ու կը հնձեն ։ Քանի մը տեղ հանքային ջրեր ալ կան, ինչպէս Զարուքա, Կէլլի-Թափոր և Նապա—Մահարի ։

Տարւոյն չորս եղանակաց փոխուելուն՝ տեղ տեղ հովերն, օդերը ու անձրեւներն ալ կը փոխուին։ Ապրիլէն մինչեւ օգոստոսի վերջերը համարէ թէ հարաւային արեւմտեան կողմէն միշտ կը շնչեն հովերը, եւ յանկարծ սաստիկ կը փոթորկէ որ անձրեւելու նշան է, և անձրեւն սկսելուն փոթորիկը կը դադրի։ Այս եղանակն իրենց ձմեռն է, որ ամեն օր՝ համարէ թէ օրուան կէսը գեղեցիկ արեւով և կէսը սաստիկ անձրեւներով կ'անցընեն շատ տեղ. մէկ կողմէն վարուցանք կ'ընեն, միւս կողմէն ցանքերը կը հասուննան նոյն կէսօրեայ արեւով։ Ցուրտը թեթեւ է փոթորիկէն ետքը։ Սեպտեմբերէն մինչուան դեկտեմբեր հովերը կը փչեն, և երբեմն փոթորկելով կ'անձրեւէ տեղ տեղ՝ արեւելեան հիւսիսային կողմերէն։ Դեկտեմբերէն մինչուան մարտին մէջերը գրեթէ արեւմտեան կողմէն՝ կը փչէ, և յանկարծ սաստիկ փոթորկելով կ'անձրեւէ տեղ տեղ։ Ցուրտն ալ յունուար ամսոյն մէջ տեղ տեղ աւելի է իրենց ձմեռ ըսուած եղանակէն։

Հապէշու երկիրը թէպէտ և, ինչպէս ըսինք, լեռնային է և ձորաւոր, սակայն հողը բարեբեր է կարծուածէն աւելի։ Բերքերն են՝ ցորեն, գարի, մարացորեն և զանազան ցեղ կորեկներ, ուսկէց կը շինեն սպասաւորաց համար հացը, և ասոնցմէ կը շինեն նաեւ կորեկօղին (պօղա)։ Տեսակ մը հունտ ալ կայ զոր իրենք Թէֆ կը կոչեն, ուսկէց հաց ալ կը շինեն մեծերուն համար, որքան զցորենահացը յարգի է իրենց քով։ Կայ նաեւ սիսեռ, բակլայ, լուբիա, ոսպ և պէօրօ-ձէ, դարապըղպեղ, սոխ, սխտոր, երկու տեսակ գետնախնձոր՝ երկար ու կլորակ, որ Ռըլկայի գաւառը կը գտնուի, կոճապըղպեղ (զէնճէֆիլ), խոշոր դդում ձմռան։ Խահուէ ալ կը գտնուի Կոճամի երկրին իշխանութեան տակ եղած Կալլա և Պեկամըտըր գաւառներուն մէջ, բայց խիստ քիչ պտուղ ըլլայ (1)։ Նոյնպէս ալ Տիմիադու նման ագ-

(1) Խահվէն ընդհանրապէս Մահմետականք կը գործածեն, որոնք մէկ անգամ խըմելէն ետքը՝ գաւաթներուն գիրը ցօղուելով կրկին Էըդըմին

նիւ բրինձ կայ որ ինքնաբոյս է, զոր աղքատ մարդիկ ժողվելով կը շփեն և կ'ուտեն առանց եփելու, ինչպէս տեսանք Պեկամբորըու մէջ։ Տեղ տեղ կը գտնուի, բայց խիստ քիչ, նուռ, դեղձ, մոր, անուշ և թթու լիմոն, հնդիկ — արմաւ (թէմրի—հինտի), վայրի սալոր, և ուրիշ մեզ անծանօթ և անհամ մրգեր։ Ֆինարվայի կողմերը վայրի ձմերուկ ալ տեսանք, զոր Մահմետականք կ'ուտեն։ Արթը հազուագիւտ է, որուն նուազելոյն պատճառ Թէոդորոս թագաւորն է կ'ըսեն իրենք, որ հարբեցութիւնը խափանելու համար այգիները աւրել տուած է, թէպէտ և ինքն ալ հարբեցող մէկն էր։

Վայրի անպտուղ ծառեր ու խոտեր ալ շատ կան. անոնց մէջ մեզ ծանօթ եղածներն են վայրի ձիթենին, թզի թուփը (պյ), զոր Մահմետականք միայն կը գործածեն մեղրով. ռեհանը, անանուխը, բաղուկը, փըրփրեմը (1)։ Չէթի տեղ տեսակ մը խոտ կը գործածեն, զոր կտաւատի նման հունտէ կը հանեն, որուն նուֆ կ'ըսեն, և չորսէն մէկ կուտայ և հում չուտուիր։ Շուշմա (սուսամ) ալ կայ և ուրիշ ցեղ սերմեր՝ որոնցմով խիւսեր և համեմներ կը շինեն։ Բամբակ ալ երբեմն կը սերմանեն, բայց այնքան քիչ՝ որ նշանակութիւն մը չունենար։

Բոլոր այս արմտիքն ու ընդեղէնները Հապէշստանի մէջ տեղ տեղ քիչ շատ կը գտնուին, որ հազիւ թէ երկրին բնակչացը բաւեն. որոնք եթէ հանապազօրեայ խռովութիւններն և իրենց բնական ծուլութիւնը մէկդի թողլով, մշակութեան պարապելու ըլլան և հողտանին, շատ արդիւնք կրնան ձեռք բերել, մինչև անգամ դուրս տեղուանք ալ խրկելու կարող կ'ըլլան, որով վաճառականութիւնն ալ մէջերնին կը ծաղկի և հարըստութեան դուռ կը բացուի իրենց։

Բաց 'ի արմտիքներէն և ընդեղէններէն կը գտնուի Հապէշու երկրին մէջ նաեւ զանազան տեսակ կենդա-

մէջ կը լեցնեն ու դարձեալ եռացընելով կը խմեն։ Այս կերպ կ'ընեն երրորդ անգամ և սպասաւորք կը խմեն։

(1) Բանջարեղէնոց մէջէն միայն խնձան բուսածը կ'ուտեն

նիներ և պաճարեղէններ ։ Չի և Ջորի Կոճամի և Շօայի երկիրները շատ կը գտնուի, որոնք տասնէն մինչև երեսուն ըռեալի կը ծախուին։ Էշը՝ երեքէն մինչև տասը ըռեալի արժէք ունի տեղ տեղ, և բեռան համար միայն կը գործածեն, ըստ որում մեծ ամօթ կը համարին իշու վրայ հեծնալը, և սովորաբար ջորիի վրայ կը հեծնան ։ Եզն ու կովը չորսէն մինչև ութ ըռեալի կուտան. ոչխարին և այծին երեքը կամ չորսը մէկ ըռեալի կ'առնուի բուն տեղէն, բայց վոխտ ու նիհար կ'ըլլան և միսերնին անհամ է. նոյնպէս է եզան միսը, վասն զի ամեն տեղ պարարտ արօտներ միշտ չեն գտնուիր ։ Հաւերն ալ նմանապէս նիհար կ'ըլլան և քիչ կը գտնուին, հատը դահեկան մը կ'արժէ. ասոնց հաւկիթն ալ մեղք կը համարին ուտելու, բայց տեղ տեղ գաղտնի ուտողներ ալ կը գտնուին ։ Նոյնպէս աղաւնոյ միսն ալ չեն ուտեր, Աստուծոյ նուիրուած համարելով. իսկ խոզը բոլորովին կը հերքեն իբրև զզուելի և անսուրբ կենդանի (1) ։ Կաթ, մածուն, կարագ, տեղ տեղ առատ և տեղ տեղ նուազ կը գտնուին ։ Պանիր շինել ու մակրթել բնաւ չեն գիտեր ։ Կան տեսակ տեսակ չզտուած մեղր. բուն տեղերէն հինգ կամ վեց հօխան մէկ ըռեալի կ'առնուի. տեսակ մը թթուահամ մեղր ալ կայ զոր Հապէշք Բուղմա կը կոչեն, որ գետնափորերու մէջ կը շինեն պզտիկ մեղուները. և այս մեղրէն առաւօտները կ'ուտեն կամ կը խմեն որ սրտի ցաւի օգտակար է կ'ըսեն ։

Տեղ տեղ ազնիւ թռչուններ կը գտնուին գոյնզգոյն ու փայլուն տեսքերով, որոնց տեսակներն ու անունները չգիտնալուս, չկրցի մասնաբար նշանակել զանոնք։ Նոյնպէս վայրենի ցեղուցեղ կենդանիներ ու գազաններ, որոնց մէջ նշանաւորն են գայլ, առիւծ, ընձառիւծ, բորենի, վարազ, այծեամ, եղն, փիղ, թեւաւոր ու թունաւոր օձեր, վիշապ, կապիկ, որոնց մէջ վնասակար տեսակները կան, և տեսակ մ' ալ Կանոյ կա-

(1) Այս կենդանիին միսը տեղ տեղ ուտելնին տեսանք ։

տուի մեծութեամբ կայ, որուն դէմքը կը նմանի սպիտակ մօրուօք նիհար ծերունի մարդու, գլուխը կարծես թէ տեսակ մը սեւ գլխարկ դրած է, որուն հեծեծալու ձայնն ալ մարդու հառաչանաց ձայնին կը նմանի. և ասոնք սովորաբար Կոճամ և Զարոտքա կը գտնուին, և ծառերու վրայ կը բնակին, ինչպէս շատ անգամ տեսանք։ Կան բազմատեսակ խատուտիկ գոյներով ջրային ու ցամաքային կենդանիներ, որոնց մորթիները պատուաւոր մարդիկ իբրեւ զարդ վիզերնին կ'անցընեն շերտերու բաժնելով, որոնք չորս կողմէն հիւսուած մազերու նման վար կը կախուին։ Սամուրի գունով եղածները խիստ յարգի է Հապէշից քով։

---

## ԳԼՈՒԽ ԺԲ.

*Հապէշու երկիրը մտած ու ելած ապրանքները։*

ԱՐԴԷՆ ըսածներէս յայտնի եղաւ Հապէշու վաճառականութեան խեղճ վիճակի մէջ ըլլալը։ Իսկ գիտելու արժանի կէտն այն է, որ ընդհանրապէս տեղական առուտուրը կնիկ մարդոց ձեռք ըլլալուն, վաճառականութիւնը յարգ գտած չէ։ Առեւտրոյ բուն կեդրոնը Մասաւա ու Կոնտէր քաղաքն է. ասկէց կը ցրուին միւս տօնավաճառները։ Ներս մտած քանի մը տեսակ ապրանքները հետեւեալներն են, որոնք կարեւորութիւն ունին և փոխանակութեամբ կամ դրամով կ'ընդունին Հապէշ վաճառականաց ձեռօք. ատորին տեսակէ խոշոր գործուած մետաքսէ Հնդու կերպասներ գոյնզգոյն և ծաղկաւոր. ասոնց մէջ կարմիր գունովը ամենէն աւելի պատուով է Հապէշներուն քով, և թագաւորները և մեծամեծ իշխանները միայն կը գնեն և իրենց մարդոց մէջ արժանաւորներուն կը պարգեւեն իբրեւ նշան պատուոյ։ Ճերմակ խամ, կարմիր և կապուտ մանած և դերձան, կարմիր՝ յղկած կաշիներ,

զոր պատուաւոր մարդիկ իրենց Թրերուն պատեաննե-րուն վրայ կ՚անցընեն. վառօդ՝ Անգղիոյ տեսակը, որ խիստ յարգի է։ Կան տեսակ հրացէնքներ, ատրճա-նակներ, ջոբուխուլ, գնտակ, (գօղլըն). մանաւանդ գոյնզգոյն ուլունքներ վիզ կախելու համար։ Ոսկեր-չութեան վերաբերեալ գործիքներ. Եղբըր ոսկին, զոր ոսկէզօծելու կը գործածեն. խաչվէլի վար տեսակ գա-ւաթներ և ջրի բաժակներ. ասեղ, մանաւանդ խոշորը։ Պղպեղ, մեխակ, դարսին, քիմիոն, խունկ, ծարիր (բաս-տըմ) զոր կանայք կը գործածեն։ Իշւ ուրիշ քանի մը մանր ու աննշան վաճառքներ։ Կալապատի և Մուսօ-վայի կողմէն ալ, որոնց բնակիչքը Մահմետական են, բաւական քանակութեամբ բամբակ կ՚ընդունին։

Դուրս ելած վաճառքները նուազ են քան զմտած-ները և անոնց տարեկան արժողութիւնքը իրար չեն համապատասխաներ։ Դուրս ելածներուն մէջ առաջինն է ոսկին, զոր տեղ տեղ գետնէն կը ժողվեն մանր հա-տիկներ և բոհրելով պզտի զանգուածներ կը կազմեն. ասոնց մէկկին դէմ տասուերկու պատիկ ծանրութեամբ արծաթ դրամ կ՚ընդունին. կամ մէկ լուեալի ծանրու-թեամբ ոսկւոյն փոխարէն՝ տասուերկու արծաթ լուեալ կ՚ընդունին։ Անկէ ՚ի զատ հետեւեալներն են դուրս ելած վաճառքը, եղան և ուրիշ արջառներու մորթիներ, ձի, ջորի, էշ, կով, եզ, ոչխար և այծ, մուշկ, դեղթափ, փղոսկր, կարմիր դարապղպեղ, խաչվէ՝ խիստ քիչ, մեղր, և մեղրամոմ, վայրի գազաններ, և այլն։

Տէրութեան մաքսական տրոց համար յատուկ սա-կագրութիւններ (Թարիֆա) չկան։ Թեքրիի և Կալա-պատի սահմանագլուխները միայն մաքսատուններ հաս-տատուած են. և ներս մտած ապրանքներէն բեռի գլ-լուխ մէկ կտոր բան կ՚առնուն առանց ապրանքին տե-սակն ու գինը իմանալու, բաւական է որ վաճառակա-նը հաճեցընէ մաքսապետը։ Անկէ ՚ի զատ՝ իւրաքան-չիւր երկիր մտնելուն նոյն երկրին իշխանին կողմէն գը-րուած մարդուն՝ դարձեալ բեռան գլուխ ապրանքէն մէկ կտոր բան կուտայ իբրեւ մաքսագին կամ պարգեւ։

Նոյնպէս ամէն տօնավաճառի տեղերն լինելուն, ուր-
տեղ Թագաւորին կամ իշխանին կողմէն յատուկ մաք-
սապետ կայ, կը պարտաւորի բան մը հատուցանել տա-
րած ապրանքէն ։ Երկրին բերքերէն եւս տօնավաճառ-
ները բերուած ժամանակ ապրանքին համեմատ բան մը
կուտան, միայն արմտիքն ու ընդեղէնները ազատ են,
և տասանորդ ալ չեն հատուցաներ, ըստ որում հար-
կաւոր եղած ժամանակ զօրաց պիտոյից համար Թագա-
ւորը ուզածին չափ կրնայ գիւղացւոյմէ ժողվել իբրև
տուրք ։ Տօնավաճառ մը բերուած ապրանք թէ որ չը-
ծախուի, և տէրը պարտաւորի հետեւեալ անգամին
կրկին բերել հօն, պէտք է որ երդմամբ հաստատէ առ-
ջի անգամ բերած ու մաքսը հատուցած ըլլալը ։ Այս
անկանոնութիւնը շատ անգամ շատ սուղի կը նստի
ապրանքին տիրոջը. ըստ որում իշու բեռ մը աղ բեռ-
ցած մէկը, որքան երկրէ անցնելու ըլլայ, կը պարտա-
ւորի ամէն մէկուն իշխանին մէկմէկ կտոր աղ տալ ։
Ինչպէս մտած ապրանքներուն համար ըսինք, նոյնպէս
իմացիր նաև դուրս ելած ապրանաց համար, որոնք ոչ
կանոն, ոչ օրէնք ունին և ոչ սակագրութիւններ ։

ՎԵՐՋ.

Պատճէն երկրորդ նամակին զոր Ն.Ա.Ն. Սրբազան Պատրիարքն յԵգիպտոս եղած ժամանակ յուղարկեց առ Թէոդորոս Թագաւորն, միջոցաւ Բարձրապատիւ Իսմայել փաշային.
1867, Դ Հոկտեմբերի.

Յանուն Հօր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն. մի Աստուած՝ յերիս անձինս։

Ի ծառայէս Աստուծոյ յԵսայի Արքեպիսկոպոսէ և Պատրիարքէ Հայոց ուղղափառաց։

Առ Ն. Վեհափառ Թագաւորն՝ որում շնորհեալ են Աստուծոյ երախտիքն, որոց և ինքն անդադար երախտագէտ է։ Առ Թագաւորն՝ որ 'ի յարգի ունելով օրինաց կապերը, անոնց կը յենու աստակապէս. և քաջ տրամադիր լինելով բարերարութեանց՝ ապահովութե և արդարութեան բարիքը բոլոր Եթովպիոյ ժողովրդեան վերայ կը տարածէ։ Ընդհանուր ուղղափառ (որդոտոքսոս) Քրիստոնէից պարծանքը, Սուլդանին մեծարգոյ և հռչակաւոր՝ լցեալ աստուածեղէն սրբութեամբ. եղբօր մերում սրբոյ, մեծի կայսեր Թէոդորոսի, Թագաւորին ամենայն Եթովպիոյ և գերագոյն Պահապանի աշխարհի իւրում։ Յաւելցէ Տէր զբարի տրամադրութիւնդ, զփառս, զմեծութի և զբարեյաջողութիւն։

Յետ առաջի առնելոյ Կայսերական Մեծութեան Ձեր զպատշաճաւոր յարգանս, զմեծարանս և զոհնութիւնս ըստ պահանջելոյ սրբոյ Աւետարանին, որով լի է սուրբ Բեթլեհէմ, Յորդանան գետն, Յիսուսի Քրիստոսի գերեզմանն, սուրբ Սիոն լեառն, յորոյ վերայ զետեղեալ է Երուսաղէմ քաղաքն և բոլոր Սրբազան տեղիքն, ուր կատարեցաւ Քրիստոսի մարդեղութե խորհուրդն. ուրտեղ է և սուրբ Յակովբայ Տեառնեղբօր եկեղեցին, յորում կայանան բովանդակ միջոցք մեր հարկանելոյ զդուռն աղօթից 'ի կողմանէ իմ և բոլոր ուխտիս, որպէս զի մշտնջենաւորեսցէ (Տէր) զպետութիւն ձեր, զարգացուսցէ զժողովուրդն ձեր բարեմասնութեամբք, և վերջապէս զձեզ՝ զԹագաւորական ընտանիսդ և զիշխա-

նութիւն մեծի Նեկուսայ լցուցէ երկնային օրհնութեամբք, և բարձր Կառավարութեան ձեռում հսկեսցէ։ Բաց յայսցանէ ողջոյն շատ նուիրեմք և 'ի սրբազան կըրօնիցս և լիուլի օրհնութիւնս, որոյ աղբիւր է հաւատքն։ Յետ որոյ համարձակիմք դնել յառս Վեհ. Ձեր. նախ՝ զնշանս հաստատուն սիրոյ, որ արդէն իսկ յայտնի են Ձեզ նամակիս միջոցաւ, զոր հոգ տարին առաքել Անձի Վեհափառութեանդ մեր գերապատիւ Նուիրակ մեծարոյ Խաչակ Արքեպիսկոպոսին և մեր որդւոյն արժանապատիւ Տիմոթէոս վարդապետին հետ։

Երկրորդ՝ պատիւ ունիմք ծանուցանել Անձի Վեհափառութեան Ձերում, որ Բարձրապատիւ մեծ փոխարքայն Եգիպտոսի զարգացընելով իւր երկիրն ամենայն բարեօք ապահովութեան և բարեմասնութեան, և հոն խուռն դիմող ճանապարհորդներն իւր առատութեան նշաններովն ճոխացընելով ցանկացանք տեսանել այն երկրի սիրուն գեղեցկութիւններ ը և այցելութիւն ընել նուիրական յիշատակարանաց՝ որովք լեցուն է երկիրն. մանաւանդ զարմացանք տեսնելով հոն տիրող բարեկարգութիւնն և ուրիշ գեղեցկութեանց մէջ այն բարիքներն՝ որով բոլոր ուղղափառ քրիստոնեայ ազգերն լցեալ են բարեսէր մտօք։ Այհ, բոլոր այս բաներս բան մի չեն արժեր բարեկամութեան և սրտաբուխ սիրոյ մեծամեծ զգացմանց, և ակնածութեան այն մեծ ապացոյցներուն քով, զորս Ն. Բարձրապատուութիւն մեծ փոխարքայն Եգիպտոսի իւր հոգածութեամբն եռանդագին ոգւով կը կրէ Ձեր անձին դէմ և ձեր բարձր Կառավարութեն բարեկարգութեանը, 'ի լրումն պարտուց դրացութեն՝ որք մասն համարին մարդկութեան, զորոնք և մեք հագւով չափ զգացած եմք։

Այսպէս ուրեմն Ն. Բարձր. մեծ փոխարքայն Եգիպտոսի տեսնելով որ Անգղիացի հպատակաց բանտարկութեան վերայ այն մեծ Տէրութիւնն բարեկամական բոլոր յարաբերութիւններն ձեր բարձր Կառավարութեան հետ ընդհատելով պատերազմ հրատարակեց, և Եթովպիոյ դէմ մեծ արշաւանք և բազմաձեւն

բանակ մի խրկեց ռումբերու հրացաններու և ուրիշ զէնքերու. և այս իրեն ցաւ մի էր, վասն զի նորա բարի կամքը ջանաց 'ի բաց առնել ձեր Բարձր Կառավարութեն մէջ ըլլալիք անկարգութեանց՝ պատճառներն. ըստ որում բուն իսկ իրաց վիճակը բարեկամական յստակ աչօք դիտելով, մէկ կողմէն ձեր Մեծի Վեհափառութեան արժանաւոր եղած վարկման, յարգանաց և համբաւոյն պարտքերն կատարելապէս 'ի յարգի ունելով, և միւս կողմէն անապատէն անցնելու համար երկար աշխատութիւններն բռնութեան և գործողութեան միջոցներն 'ի կշիռ դնելով, և արշաւանք ընելու համար զօրքերն զոր սոյն Տէրութիւնն ունի, բոլոր այս բաներս մտածել տուին Ն. Բարձրապատուութեան իւր բարեկամական արդարացի զգացմանց մէջ որ Եթովպական կառավարութիւնն թէպէտեւ ունի զօրութիւն և մեծ կարողութիւն օտար յարձակմանց դէմ իւր երկիրը պաշտպանելու, այսու ամենայնիւ պիտի ստիպուի պատերազմելու, արիւն թափելու և բոլոր աշխարհիս խաղաղութիւնն վրդովելու. բաց յայսմանէ Անգղիական տէրութիւնն՝ Օսմանեան Դրան, Եգիպտոսի բարձր Կառավարութեան և միւս Քրիստոնեայ մեծ Տէրութեանց հետ բարեկամական յարաբերութիւններ ունելով, կրնայ այս մեծ Տէրութիւններէն օգնութիւն գտնել, ինչպէս դիւրին է գուշակել, որովհետեւ բոլոր իշխանութեանց փառքն ու պարծանքն այն է որ հաստատուն պահուի ապահովութեան հիմունքն հաղորդակցութեանց մէջ. և աշխարհիս մէջ խաղաղութեան վիճակը շարունակուի, որքան որ այս խաղաղութեան վիճակը զանազան տէրութեանց մէջ ամենէն զօրաւոր միջոցն է քաղաքականութեան և ամենէն հաստատուն երաշխաւորութիւնն ընդդէմ խանգարման:

Այսպէս ուրեմն վստահելով բարձր իմաստութեանըն որ շնորհուած է Ձեր անձին, և արդարացի խոհեմութեան սկզբանց կիրառութեան վերայ, Ն. Բարձրապատիւ մեծ փոխարքայն Եգիպտոսի պատշաճ համարեց ուղղել առ Ձերդ Վեհափառութիւն մտերիմ սի-

րոյ նամակ մի, յուսալով Ձեր վեհանձն սրտին յայն աստիճան գրաւել, որով Ձեր անձնական ազնուութիւնըն և Թագաւորական մեծահոգութիւնը ցոյց տուիք արձակելով բանտէն Անգղիացի կալանաւորներն իրենց պարտուպատշաճ նկատմունքներով. և այս ուրիշ բանի համար չէ, այլ նոյն մեծ արշաւանին գէշ հետեւանաց առաջքն առնելու, որու վտանգներն ու չարիքներն դիւրին է իմանալ որ և է բարեմիտ մարդոյ, և հաշտական յարաբերութեանց հին կապերն նորոգելու և աւելի ամրացընելու ։ Ն. Բարձ. մեծ փոխարքային Եգիպտոսի բարի զգացմունքներն հաստատ անկեղծութեան մի ապահովիչ յայտարարութիւններ ըլլալով, համաձայն են մեր յորդեռանդն փափաքանաց և անձնական գաղափարաց զորս յայտնած էինք մեր նախկին երկու նամակաց միջոցաւ. զորս կանխաւ առաքեցինք առ Ձեր Վեհափառութիւն, միջնորդութեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ առաջնորդեց մեզ 'ի շաւիղս հեզութեան, յանձնեց զխաղաղութիւն, զբարի կենցաղ, և պարտք դրաւ մեր վրայ օտարասէր լինելու և վեհանձն առ հիւրս, իբրեւ սրբազնագոյն պարտք՝ որով ընդունելի կը լինին այս աշխարհիս մէջ մեր ուխտերը ։

Ըստ որում Ձեր Օգոստափառութիւնը ուղղափառ անձանց մէջ ամենէն բարեպաշտն է և մի 'ի բարձրագոյն աստիճանաւորաց, որոց վերայ կրնայ մարդս վստահ լինել իւր բարի կամաց գործադրութեան մասին. Ձեր Վեհ. լաւ կը ճանչէ որ անոնցմով կը փառաւորինք մեք մանաւոր կերպիւ, և թէ շահ և օգուտ է մեզ Եթովպական տէրութեան բարեկարգութիւնը ընդ հովանաւորութեամբ Ձեր Կայսեր. Վեհափառութեան, անկախ 'ի սրբութենէ անձին Ձեր և սիրոյ որով կապուած էք սուրբ Դրոց սկզբանց հետ, և որով ինչպէս կը կարծենք՝ հոգեւորուած էք. Նմանապէս պատշաճ դատեցինք փառաւորել բարեկամական զգացմամբ որ կապած են զմեզ, և Ն. Բարձ. մեծ փոխարքային հետ խորհրդակցիլ Ձեր հաւատարիմ և արժանաւոր յատկու-

թեանց վերայ, և այն գեղեցիկ անձնական արժանեաց խորհրդակցութեան պարտքը կատարելնէս յետոյ, պարտաւորութիւն համարեցինք նաև ուղղել առ Ձեր Վեհափառութիւնն զառաջիկայ գիրս, և առաքել առ Բարձրագոյն արքունի Դուռն ձեր՝ առ 'ի յուշ առնել անոր թէ չեմք դադարիր մեք ամենեքին առ Աստուած ուղերձելու մեր անկեղծ աղօթքն վասն Ձեր. և կատարելապէս համոզուած եմք թէ Աստուած այնպէս զարդարած է զՍրբութիւն Ձեր իւր աստուածային պարգևներովն, որ Ձեր Վեհափառութիւնը պիտի մերժէ անտարակոյս ամէն վատ գործերն և իւր մաքուր խիղճը չպիտի բեռնաւորէ փոքրիկ չարութիւն մի ևս հասցընելով Աստուծոյ ստեղծուածոց. թէ պիտի ներէք նոցա մեղաց, և պիտի բարեհաճիք անարատ պահելու, ինչպէս որ կը վայելէ, մեծ և հռչակաւոր տէրութեանց պատիւը՝ բարի յիշատակներով և անթերի պահպանութեամբ։

Ուստի հարկ չեմ համարիր կրկնելու յայսմ մասին իմ աղաչանքներս, վստահ լինելով Ձեր արժանեաց. գոհ կը լինիմ միայն հրաւիրել Ձեր Սրբութեան վերայ ամենասուրբ Եղբայրութեան օրհնութիւնքը, օրհնութիւնք՝ որոց խորհուրդը բոլոր գերազնիւ և արքունական գերդաստանին անդամոց վերայ կ'անցնի, և բոլոր անոնց՝ որոնք 'առանձնապէս ստացած են հոգևորական սէրն և արժանի հանդիսացան աստուածային օրհնութիւններն ընդունելու։

Սպասելով դարձի մեր Նուիրակաց Ձեր պաշտպանեալ երկրէն՝ ունելով իրենց հետ ուրախութեան՝ շնորհաւորութեան և Ձեր Վեհ. անձին վերայ գովաբանութեանց դրօշակը, որ ինչպէս կը յուսամ՝ ըստ կարի շուտով ետ պիտի դարձընէ զանոնք մեր կարօտակէզ փափաքը լեցընելու։ Պատիւ ունինք զեղուլ 'ի վերայ Ձեր զօրհնութիւնս մեր, մանաւանդ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և խնդրելու 'ի նմանէ որ շարունակէ ձեզ իւր բարիքն, պահելով զՁեզ և զամենայն սիրելիսդ Ձեր՝ յառողջ կեանս։



# ՑԱՆԿ

## ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՐՈՑ

### ՀԱՊԷՇՆԵՐՈՒՆ ԲՆԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ

# ՀԱՊԷՇՆԵՐՈՒՆ ԿՐՕՆԱԿԱՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ

# ՀԱԲԵՇՍՏԱՆԻ ՆԵՐԿԱՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՆՑՔԵՐԸ





